АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ ЛИТЕРАТУРЫ им. М. АБЕГЯНА

АРМЕНУИ СРАПЯН

# АРМЯНСКИЕ СРЕДНЕВЕКОВЫЕ СКАЗЫ

ИЗДАТЕЛЬСТВО АКАДЕМИИ НАУК АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1969

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
Մ. ԱԲԵՂՅԱՆԻ ԱՆՎԱՆ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

ԱՐՄԵՆՈՒՀԻ ՍՐԱՊՅԱՆ

# ՀԱՅ ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ՋՐՈՒՅՑՆԵՐ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1969

*Միջնադարյան գեղարվեստական արձակը հայ բազմադարյան գրականության դեմքը, էությունն ու զարգացումը բնութագրող, բայց քիչ ուսումնասիրված բնագավառ է։ Այս առաջին քայլն է նրա մի արժեքավոր ու սակավ մասը կազմող հատվածը՝ զրույցներն ուսումնասիրելու գծով։ Աշխատության համար քննության նյութ են ծառայել Երևանի Մաշտոցյան Մատենադարանում պահպանված զրույցները, քաղված ավելի քան հարյուր ձեռագրից, որոնք լայն տարածում են գտել XIII—XVIII դարերում։ Հետևությունների ու եզրահանգումների համար աղբյուր են հանդիսացել նաև հայկական, արևելյան, եվրոպական զանազան ժողովուրդների տպագրված զրույցներն ու զրուցատիպ ստեղծագործությունները, ինչպես և հայագիտական, գրականագիտական ու պատմա-բանասիրական այլ և այլ հետազոտություններ։*

*Նկատի ունենալով հրատարակված հայկական զրույցների պակասը, ուսումնասիրությանը կցվել են հատընտիր բնագրեր։*

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ*

## ՄԱՍՆ ԱՌԱՋԻՆ

### *ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆ*



* *Ընթերցողի գործը դյուրացնելու նպատակով, աշխատության առանձին գլուխներում արծարծված հիմնական հարցերը համառոտակի արտացոլել ենք բովանդակության մեջ։*

## ՄԱՍՆ ԵՐԿՐՈՐԴ

## ԲՆԱԳՐԵՐ

## ՅԱՂԱԳՍ ԾԻԾԱՂԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ

## ԾԱՆՈԹԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ, ՑԱՆԿԵՐ ԵՎ ԲԱՌԱՐԱՆ

# ՆԿԱՏՎԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ

| Էջ | Տող | Տպված է | Պետք է կարդալ |
|---|---|---|---|
| 40 | 4 ն. | 1686 | 1683 |
| 146 | 8 վ. | մոլորություններ | մոլություններ |
| 171 | 16 վ. | և վերա | ի վերա |
| 176 | 14 վ. | մարգարիա | մարգարիտ |
| 184 | 18 վ. | ի իրենց | և իրենց |
| 225 | 1 վ. | լողնորկ | լողնորդ |
| 229 | 3 վ. | ըթըշաունի | թշաունի |
| 230 | 9 ն. | առաջին | առաջի |
| 250 | 4 ն. | դալիս | գալիս |
| 397 | 7 վ. | նրեր | բանրեր |
| 400 | 15 վ. | հոռամոց | հոռամոյ |

## ՀԱՄԱՌՈՏԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Աղուէսագիրք—*Գիրք առասպելաբանութեանց, որ ասի Աղուէսագիրք, Ամստերդամ, 1668։*

Աղուէսագիրք 1683—*Գիրք աշխարհաց և առասպելաբանութեանց, որ է Աղուէսագիրք, Մարսելիա, 1683։*

Բակունց, Աղվեսագիրք—*Բակունց Ա., Վարդան Այգեկցի. Աղվեսագիրք, Երևան, 1955։*

Բարաղամի եւ Յովասափու պատմութիւն—*Նկարագրութիւն հոգևոր վարուց Յովասափու, որդւոյ թագաւորին Հնդկաց, Վաղարշապատ, 1897։*

Բոկաչիո—*Բոկաչիո Ջ., Դեկամերոն, Երևան, 1953։*

Գանձակեցի—*Կիրակոս Գանձակեցի, Պատմութիւն Հայոց. աշխատասիրությամբ Կ. Մելիք-Օհանջանյանի, Երևան, 1961։*

Գիրք որ կոչի հարանց վարք—*Կ. Պոլիս, 1720։*

Գոշ—*Մխիթար Գոշ, Առակներ. տեքստը ձեռագրերի համեմատությամբ և ներածությունը Էմ. Պիվազյանի, Երևան, 1951։*

Դավրիժեցի—*Առաքել Դաւրիժեցի, Պատմութիւն, Վաղարշապատ, 1884։*

Եզովբոս—*Առակք Եզովբոսի, Վենետիկ, 1827։*

Զաքարիա Սարկաւագ Ա.—<br>Զաքարիա Սարկավագ Բ.—<br>Զաքարիա Սարկավագ Գ.— } *Զաքարեայ Սարկաւագի Պատմագրութիւն, Վաղարշապատ, 1870։*

Էջեր—*Էջեր հայ միջնադարյան գեղարվեստական արձակից, խմբագրությամբ և առաջաբանով Կ. Մելիք-Օհանջանյանի, Երևան, 1957։*

Էֆիմերտէ—*Գրքուկ, որ կոչի Էֆիմերտէ, տպագրեցեալ աշխատասիրութեամբ Սարգիս արքեպիսկոպոսի Կոստանդնուպօլսեցւոյ, Վենետիկ, 1752։*

Թլկուրանցի—*Յովհաննէս Թլկուրանցի, Տաղեր, աշխատասիրությամբ Էմ. Պիվազյանի, Երևան, 1960։*

Թումանյան, Ա—*Թումանյան Հովհաննես, Երկերի ժողովածու, հատ. Ա., Երևան, 1950։*

Թումանյան, Գ—*Թումանյան Հովհաննես, Երկերի ժողովածու, հատ. Գ., Երևան, 1949։*

Իսահակյան Ա.—*Առակներ, Երևան, 1946։*

Լեսսինգ—*Նաթան իմաստուն, Թիֆլիս, 1878։*

Խնկոյան Ա.—*Խնկոյան Ա., Առակներ, Թիֆլիս, 1917։*

Հայելի Վարուց—*Գիրք հայելի վարուց, որ ասի Հարանց վարք, Մարսելիա, 1702։*

Հայկականք—*Տեր-Մկրտչեան Գ., Հայկականք, ԺԴ—ԺԹ, Վաղպատ, 1899։*

Հայկունի Ս.—Կենդանական վէպեր, ժողովրդական առակներ, Ա գրքոյկ, Վաղարշապատ, 1907։

Հատընտիր առակք Վարդանայ—Հատընտիր առակք Վարդանայ վարդապետի, Choix de fables de Vartan, en arménien et en français, Paris, 1825

Հարանց վարք—Ջուղա—1641։

Հարիւրակք բարոյական խրատուց—Հարիւրակք բարոյական խրատուց, յորս բովանդակին բարոյական առածք և զուարճալի պատմութիւնք, Կ. Պոլիս, 1853։

Ղևոնդ պատմագիր—Ղևոնդ վարդապետ, Արշաւանք արաբաց ի Հայաստան, ի լոյս ընծայեաց հանդերձ ծանօթագրութեամբք Կարապետ վրդպ. Շահնազարեանց, Փարիզ, 1857։

Մառ Ա.—Марр Н. Сборники притч Вардана, часть I, исследование, СПб 1899.

Մառ Բ.—Մառ Ն. Ժողովածոյք առակաց Վարդանայ, մասն Բ, Բնագրեր, Պետերբուրգ, 1894։

Մառ Գ.—Марр Н. Сборники притч Вардана, часть III, приложения, СПб 1894.

Մխ. Գոշ, Վարդան Այգեկցի, Առակներ—Երևան, 1951։

Յովհաննեան Գ. Հետազօտութիւնք Ա, տետր Բ.—Յովհաննեան Գ., Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ, մասն Ա. տետր Բ. Վիեննա, 1897։

Նազարեանց, Անեկդոտներ—հատ. Ա—Գ, Տփխիս, 1877—1883։

Նաւասարդեան, Հեքիաթներ—Հայ ժողովրդական հեքիաթներ, գիրք 1—10, Թիֆլիս, 1891—1894—1903։

Շապուհ Բագրատունի—Պատմութիւն, ի լոյս ածին Գ. Տէր-Մկրտչեան և Մեսրոպ եպիսկոպոս, Էջմիածին, 1921։

Շիլլեր—Շիլլեր Ֆ., Բալլադներ, Երևան, 1957։

Ուռհայեցի—Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898։

Պատմութիւն Աղեկսանդրի Մակեդոնացւոյ—Վենետիկ, 1842։

Պըլը-Պուղի—գրեց Մ. Վ. Բարխուդարեանց, Թիֆլիս, 1883։

Սոփերք Ա—Սոփերք հայկականք Ա. Բանք խրատուց նախնի իմաստասիրաց, Վենետիկ, 1853։

Վարդան—Վարդանայ վարդապետի Հաւաքումն պատմութեան, Վենետիկ, 1862։

Վարք սրբոց հարանց Ա.—Վարք սրբոց հարանց և քաղաքավարութիւնք նոցին, ըստ կրկին թարգմանութեան նախնեաց, հատ. Ա., Վենետիկ, 1855։

Վարք սրբոց հարանց Բ.—Վարք սրբոց հարանց և քաղաքավարութիւնք նոցին, ըստ կրկին թարգմանութեան նախնեաց, հատ. Բ, Վենետիկ, 1855։

Վոլտեր—Զատիկ կամ նախասահմանութիւն, Կ. Պոլիս, 1867։

Տաշեան, Ուսումնասիրութիւնք—Ուսումնասիրութիւնք ստոյն Կալիսթենայ վարուց Աղեքսանդրի, Վիեննա, 1892։

Տէր Յովհանեանց Ա.—Պատմութիւն Նոր Ջուղայու որ յԱսպահան, հատ. Ա., Նոր Ջուղա, 1880։

Տոլստոյ, հատ. 10—Տոլստոյ Լ., Երկերի ժողովածու, հատ. 10, Երևան, 1949։

Փաւստոս—Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց ի չորս դպրութիւնս, Վենետիկ, 1832։

Փափազյան Վ. Պատմություն—Պատմութիւն Հայոց գրականութեան, սկզբից մինչև մեր օրերը, Թիֆլիս, 1910։

*Веселовский А. Н., Боккаччьо*—Боккаччьо, его среда и сверстники (1893), Собрание сочинений, т. V, Пб, 1915.

*Веселовский А. Н., Заметки*—Заметки по литературе и народной словесности (Записки императорской АН, т. 45, СПб, 1883).

*Гр. проза I* —Грузинская проза, т. I. V век—первая половина XIX века, М., 1955.

*Индийские сказки*—Индийские сказки, М., 1956.

*Ист. фр. литературы I*—История французской литературы, т. I, М.—Л., 1946.

*Крылов* —Басни, М.—Л., 1956.

*Монье*—Монье Филипп. Опыт литературной истории Италии XV века, Кватраченто, СПб, 1904.

*Орлов А. С.* — Переводные повести феодальной Руси и московского государства XII—XVII веков, Л., 1934.

*Повесть о Варлааме и Иосафе*—Повесть о Варлааме и Иосафе, перевод с арабского ак. В. Р. Розена, под редакцией и с введением ак. И. Ю. Крачковского, М.—Л., 1947.

*Сказки и повести др. Египта*—Сказки и повести древнего Египта, М., 1956.

*Theophanis*—Theophanis Chronographia, Corpus Scriptorum Historiae Byzantinae, t. I, Bonnae, 1829.

# ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

Հայ միջնադարի գեղարվեստական արձակը ինչպես քիչ հրատարակված, այնպես էլ քիչ ուսումնասիրված բնագավառ է։ Այս ասպարեզում համեմատաբար մխիթարական է վարքերի, վկայաբանությունների, ճառերի, առակների, հեքիաթների, առած-ասացվածքների և հանելուկների վիճակը, որ մասամբ հնում, մասամբ էլ վերջին տարիներս արժանացել են առանձին, հնարավորին չափ ամբողջական տպագրությունների։ Սրանցից ոչ բոլորն են սակայն, որ դիտվել են որպես գեղարվեստական ստեղծագործություններ և արժեքավորվել ըստ այդմ։ Արձակի բնագավառում հարաբերականորեն բարվոք է առակների հրատարակման և ուսումնասիրության գործը։ Այս առումով բավական մեծ աշխատանք են կատարել թե՛ հայ և թե այլազգի հայագետները։

Դեռևս 1668 թվականին Ամստերդամում տպագրվել է առակների առաջին ժողովածուն՝ «Գիրք առասպելաբանութեանց, որ ասի Աղուէսագիրք» վերնագրով։ Սա ունեցել է ևս երկու հրատարակություն՝ 1683 և 1698 թվականներին[1]։ 1825 թ. «Հատընտիր առակք Վարդանայ վարդապետին» վերնագրով 45 առակի մի ժողովածու, «գաղղիերէն թարգմանութեամբ հանդերձ հրատարակած է Սէն-Մարդէն, քաղելով Փարիզի ազգային Մատենադարանին թ. 135 ձեռագրէն, որ օրինակեալ է յամին 1615 և 168 Առակ կպարունակէ»[2]։

---

[1] Տե՛ս Գիրք առասպելաբանութեանց, որ ասի Աղուէսագիրք, Յամսթէլօտամ, 1668, Գիրք աշխարհաց և առասպելաբանութեանց, որ է Աղուէսագիրք, Մարսիլեայ, 1683, Գիրք աշխարհաց և առասպելաբանութեանց, որ է Աղուէսագիրք, Լիվոռնոյ, 1698։

[2] Հմմտ. Գ. Յովնանեան, Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ, մասն Ա, տետր Բ, Վիէննա, 1897, էջ 274։

Հետագայում լույս են ընծայվել և շատ այլ ժողովածուներ, հիմնականում Մխիթար Գոշի, Ողոմպիանու և Եզովպոսի առակներից[1], ինչպես նաև խառը՝ արձակ և չափածո առակներ, անեկդոտներ, մեծ ու փոքր զանազան մանրապատումներ[2]։ Ժողովածուներում, հանդեսներում ու պարբերականներում տպագրվելուց բացի, որոշ առակներ մեջ են բերվել և հայագետների զանազան ուսումնասիրություններում՝ հարցի քննության առիթով[3]։

Առակի և առակագրքերի մասին կան նաև բանասիրական հետազոտություններ, ընդհանրացումներ ու եզրակացություններ[4]։ Սակայն թե՛ բնագրերի հրատարակման և թե՛ քննության ասպարեզում ամենածանրակշիռ գործը մնում է Ն. Մառի եռահատոր ու ստվարածավալ ժողովածուն[5]։ Առակները հավաքելուց, տեսակավորելուց և գիտա-համեմատական բնագրեր կազմելուց բացի, մեծ հայագետը լայն ու խորն ընդգրկումով լուսաբանել է բազում բանասիրական հարցեր, ցույց է տվել առակների ծագումն ու ակունքները, պարզաբանել առակների և արևելյան ու եվրոպական ժողովուրդների նույնատիպ ստեղծագործությունների փոխադարձ հարաբերակցությունը և այլն։

Առակի մասին կարճ, ընդհանուր, երբե՛մն միայն մատենագիտական խոսք են ասել և հայ գրականության պատմության հեղի-

---

[1] Տե՛ս Առակք Մխիթարայ Գօշի, Առակք Ողոմպիանու (մի գրքով, տարբեր տիպողոսթերթերով), Վենետիկ, 1842. նույնը արտատպված, Վենետիկ, 1854։ Գօշ Մխիթարի, Ողոմպիանու և Եզովպոսի ընտիր առակները, թարգմ. Խորէն Եպս. Միրզաբէգեանց, Բագու, 1878 և ուրիշներ։

[2] Տե՛ս Առակք ծաղկաքաղք, Բերովբէ Քուշներեան, Վենետիկ, 1876. Բնար առակերգու, աշխատասիրեալ Պետրոս արքեպիսկոպոս Վեհապետեան Կոստանդնուպոլսեցի. Վաղարշապատ, 1879. Առակագիրք, ինքնագիր և թարգմանածո առակներ և երգեր ժողովրդական լեզուով գրուած, Աւ. Բահաթրեանց, Շուշի, 1886. Անգիր դպրութիւն և առակք, Վահան Տէր-Մինասեան, Կ. Պոլիս, 1893. Առաքել Նալբանդեան, Առակներ, Թիֆլիզ, 1900—1904 և այլն։

[3] Տե՛ս Ղ. Յովնանեան, Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ, մասն Ա., տետր Բ. Գ. Տէր-Մկրտչեան, Հայկականք, ժԳ—ժԹ, Վաղարշապատ, 1899 և այլն։

[4] Տե՛ս Մ. Աբեղյան, Հայոց միջնադարյան առակներն և սոցիալական հարաբերությունները նրանց մեջ, Երևան, 1935. Ղ. Յովնանեան, Հետազօտութիւնք, մասն Ա, տետր Բ, էջ 273—337. Գ. Տէր-Մկրտչեան, Հայկականք, էջ 3—67. 13—18-րդ դարերի հայ աշխարհիկ գրականություն, կազմեց Մ. Մկրյան, Երևան, 1938 և այլն։

[5] Տե՛ս Ն. Մառ, Ժողովածուք առակաց Վարդանայ, մասն Ա-Գ, Պետերբուրգ, 1894, 1899։

նակները[1]։ Ուշադրության է արժանի Վ. Փափազյանի պատմական-գրականագիտական մոտեցումը և առակախոսության, Աղվեսագրքերի, Գոշի ու Այգեկցու առակների ճիշտ գնահատությունը[2]։ Սակայն տեսական-գրականագիտական ընդհանրացումներով հարցն ավելի խորն է քննել Մ. Աբեղյանը[3]։ Առակի նրա բնութագրումներն ինչ որ չափով վերաբերում են միջնադարի բարոյա-խրատական գրականության ամբողջ տեսակին, որին անդրադառնում ենք աշխատության համապատասխան հատվածներում։

Առակների ուսումնասիրությունը շարունակվում է և այժմ։ Այդ բնագավառում եղած պակասը լրացնող ներդրումներ են Մխիթար Գոշի և Վարդան Այգեկցու առակների ժողովածուները[4]։

Միջնադարյան արձակ գրականության կարևոր բաժիններից է և հեքիաթը։ Այս ժանրի վրա ավելի մեծ ուշադրություն է դարձվել ոչ այնքան ուսումնասիրության, որքան հավաքման ու հրատարակման առումով։

Հանդեսներում ու պարբերականներում զետեղվելուց զատ նրանք լույս են ընծայվել և առանձին ժողովածուներով։ Սրանց մեջ, ինչպես և պետք էր սպասել, տեղ են գտել նաև առակներ, զրույցներ, ավանդություններ, անեկդոտներ, հանելուկներ, անեծքներ, երգումներ և այլն։ Հայ ժողովրդի ոչ միայն մշակութային, այլև հասարակական-քաղաքական ու տնտեսական կյանքի բազում առանձնահատկություններ իրենց մեջ պարունակող ու իրենց հետ մինչև մեր օրերը հասցնող այս թանկարժեք հուշարձանները կորստից փրկելու գործում, ի թիվս ուրիշների, մեծ ծառայություն

---

[1] Տե՛ս Պատմութիւն հայոց գրականութեան, աշխատասիրեց Ս. Պալասանեան, հատ. Ա. բանաւոր գրականութիւն, Թիֆլիզ, 1865. Ն. Պուռեան, Պատմութիւն հայ մատենագրութեան ի վաղ ժամանակաց մինչև մեր օրերն, Կ. Պոլիս, 1885. Գ. Զարպհանալեան, Հայկական հին դպրութիւն (Դ—ԺԳ դար), Վենետիկ, 1897. Վ. Փափազեան, Պատմութիւն հայոց գրականութեան սկզբից մինչև մեր օրերը, Թիֆլիս, 1910. Ա. Ղամինեան, Հայ գրականութեան պատմութիւն, Ա. մաս, Նոր-Նախիջևան, 1914։

[2] Տե՛ս Վ. Փափազեան, Պատմութիւն, էջ 205—216։

[3] Տե՛ս Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք 2, Երևան, 1946, էջ 1, 153—157, 194, 577, 582—583 և այլն։ Տե՛ս նաև Ազգային վէպ («Մուրճ», 1889, № 11, էջ 1746), Հայ ժողովրդական վէպ («Ազգագրական հանդէս», 1907, հունվար, էջ 13)։

[4] Տե՛ս Մխիթար Գոշ, Առակներ, տեքստը ձեռագրերի համեմատությամբ և ներածությունը էմ. Պիվազյանի, Երևան, 1951. **И. Орбели**, Басни средневековой Армении, М.—Л., 1956, Избранные труды, т. I, М., 1968, էջ 205—385, 420—504։

են մատուցել Գ. Սրվանձտյանը, Հ. Նազարյանը, Տ. Նավասարդյանը, Գ. Խալաթյանը, Ղ. Հովնանյանը, Գ. Տեր-Մկրտչյանը, Ե. Լալայանը, Ս. Հայկունին։ Սրանցից մի քանիսն ունեն նաև արժեքավոր հետազոտություններ[1]։

Ս. Պալասանյանն իր Հայոց գրականության պատմության մեջ փորձ է արել բնութագրելու հեքիաթը, կոչելով այն բանավոր զրույց. «Բանավոր գրականության մեջ երգերից հետո, կամ թե ասել երգերի հետ հավասար ուշադրության արժանի են զրույցները, որոնք երգերի պես կես-առասպելական ու կես-պատմական ավանդությունների վրա հիմնված ու հյուսված են։ ...Զրույցները, կամ այժմյան լեզվով խոսելով հեքիաթները, բերանե բերան անցնելով՝ կերպարանափոխ են լինում, կամաց կամաց իրենց սկզբնական կերպարանքը կորցնում՝ օտար մասներ են ընդունում, և այլ և այլ ժամանակների ու տեղերի նայելով՝ այլ և այլ կերպարանք ու գույն են ստանում»[2]։ Շարունակելով իր միտքը, նա գրում է. Զրույցի մեջ «հենց առաջին խոսքերից երևում է, թե ավելի կեղծիք կա, քան թե պատմական ճշտություն։ Զրույցի ստեղծած աշխարհքը իրական կյանքի հետ շատ քիչ հարաբերություն ունի և այդ հարաբերությունը քանի գնում՝ կորչում է»[3]։

Անշուշտ սխալվում է հայագետը, կարծելով, թե հեքիաթների մեջ պատմողը «գիտությամբ ժամանակի և տարածության բոլոր

---

[1] Տե՛ս Մանանայ, ժողովեաց և ի լոյս էած Գ. Սրուանձտեանց, Կ. Պոլիս, 1876, Համով-հոտով, Թիֆլիս, 1904. Հ. Նազարեանց, Անեկդոտներ, հատ. Ա—Գ, Տփխիս, 1877—1883. Տ. Նաւասարդեան, Հայ ժողովրդական հեքիաթներ, գիրք Ա—Գ, Վաղարշապատ, 1882—1884, Հայ ժողովրդական ավանդութիւններ (հանելուկներ, առածներ, անեծքներ, երդումներ և այլն), Թիֆլիս, 1883, Հայ ժողովրդական հեքիաթներ, գիրք 1—10, Թիֆլիս, 1891—1894—1903. **Г. Халатянц,** Общий очерк армянских сказок, М., 1885. Ղ. Յովնանեան, Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ, մասն Ա. տետր Բ. Գ. Տէր-Մկրտչեան, Հայկականք, ԺԳ. Ե. Լալաեան, Մարգարիտներ հայ բանահիւսութեան, հատ. Ա—Գ, Թիֆլիս—Վաղարշապատ (առանց տարեթվի), Ժողովրդական առակներ, Թիֆլիս, 1903. Ս. Հայկունի, Կենդանական վեպեր, ժողովրդական առակներ, Վաղարշապատ, 1907 (տե՛ս նաև Էմինեան ազգագրական ժողովածու, հատ. Բ, Դ, Զ, Մոսկվա—Վաղարշապատ, 1901, 1902, 1906)։

[2] Հետաքրքիր է սակայն, որ այս ձևակերպումը նա բառացիորեն քաղել է Հ. Գաթրճյանի առասպելական զրույցներին տված բնութագրից։ Տե՛ս Պատմութիւն մատենագրութեան հայոց, գրեց Յ. Գաթրճեան, Վիեննա, 1851, էջ 52. Պատմութիւն հայոց գրականութեան, աշխատասիրեց Ս. Պալասանեան, էջ 175։

[3] Պատմութիւն հայոց գրականութեան, աշխատասիրեց Ս. Պալասանեան, էջ 93։

տանմանները քանդում է», կեղծում և հեքիաթն «իբրև կեղծիք՝ ամենայն տեղ գնում է»[1]։

Թե՛ Գաբրըճյանի և թե՛ Պալասանյանի նշված աշխատությունները (չնայած վերջինիս մեջ եղած որոշ ոչ ճիշտ ձևակերպումներին) պատմականորեն արժեքավոր ուսումնասիրություններ են՝ ժանրերի բնութագրման առումով ևս։ Հեքիաթներից բացի նրանք անդրադարձել են և ուրիշ գրական տեսակների՝ դիցաբանական ու վիպական երգերի, առասպելների, կենդանական վեպերի, առածների, հանելուկների, վիճակախաղի երգերի և այլն[2]։

Բերենք հեքիաթի բնութագրման մի օրինակ ևս։ Գ. Սրվանձտյանը գրում է. «Վեպն ու զրույցը, որ ժողովրդյան բերանով «ճէճեար» է, հորինված կլինի բարոյական խրատու համար. և իբրև դյուցազներգություն՝ քաջաց քաջություն հիշակելու կամ այլոց օրինակ տալու համար»։

«Հեքյաթներու շարադրության մեջ միշտ կարգ մը կա. ուղևորություն հեռավոր և անծանոթ աշխարհները. հրաշալի և ահռելի նկարագրությունք վայրաց և անձանց. դիպվածք. արկածք ի նենգութենե ընկերաց կամ եղբարց, երբեմն ևս ի ծնողաց։

Միրահարականն ամեն հեքյաթի աղն է...»[3]։

Հեքիաթների տպագրման և ուսումնասիրության բնագավառում կարևոր ներդրումներ են կատարվել և վերջին տարիներս։ 1950 թվականից սկսած լույս են ընծայվում ժողովածուներ, որոնց հրատարակությունը շարունակվում է առ այսօր[4]։

Նշենք սակայն, որ հեքիաթների ու առակների ընդհանուր վիճակին այստեղ անդրադարձանք, նկատի ունենալով դրանց բոլոր հրատարակություններում մինչև վերջին տարիներս տեղ գտած զրույցները՝ առանց ժանրի խտրության[5]։ Սակայն զրույցների հետ

---

[1] Տե՛ս Պատմութիւն հայոց դրականութեան, աշխատասիրեց Ս. Պալասանեան. էջ 94։

[2] Տե՛ս Գաբրըճեան, էջ 19 և հտա. Պալասանեան, էջ 92 և հտա.։

[3] Մանանայ, ժողովեաց Գ. Սրուանձտեանց, էջ 149։

[4] Տե՛ս Հայ ժողովրդական հեքիաթներ, կազմեց և խմբագրեց Ա. Ղանալանյան, Երևան, 1950. Հայ ժողովրդական հեքիաթներ, ընդհանուր խմբագրությամբ ակադեմիկոս Հ. Օրբելու, հատ. Ա—Դ, Երևան 1959—1964. մամուլի տակ է Ե. հատորը և այլն։

[5] Հիշենք թեկուզ միայն Մառի ժողովածուն, որտեղ գտնվում են նյութեր և՛ հին ու նոր կտակարաններից, և Հարանց վարքերից ու իմաստասիրաց բանքերից, և արևելյան զրույցներից (Հովասափի ու Բարաղամի և Ալեքսանդր Մակեդոնացու կյանքից), և առածներ ու ասացվածքներ և առասպելներ ու հանելուկներ։

*անշվում են նաև Հարանց վարքերը, Հայելի վարուցը և այլ ժողովածուներ, որոնց մեջ ևս կան բավական թվով բարոյա-խրատական մանրապատումներ*[1]*։ Ուսումնասիրության մեջ անդրադառնում ենք և այս ժողովածուներին։ Պետք է նկատել միայն, որ տարբեր ժողովածուներում ցաք ու ցրիվ տեղ գտած այդ զրույցները քիչ են և ամբողջական որակ չեն կազմում։*

*Հայ միջնադարյան զրույցների հատուկ ժողովածուներ կամ հետազոտություններ չկան։ Դրա պատճառը թերևս մասամբ մանրապատում զանազան ստեղծագործությունների մեջ գոյություն ունեցող ժանրային ընդհանրություններն են և հստակ ու որոշակիորեն չսահմանազատված առանձնահատկությունները։ Առակ ասելով հասկացել են և առած, առածը՝ նաև ասացվածք, զրույցը՝ առակ, հեքիաթ, ասասպել, վեպը՝ զրույց, ասասպել և այլն*[2]*։*

*Խոսելով առակների մասին Ղ. Հովնանյանը թեև չի բացահայտում, բայց նշում է մանրապատում զանազան ժանրերի միջև տարբերության գոյությունը։ Նա գրում է. «Ամեն ազգաց մեջ ժողովրդական գրվածոց գլխավոր և ճոխագույն նյութերեն մին է՝ ամկաց դասը զվարճացնելով կրթելու նպատակավ հորինյալ բարոյական վեպք, որ սովորաբար ի բերան ժողովրդյան պտտելեն և նորանոր կերպարանք ստանալեն ետև՝ ի գիր առնված կըլլան։ Բայց կգտնվին նաև այնպիսիներ, որ առանց այսպիսի շրջանաց՝ պարզապես իբրև բանաստեղծի մի երևակայության ծնունդ երևան կելլեն։— Մեր մատենագրության մեջ ևս առատությամբ իսկ կտեսնվին այս կերպ մանր վեպք, որ թեպետ այլևայլ տեսակք են, և ըստ զանազանության նյութույն՝ զատ զատ անվամբք իրարմե զանազանվելու էին. սակայն առ մեզ սովորական եղած է առհասարակ ամենուն ալ անխտիր* Առակ *կոչումը տալ։ Ուստի և մեր ժողովածուից մեջ նույն ընդհանուր կոչման ներքև խառն կգտնենք բուն Առակներ* (Fables, Apclogues), *իրական և ասասպելյալ վեպեր* Historiettes.

[1] *Տե՛ս* Գիրք Հայելի վարուց, *որ ասի հարանց վարք, Մարսիլիա, 1702.* Գիրք, որ կոչի հարանց վարք, *Կ. Պոլիս, 1720.* Վարք սրբոց հարանց և քաղաքավարութիւնք նոցին, *ըստ կրկին թարգմանութեան նախնեաց, հատ.* Ա. Բ. *Վենետիկ, 1855 և այլն։*

[2] *Տե՛ս* Մ. Էմին, *Վէպք հնոյն Հայաստանի, Մոսկվա, 1850, էջ 6 և հատ.։ Պատմութիւն մատենագրութեան հայոց, գրեց* Յ. Գաթրճեան, *էջ 19 և հատ., 52 և հատ.։ Պատմութիւն հայոց դպրութեան, աշխատասիրեց* Ս. Պալասանեան, *էջ 93 և հատ. 175 և հատ. 208 և այլն։ Մանանայ, ժողովեաց* Գ. Սրուանձտեանց, *էջ 149 և հատ.* **Г. Халатянц,** Армянский эпос в «Истории Армении Моисея Хоренского», часть I, М., 1896, *էջ 42 և ուրիշներ։*

Nouvelles), սրբազան և արտաքին զրույցներ (Legendes) և այլ նմաններ»[1]։

Վ. Փափազյանը, դարձյալ առակների առիթով, հիշում է և զրույցի մասին։ Նա գրում է. «Որ հայերի մեջ, նույնիսկ հեթանոսական դարերում— և գուցե ավելի շատ այդ իսկ դարերում— եղել են առասպելներ, այլաբանական զրույցներ, ասացվածքներ ու առակներ, այդ մասին ապացույցներ կան ժողովրդական բանահյուսության և նույնիսկ մեզ հասած հին գրականության մնացորդների մեջ։

Հայերը, ինչպես և արևելյան շատ ազգեր, սիրել են այլաբանություն, զրույց, սրամիտ ասացվածքներ և մանավանդ առակներ։ Առակավոր խոսակցությունն այդ ժողովրդի սիրած ձևն է եղել, և է այժմ իսկ»[2]։

Զրույցների հնության այս միտքը վկայող հետաքրքիր դատողություններ կան և ձեռագրերում, որոնցից մեկն է հետևյալը.

«Եւ արդ՝ առաջ, քան զգալուստն Քրիստոսի, երևեցան բազում իմաստասէրք ի ժամանակս կռապաշտութեան, որ թէպէտ և կռապաշտք էին, բայց բազում բանս գեղեցիկս և շահաւէտս ի պէտս հոգւոց խօսեցան. և է՛ր զոր առակաւոր ասէին, և էր, զոր հատուկ բանիւ խրատէին». ապա բերվում են օրինակ-զրույցներ[3]։

Քննելով Մովսես Խորենացու Հայոց պատմության մեջ եղած հայ ժողովրդական առասպելները և Խորենացու գործածած վեպ ու զրույց բառերը, Մ. Աբեղյանը ճշտում է դրանց իմաստը. «Զրույց բառը Խորենացու մեջ համանիշ է վեպ բառին և նշանակում է թե՛ բերանացի և թե՛ գրավոր որևէ պատմվածք, պատմություն»[4]։ Բայց երբ խոսքը վերաբերում է ո՛չ թե գրավոր, այլ բանավոր զրույցներին, «Խորենացին միշտ անգիր, հին, վաղնջուց, նախնական բառերով, կամ «յաւանդութենէ հասեալ», «որդի ի հօրէ առնելով յիշատակ»..., «զրուցեն պառաւունք» շրջաբանություններով որոշում է ժողովրդական զրույցը գրավոր զրույցից»[5]։

Անշուշտ մեր հին ու նոր ժամանակների այլ բազմավաստակ գիտնականների պատմա-բանասիրական, հայագիտական որոշ ու-

---

[1] Ղ. Յովնանեան, Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ, մասն Ա. տետր Բ, էջ 274—275։

[2] Վ. Փափազյան, Պատմություն, էջ 205։

[3] Ձեռ. № 7993, 1672 թ., էջ 142ա։

[4] Մանրամասն տե՛ս Մ. Աբեղյան, Հայ ժողովրդական առասպելները Մ. Խորենացու Հայոց պատմության մեջ, Վաղարշապատ, 1899, էջ 16։

[5] Անդ, էջ 18 և հետ.։

*սումնասիրություններ ևս, մասամբ ուղղակի, մասամբ կողմնակիորեն, շոշափում են զրույցների հետ առնչվող հարցեր, որոնց անդրադառնում ենք համապատասխան տեղերում[1]։ Սակայն զրույցներին անմիջականորեն վերաբերող աշխատանք մինչև վերջին տարիները չէր կատարվել։ 1945 թվականին Հայկական ՍՍՀ ԳԱ Մ. Աբեղյանի անվան գրականության ինստիտուտը ձեռնարկեց հայ միջնադարյան գեղարվեստական արձակի հավաքման գործը։ Կազմակերպվեց հատուկ խումբ, պրոֆ. Կ. Մելիք-Օհանջանյանի ղեկավարությամբ, Մաշտոցյան մատենադարանի ձեռագրերից ընտրելու համապատասխան նյութեր։ Աշխատանքները շարունակվեցին մինչև 1948 թվականը։ Ժողոված ու արտագրված արձակ գործերի մեջ կային առակներ, զրույցներ, վարքեր, վկայաբանություններ, պարականոններ, ներբողյաններ, խրատականք և այլն։ Այդ նյութերի հիման վրա էլ 1957 թ. հրատարակվեց «Էջեր հայ միջնադարյան գեղարվեստական արձակից» ընդհանուր վերնագիրը կրող ժողովածուն, Կ. Մելիք-Օհանջանյանի առաջաբանով[2]։ Ժողովածուի մեջ գիտա-համեմատական բնագրերով տեղ գտան ընտրված ոչ բոլոր գրական տեսակները, այլ միայն չորսը՝ առակներ, զրույցներ, խրատականք և պարականոններ[3]։ Սակայն առաջաբանում Կ. Մելիք-Օհանջանյանը մանրապատումներից ու պարականոններից բացի ընդհանուր գծերով բնութագրեց նաև մյուս ժանրերը՝ վկայաբանություններ, վարքեր, հրաշապատումներ, տեսիլներ, միստերիաներ, դրամատիկական գործեր և այլն[4]։*

---

[1] *Տե՛ս Ղ.* Ալիշան, *Յուշիկք հայրենեաց Հայոց, հատ. Բ. Վենետիկ, 1870 (էջ 509—510), Սիսուան և Լեւոն մեծագործ, Վենետիկ, 1885 (էջ 226, 542—548), Հայապատում, հատ. Բ, Վենետիկ, 1901 (էջ 348—352, 539, ծանոթ. № 15).* Մ. Օրմանեան, *Ազգապատում, Բեյրութ, 1959 (էջ 1273, 1311).* Բ. Սարգիսեան, *Սրբոյ հօրն Նեւզրի Պոնտացւոյ վարք և մատենագրութիւնք, Վենետիկ, 1907 (էջ ՃԽԲ—ՃԽԵ).* Ն.Ակինեան, *Քաջն Լիպարիտ պատմութեան, տաղերու և զրոյցներու մէջ («Հանդէս ամսօրեայ» 1933, էջ 129—138), Զրոյց Պղնձէ քաղաքի («Հանդէս ամսօրեայ», 1958, № 1—4, էջ 21—48) և ուրիշներ։ Տե՛ս նաև* Վարք սրբոց հարանց և քաղաքավարութիւնք նոցին, *հատ. Ա (Յառաջաբան) և այլն։*

[2] *Տե՛ս* Էջեր հայ միջնադարյան գեղարվեստական արձակից, *խմբագրությամբ և առաջաբանով Կ. Մելիք-Օհանջանյանի (այսուհետև՝ «Էջեր»), Երևան, 1957։ Ակադեմիկոսն բստ ամենայնի ծանոթացել է սույն աշխատության հետ, անելով արժեքավոր դիտողություններ, որի համար հայտնում ենք մեր խորին շնորհակալությունը։*

[3] *Զրույցների մեծ մասի բնագրերը կազմել և ծանոթագրել է սույն աշխատության հեղինակը, որը 1945—1948 թվականներին մասնակցել է այդ ժողովածուի նյութերի հավաքմանը։*

[4] *Մանրամասն տե՛ս «Էջեր», էջ IX—XVII։*

*Ներկա աշխատությունը, որ հայ միջնադարյան զրույցների բանասիրական ու գրականագիտական ուսումնասիրության մի փորձ է, գուցե մասամբ լրացնի մեր բազմաժանր գեղարվեստական արձակի այս շատ կարևոր ու տարածված տեսակներից մեկի հետազոտության, ինչպես նաև հրատարակության պակասը։ Ելնելով փաստական նյութի՝ տպագրված զրույցների սակավությունից, ինչպես ուսումնասիրության մեջ՝ ըստ անհրաժեշտության, այնպես էլ նրան կից՝ որպես հավելված, զետեղվել են զրույցներ, դրանց հետ ընթերցողին անմիջաբար ծանոթացնելու և սեփական եզրակացությունների հնարավորություն ընձեռելու նպատակով[1]։ Պետք է նշել սակայն, որ ուսումնասիրության հիմք են հանդիսացել ո՛չ միայն դրանք, այլև զանազան հրատարակություններից հայտնի և Մաշտոցյան մատենադարանի ձեռագրերից մեր ձեռքով ևս հավաքված շատ նյութեր, որոնցից ո՛չ բոլորն են լրիվ բնագրերով տեղ գտել այստեղ։*

*Աշխատությունն իր մեջ է առնում XIII—XVIII դարերը։ Դրա համար հիմք է հանդիսացել կյանքի և աշխարհհայեցության ա՛յն հեղաշրջումը, որ XII—XIII դարերի գրականությանը տվել է նոր շունչ ու ոգի։ Ստեղծագործությունը, գաղափարական ինչպիսի բովանդակություն էլ ունեցել է, ստացել է նաև դաստիարակչական հատուկ շեշտ ու նպատակ։ Այս հողի վրա ո՛չ միայն վերածնվել, այլև ստեղծվել են բարոյա-խրատական, այլաբանական գրվածքներ, հատկապես առակներ ու զրույցներ։ Գրականության շրջադարձային փոփոխությունը և զրույցների այս նոր բնույթը նկատի ունենալո՛վ են որոշվել սույն աշխատության շրջանակները, կամ ընդգրկումը, որ հասնում է մինչև XVIII դարը։*

---

*[1] Հայ միջնադարյան զրույցների մեծ քանակը և բազում տարբերակները պահանջում են քննական՝ գիտա-համեմատական բնագրերի հրատարակություն, որ կարող է իրականացվել մի քանի հատորով։*

ԳԼՈՒԽ I

# ՀԱՅ ՄԻՋՆԱԴԱՐՅԱՆ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՆՐԱՅԻՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ, ԲՆՈՒՅԹՆ ՈՒ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

*Զրույցը հայ միջնադարյան գեղարվեստական արձակի ամենամատչելի ու ամենանպատակայաց տեսակներից մեկն է։ Այն լայնորեն օգտագործվել է թե՛ բանավոր և թե՛ գրավոր խոսքի մեջ. նրան են դիմել քարոզներ ու ճառեր կարդալիս, հայրենասիրական գաղափարներ ոգեշնչելիս, խրատներ ասելիս, բարոյական այս կամ այն դրույթը առաջադրելիս, հաստատելիս, ուսուցանելիս։ Նրա միջոցով արտացոլել են հասարակական ու սոցիալական կյանքում եղած բազմաթիվ երևույթներ, դրվատել առաքինությունները, խարազանել արատներն ու թերությունները, բացահայտել մարդկային հոգու և մտքի ավայտանքները, հեգնել երկրի աշխարհիկ ու հոգևոր տերերին, արտահայտել իղձեր ու ցանկություններ, երջանիկ կյանքի երազանք։*

* * *

*Իր պատմության ընթացքում զրույցն անցել է զարգացման երկար ճանապարհ՝ աստիճանական փոփոխության ենթարկվելով թե՛ արտաքին՝ ձևական առումով և թե՛ բովանդակությամբ ու նյութակարգումով։ Ծագելով ու առաջանալով տարբեր դարերում, այլև աշխարհի տարբեր ծայրերում, հասարակական-քաղաքական ու սոցիալ-տնտեսական տարբեր հարաբերությունների ընդերքում, զրույցները հասել են շատ մեծ ու լայն ընդգրկման և՛ ժամանակի և՛ տեղի առումով։ Իրենց հիմնական սյուժեներով շատերը եկել են դարերի խորքից, բերելով հնի որոշ տարրեր և, ընդունելով նորը, ամեն անգամ ենթարկվել փոփոխության՝ ըստ այդ նորի պահանջի։ Հինը փոփոխվել է ու նորոգվել, նորը առեղծվել և հնի հետ մեկտեղ*

հարստանել, առաջացնելով մեծ բազմազանություն թե՛ թեմաների ու գաղափարների և թե՛ արտահայտչական միջոցների ու կառուցվածքի։

Առաջացման, զարգացման ու հարստացման այսպիսի խառնարանում զրույցն, անշուշտ, չէր կարող պահպանել մի սկզբնական տեսք, ունենալ քարացած կառուցվածք ու բնույթ. բնական է, չէր կարող ունենալ նաև բոլոր ժամանակների համար իր միասնական, սպառիչ ու մշտապես ընդունելի բնութագիրը։ Թերևս սրանով էլ պետք է բացատրել եվրոպացի և ռուս գիտնականների այն տարակարծությունները, որ գոյություն են ունեցել զրույցի բնորոշման մեջ առհասարակ՝ որպես գրական տեսակ (ժանր)։ Զրույցի բնորոշում անելով, այս դեպքում հիմնականում նկատի ունենք տեսակետներ նրան մոտ այնպիսի ժանրերի մասին, ինչպես իտալական նովելը, հունական διήγημα-ն, λόγος-ը, ռուսական сказ-ը, повесть-ը, երբեմն և сказка-ն, ֆրանսիական dit-ը (dittie), fabliau-ն, lai-ն, farce-ը, գերմանական Sage-ն, Schwank-ը և այլն, թեև ոչ մեկը, ժանրային առումով, մանավանդ ձևով ու կառուցվածքով, նույնությամբ չի համընկնում զրույցին։ Չնայած դրան, թե՛ մյուս ժողովուրդների վերոհիշյալ ժանրերը և թե մեր զրույցը ունեն որոշակի ընդհանուր գծեր։

Նովելը, որ իր բնույթով, թերևս, ամենից ավելի է մոտ զրույցին, չունի, և չէր կարող ունենալ մեկ որոշակի բնութագրում։ Ոմանք կարծում են, թե նրան անպատճառ յուրահատուկ է նորը, անսովորը, սակայն իրականությանը, հնարավորին մո՛տը և ո՛չ երևակայականն ու հեքիաթայինը։ Ուրիշները ժխտում են այդ, որպես ոչ բոլոր նովելներին յուրահատուկ կողմ, նշելով առհասարակ գրականության փոփոխականությունը թե՛ պատմականորեն և թե՛ դասակարգայնորեն։ Այլ մասնագետներ նովելը բնութագրում են որպես զավեշտ (անեկդոտ), դեռևս անծանոթ, հետաքրքիր հրապուրիչ, նշանակալից պատմություն, որ հիմք է տալիս հեգնանքի։ Տարբեր կարծիքի է չորրորդ խումբը, ըստ որի նովելի նյութ կարող է դառնալ որևէ դեպք՝ նշանակալից թե աննշան, բայց անպատճառ պարմանալի ու եզակի, վառ գույներով արտահայտած։

Բոկաչչոյի, Մազուչոյի, Չոսերի, Մարգարիտա Վալուայի և Դեպերյեի գործերը նկատի ունենալով, փոքր ինչ այլ կերպ է բնութագրում նովելը, կամ ավելի շուտ «Նովելների գրքերը» Վ. Կոժինովը։ Դա վիպական ստեղծագործության մի նոր ուղղություն է,— գրում է նա,— որը կարող է բնորոշվել որպես «նովելային վեպ»

(էապես տարբերվող կոմիկականից, հովվերգականից, կուրտուազականից և վիպերգությանը նախորդող այլ տեսակներից)։

Նովելային վեպը սկզբունքորեն ներկայանում է որպես նոր երևույթ ո՛չ միայն, այլև ո՛չ այնքան նրա համար, որ առարկան մարդու անձնական կյանքն է։ Վերջ ի վերջո մյուս գրական տեսակներում, օրինակ, դեռևս անտիկ աշխարհում լայնորեն զարգացած հովվերգական և կոմիկական վիպերգներում ևս հենց առանձին մարդն էր պատկերվում։ Գլխավորն այն է, որ անհատական կյանքը նովելում սկսում է արտահայտվել վիպական հատուկ ձևով, իր մեջ առնելով գեղարվեստականության ամբողջ բազմակողմանիությունը՝ հերոսականից մինչև երգիծականը։ Նովելը, կամ ավելի ճիշտ, նովելների գիրքը հնարավորություն է բացում ստեղծելու վիպական նոր տեսակ...[1]։

Պետք է նկատել, սակայն, որ բոլոր այս բնութագրումներն էլ, ինչ որ չափով, հատկանշական են նովելին։ Հենց միայն Բոկաչչոյի օրինակով կարելի է ցույց տալ, որ իրոք նովելը միատարր ու միատեսակ չէ և ունի տարբեր նկարագիր։ Հեղինակին ու նրա ժամանակակիցներին նվիրած իր հանգամանալից ու ծավալուն ուսումնասիրության մեջ Ալեքսանդր Վեսելովսկին նկատում է, որ անկախ նյութից, անգամ թափարիկ բովանդակությունից, Բոկաչչիոն ունի նովել-զավեշտներ (անեկդոտներ), նովել-եղելություններ, պատմական անձնավորությունների վերագրված նովելներ, զվարճության ու ժամանցի համար գրված, ուսուցական նպատակներով հորինված նովելներ և այլն[2]։

Եթե միայն մի գրողի նովելները այսպես բազմաբնույթ են, ապա ուրեմն որքա՛ն ավելին կարող են լինել տարբեր դարերում, հասարակական-քաղաքական կյանքի տարբեր պայմաններում հորինված, տարբեր հեղինակների մտքի ու գրչի արգասիք հանդիսացող, թեկուզ և միևնույն ժանրին պատկանող ստեղծագործությունները։ Եվ այլ կերպ պատկերացնել չի լինի։ Խոսելով առակների մասին, Էլսբերգը գրում է. Կռիլովի առակներն իրոք արտահայտում էին իր ժամանակի կենցաղը, իսկ այժմ առակը պետք է արտահայտի ներկա ժամանակներին բնութագրական գծեր[3]։

---

[1] Տե՛ս „Теория литературы“ (В. В. Кожинов, Ромэп-эпос нового времени), М., 1964, էջ 101։

[2] Տե՛ս Собрание сочинений А. Н. Весселовского, т. V, Пб, 1915 (Боккаччьо, его среда и сверстники), էջ 474, 525 և հտն։

[3] Տե՛ս Я. Эльсберг, Вопросы теории сатиры, М., 1957, էջ 407—408։

*Այժմ չի կարելի գրել այնպես,— պնդում է Ս. Միխալկովը,— ինչպես սրանից հարյուր տարի առաջ։ Իր լեզվով, թեմայով և նկարագրած կերպարներով առակը պետք է լինի ժամանակակից։ Պետք է փոխվեն առակի ժանրային սահմանները ու հերոսները, չկրկնվեն արդեն արվածները*[1]*։ Եվ այս չի վերաբերում միայն առակին, այլ նշանակում է, թե ամեն մի ժանր իրոք չի կարող չփոփոխվել, չունենալ իր ժամանակի հասարակական միտքն ու կենցաղն արտահայտող բովանդակություն։*

*Հենց այդպես էլ Վեսելովսկին է բնութագրում իտալական միջնադարյան նովելի իմաստը. Ով գոնե մի քիչ կարդացել է միջնադարյան պատմողական և առհասարակ հեքիաթային գործեր, ապա նրանց մեջ անպատճառ կգտնի շատ ծանոթ գծեր, միջազգային թափառիկ ավանդություններ և՝ ավանդական իմաստ չունեցող՝ տեղային կամ պատմական ստեղծագործություններ, արտառոց, սրամիտ և զվարճալի պատմություններ, մի խոսքով՝ «օրվա նորություններ», որը և կարող էր լինել պրովանսյան* novas*-ի, իտալական նովելի հիմնական իմաստը*[2]*։*

*Կոնկրետացնելով իր խոսքը Բոկաչչոյի մասին, նա գրում է. Ինչպես «Դեկամերոն»-ի զրույցների, այնպես էլ հին ֆրանսիական ֆաբլիոների նպատակն էր բավականություն պատճառել, զվարճացնել և ծաղրել, բայց և խորհուրդ տալ ինչի՞ց զգուշանալ և ինչի՞ ձգտել, այսինքն ունենալ դաստիարակչական, ուսուցական նպատակ*[3]*։*

*Սակայն խրատական, նկարագրական, պատմողական և ծաղրական բնույթ կարող էր ունենալ և* dit*-ը*[4] *իսկ* facétiae*-ն ավելի ժամանակ անցկացնելու և տխուր տրամադրությունը ցրելու նպատակ։ Ֆարսը, որով նույնպես զվարճանում էին, հաճախ ունենալով երկիմաստ, հանելուկային բնույթ, ըստ Մոնյեի, նմանվում էր անհեթեթ բարբաջանքի, և այլն*[5]*։*

---

[1] *Տե՛ս* Лит. газета, *1956, № 67, Ս. Միխալկովի խոսքը հայ առակագիրների մասին։ Հմմտ.* Я. Эльсберг, *էջ 407։*

[2] *Տե՛ս* Собрание сочинений А. Н. Веселовского, т. V (Боккаччьо, его среда и сверстники), *էջ 465։*

[3] *Տե՛ս անդ, էջ 447—448։*

[4] *Տե՛ս* „История французской литературы", т. I, М.-Л., 1946, fabliau, lai, *առակ,* dit: *Բառգիրք գերմաներեն-հայերեն, Հ. Ափետեր, Վ. Կոյլավ, Վիեննա, 1889,* Sage *և այլն։*

[5] *Տե՛ս* Филипп Монье, Опыт литературной истории Италии XV века. Кваттраченто, СПб, 1904, *էջ 43։*

Երկար կարելի է ձգել ոչ միայն նովելի, fabliau-ի կամ dit-ի, facétiae-ի ու farce-ի, այլև մյուս ժողովուրդների համապատասխան գրական տեսակների մասին եղած կարծիքների թվարկումը, որը, սակայն, ուղղակիորեն ու անմիջաբար չի օգնի զրույցի բուն էության բացահայտմանը։

Ըստ էության հայկական «զրույց» բառն իր մեջ ունի շատ երանգներ, որոնց թվում և վերոհիշյալները։ Նա կարող է լինել և՛ իրապատում, և՛ առասպելախառն, և՛ խրատական, և՛ նկարագրական ու պատմողական, և՛ զավեշտական՝ սուր ծաղրով կամ երգիծանքով (այդպես են և եգիպտական զրույցները, որ սերտորեն առնչվում են ֆրանսիական fabliau-ների, lai-երի ու farce-երի հետ)։

Զրուցատիպ այս ժանրերի միջև զուգահեռների գոյության արտահայտություն է նաև այն հանգամանքը, որ նույն ստեղծագործությունը տարբեր ժողովուրդների մոտ ընկալվում է ժանրային տարբեր բնութագրումներով։ Այսպես, օրինակ, մեր ձեռագրերում պահպանված «Աղեքսանդր և երկոտասան կին և Արիստոտել» զրույցը իտալական գրականության մեջ երևան է գալիս երգիծական երանգով, ֆրանսիական գրականության մեջ ըմբռնվում է որպես lai կամ որպես fabliau (չափածո)[1], «Բանսարկու աբեղայ, որ զանձն մատնեաց սատանայի» զրույցը՝ որպես դրամատիկ գործ՝ միրակլ (miraculum)[2], «Որ ողորմի աղքատին՝ փոխ տայ Աստուծոյ» սյուժեով բարոյա-խրատական բովանդակություն ունեցող զրույցները՝ որպես fabliau[3] և այլն։ Դրա պատճառն այն է, որ ժանրերի որոշակի սահմանազծում դժվար է կատարել՝ և այդ նույնիսկ մե՛ր օրերում։ Ժամանակակից գրականության մեջ հաճախ նույնացվում են պատմվածքն ու նովելը, պայմանականորեն են զատորոշվում պատմվածքը, վեպն ու վիպակը, որոշ երկեր կոչվում են և՛ պատմվածք և՛ վիպակ, կամ՝ և՛ վիպակ և՛ վեպ։

---

[1] Տե՛ս «Էջեր», էջ 117 (№ 83)։ **Филипп Монье**, Опыт литературной истории Италии, էջ 35. История французской литературы, том I, էջ 142—143.

[2] «Էջեր», էջ 101 (№ 69), История франц. лит., т. I, էջ 164։

[3] Ձեռ. №№ 2226, 1450 թ., էջ 155ա, 3526, 1670 թ., էջ 68ա, 3366, 1691 թ. էջ 239բ։ История франц. лит., выпуск I, средные века, переходное время, IX—XV столетия, СПб, 1887, էջ 142 (ֆրանսիական տարբերակի բովանդակությունը տե՛ս սույն ուսումնասիրության մեջ, էջ 70)։

«ժանրերի միջև, հատկապես այս դեպքում, կայուն սահման անցկացնել ոչ հնարավոր է ոչ էլ անհրաժեշտ»[1], եզրակացնում է գրականագետ Էդ. Ջրբաշյանը։

«Ո՞րն է գրական ժանրերի տարբերակման չափանիշը,—հարց է տալիս նա և պատասխանում.— Այդպիսի միասնական սկզբունք գոյություն չունի, նրանց առանձնացման հիմքը գրեթե ամեն դեպքում յուրահատուկ բնույթ է ստանում։ Դեռևս Գյոթեն շատ ճիշտ կերպով նկատել է. «Մոտիկից քննելով պոեզիայի բոլոր ընդունված բաժինները, գալիս ես այն եզրակացության, որ ժանրերը բնորոշվում են երբեմն արտաքին հատկանիշներով, երբեմն իրենց օբյեկտով, ավելի հազվադեպ՝ իրենց ձևի էական գծերով»[2]։ Եթե ժանրերի «մի քանի ընդհանուր հատկանիշները համեմատաբար կայուն են, դանդաղ են փոխվում, ապա կոնկրետ ժանրային ձևերը գտնվում են անընդհատ զարգացման վիճակում»[3]։

Բացի կյանքի լիարժեք արտացոլման համար այլևս չհամապատասխանող որոշ ժանրերի մահացումից ու նոր ժանրերի առաջացումից, «փոխվում, զարգանում է նաև հենց միևնույն ժանրը, ձեռք է բերում նոր հատկանիշներ, ձգտելով ավելի հաջող արտացոլել կյանքի նոր երևույթները», յուրաքանչյուր պատմական էպոխայում կրելով էական փոփոխություններ[4]։

«Ահա թե ինչու սխալ և ապարդյուն էր դոգմատիկ գրականագիտության (հատկապես կլասիցիստների) ձգտումը՝ հաստատել ժանրերի ինչ-որ «հավերժական» օրենքներ ու կանոններ։ Այդպիսի օրենքներ չկան և չեն կարող լինել»[5]։

Ավելի չծանրանալով հարցի այս կողմի վրա, նկատենք, որ զրույցի և նրա ժանրային առանձնահատկությունների մասին ներքո բերվող բնութագրումներն արվում են՝ ելնելով ձեռքի տակ եղած կոնկրետ նյութերից՝ իրենց պատմականության մեջ։

* *
*

Մինչև XII—XIII դարերը հայ գրականության մեջ գերիշխող տեղ են գրավել պատմական բնույթ կրող զրույցները, որոնք հիմ-

---

[1] Տե՛ս մանրամասն Էդ. Ջրբաշյան, Գրականության տեսություն, Երևան, 1962, էջ 299։

[2] Անդ, էջ 284։

[3] Անդ, էջ 285։

[4] Անդ, էջ 286։

[5] Անդ, էջ 286։

նականում պահպանվել են պատմիչների ստեղծագործություններում։ Նրանք մեծ մասամբ կապվել են պատմական անձանց կամ պատմական իրադարձությունների հետ և ներկայացվել գեղարվեստական խոսքի միջոցով։ Խտացած գույներով նրանք փառաբանել են հերոսական դեմքերն ու դեպքերը, քաջագործություններն ու սխրանքները, առանձին անհատների ֆիզիկական ու հոգևոր արժանիքները, նախատինքի ենթարկել հակառակորդին։ (Այստեղ մեծ դեր են խաղացել ինչպես պատմագիրների անձնական-անհատական մոտեցումն ու աշխարհայեցությունը, այնպես էլ զրույցի ժողովրդական, բանահյուսական պատումը)։ Սակայն այդ զրույցները թերևս ամբողջական գործերի, վիպական երկերի մասն են կազմել և որպես առանձին կտորներ, հատվածաբար մեջ են բերվել պատմիչների երկերում։ Նրանցից մի քանիսը գոյատևել են նույն անձնավորության կամ իրադրության մասին պատմվող զրույցների շարքում և հասել մինչև ուշ միջնադար[1]։

Պատմական բնույթ կրող այդ զրույցներն հիմնականում հետապնդել են գաղափարական-քաղաքական, նպատակներ։ Նրանք ծառայել են ժողովրդի ինքնաճանաչման, ինքնագիտակցության և ազգային արժանապատվության բարձրացման գործին, միշտ վառ ու արթուն են պահել հայրենիքի սերը։ Իրենց բնույթով նրանք ազգային են, ինքնատիպ, որով և որոշակիորեն սահմանազատվում են միջնադարին յուրահատուկ, ընդհանրապես համամարդկային ու քրիստոնեական հարցեր հետապնդող բարոյա-խրատական զրույցներից։

Գաղափարական-քաղաքական խնդիրների ծառայող, պատմական, հայրենասիրական զրույցներ կան և XII—XIII դարերից հետո, որոնց, սակայն, առավելապես յուրահատուկ է հրաշապատումն ու հերոսականը։ Ժամանակի հասարակական-քաղաքական պայմանների թելադրանքով, միջնադարին առհասարակ ավելի բնութագրական է դառնում ուսուցանելու և դաստիարակելու բարոյա-խրատական ոգին՝ լայն առումով, առաջացնելով նույնիսկ գրական նոր տեսակների (ժանրերի) ծագման ու հների վերածնման անհրաժեշտություն. մի անհրաժեշտություն, որ կյանքի ու աշ-

[1] Գրիգոր Դերենիկին, Գագիկ Բ-ին, Հովհան Օձնեցուն վերաբերող և այլ զրույցներ։ Տե՛ս Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ, ի լոյս ածին Գ. Տէր-Մկրտչեան և Մեսրոպ եպիսկոպոս, Էջմիածին, 1921, էջ 39 և հտ., Կիրակոս Գանձակեցի. Պատմութիւն Հայոց, աշխատասիրությամբ Կ. Մելիք-Օհանջանյանի, Երևան, 1961, էջ 67, 79, 100, 102 և այլն։

խարհայեցողության փոփոխության հետևանք էր։ Այս մասին Մանուկ Աբեղյանը գրում է. «Մինչդեռ քրիստոնյա աշխարհի ուրիշ կողմերում դեռ ընդհանրապես իշխում էր թանձր միջնադարը, 11-րդ դարի առաջին կեսին արդեն՝ մեր կյանքի ու մտածողության մեջ մտել էր մի հեղաշրջում, որով կրոնա-ճգնավորական ոգին տակավ առ տակավ տեղի էր տալիս մի ուրիշ ոգու դիմաց, և առաջ էր գալիս ինքնուրույն վերածնություն, որից չէր կարող չազդվել և հոգևորականը»[1]։

Թեև դեռ «շարունակվում էին հին գրական տեսակները՝ մեկնություն, ճառ, հոգևոր երգ և այլն. բայց 11-րդ դարի երկրորդ կեսից մինչև 14-րդ դարի սկզբները ժողովրդական, ավելի ճիշտ աշխարհիկ տարրը հետզհետե մտնում է եկեղեցականի հորինած գրականության մեջ, առաջ են գալիս նոր գրական տեսակներ, նոր լեզվով հորինված», «...և մանավանդ առակը, բարոյախոսությունն ու խրատը, որ շատ համապատասխան էր հոգևորականի կոչմանն իբրև ուսուցչի և խրատողի»[2]։ Հոգևորականներն «սկսում են ժողովել ամեն տեսակի պատմվածքներ, որոնց տալիս են խրատական այլաբանության ձևը»[3]։

Ժամանակի համար արժեք է ստանում ստեղծագործության ո՛չ թե տեսակը, այլ խրատա-ուսուցողական ոգին։ Ուշ միջնադարի գրեթե բոլոր գրական տեսակները՝ արձակ թե չափածո, ստանում են խրատական շունչ։ Ճառ, քարոզ, մեկնություն, քերականություն թե բժշկություն, պատմագիրք թե պատմություն շաղախվում են խրատական պատմություններով։ Վերածնվում են հները, ստեղծվում նորերը։ Անհրաժեշտություն է առաջանում նույնիսկ մտածել դպրոցներում մտցնելու նոր առարկա՝ առասպելավարժություն, ինչպես այդ երևում է Գրիգոր Մագիստրոսի թղթերից[4]։

Պատահական չէ, որ հենց այդ դարերում են կազմվում Մխիթար Գոշի և Վարդան Այգեկցու առակների ժողովածուները։ Վերջինիս մեջ, առանց ժանրային խտրության, տեղ են գտնում ամեն տեսակի պատմություններ, առածներ, զրույցներ, հեքիաթներ, զա-

---

[1] Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք 2, Երևան, 1946, էջ 1։

[2] Անդ, էջ 577, 582։

[3] Անդ, էջ 154։

[4] Տե՛ս Գրիգոր Մագիստրոսի թղթերը, բնագիրն յառաջաբանով և ծանօթութիւններով... ի լոյս ընծայեց Կ. Կոստանեանց, Աղէքսանդրապոլ, 1910, էջ 105։ Հմմտ. Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք 2, էջ 153։

վեշտական երկեր և այլն։ Հետագայում՝ մինչև XVII դարը, դրանց ավելացվում են ուրիշ պատմություններ ու «առակներ զանազան գրավոր և ժողովրդական աղբյուրներից, և առաջ են գալիս առակների բազմաթիվ և բազմազան ժողովածուներ...»[1]։

Նույն փոփոխությունը տեղի է ունենում և չափածոյի բնագավառում։ Բնության ու սիրո միջնադարյան երգերից առաջ զարգանում է խրատական ոտանավորը։ Այդ երևույթը սկիզբ է առնում դեռևս XII դարում՝ Շնորհալու ստեղծագործություններով («Բան ներբողական ի խրատ ոգւոց համայնից ի դիմաց մերոյին տառից տանց յիւրաքանչիւրսն քառից», «Խրատ ուսումնականաց մանկանց ի դիմաց այբուբենից տառից ոտանաւոր տաղիւ չափոյ» և այլն)[2]։ Երկարաշունչ այս քերթվածներից բացի Շնորհալին գրում է նաև մեծ թվով չափածո հանելուկներ, որոնք ևս հետապնդում են խրատական, ուսուցողական նպատակ։ Հետագայում խրատականին են դիմում միջնադարի գրեթե բոլոր տաղերգուները՝ Ֆրիկից մինչև Նաղաշ, մինչև Սայաթ-Նովա։

XII դարից հետո ծնվում է նաև բարոյա-խրատական զրույցի անհրաժեշտությունը, որ լայն ծավալ ու տարածում է ստանում XIII—XIV և հետագա դարերում, բնորոշ դառնալով ողջ միջնադարի համար։ Սկսում են ո՛չ միայն հորինել, այլև մշակել կամ ուղղակի օգտագործել հին բարոյա-խրատական, կենցաղային, այլաբանական գրական տեսակները։ Դրա լավագույն ապացույցներից մեկն է Վարդան Այգեկցու անունով պահպանված առակների ժողովածուն, որի մեջ տեղ են գտել հին ու նոր ծագում ունեցող բազմապիսի խրատական պատմություններ, կամ ինչպես Մանուկ Աբեղյանն է բնութագրում, ո՛չ միայն առակներ, «իսկական մտքով, այլև ամեն տեսակի պատմվածքներ, առասպելներ, հաճախ ընտիր ու կենդանի ոճով, սրամիտ ու համեղ, լուրջ կամ պարզամիտ, հոգեշահ պատմվածքներ, զվարճալիքներ և այլն. միայն բոլորն առակի ձև ստացած, վերջից մի խրատական մասով»[3]։

Միջնադարի այս բազմապիսի զրույցները (որոնց մեջ մեծ տեղ են գրավում քրիստոնեական, այդ թվում և հայ եկեղեցու սուրբ հայրերի վարքին ու կենցաղավարությանը վերաբերող մանրապատումները), անկախ իրենց առաջացման ժամանակից՝ հին կամ նոր ծագումից, ողողում են ձեռագրերը։

---

[1] Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն, գիրք 2, էջ 583։*

[2] *Տե՛ս Ներսեսի Շնորհալւոյ Բանք չափու,* Վենետիկ, *1928, էջ 351, 369։*

[3] Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն, գիրք 2, էջ 583։*

* *
*

Միջնադարյան զրույցներին առհասարակ բնորոշ է հետևյալ կառուցվածքը, թեև ոչ միշտ ամբողջությամբ պարտադիր. մուտք, բուն պատմություն և վերջաբան, կամ եզրահանգում։ Մուտքը հիմնականում արտահայտում է զրույցի մեջբերման նպատակը, կամ աղբյուրը՝ «Որպէս գրեալ է ի պատմութեանն», «Ասէր ոմն ի հարցըն». «Ասի յառակաց», «Պատմեաց մեզ ոմն», «Կին մի պատմեաց զրուցատրութեամբ ի Լոռի, թէ», «Պատմէր զայս մեզ ծեր ոմն» և նման սկզվածքներով։ Սրան հաջորդում է բուն նյութը՝ զրույցը։

Մուտքը լինում է և ընդարձակ։

Հայկական զրույցներից մեկը, նախքան բուն նյութին անցնելը, ունի այսպիսի մի մուտք, որ բերվում է պատմածի իրական, ճշմարիտ լինելն համոզելու մտադրությամբ. «Ի թուականին Հայոց ՈՀԲ (=1223), ասէ, էաք մեք ի սուրբ քաղաքն Երուսաղէմ։ Եւ կայր փակեալ սուրբ եկեղեցին Յակոբայ։ Կայր վարդապետ մի Պաւղոս անուն. և էր աշակերտ մի նորա՝ յոյժ առաքինի։ Եւ ի ժամ առաւաւտուն աղաւթէր նա, և ետես տեսիլ, և լուաւ հրաշս և եկեալ պատմեաց վարդապետին, թէ՝...»[1]։

Վերջաբանում առհասարակ ամփոփվում է բարոյախոսությունը։ Սա գոյատևման ավելի մեծ կայունություն ունի, քան մուտքը։ Վերջինս հաճախ տեղի է տալիս ուղղակի սկսվող խոսքին՝ բուն զրույցին, առանց որևէ նախաբանի. «Այրի կին մի ունէր տղայ մի։ Եւ սկսաւ տղայն գողանալ միրգ և բանջար...» և այլն[2]։

Զրույցներն հիմնականում պատմվում են առաջին դեմքով՝ գործողությանը մասնակցած անձնավորության անունից, կամ նրա բերանով, հաճախ նաև երկախոսություններով։

Արտաքին, ձևական առումով, զրույցն իրենից ներկայացնում է կարճ, փոքրածավալ՝ մի քանի տողից մի քանի էջի հասնող արձակ պատմություն, այս բառի ընդարձակ առումով։ Նրա ընդգրկումը լայն չէ, նյութը փոքր է, կոնկրետ, մի առանցքի շուրջ պտտվող, մի գաղափարով հանգուցված, սակայն խորը, նշանակությունը խիստ դիպուկ, վերջնական ու ավարտուն։ Հաճախ նա արտացոլում է կյանքից վերցրած՝ ընդհանրացրած միայն մի առանձին, փոքրիկ դեպք, գուցե և մի իրողություն, որ համեմատաբար ավելի ցայտուն

[1] Ձեռ. № 2496, 1294 թ., էջ 354բ։

[2] Ձեռ. № 2226, էջ 14բ։

ու նպատակայաց է դարձնում տվյալ՝ արտահայտելիք գաղափարը. հաճախ էլ, նույն այդ նպատակով, կառուցվում է բոլորովին արտառոց դիպվածների կամ մտացածին իրադրությունների վրա[1]։ Այս դեպքում նա ավելի ուժեղ, ցնցող ներգործություն է ունենում և ավելի արագ ու խոր ազդեցություն գործում։

Հանդիպում են նաև շինծու, սարքովի պատմություններ՝ հարմարեցված գաղափարին. այդ պատճառով էլ նրանք իրականությունից հեռու են, մտացածին։ Այսպես, Ավետարանի «Ուր գանձք ձեր են՝ անդ և սիրտք ձեր եղիցին»[2] դարձվածքին տրվել է ուղղակի իմաստ, հորինվել մի զրույց և ներկայացվել որպես եղելություն, կատարված իրողություն։ Իր զանազան տարբերակներով այն բավականաչափ տարածված է ձեռագրերում (հիմնականում «Յաղագս ագահութեան» կամ «Յաղագս արծաթասիրութեան» ասվող քարոզների մեջ)։ Ահա նրա սեղմ բովանդակությունը.

Ագահ ու անհագ մի հարուստ բազում գանձ է դիզում վաշխով ու ստությամբ և ոչ ոքի ողորմություն չի տալիս։ Երբ նա հանկարծամահ է լինում, հերձում են դիակը՝ մահվան պատճառն իմանալու, սակայն սիրտը տեղում չեն գտնում, այլ այն սնդուկում, ուր նրա գանձերն էին պահված[3]։

Ըստ իր նյութի ու նրանից հանվող եզրակացության, զրույցը բաժանվում է երկու մասի՝ գաղափարական, բարոյական, վերացական, որ նպատակային է, և ցուցադրական, փաստական կամ իրական, որից հանվում է նպատակային եզրակացությունը։ Սակայն կարևոր է նկատել, որ իրական՝ փաստական նյութը, աչքի առաջ բացելով իրերի ու երևույթների բնական, սովորական, ժամանակի համար բնութագրական վիճակն ու փոխհարաբերությունը, հաճախ միտքն ուղղակիորեն հանգեցնում է այլ հետևությունների, տանում այլ ուղղությամբ, որ անմիջականորեն չի կապվում քարոզվող բարոյախոսությանը։ Այս առումով զրույցը երկփեղկվում է, բաժանվում երկու գրեթե իրարից անկախ մասերի. փաստականը, իրողությունը մնում է առանձին, չի դառնում նպատակադրած խնդիրը լուծելու, նրա ճշմարտությունը հաստատելու անդավաճան միջոց։ Երկփեղկում է կատարվում անկախ հեղինակի նկատառումից, նույնիսկ հակառակ դրան ու հանուն դրա քարոզվող գաղա-

---

[1] Տե՛ս ձեռ. № 3963, ժէ, էջ 189բ։ Սրա մի շարք տարբերակներ մյուս ձեռագրերում։ «էջեր», էջ 128 և այլն։

[2] Աւետարան ըստ Մատթէոսի, գլ. Զ, տող 21։

[3] Տե՛ս ձեռ. № № 681, ժէ, էջ 72ա, 72ա—72բ., 5623, 1602 թ., էջ 285ա և այլն։

փարախոսության։ Անենք, զրուցագիրը խրատում է լինել առավաժասեր, եկեղեցի գնալ աղոթելու, մեղքերը խոստովանելու, ներումն հայցելու և ո՛չ զրուցելու կամ ննջելու։ Սակայն բերած օրինակից պարզվում է, որ եկեղեցի գնացողը փոխանակ մտածելու մեղքերը քավել, նոր մեղք է գործում՝ չաղոթելով, արարողությունը չլսելով։ Սա՛ է իրերի ռեալ՝ իրական վիճակը, որը և նկատի է ունեցել հեղինակը։

Սրանով պետք է բացատրել այն հանգամանքը, որ երբեմն նույն զրույցից, նույնիսկ նույն ձեռագրում, հանվում է տարբեր եզրակացություն, այսինքն, գաղափարին համարեցվում է զրույցը, կամ զրույցից հանվում ցանկացած բարոյախոսությունը։

Ձեռագրերում Աղեքսանդրի և ադամանդի մասին տարածված է մի զրույց, որի հիմնական մասը հետևյալն է. կշռելիս ակն ամեն ինչից ծանր է, բայց երբ վրան հող կամ հարդ են լցնում, կորցնում է իր զորությունն ու ամենաթեթևը դառնում։ Սրանից հանվում են տարբեր եզրակացություններ. մի դեպքում առհասարակ մարդարարածին վերաբերող, մյուս դեպքում՝ ագահին միայն, երրորդում՝ թագավորներին և այլն։ Այսպես՝ ձեռագրերի մի խումբ գրում է. «Յաշխարհ զինչ ոսկի և արծաթ, ակն և մարգարիտ կայ, թէ զամէն ագահ մարդոյն տան, նա ոչ հերիք կասէ և ոչ կշտում ունի... ապա թէ մեռանի՝ մէկ ափ հողն կու լնու զաչքն»։ Մյուսը՝ «Նշանակ է ակնս այս ազգի մարդկան և առաւել թագաւորաց, զի մինչ կենդանի են, զօրեղ են և գեր ի վերոյ պարծին, քան զամենեսեան, բայց ի ժամ մահուն զամենայն զօրութիւն և զմեծութիւն նոցա ծածկեսցէ հողն և կորուսանէ, որպէս գրէ իմաստունն՝ Ոչ յագեսցի ակն տեսանելով և ոչ լցցի ունկն՝ լսելով»։ Իսկ № 2189 ձեռագրում՝ միանգամից երկու հետևություն. առաջինը՝ միայն թագավորին վերագրվող մասը, իսկ երկրորդը՝ «անգոսնելի է աշխարհս»[1]։ Սակայն բոլոր այս դեպքերում էլ հեղինակի խնդիրը նույնն է՝ խոսում, առավել տպավորիչ ու ներգործուն վիճակների ցուցադրումով հեշտացնել ցանկացած գաղափարի ըմբռնումը, արմատավորել այն։ Սկզբնական շրջանում հենց այդ էլ եղել է զրույցի առաջադրանքը։ Նա երբեք չի եկել որպես գեղարվեստական խոսքի առանձին միջոց, այլ, ինչպես ասվեց, օգտագործվել է միջանկյալ, արձակ խոսքի գրեթե բոլոր տեսակների մեջ՝ պատմություն, կանոն, ճառ, քարոզ, մեկնություն, այլև բժշկություն, տիեզերագի-

---

[1] Տե՛ս «էջեր», էջ 119—120 (№ 85), 120 (№ 86), ձեռ. № 2189, 1394 թ., էջ 197բ։

տություն, փիլիսոփայություն, նույնիսկ քերականություն և այլն[1]։ Նա մեջ է բերվել առաջ քաշված հարցերը հաստատելու, բացատրելու նպատակով միայն։ Այս նկատի ունենալով է, որ եկեղեցու գործիչները ևս իրենց ճառերն ու քարոզները պարզաբանել և աշխուժացրել են համապատասխան զրույցներով։ Երբ խոսվել է ագահության, աղքատասիրության կամ, ասենք, քահանաների վարքի մասին, վերացականորեն արտահայտված գաղափարները մարմնավորվել, շոշափելի են դարձվել որևէ զրույցով, որ տեղն ու տեղը, խոսքն ընդհատելով, մեջ է բերել հեղինակը. «Որպէս այն աղքատ վարձկանն», «Որպէս այն թագաւորն, որ բնաւ ոչ ուրախանայր», կամ հենց ուղղակի՝ «Մարդ մի ագահ էր յարծաթասիրութիւն», «Ոմն մեղաւոր հիւանդացաւ մերձ ի մահ» և նման այլ սկսվածքներով։ Հաճախ էլ զրույցը կառուցվել է քարոզվող նյութի հիմնական բովանդակությունն արտահայտող որևէ դարձվածքի վրա։

Այդ բանը ճշտորեն հասկացել և նկատել են ձեռագրերի գրիչները ևս, հիշատակարանում երբեմն անդրադառնալով դրանց. «Այս քարոզներս ասացեալ է ի Ղուկաս Կեղեցի սուրբ վարդապետէ, դիւրալուր, հեշտիմաց՝ ըստ աշխարհականաց ճանապարհաւ. և յառաջն եդաւ գեղեցիկ պատմութիւնք անծանօթք՝ վասն օրինակի, և հնոց սրբոց վարդապետաց ասացեալ և գաղափարաւ առ մեզ հասեալ»[2]։

Զրույցների հետագա հավելում լինելը երևում է որոշակի։

Նույնն է վկայում № 691 ձեռագրի հիշատակարանը։ Գրիչը հայտնում է, թե իր ընդօրինակած ժողովածուն «Կոչի քարոզգիրք

---

[1] Անդրադառնալով քերականության պատմությանը՝ «տեսցուք նախ, թէ ո՞յք եղեն յարմարիչ քերականութեանս» հատվածում, Հովհաննես Երզնկացի Պլուզը հիշում է և Հոմերոսին, մասամբ շարադրում նրա կենսագրությունը, արժեքավորում նրա քերականական ու գեղեցկախոսական արվեստը, ստեղծագործական հանճարը, ապա՝ նրա մեծությունն ավելի ուժով տպավորելու համար՝ բերում մի զրույց։ Նման այլ զրույցների է դիմում հեղինակը թե ա՛յս գործում և թե ուրիշներում (Հերովդես թագավորի, Դարեհի ու Աղեքսանդր Մակեդոնացու մասին և այլն)։ Տե՛ս «Նախադրութիւն բան. ի ցոյցս պատճառի հաւաքման մեկնութեան քերականի և աղերս խնդրոյ աշխատաւորիս **Յոհաննիսի** [առ] սպասաւորսդ բանիւ։ Ի խնդրոյ տեառն Յակովբա[յ] Հայոց կաթուղիկոսի և վարդապետաց մերոց եղբարց, արարեալ հաւաքումն քերականին մեկնութեան, **Յոհաննիսի Եզնկացո[յ]** ուսումնականի ի դրոց», ձեռ. № 2329, 1291 թ., էջ 25ա, 30ա։

[2] Ձեռ. № 2226, էջ 250բ։ Ըստ Աշխարհացույցի Ղուկաս Կեղեցի վարդապետի գերեզմանը գտնվում է Երզնկայի ս. Սարգսի վանքում։ Տե՛ս ձեռ. № 8727, ժէ, էջ 435ա։

և Հարանց վարք ֆռանկաց և խիստ պիտանի ժողովաց պատմութիւն, ի մէջ սուրբ աստուածային գրքոյ»[1]։

Թերևս սրանով պետք է բացատրել այն երևույթը, որ զրույցների զգալի մասն սկսվում է որևէ կապով՝ քանզի, զի, որպէս, որովհետև և այլն։ Օրինակ. «Քանզի ընթերցեալ լինի...», «Որպէս ոմն զինուոր...», «Զի ասէ Սողոմոն...»[2]։ Սա նշանակում է, որ այդ զրույցները կապված են եղել նախորդ նյութի հետ, շարունակել, բացահայտել կամ հաստատել են նրա միտքը և հետո միայն պոկվել, անջատվել նրանից, պահպանելով նույն սկիզբը՝ քանզի, զի և այլն։

Զրույցն ամենից ավելի օգտագործվել է քարոզների ու ճառերի մեջ։ «Վասն զրկանաց» կարդացվող քարոզում, արծաթասիրությունը խարազանելիս ձեռագրերը բերում են բազում զրույցներ, որոնցից մեկն է հետևյալը.

«Եւ այլ ոմն արծաթասէր արար կաղապարս մեծամեծս զոսկին և զարծաթն, և տարեալ թաղեաց զնա յայգին իւր։ Եւ զայն դիտացեալ ծառայք նորա, գնացեալ առին զկաղապարսն և փախեան։ Եւ նա իմացաւ չետ աւուրց, և գնաց առ իմաստասէրն՝ սկսաւ լալ և պատմել զկորուստն իւր։ Եւ ի ժամն ներքսարտեալ, արկ չուան ի պարանոցն, և կամէր խեղդել՝ ի կսկծոյ և ի սիրոյ արծաթոյն։ Եւ իմաստասէրն թափեաց զնա ի մահուանէն, և առեալ զնա գնաց ի տեղի կաղապարացն։ Եւ նա եցոյց նմա զչափ կաղապարացն ի քարանց տեղոյն։ Եւ իմաստասէրն առ զքարինսն՝ թաղեաց անդ և ասէ առ նա, թէ՝ «Ահա՛, որդեա՛կ իմ, ա՛յս են կաղապարքն քո, զի այն աւելորդ էր և չէր քեզ ի պետք անցանելոց։ Եւ դու զնա ի տուն քո և յանհոգս լէր, զի այսպէս անշահ և անօգուտ էին կաղապարքն քո, որ յոսկւոյ և յարծաթոյ»։ Եւ այսպէս մխիթարեցաւ արծաթասէրն»[3]։

Մի այլ քարոզիչ՝ պահքի մասին խոսելիս, նշում է նրա օգտակարությունը նաև բժշկական առումով՝ մարմնավոր, ֆիզիկական առողջությունը պահպանելու տեսանկյունից։ Բժիշկներն ասում են, գրում է նա, թե «գիշերոյ կերակուրն առաւել սպանանէ զմարդն, քան զսուր պատերազմի» և «որ պարկեշտ է կերակրօք՝ յաւելի կեանս իւր»։ Ապա տեղն ու տեղը կցում է զրույցը.

---

1 Ձեռ. № 691, 1672 թ., էջ 320ա։

2 Տե՛ս ձեռ. № 2189, էջ 197բ, 198ա, 202ա։

3 Ձեռ. № 8356, 1322 թ., էջ 58ա։ Տարբերակը տե՛ս «Грузинская проза», том I, V век—первая половина XIX века, М., 1955, էջ 109.

«Ասեն, թէ չինկան ումն եհաս ի թագաւորութիւն և վասն խորտիկ կերակրոցն՝ ծանրագոյն հիւանդացաւ, զի ոչ էր սովոր։ Եւ բժիշկք ոչ կարէին առողջացուցանել զնա։ Եւ ումն իմաստուն բժիշկ խրատ ետ նմա՝ զառաջին պարկեշտութիւնն ստանալ։ Եւ արար այնպէս և ողջացաւ շուտով»[1]։

Մի ուրիշ ձեռագրում բոլոր զրույցները դրված են որևէ խրատական քարոզից հետո։ «Եկեսցուք ի կարգ քահանայութեան» հատվածում, ուր խոսվում է կրոնավորի վարք ու բարքի, կենցաղավարության մասին, քարոզիչը հիշեցնում է. «Այսպէս ասէ գիրք, թէ քահանայն իւր մէկ հալալէն զատ, ամէն կին իւր հոգևոր դուստր են, դեռ հետ մարմնաւոր դստերն յաւ է պոռնկած, քան զհոգևոր դստերն...», և պատմում է զրույցը՝ վերոհիշյալ բարոյախոսության ճշմարտությունը կամ կանոնը պահելու անհրաժեշտությունը ապացուցելու համար.

«Որպէս գրեալ է, երկիրն Քաջբերունի քահանայ մի կամեցաւ կին առնուլ...» և այլն[2]։

Այս առումով, որպես շատ տիպիկ ու բնութագրական օրինակ, կարելի է բերել Հովհ. Երզնկացու «Արար աստուած զմարդն հոգի և մարմին» սկսվածքն ունեցող խրատական քարոզը։ Այստեղ խոսվում է առողջության, պահքի, պարտաճանաչության, համեստության, համբերության, խելամտության, աղքատասիրության, եղբայրասիրության, մարդասիրության, ծնողասիրության, որդեսիրության, արդար աշխատանքի, արդարադատության և բազում այլ հարցերի մասին, խարազանվում է գինեմոլությունը, ագահությունը, փառասիրությունը, հպարտությունը, պարծենկոտությունը, մեծամտությունը և այլն։ Ձեռագրերից մեկում, որ XVII դարի ընդօրինակություն է, այս քարոզները բաղհյուսվել են համապատասխան զրույցների. քարոզվող ամեն առանձին հարցի կցվել է համապատասխան մեծ տարածում ու ճանաչում գտած մի հարմար զրույց, երբեմն և առակ, որոնք քարոզի օրգանական մասը չեն կազմում և չկան մյուս ընդօրինակություններում։ Դրանցից առավել հայտնիներն են. «Որպէս գրեալ է, թէ երեք ճգնաւոր ի մի յանապատն աղօթէին», «Որպէս գրեալ է, թէ ումն ճգնաւոր եկն առ Մակար ճգնաւորն և ասաց, Հայր, զի՞նչ գործեցից», «Որպէս գրեալ

[1] Ձեռ. № 6974, 1553 թ., էջ 86բ—87ա։ Տե՛ս նաև «էջեր», էջ 13 (№ 16)։

[2] Ձեռ. № 3246, ԺԶ—ԺԷ, էջ 61ա (տե՛ս նաև 82ա)։ Բազմաթիվ նման օրինակներ կան թե՛ վերոհիշյալ և թե այլ ձեռագրերում. տե՛ս №№ 681, 691, 791, 1644 թ., 5623, 7993 և այլն։

է, թէ Աղեքսանդրոս թագաւորն բազում զօրօք ի ճանապարհ երթայր և հանդիպեցաւ աղքատ մի», «Դարձեալ գրեալ է, թէ Նանոս (տարբերակ՝ Երանոս) անուն ճգնաւոր և սուրբ վարդապետ ի Վան քաղաքի ունէր խոճա սանահայր մի», «Որպէս գրեալ է, թէ թագաւոր մի չունէր որդի և ուխտիւք խնդրեաց յաստուծոյ որդի. և ի ծերութեան ժամանակին ետ նմա աստուած որդի», «Որպէս գրեալ է, թէ մէկ պարոնի մի որդի և մեծատան մի որդի հետ սիրելի և եղբայր եղեն և ելեալ յաշխարհիս ի շուրջ եկան», «Որպէս գրեալ է, թէ Եզեկիա թագաւորն հիւանդացաւ մերձ ի մահ», «Որպէս գրեալ է, խարայելացւոց ազգէն կայր մարդ մի մեծատուն և ունէր բազում ոսկի և արծաթ», «Որպէս գրեալ է, թէ մեծատուն խոճայ մի ունէր չափէ ի դուրս ոսկի...», «Որպէս գրեալ է, թէ պազիրկեան մի ունէր փոքրիկ ակն մի», «Ճգնաւոր մի ունէր փոքրիկ տղայ մի աշակերտ», «Մարդ մի շատ բողատով պատ շարէր», «Որպէս գրեալ է, թէ թագաւոր մի նստեալ կայր յաթոռ իւր», «Որպէս գրեալ է, թէ այր և կին մի որդի ունէին և տուին զինքն ի կարդալ» և այլն[1]։

Նման երևույթ տեղի է ունեցել և ավելի վաղ շրջանի ձեռագրերում։ Նշենք դարձյալ նույն հեղինակի՝ Հովհաննես Երզնկացու «Խրատ հասարակաց»-ը, որի 1394 թվի ընդօրինակության մեջ արդեն իսկ տեղ են գտել զրույցներ, թեև ոչ նյութին բաղհյուսված, այլ առանձին շարքերով[2]։

Այս պարագաներում է ահա, որ միջնադարյան արձակ գրականության մեջ զրույցը դառնում է գեղարվեստական խոսքի ամենատարածված ու նախընտրելի տեսակներից մեկը և գործածվում գրեթե առածին ու առակին համահավասար, շատ անգամ խառնըվում նրանց, դառնում առածատիպ կամ առակատիպ, հաճախ նաև հեքիաթանման կամ զավեշտատիպ։

Զրույցը, սակայն, ամենից շատ մոտենում է առակին, որը ևս, ունենալով երևույթներն ու գաղափարներն ավելի ընդգծված, որոշակի, խտացրած գույներով արտահայտելու, հասկանալի ու մատչելի դարձնելու հատկություն, լայնորեն մեջ է բերվում գրավոր թե բանավոր խոսքում, որպես կրոնական, գիտական, կենցաղային

[1] Տե՛ս ձեռ. № 8727, էջ 1ա—56ա։ Թերևս Երզնկացին ի՛նքն է շարակցել զրույցները։

[2] Տե՛ս Նուաստ վարդապետի Յոհանիսի Եզընկացոյ՝ Խրատ հասարակաց քրիստոնէից, քահանայից և ժողովրդոց, ի կանոնական սահմանաց առաքելոց և հայրապետաց սրբոց և վարդապետաց և սուրբ հօրն մերոյ Վարդան վարդապետի, յորմէ յամենայն ժողովեցի և գրեցի. ձեռ. № 2189, էջ 121ա։ Զրույցները տե՛ս էջ 193ա և հտն։ «Խրատ հասարակաց»-ի հեղինակային վերջավորությունը ձեռագրում տարված է զրույցներից հետո՝ էջ 222բ—223ա։

կամ դաստիարակչական որևէ խնդիր բացատրելու, «տեսանելի» ու «շոշափելի» դարձնելու համոզիչ ու խոսուն միջոց։

Խոսքն առակներով ընդմիջարկելու, առակավոր դարձնելու այս հին, և հավանաբար բոլոր ժողովուրդների մոտ ընդունված, երևույթին հետևյալ ճիշտ, խորն ու իմաստալից պատճառաբանությունն է տրվում Ավետարանում։ «Ընդ է՞ր առակօք խօսիս» հարցին Քրիստոս պատասխանում է. Նրա համար եմ առակներով խոսում, որ տեսնելով չեն տեսնում և լսելով չեն լսում ու միտ առնում..., մի գուցե աչքերով տեսնեն, և ականջներով լսեն և սրտով իմանան[1]։

Մխիթար Գոշի առիթով Մ. Աբեղյանն հետևյալ կերպ է պատճառաբանում առակի այս բնույթը.

«Մի անգամ որ հեղինակի համար առակի մեջ էականն է առակի «ճշմարտութիւնը», ուստի և նա առակը մշակում է այնպես, որ կարևոր տեղ բռնի «ճշմարտութիւնը»։ Կնշանակե՝ առակը հորինվում է ոչ իբրև ինքնուրույն բանաստեղծական տեսակ, այլ իբրև մի ուսուցական, դիդակտիկական երկ, որ նպատակ ունի ախորժելի ձևով խրատել և ազդել»[2]։

Թերևս իր հենց այս բնույթով՝ զրույցի հետ ունեցած այսպիսի ընդհանրությամբ, նպատակադրումով ու օգտագործման եղանակով է առակն ամենից շատ ու ամենից առաջ առնչվում զրույցին։ Ըստ էության, առակը ևս մի պատմություն է, զրույցի մի տարատեսակ։ Սակայն, ի տարբերություն զրույցի, նա իր մեջ պարունակում է այլաբանություն, մտքի փոխաբերական իմաստ, որը պահանջում է մեկնություն, բացատրություն, ինչպես որ հենց արվում է առակի վերջում։ Դեռևս 1320 թ. ձեռագրում գտնում ենք առակի հետևյալ տեսական բնութագրումը, որ հավանաբար արել է Վարդան վարդապետը (Արևելցին?, XIII դար).

«Իսկ եթէ զի՞նչ առակ. առակ է՛ բան բառի իբր վարագուրաւ ծածկեալ, այլո իրաց վերերևումն ունել, որպէս առակն Սամսոնի, բայց ըստ պարզ յայտնութեան գրոցս սովորութեան՝ աւրինակ առի, իբր թէ աւրինակաւ յայտ կացուցանել զբանին

---

[1] Տե՛ս Աւետարան ըստ Մատթէոսի, գլ. ԺԳ, տող 13։ Անշուշտ Ավետարանի այս միտքն առավել ևս բնութագրական է վերացական կամ կրոնական գաղափարների բացատրման համար, որ այս կամ այն չափով հասկանալի կարող էին դառնալ միմիայն կյանքից բերված օրինակների միջոցով, ծանոթ, տեսած և լսած, ապրած, մտքով ու հոգով զգացած, հասկանալի երևույթների հետ զուգակցվելու ճանապարհով։

[2] Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն*, գիրք 2, էջ 157։

իմաստս, յորժամ լսողքն անկատարք իցեն, որպէս առնեն կատարեալ վարժապետք ծանրալուր ծանուցմիդ: Այսր աղագաւ և տէրն յաւել առակ նոցա, իբր թէ բաղում բանք առակաւորք մինչև ցայս վայրս խաւսեցեալ էր առ նոսա..., իսկ զայս յաւելուած յառաջասացելոցն արար և կամ թէ չէր պէտք առակ... ուստի և զառակս յաւելուած կոչէ»[1]:

Այստեղ, ինչպես տեսնում ենք, ճշտորեն բնորոշվում է առակի ո՛չ միայն այլաբանական, այլև կիրառության հավելվածային բնույթը:

Մ. Աբեղյանն այսպես է բնութագրում հայ միջնադարյան առակների կազմավորումը.

Սիրելով խրատական այլաբանությունը, XII դարից հետո մեր «հոգևորականները վերջ ի վերջո սկսում են ժողովել ամեն տեսակի պատմվածքներ (ընդգծումը մերն է—Ա. Ս.), որոնց տալիս են խրատական այլաբանության ձև, և որոնք մեր հին դրականության մեջ հայտնի են մի ընդհանուր առակ անվան տակ»[2]:

Այլաբանությունը, եթե չկա բուն բովանդակության մեջ, ապա անպայման տրվում է կցված բարոյախոսությանը, կամ արտահայտվում նրա միջոցով: Այլ կերպ ասած, առակի հիմնական միտքը բացվում է բարոյախոսության մեջ:

«Ասեն բնութեան քննիչքն, թէ կաքաւն այնպէս աղահ է, որ զձուս այլոց հաւու, զորս գտանէ՝ ժողովէ ի բունն իւր: Իսկ յորժամ ելանեն ձագքն և տեսանեն, որ ոչ է ճշմարիտ ծնօղն իւրեանց, թողուն զնա և գնան:

Նոյնպէս շահառուքն ժողովեն զբազում ինչս անիրաւաբար և, քանզի յոչ է արդարապէս հաւաքեցեալ, յամենայն կորնչի, զի ոչինչ բերաք աշխարհ և ոչ տանիլ ինչ կարասցուք»[3]:

Ինչպես որոշակի երևում է, այստեղ կա նաև համեմատության՝ նմանության ցույց տալու երանգ, որ դարձյալ բնորոշ է առակին. ցանկացած միտքը հայտնելու, բացատրելու համար՝ այն դրվում է մի այլ երևույթի հետ կողք-կողքի: Առակ բառն առհասարակ իր մեջ ունի այդ իմաստը: Առակով, կամ առակավոր խոսել, նշանակում է ասածը մի այլ բանի նմանեցնել, համեմատել, ասածին նման մի այլ օրինակ բերել: Մինչդեռ գրույցը հասկացվում է ուղ-

---

[1] Ձեռ. № 1098, 1320, էջ 30բ—31ա: Նյութն անհեղինակ է, ունի կարմրատառ սկիզբ՝ «Այր ոմն ազնուական գնաց յաշխարհ», որ առակի սկզբնատող է, բերված որպես օրինակ:

[2] Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք 2, էջ 154:

[3] «Էջեր», էջ 11 (№ 11):

դակի, հենց այնպես՝ ինչպես ասվում է: Զրույցը չունի առակի այլաբանելու, կամ նմանեցնելու վերոհիշյալ առանձնահատկությունը: Նրա հիմնական միտքը բուն բովանդակության մեջ է, եթե նույնիսկ ունի առանձին բարոյախոսություն: *Վերջինիս մեջ բացված գաղափարն ուղղակիորեն բխում է զրույցի բովանդակությունից՝ ոչ որպես նմանություն կամ այլաբանություն, այլ որպես հետևություն, նույնություն, որ կրկնվում է՝ այլ ձևով, որպես ամփոփում: Այսպես, օրինակ, անդավաճան ընկերասիրություն, հավատարմություն քարոզելու նպատակով պատմվում է. երկու ընկեր միասին շրջագայում են քաղաքից-քաղաք, երկրից երկիր, հանդիպում զանազան արկածների ու խարդավանքների, բայց մնում են սիրով, նվիրված ու հավատարիմ, դրա շնորհիվ, փոխանակ գլխատվելու, մեծ պարգևների են արժանանում: Զրույցից բխող բուն այդ գաղափարն էլ հենց, որպես եզրակացություն, բարոյական խրատ, տրվում է վերջում՝ մեկնության մեջ:*

*«Ցուցանէ առակս[1], թէ որք զընկերան իւրեանց չարաբանեն առաջի օտարաց, ինքեանք ընդ նմին պարսաւին և ի գլխոյն ևս ելանեն, և ի պատուոյն անկանին, ընդ այնմ, թէ՝ Որ զընկերն պարսաւէ՝ և ի՛նքն պարսաւեսցի ի յընկերէն. և որ զընկերն գովէ՝ և ի՛նքն գովի ի յընկերէն, նաև ի յԱստուծոյ առնու պարգևս առատ»[2]:*

*Առակների մեջ, հակառակ զրույցների, անհամեմատ քիչ են մարդկային, իրական կյանքից վերցված օրինակները[3]: Եղածներն, ավելի շուտ մտացածին են՝ հորինված ու հարմարեցված գաղափարին, այնպես, ինչպես այդ ցույց կտրվի ստորև՝ շինծու զրույցների օրինակով: Այսպես, Ավետարանի «եղիցին յետինք առաջինք և առաջինք՝ յետինք» միտքը բացատրելու համար սարքած է տանուտիրոջ և մշակների առակը, ուր օրվա տարբեր ժամերի վարձվածները հավասարապես ստանում են մեկական դահեկան[4]: Եվ վաղ վարձված մշակներն իրավացիորեն բողոքում են: Սակայն միայն այդպե՛ս պետք էր սարքել առակը, որպեսզի հնարավոր լիներ ցույց տալ, թե ինչպես են երկնքի արքայության մեջ բոլորը*

---

[1] *Առակ բառն այստեղ պետք է հասկանալ օրինակ, խոսք, ասած բան, պատմություն, զրույց իմաստներով:*

[2] *«Էշեր», էջ 45—46 (№ 43, ժ տարբերակ):*

[3] *«Սկզբնական շրջանում առակը փաստորեն կենդանական հեքիաթի տարատեսակներից մեկն էր, միայն թե ավելի սեղմ սյուժեով և անպայման այլաբանական նշանակությամբ»: Տե՛ս* Էդ. Ջրբաշյան, *էջ 290:*

[4] *Ավետարան ըստ Մատթէոսի, գլ. Ի, 1:*

համասար դառնում՝ թե՛ վաղ եկող և թե ուշ։ Որոշակի զգացվում է բովանդակության բռնազբոսիկությունը։

«Առակի առասպելն այնպես է հորինվում, կամ փոփոխվում (երբ ուրիշ աղբյուրներից է առնված), որ համարվի բարոյակրթական մասին, կամ գործողությունն այնպես կարճ է պատմվում, որ երբեմն նույնիսկ խրատական մասն ավելի մեծ տեղ է բռնում, քան պատմվածքը...։ Երբեմն էլ պատմվածքն այնքան կարճ է և այնպիսի, որ դժվարությամբ կարելի է եզրակացություն հանել, կամ հանած եզրակացությունը շատ թույլ կապով է կապվում պատմըվածքին, կամ համապատասխան չէ նրան»,— գրում է Աբեղյանը[1]։

Այդ պատճառով էլ կյանքից, իրական երևույթներից առակի համար օրինակ ընտրելիս անհրաժեշտորեն կցվում է այնպիսի մի մեկնություն, ուր եղելությանը (կամ կարծեցյալ եղելությանը) այլաբանություն է վերագրվում, միտքն այլաբանորեն բացատրըվում. սակայն այս դեպքում էլ կեղծ, բռնազբոսիկ է հնչում նաև բարոյախոսությունը։ Երբեմն բավական է լինում նման որևէ առակից հեռացնել այն, որպեսզի ընկալվի որպես զրույց կամ հեքիաթ, և հակառակը՝ բարոյախոսություն կցելով՝ զրույցը վերածվի առակի, դառնա առակատիպ։ Ահա բացարձակապես աշխարհիկ բովանդակություն ունեցող, կյանքով լեցուն, նույնիսկ սրամիտ ու զվարճալի բնույթ կրող մի նկարեն զրույց, որին կցվելով կրոնական բարոյախոսություն, բովանդակությունը ներկայացվել է այլաբանորեն և օգտագործվել որպես առակ.

«Կին մի գնայր ի դրախտ իւր՝ վասն մրգոյ։ Եւ ասէ ցմանուկն իւր.

— Ո՛վ որդեակ, ակն կալ ի վերա և պահէ զմանր ձագերն, մինչ գամ։

Եւ մանուկն յարեաւ, և շարեաց զհաւու ձագերն ընդ միմեանս չւանով, և կապեաց զծայր չւանին յոտս հաւին և ինքն խաղով եղև։ Եւ ահա գա ուրուրն, և վերացոյց զմի ձագուցն՝ և գնաց ի հետ մայրն և ձագերն ամենայն»[2]։

Սա մի կենսալից, գունագեղ պատկեր է, որին կցված, և ծավալով նրանից ոչ պակաս կրոնական, բռնազբոսիկ բարոյախոսությունը հետևյալն է։

«Ցուցանէ առակս, թէ Քրիստոս, յորժամ ի յերկինս համբարձաւ, նա վստահացաւ զժողովուրդն ի թագաւորքն և առաջնորդքն։

---

[1] Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք 2, էջ 157։

[2] Ձեռ. № 691, էջ 141ա։

*Եւ նոքա սրացեցան ի հոգս և ի մեղս աշխարհի և ոչ տարան խնամ հօտին Քրիստոսի։ Եւ սատանայ լցոյց մեղօք առհասարակ զամենեսեան և իջոյց ի դժոխս զթագաւոր, և զիշխան, և զառաջնորդ և ժողովուրդ, զի ամենեքեան խոտորեցաք ի միասին և անպիտանացաք...»*[1]։

*Մեկ ուրիշը ևս.*

*«Ասեն իմաստունքն, թէ՝ էր տանուտէր մի, որ ունէր երեք որդի և ունէր կին մի վատ։ Եւ օր մի կռուաւ ընդ առն և ասէ.*

*— Կարծես թէ երեք որդիքդ ի քենէ՞ են։ Ո՛չ. այլ մին է քո և երկուսն բիճ են։*

*Եւ նա հարցեալ թէ՝ Ո՞րն է իմն։*

*Եւ կինն ոչ ասաց, զի երեքն սնուցէ։*

*Եւ եղև, զի մեռաւ այրն և ասաց տալ զհայրենիսն իւր ժառանգ հարազատ որդւոյն։*

*Եւ վիճէին եղբարքն, ասելով իւրաքանչիւր ոք՝ Ե՛ս եմ ճշմարիտ որդին։*

*Եւ էրթեալ առ դատաւորն։ Եւ նա ասաց հանել զհայրն իւրեանց ի գերեզմանէն և նետաձիգ առնել զնա, ասելով.*

*— Որ հարցէ զհայրն նետիւ, նա՛ է ճշմարիտ որդին։*

*Եւ արարին այնպէս։ Եւ երկու բիճ որդիքն հարին զհայրն։ Եւ հարազատ որդին ո՛չ ձգեց նետ ի հայրն, այլ սաստէր չար որդւոցն՝ ունելով գրնական գութն ի հայրն, և կամէր խոցել նետիւ զեղբարսն։*

*Եւ դատաւորն տեսեալ՝ ետ զհայրենիսն նորա»։*

*Ապա սկսվում է առակախոսի բարոյախոսությունը՝ «Այսպէս և Քրիստոս ունի որդիս...» և այլն*[2]։

*Այլաբանություն ու նմանություն արտահայտելու նպատակով առակները դիմում են կենդանական ու բուսական աշխարհին. նրանց մեջ մուտք ունեն հարուստ ու զանեզ բնության երևույթներն ու սրարածները՝ մեծ թե փոքր, ուժեղ թե թույլ, չար թե բարի· Մինչդեռ* զրույցի նյութը ամբողջովին մարդկային կյանքն է՝ մարդու հոգևոր ու բարոյական աշխարհը, գործն ու կենցաղը: Բնությունը, կենդանական ու բուսական աշխարհը, եթե կան, դառնում են զրույցի բուն բովանդակությունը համալրող, հարստացնող կամ գեղազարդող մասեր:

---

[1] *Ձեռ. № 691, էջ 141ա։ Ձեռագրում խառը կան և՛ զրույցներ և առակներ։*

[2] *Ձեռ. № 2226, էջ 16բ։ Տե՛ս* Ն. Մառ, *Ժողովածուք առակաց Վարդանայ (այսուհետև՝ «Ժողովածու»), մասն Բ, Պետերբուրգ, 1894, էջ 276։*

*Առակը և զրույցը, իրենց ընդհանուր գծերի շնորհիվ, գրեթե հավասարազոր ուժով տեղ են գտնում քարոզներում ու խրատներում, որտեղ հաճախ բացարձակորեն համընկնում է նրանց օգտագործման նպատակը։ «Հարանց վարք»-երում, ի հաստատումն արծարծված հարցի, որպես վկայություն բերվում են զրույցներ, այսինքն՝ օրինակները վերցվում են մարդկային և ոչ բուսական կամ կենդանական կյանքից. սակայն, շնորհիվ այն հանգամանքի, որ զրույցն ու առակը կարող են հեշտությամբ փոխարինել մեկը մյուսին, թվում է, որպես զրույցի տարատեսակ, երբեմն բերվում են և առակներ.*

*«Ասաց ոմն ի հարանցն վասն խոնարհութեան զառակս զայս եթէ՝ Ասացին մայրիք (ծեռ. միրգք) եղեգանց, եթէ զիարդ դուք տկարք և վտիտք գոլով և ոչ փշրիք և խլիք ի շարժմանէ հողմոց ի ձմերայնի, իսկ մեք այսչափ զաւրաւոր և մեծամեծք եմք և խորտակեալ խլիմք արմատով ի բախմանէ հողմոց։ Պատասխանի ետուն եղեգունքն և ասեն. «Մեք ի բախմանէ հողմոց ձմերայնոց խոնարհիմք և ձգիմք աստի և անտի՝ ընդ նոսա դողալով և շրջելով. և այսպէս ո՛չ խորտակիմք, իսկ դուք, զի ընդդէմ կայք ի բախել հողմոց, վասն այնորիկ գան ամենայն չարիք ի վերա ձեր»*[1]։

Զրույցներն զգալիորեն աղերսվում են նաև զվարճալիքների (անեկդոտների) հետ, *որոնք նույնպես հետապնդում են բարոյախրատական, ուսուցողական նպատակ։ Սակայն վերջիններիս ավելի առանձնահատուկ է հնարամտությունն ու երազամտությունը, խուսափուկ ու երկիմաստ հարցադրումը, չասված, բայց ենթատողային արագահաս, հատու ու խորն իմաստը, թաքնված հիմնական մտքի անակնկալ դրսևորումը, մտահղացման սրությունը և այլն։ Այդ պատճառով ավելի հեշտությամբ են զվարճալիքների վերածվում երգիծական զրույցները, որոնք իրենց բնույթով շատ հաճախ սեղմ են, փոքրածավալ, սրամիտ, ծիծաղաշարժ ու խորիմաստ. այսինքն* ինչ որ չափով ունեն զավեշտի բնորոշ գծեր։

*Որպես զվարճալիք է հնչում թագավորի երկու նախանձախնդիր վեզիրների մասին եղած զրույցն՝ իր տարբերակներով։ Նախանձը հասնում է անեկդոտիկ չափերի. հակառակորդներից մեկը կամավ զրկվում է իր մեկ աչքից, միայն թե մյուսը կորցնի երկուսը*[2]։

*Հեքիաթանման զրույցներ համեմատաբար քիչ են պատահում։*

---

[1] *Ձեռ. № 7993, էջ 52ա։*

[2] *Տե՛ս «էջեր», էջ 47 (№ 44) և 245 (ծանոթ.)։*

Դրա պատճառը, թերևս, այն է, որ իր էական առանձնահատկություններով, վերոհիշյալ ժանրերի բաղդատմամբ, հեքիաթն ամենից ավելի է տարբերվում զրույցից։ Նա հիմնականում ծավալուն է, բովանդակությամբ ընդարձակ, սյուժեն ճյուղավորված։ Ցանկալին, հրաշապատումը, երևակայականն ու անիրականը նրա մեջ ավելի շատ էն, քան կոնկրետը, իրականը[1]։

«Հեքիաթներն ունեն իրենց ոճի ու պատկերավորության որոշ հաստատուն գծերը (հատուկ սկիզբ և վերջաբան)։ Գործողության տեղը և ժամանակը հեքիաթում սովորաբար կոնկրետ չեն նշվում» և այլն[2]։

Ձեռագրերում պահպանված է «Աղօթք արծաթասիրի» փոքրիկ զրույցը, որը մշակվել է նաև որպես հեքիաթ։ Զրույցը մի քանի խոսքով բացում է արծաթասերի հոգեբանությունը, ավարտուն դարձնելով գաղափարը։ Հեքիաթն ընդարձակում է բովանդակությունը, որ չի ընթանում միագիծ, այլ ճյուղավորվում է, լայնանում ու երկարում։ Հանդես է գալիս նաև ժլատ ու ագահ թագավորի դուստրը։ Սա ևս ոսկի է դառնում։ Սկսվում է հոր զղջումն ու ծանր հոգեվիճակը, որից ազատվում է ներումն հայցելով (զրույցում նա սովամահ է լինում, որովհետև ագահաբար աստծուց խնդրել էր ինչի որ դիպչի՝ ոսկի դառնա)[3]։

Զրույցների մեջ քիչ է, կամ չկա հեքիաթային կախարդականն ու հրաշապատումը։ Այս առումով հեքիաթի ժանրին ավելի մոտ են արաբական «Հազար ու մեկ գիշեր»-ներում եղած պատմությունները, որոնք, ըստ էության, միակցում են զրույցը և հեքիաթը, կամ զրույց-հեքիաթներ են։ Մինչդեռ մեր ձեռագրերում պահպանված զրույցներին ավելի մոտ են հնդկական և պարսկական հեքիաթ-պատմությունները, ուր զգալի տեղ է գրավում իրական կյանքի արտացոլումը (եթե նույնիսկ այն վերաբերում է կենդանական աշխարհին)։ Այդ պատճառով էլ մեր զրույցներից շատերը հնդկական ժողովածուներում երևան են գալիս իբրև հեքիաթներ[4]։

---

[1] Էդ. Ջրբաշյանը իրավացիորեն նկատում է, որ իրապատում հեքիաթներն ավելի նոր ժամանակների արդյունք են։ Տե՛ս Գրականության տեսություն, էջ 289։

[2] Անդ, էջ 289։ Հեքիաթի մասին մանրամասն տե՛ս նաև «Теория литературы» (Роды и жанры литературы), М., 1964, էջ 53—63.

[3] Տե՛ս «Էջեր», էջ 14 (№ 17)։ Թե՛ զրույցը և թե հեքիաթը հիմքում ունեն հին հույների առասպելը Միդաս թագավորի մասին. ինչի որ նա ձեռք էր տալիս, ոսկի էր դառնում։

[4] Տե՛ս „Индийские сказки“, М., 1956, էջ 22, 27, 49, 166, 352 և այլն։

*ժանրային առանձնահատկությունների ոչ բացարձակ սահմանազատմամբ է, որ միջնադարի ձեռագրերում պահպանված նույն զրույցները մի տեղ երևան են գալիս որպես առակ, մի ուրիշում՝ զվարճալիք, երրորդում՝ հեքիաթ։ Այսպես. «Խեր և Շառ» վերնագրով զրույցը, որ իր մեջ ունի հեքիաթային տարրեր*[1]*, Ն. Մառի ժողովածուում զետեղված է որպես առակ*[2]*, իսկ Տ. Նավասարդյանի «Հայ ժողովրդական հեքիաթներ»-ում՝ որպես երկու եղբոր մասին պատմվող հեքիաթ*[3]*։ Մի ուրիշ զրույց («Երկու նախանձախնդիր վեզիրք թագաւորի»), որի մասին արդեն խոսվեց, Մառի ժողովածուում տպագրված է որպես առակ, իսկ Հ. Նազարյանցի «Անեկդոտներ»-ում՝ որպես անեկդոտ*[4]*։*

Լայնացնելով իր սահմանները, զրույցը երբեմն էլ պարագրում է ավելի շատ ժանրեր ու ընդարձակ իմաստ. ճնուց խոսք, պատմություն, ավանդություն, առասպել, վեպ, ճառ, մեկնություն և այլն: *Այսինքն՝ ուրիշ գրական տեսակներ, այդ թվում և պարականոններ, վարքեր ու վկայաբանություններ,ստանում են զրույցի բնույթ, դառնում զրուցատիպ, նույնիսկ կոչվում զրույցներ, բայց յուրաքանչյուրը յուրովի՝ պահպանելով իր առանձնահատկությունները։* Այս դեպքում զրույց բառը հանդես է գալիս որպես ընդհանուր որոշիչ՝ առհասարակ արձակ գրված զանազան ոչ ծավալուն ստեղծագործությունների:

*Այս երևույթն անշուշտ սոսկ հայկական, տեղային արտահայտություն չէ, այլ ընդհանուր։ Օրինակ բերենք թեկուզ միայն հունական λόγος բառի գրական, ժանրային, նույնիսկ ո՛չ բոլոր, իմաստները. զրույց, առակ, ասացվածք, հեքիաթ, առասպել, շինծու պատմություն, պատմություն, ճառ, արձակ խոսք, ջատագովություն և այլն*[5]*։*

*Գրական տեսակների այս մոտիկությամբ, կամ հոգեհարազատությամբ, թերևս, պետք է բացատրել այն հանգամանքը, որ սկզբնական շրջանում և մինչև ուշ միջնադար, նույնիսկ մինչև*

---

[1] *Տե՛ս «էջեր», էջ 36 (№ 39)։*

[2] *Տե՛ս* Ն. Մառ, *ժողովածու, մասն Բ., էջ 313.*

[3] *Տե՛ս* Տ. Նավասարդյան, *Հայ ժողովրդական հեքիաթներ, տասներորդ գիրք, Թիֆլիս, 1903 թ., էջ 15, «Ուրիշի համար ֆոր փորողը ինքը կընկնի մեջը» վերնագրով։*

[4] *Տե՛ս «էջեր», էջ 47 (№ 44),* Մառ, *ժողովածու, մասն Բ, էջ 260,* Հ. Նազարյանց, *Անեկդոտներ, հատ. Բ, Տփխիս, 1877 թ., էջ 67։*

[5] *Տե՛ս «Նոր բառգիրք յունարէն, իտալերէն, հայերէն, տաճկերէն» Վիեննա. 1848, λόγος (էջ 485)։*

XVII դարը, որպես առանձին խումբ, գեղարվեստական մտքի արտահայտության յուրահատուկ եղանակ գիտակցվելով հանդերձ, զրույցը վերջնականապես ու բացարձակորեն չի անջրպետվում գեղարվեստական արձակի մյուս տեսակներից, հիմնականում փոքրածավալ պատմություններից և մանրապատում հեքիաթներից, և որպես այդպիսին՝ ինքնուրույն չի հանդիպում ձեռագրերում։ Սրա բազմաթիվ փայլուն արտահայտությունները կարելի է գտնել առակների, զվարճալիքների ու հեքիաթների մինչև վերջին տարիներս եղած հրատարակությունների մեջ, ուր խառը գտնում ենք և՛ զրույցներ, և՛ բոլորը միատեղ[1]։

Ժանրերի խառը լինելու, կամ ոչ հստակ բաժանման այս նույն երևույթը բնորոշ է և ուրիշ ժողովուրդների, որոնց հեքիաթների ժողովածուներում, ինչպես, օրինակ, եգիպտականում, հնդկականում, ճապոնականում և այլուր, տեղ են գտնում բազմաթիվ զրույցներ, պատմություններ, անեկդոտներ, առակներ։ Իտալերենից հայերեն փոխադրված մեր մի ձեռագրում գտնում ենք այդ բոլորը միատեղ՝ «Յաղագս ծիծաղական պատմութեանց...» ընդհանուր վերնագրի տակ[2]։

Սակայն հետագայում, երբ զրույցն հիմնականում օգտագործվում է ոչ թե միջանկյալ, որպես առաջնային հարցի լրացում կամ պարզաբանում, այլ առանձին, և հենց ի՛նքն է առաջ քաշում ու վեր հանում ցանկացած գաղափարն ու երևույթը, նա դառնում է ինքնուրույն և գիտակցվում որպես գրական անկախ տեսակ։ Ուշ միջնադարում ստեղծված զրույցները ծավալով ու ընդգրկումով ևս մեծանում են և հետզհետե մոտենում պատմության կամ պատմվածքի ժանրին: Այսպիսով զրույցն աստիճանաբար զատվում, տարբերվում է արձակ խոսքի մյուս տեսակներից և, ի վերջո, XVII—XVIII դարերում հանդես է գալիս ամբողջական, առանձին շարքերով, նույնիսկ ժողովածուներով։ Այս ընթացքում է, որ հարանուն փոփոխություն ու զարգացում է տեղի ունենում զրույցների բովանդակության մեջ ևս՝ կրոնականից դեպի աշխարհիկը։

---

[1] Այդպիսի բազմաթիվ օրինակներ կարելի է գտնել նաև «Գիրք աշխարհաց և առասպելաբանութեանց, որ ասի Աղուէսագիրք» ժողովածուում (տե՛ս 1668, 1686 և 1698 թթ. հրատարակությունները), Ն. Մառի ժողովածուում, «Գիրք հայելի վարուց, որ ասի հարանց վարք» ժողովածուի եղած հրատարակություններում, Տ. Նավասարդյանի «Հայ ժողովրդական հեքիաթներում» և այլուր։

[2] Տե՛ս ձեռ. № 1778, 1768 թ., էջ 134ա։

*    *
*

Հայ միջնադարի զրույցները ծագումով միատարր չեն, միևնույն աղբյուրից չեն բխում։ Նրանք հիմնականում ունեն երկու ակունք. տեղային՝ հայկական, և փոխադրական կամ թարգմանական, որ մի զգալի մասով հայացվել կամ տեղայնացվել է։ Ըստ այդ ակունքների մեր զրույցները կարելի է բաժանել երեք խմբի.

Ա. Տեղական կամ բուն հայկական։

Բ. Տեղայնացված կամ ազգայնացված։

Գ. Թարգմանական կամ փոխադրական։

Անշուշտ այսպիսի սահմանազատում դժվար է կատարել բացարձակ ճշտությամբ. մի բան, որ գուցե և առհասարակ անհնար է իրագործել։

Զրույցներում մեծ մասամբ չեն պահպանվել անուններ՝ անձնանուններ, տեղանուններ, մանավանդ հեղինակների անուններ և տարեթվեր. հանգամանքներ, որ էլ ավելի ծանրացնում են ճշգրտելու նրանց ծագումը՝ հայկական կամ թարգմանական բնույթը։

Ինչպես մեր, այնպես էլ մյուս ժողովուրդների զրույցների համար հիմնականում բնութագրական է անհեղինակ լինելը։ Շատ քիչ զրույցներ կան կապված հորինողի անվան հետ, որը սակայն ոչ միշտ կարող է իսկական հեղինակինը լինել։ Ունենալով փոխանցման երկու միջոց՝ բանավոր և գրավոր, զրույցն անցնում է բերնեբերան, ձեռագրից ձեռագիր։ Այդ ճանապարհին նրան սեփականում են նոր դեմքեր՝ վերապատմում իրենց անունով։ Նոր անունը փոխանցվում է հետագա դարերին՝ կապվում տվյալ զրույցի հետ և, ի վերջո, հանդես գալիս որպես հեղինակ[1]։

Պատահում է և հակառակը. այս կամ այն զրույցի պատմողը, խոսքին ուժ ու հեղինակություն տալու նպատակով, այն վերագրում է օտար կամ հայրենի որևէ նշանավոր դեմքի, որով ավելի են կորչում զրույցի իսկական ստեղծողի հետքերը։

Կա և ուրիշ հանգամանք. զրույցի հետ, մանավանդ անհեղինակների, շատ ազատ են վարվում թե՛ պատմողները և թե՛ թարգմանիչներն ու արտագրողները։ Նրանցից յուրաքանչյուրն այս ու այն չափով զրույցը ենթարկում է փոփոխության ըստ իր հայացքների ու ըմբռնումների, մտցնելով անձնական երանգներ, անելով

[1] Այս երևույթը բնորոշ է նաև միջնադարյան չափածո գրականությանը. հայտնի տաղերգուների գործեր անգամ՝ ասվել կամ գրավել են հետագա ստացողների կամ երգիչների անունով, որպես նրանց հեղինակություն։

հավելումներ ու կրճատումներ, մի բան, որ բնորոշ է ո՛չ միայն հայ, այլև միջազգային գրականության առհասարակ։ Շատ հեռանալով իր սկզբնավիճակից, առաջին հեղինակությունից, զրույցը վերջ ի վերջո իրավացիես անգամ զադարում է մի հեղինակի ստեղծագործություն լինելուց։ Այս պարագան ավելի հեշտ նկատելի է փոխադրյալ կամ թարգմանական զրույցներում։ Բերենք «Հարանց վարք»-երից վերցրած միևնույն զրույցի նույն հատվածի երեք տարբեր ընդօրինակությունները.

XVII դարի գրչություն ունեցող № 8727 ձեռագրում կարդում ենք.

«Որպէս գրեալ է, թէ խորայելացւոց ազգէն կայր մարդ մի մեծատուն և ունէր բազում ոսկի և արծաթ, ակն և մարգարիտ անչափ»։

1644 թ. գրված № 791 ձեռագրում այսպէս.

«Արդ՝ այր ումն էր ի Հրէաստանի խորաէլացի և մեծատուն յոյժ. և էին ամենայն ինչք նորա ժողովեալ վաշխիւ, և ստութեամբ, և անիրաւութեամբ և սուտ վկայութեամբ»։

Իսկ № 8076 ձեռագրում վերոհիշյալ սկսվածքը անճանաչելիորեն կրճատված ու իմաստափոխված է.

«Տանուտէր մի կայր յոյժ աղօթասէր»[1].

Մի քանի էջի հասնող զրույցն այստեղ սեղմվել և դարձել է մոտ ութ տող։

Զրույցների այս երեք ընդօրինակություններն ամբողջությամբ՝ առհասարակ անհամեմատելի են։ Երեք տարբերակների մեջ էլ հեղինակային մեծ ներդրումներ ունեն թարգմանիչը, պատմողը կամ գրիչը, որով և կորչում է բուն ստեղծագործողը։

№ 8076 ձեռագրում դուրս են մնացել նաև տեղն ու ժողովուրդը ցույց տվող տվյալները. ուրեմն քննարկվող հարցի համար անհրկբայելի փաստարկներ չեն կարող լինել նաև անձնանուններն ու տեղանունները, որոնք նույնպես և՛ փոփոխվում են և՛ մանավանդ՝ վերանում, ուստի դժվար է նույնիսկ որոշել, թե որտեղի՛ ծնունդ են, կամ ինչ ժողովրդի են պատկանում։

Հիմնականում ընդգրկելով համամարդկային, ընդհանուր թեմաներ՝ ազնվություն, ընկերասիրություն, բարեկամություն, առաքինություն, ողջախոհություն, արդարադատություն և այլն, զրույցներն իրենց բովանդակությամբ ու արծարծած հարցերով ո՛չ միայն անհրաժեշտություն չեն առաջացնում կապվելու որևէ նեղ ու

[1] Տե՛ս ձեռ. №№ 791, էջ 257ա, 8727, էջ 29ա և 8076, ժէ դար, էջ 71բ։

կոնկրետ միջավայրի, տեղի, ժողովրդի կամ ժամանակի հետ, այլև դուրս են գալիս նրանց շրջանակներից։ Բացի այդ, ստեղծման ու հարատևման ընթացքում, թե՛ ժամանակի և թե՛ տարածության չափազանց մեծ ճանապարհ անցնելով, նրանց մի զգալի մասն էլ հենց այդտե՛ղ է կորցնում իր որոշակիությունը, ունեցած կամ ենթադրյալ կոնկրետությունը։ Այսպիսով, զրույցներն առհասարակ, այդ թվում և հա՛յ միջնադարի զրույցները, քիչ բացառությամբ, չե՛ն պահպանում տեղայնությունն ու տարիքը՝ տեղն ու ժամանակը հաստատող վկայություններ։ Պահպանվածներն էլ լրիվ հավաստի չեն։

Հարաբերականորեն (և ոչ բացարձակապես) հեշտ է լուծել զրույցների թարգմանության (կամ փոխադրության) հարցը։ Կան զրույցներ, որ ունեն որևէ կոնկրետ հիշատակություն, զանազան ժողովուրդների, երկրների ու վայրերի կամ թարգմանչի անուններ, բովանդակության յուրահատկություն և այլն։ Օրինակ. «Յերկրին սպանիացւոց էր ոմն երիտասարդ», «Ծերունի իշխան ոմն... ի Փարիզ քաղաքի», «Ի տէրութեան գաղղիացւոց (այսինքն ֆրանսացու) ի Փարիս քաղաքի», «էր երազագէտ մի Կոստանդնուպօլիս», «Ի սահմանս Հնդկաց, ի Քուսկար քաղաքի էր թագաւոր մի», «Հարուն էր-Ռեշիտ խալիֆայն Բաղդատու զոմն կարգեալ էր թագաւոր ի Պասրայ», «ՅԶմիւռին քաղաքին եղև իր մի կարի հիանալի», «Յեփեսոս քաղաքի իմաստուն և փարթամ ծերունի ոմն», «Թագաւոր ոմն Լեհաց» և այլն[1]։ Սրանք բոլորը բնագրա՞յին տեղանուններ են, թե փոփոխված, դժվար է ասել, սակայն որոշակի է, որ հայկական չեն։ Բերված տողերը, բացառությամբ առաջինից և վերջինից, քաղված են միևնույն՝ № 8825 ժողովածուից, որ ըստ գրչի հիշատակության գրվել է «ըստ վիպելոյ մօնսին Ֆրանսէս Փէյսօնելի ֆրանզզաց»[2]: Ժողովածուն կրում է արտագրողի հապճեպության, շտապողականության կնիքը (գրչությունը կատարված է արագ-արագ, երբեմն գրեթե խճողված, հաճախ կրկնվող «և այլն»-երով)։ Ըստ նույն հիշատակության, պետք է ենթադրել, որ ընդօրինակվող ձեռագրում ևս զրույցները քաղվել են տարբեր աղբյուրներից, կամ

---

[1] Տե՛ս ձեռ. № № 681, էջ 77ա. 8825, ԺԹ դար, էջ 32ա. 14բ. 24բ. 10ա, 9ա. 6ա, 35բ. «էջեր», էջ 70 (№ 52)։

[2] Ձեռ. № 8825, էջ 35ա.։ Հնարավոր է, որ ֆրանսերեն (գուցե և անտիպ) այդ ժողովածուի հեղինակը լինի Ch. de Peyssonnel-ը (ծն. Մարսելում, 1700—1757), որ քարտուղար է եղել Պոլսի ֆրանսիական դեսպանատանը, դեսպան՝ Իզմիրում, ճամբորդել է Փոքր Ասիայում, գրել իր հուշերը և տպավորություններ ու նկարագրություններ՝ «Ճամբորդություն արևելքում» վերնագրով։

*գրի են առնվել բանավոր խոսքից, այսինքն՝ կազմողը ի մի է հավաքել՝ վիպել իմացածը՝ տեսածը, լսածն ու կարդացածը։*

*Կան զրույցներ էլ, որ սկսվում են այսպես. «Որպէս և ասէ բան գրոց արտաքին իմաստնոցն», «Եւ դարձեալ գրեալ է յարտաքինսն», «Այլ և միւս ևս խայտառակութիւն պատմեմ ձեզ զազգէն ֆռանկաց, որ ականջով իմով լուեալ եմ ի բուն ֆռանկէ, որ երդմամբ պատմեաց ի Տրապիզոնի, մէջ քառասուն մարդոյ, թէ՝ Գրեալ է ի պատմութիւն կաթողիկոսացն մեր թէ...», «Գրեալ է ի պատմութիւնս աշխարհակալին Աղեքսանդրի», «Այսպէս գրեալ է ի պատմութիւնն Աղեքսանդրի» և այլն*[1]*։*

*Ինչպես երևում է մեջբերումներից, այդ զրույցները հայ իրականության մեջ մուտք են գործել թարգմանաբար՝ և՛ գրավոր և՛ բանավոր։ Հետաքրքիր է մանավանդ երրորդը, որ գրավոր աղբյուրից վերապատմվել է բանավոր, որոշ ժամանակ այդպես հարատևել և ապա նորից անցել գրավորի։ Վերջում զրուցագիրը մեկ անգամ ևս հաստատում է իր ասածը. «Բայց մի՛ ոք կարծեսցէ զայս սուտ, կամ վասն նախանձու գրեալ, զի ի բուն ֆրանկի բերանոյ եմ լսել, որ ոչ հայերէն գիտէր և ոչ փարսի, այլ հոռոմ լեզուով ասաց, որ ինքն էր կարդացել զպատմութիւնն և մեզ պատմեաց աներկբայ և մեք նորա վկայութեամբն գրեցաք...»*[2]*։*

*Դժվար չէ պատկերացնել այն ոլորապտույտ ճանապարհը, որ անցել է զրույցը, մինչև իր ներկա վիճակով հայ ձեռագրի մեջ տեղ գտնելը։*

*Չի բացառված, որ հայկական որոշ զրույցներ ընկնելով շրջապտույտի մեջ, անցել են ուրիշ ժողովուրդների, կորցրել իրենց ծագումնաբանական առանձնահատկությունները և նույն շրջապտույտով էլ վերադարձել օտարացած, ներկայանալով որպես թարգմանություն կամ փոխադրություն։ Դրա աներկբա վկայությունը կարելի է համարել Վարդան Այգեկցու անունով հայտնի առակների գոյությունը XVIII դարի մի գրչագրում՝ որպես թարգմանություն իտալերենից։ Նշենք դրանցից Գայլ և էշ, Գայլն ու գառը և այլն*[3]*։*

[1] *Տե՛ս «էջեր» էջ 14, 75, 120, 121 (№ 17, B և C տարբերակներ, № 55, 86, 88)։*

[2] *Անդ, էջ 76։*

[3] *Տե՛ս ձեռ. № 1778, էջ 139բ (№ 44—45),* Ն. Մառ. *Ժողովածու, մասն Բ, էջ 56, մասն Գ, էջ 101 և այլն։ Այս դրույթը հաստատող մի կարևոր փաստարկ կարելի է համարել նաև Ն. Մառի հիմնավոր եզրակացությունը՝ արաբական Աղվեսագրքի հայերենից թարգմանված լինելու մասին։ Տե՛ս* Ն. Մառ, *Ժողովածու, մասն Ա, Պետերբուրգ, 1899, էջ 47 և հտ.։*

Վերապատմություն լինելուց բացի, շատ զրույցներ հիմնականում քաղված կամ պոկված են միջնադարյան գրականության հայտնի հուշարձաններից՝ «Հարանց վարք»-երից, «Հայելի վարուց»-ից, «Բանք իմաստասիրաց»-ից, «Պատմութիւն եօթն իմաստասիրաց»-ից, «Gesta Romanorum»-ից, Աղեքսանդրի վարքից, «Կալիլա և Դիմնա»-յից և այլ ժողովածուներից, որոնց թարգմանական բնույթն անտարակույս է[1]։ Սակայն, ինչպես արդեն ասացինք, առավելապես մեծ տեղ են գրավում «Հայելի վարուց»-ից, մանավանդ «Հարանց վարք»-երից եկողները, որոնք հաճախ զբաղեցնում են ամբողջ ձեռագրեր[2]։ Սրանք ո՛չ միայն կապվում են քրիստոնեական եկեղեցու հայրերից որևէ մեկի անվան, այս կամ այն վայրի՝ երկրի, քաղաքի, անապատի հետ (Եգիպտոս, Երուսաղեմ, Կիլիկիա, Սկիտե և այլն), այլև ունեն իրենց հայտնի թարգմանիչները, գալիս են լատինական, ասորական, հունական, հաբեշական ու այլ աղբյուրներից և ունեն մի քանի թարգմանություն[3]։

Այս աղբյուրները ևս, ինչպես ցույց են տալիս ուսումնասիրությունները, իրենց հերթին ունեն բանավոր ու գրավոր ակունքներ։ Մի մասն «է՛ որ ի լրոյ և ի տեսանելոյ զվարս աստուածասէր հարանցն ի գիր առեալ, և է՛ որ յառաջնոցն գրուածոց թարգմանաբար յայլ լեզու փոխեալ»[4]։

---

1 «Կալիլա և Դիմնա»-յից, Բարաղամի և Հովասափու պատմությունից, Աղեքսանդր Մակեդոնացու վարքից, «Ֆիզիոլոգ»-ից, Եզոպոսի և Ողոմպիանու առակներից, արևելյան զանազան ժողովածուներից եկամուտ և եվրոպական ծագում ունեցող բարոյա-խրատական ոգեշահ պատմությունների ու առակների մասին, որոնք մեծ թիվ չեն կազմում, տե՛ս Մառ, Ժողովածու, մասն Ա, էջ 246 և հտ. 394 և հտ. 429 և հտ. 511 և հտ. 235—242 և հտ.։

2 Հայկական առակագրքերի մեջ «Հարանց վարք»-երից և «Հայելի վարուց»-ից եղած փոխառությունների մասին տե՛ս Գ. Տէր-Մկրտչեան. Հայկականք, ԺԳ, էջ 11, 30—51, 54—64 և այլն։ Տե՛ս նաև «էջեր», էջ XIII—XIV։

3 Տե՛ս ձեռ. № 737, 1680 թ., 1711 թ. 1719 թ., էջ 1բ, 2ա, № 2271, 1696 թ., 1723 թ., էջ 215ա, բ. № 2335, 1476 թ., էջ 155բ։ Բարքի, կենցաղավարության, ազնիվ բնավորության վերաբերող խրատական քարոզների առիթով՝ ի վկայություն դրվատվող խնդրի, բերվում են զրույցներ։ Դրանց զգալի մասն անցյալի կամ տվյալ ժամանակի նշանավոր ու ճանաչված անձանց կյանքից վերցված օրինակելի, կամ ի հաստատումն օրինակելիի՝ մերժվող իրադրություններ են՝ ի ցույց ժողովրդի կամ հասարակության լայն շերտերի։ Այս տիպի զրույցները ևս կոչվել են Հարանց վարքեր, որոնք հիմնականում համարվում են թարգմանական և որոնց մուտքն հայ իրականության մեջ կապվում է Գրիգոր Վկայասերի անվան հետ։ Ըստ հիշատակագրության թարգմանությունը կատարվել է Եգիպտոսում։ Այս մասին տե՛ս հաջորդ էջում։

4 Տե՛ս «Վարք սրբոց հարանց և քաղաքավարութիւնք նոցին ըստ կրկին թարգմանութեան նախնեաց», հտ. առաջին, Յառաջաբան, էջ [Բ]։

Թարգմանության մասին եղած հիշատակագրությունները հնարավորություն են տալիս մասամբ ճշտելու նրանցից մի քանիսի ժամանակագրությունը։ № 2335 ձեռագրում, քարոզների մեջ բերվող մի մեծ շարք ունի թարգմանչի հետևյալ հիշեցումը.

«Զնորոգող և զթարգմանիչ սուրբ պատմութեանս զաէր Գրիգոր Հայոց կաթուղիկոս յիշեսջիք ի Քրիստոս։ Եւ թարգմանեցաւ ի թուականութեանս Հայոց ՇԾԹ (—1110) ամի, յաշխարհիս եգիպտացւոց, ի փառս ամենասուրբ երրորդութեանն»[1]։

Սրանք հիմնականում «Հարանց վարք»-երից և «Վարք սրբոց»-ից եկած պատմություններ են, որոնց թարգմանությունը, անշուշտ ո՛չ բոլորի, կապվում է Գրիգոր Բ. Վկայասեր կաթողիկոսի, ինչպես և նրա եղբորորդի Գրիգոր փոքր Վկայասերի անվան հետ[2], նրանց հնությունը հասցնելով մինչև XI դար։ Սակայն մինչ այդ եղել են մի շարք և այլ՝ ավելի հին թարգմանություններ։

IV—V դարերի նշանավոր եկեղեցականների մասին գրված գրույցների մի ստվար խումբ ունի մեծ հնություն։ Բանասերներին այդ ենթադրությանն է հանգեցրել դրանց տարբեր խմբագրությունների ու թարգմանությունների համեմատությունը։ Այլևայլ դարերում հայ մատենագիրները հավաքել են հունական կամ ասորական Հարանց վարքերից իրենց հասած պատմությունները, առանձին-առանձին։ Հետագայում ուրիշները ի մի են բերել դրանք, այլև ընդարձակել։ Հորինվել -կազմվել է «մատեան մի՝ խառնուրդ ի հնոց և ի նորոց, ոչ զհնոցն զամենայն պարունակեալ և ոչ ամենայն պարունակելովքն հասեալ ի չափ և ի քանակ հաւաքմանցն, որ առ օտար ազգս գտանի արդ»[3]։ Սակայն այդ խառնուրդում էլ հնից ոչ բոլորն են եղել թարգմանիչների տրամադրության տակ։ Դրանց մի մասը հետագա դարերի գործ է, այդ թվում և Գրիգոր Վկայասերի թարգմանածները. մյուսները կապվում են VIII դարի՝ Սողոմոն Մաքենոցաց առաջնորդի անվան հետ, մնացածն էլ, դատելով «յոճոյ շարագրածոյն այլոց բազմաց՝ շատ իսկ երևի հնութիւն նորին»[4]։ Հին են համարվում մինչև Վկայասերը եղած թարգմանու-

[1] Ձեռ. № 2335, էջ 155բ։ Այստեղ խոսքը վերաբերում է Գրիգոր փոքր Վկայասերին։

[2] Տե՛ս «Լրումն լիակատար վարուց և վկայաբանութեանց սրբոց», ի Մկրտիչ վարդապետէ Աւգերեան, հատ. ԺԱ, Վենետիկ, 1814, էջ ձզ—ղզ։ Ղ. Ալիշան, Հայապատում, Բ, Վենետիկ, 1901, էջ 348—352, Մ. Օրմանեան, Ազգապատում, Բեյրութ, 1959, էջ 1273, 1311. Հ. Աճառյան, Հայոց անձնանունների բառարան, հատ. Ա, Երևան, 1942, էջ 553—555։

[3] «Վարք սրբոց հարանց և քաղաքավարութիւնք նոցին», Յառաջաբան, էջ[Գ]։

[4] Անդ։

թյունները, որոնց այլևայլ դարերի գործ լինելը հայտնի է, բայց «թէ ե՞րբ և կամ ո՞յք ոմանք» թարգմանեցին, մնում է անորոշ՝ «չունելով ցարդ ի ձեռին հաւաստիս ուստէք»[1]։

Հայտնի է սակայն, որ Վկայասերից հետո ևս տարբեր դարերում այդ զրույցները հավաքել ու ի մի են բերել տարբեր անձինք։ Դրանցից են 1192-ին կատարվածը[2], Ներսես Լամբրոնացու միջնորդությամբ և օգնությամբ, ապա նաև 1317, 1336, 1418, 1449, 1614, 1621 թվականներինը[3]։

Բարսեղ Սարգսյանը կարծում է, թե այդ զրույցներից մի մասի հեղինակը (ոչ թարգմանիչը) Եվագրիոս Պոնտացին է, որով նրանց հնությունը հասնում է մինչև IV—V դարերը։ Նա բերում է բավական համոզիչ կռվաններ, նշելով մանավանդ՝ ա. Եվագրի վարքի հեղինակ Պալլադիոսի վկայությունն այդ մասին, բ. Հին «Հարանց վարք»-երի մեջ Եվագրին վերագրված պատմությունները, գ. Նրա անունով մեզ հասած հայերեն վավերական գործերում հանդիպող բազմաթիվ անանուն և հոգետես ճգնավորների համառոտ մանրավեպերը, դ. Դրանց գրության ոճն ու հեղինակի ստեղծական եղանակը[4]։

Զրույցների հնությունը հաստատող այդ աղբյուրներից մեկը վկայակոչում է և Կ. Մելիք-Օհանջանյանը։ Նա գրում է.

«Մանրապատումը «Հայելուց» շատ առաջ բավականաչափ տարածված է եղել մեր գրականության մեջ։ Դարեր առաջ հայերեն թարգմանված են եղել մի շարք ժողովածուներ, որոնց մեջ առկա են քրիստոնեական իմացաբանությամբ համեմված կրոնաբարոյագիտական-խրատական բազմաթիվ պատմվածքներ, զրույցներ, «Խրատք ոգեշահք», որոնց հորինվածքը, սյուժետային կառուցվածքը և ֆաբուլային անկաշկանդ և կենդանի զարգացումը բավարարել են միջնադարյան հայ ընթերցողի պահանջը՝ մատչելի եղանակով նրան հոգևոր սնունդ տվել, հաճախ էլ զվարճացրել։ Այդպիսի ժողովածուներից հիշատակենք Պալլադիոս Հելենոպոլսեցու (368—430) «Սկիթական (=Եգիպտական) հարանց վարքերը», որոնք հայտնի են գիտության մեջ τὸ Λαυσαϊκόν (Historia Lausaica)

---

1 «Վարք սրբոց հարանց և քաղաքավարութիւնք նոցին», Յառաջաբան, էջ [Գ]։

2 Անդ, էջ [Դ—Ե]։

3 Անդ, էջ [Հ]։

4 Տե՛ս մանրամասն Բ. Սարգիսեան, Սրբոյ հօրն Եւագրի Պոնտացւոյ վարք և մատենագրութիւնք, էջ ճխբ—ճխե։

անունով։ Պալլադիուսը Հովհան Ոսկեբերանի մտերիմ բարեկամներից է և մեր գրականության հիմնադիրների՝ Սահակ Պարթևի և Մեսրոպ Մաշտոցի ժամանակակիցը։ Ամենայն հավանականությամբ, «Լավզաիկոն», ինչպես և վերջինիս հար և նման ասորական հարանց վարքերի ժողովածուները, եթե ոչ ամբողջությամբ, գոնե հատընտիր՝ հինգերորդ դարում թարգմանված են եղել հայերեն, քանի որ դրանց ազդեցությունն սկսած V դարից, նկատելի է մեր հին գրականության, մասնավորապես Փավստոս Բուզանդի «Հայոց պատմության» մեջ։ (Հիշենք այստեղ Փավստոս Բուզանդի պատմությունները Շաղիտայի, Եպիփանի, Մամբրեի, Հովհանի մասին. տե՛ս V, ԻԶ, ԻԷ ԻԸ, ԻԹ, VI-Ը, Թ, ԺԶ և այլն)[1]։ Հետագա դարերում «Հարանց վարքերի» ազդեցությունը հայ վարքագրության վրա շատ ավելի ուժեղացավ։ Հաճախ ընդհանուր վարքերից փոխ էին առնվում ամբողջական միջադեպեր, զրույցներ ու պատմվածքներ և տեղայնացվելով՝ պատմվում մեր մատենագիրների ու վարքագիրների երկերում՝ այս անգամ արդեն ազգային «հայրերի» կամ «սրբերի» մասին»[2]։

Թարգմանության կամ թարգմանչի մասին հիշատակություններ են հանդիպում նաև ուշ միջնադարում, որոնցից է «Յաղագս ծիծաղական պատմութեանց, թարգմանեցեալ յիտալական լեզուէ ի հայ բարբառ, ի Պետրոս վարդապետէ Կոստանդնուպօլսեցւոյ»[3]։

Ժամանակի ու հնության հետ կապված որոշ ճշգրտումներից բացի, նման նշումների շնորհիվ հայտնի է դառնում նաև, թե հայ միջնադարում առհասարակ, ի՞նչ լեզուներից են կատարվել թարգմանություններ։ Դրան մասամբ օգնում են զրույցների մեջ որպես բացատրություն գործածված օտար բառերը ևս, որ սակայն, բացարձակ կովան չեն՝ պարզելու թարգմանության ակունքները։

Զրույցներն հայերենի վերածողները, նկատի ունենալով հասարակության լսող ու կարդացող լայն խավերին, ամեն կերպ աշխատել են հասկանալի դարձնել անըմբռնելի թվացող բառերն ու դարձվածքները։ Դա երևում է մոտեցման ա՛յն եղանակից, որին դիմում են նրանք ո՛չ միայն օտար, այլև հայերեն գրաբար, գրաբարախառն, կամ գրական, սակայն քիչ գործածվող բառերը մատչելի դարձնելու համար, խոսակցական լեզվում գործածվող օտար (պարսկ., արաբ., թուրքերեն) հոմանիշների զուգորդումով։ № 8825 ձեռագիրը, որ ինչպես նշվեց, թարգմանություն է Ֆրան-

---

[1] «էջեր», էջ XIV, ծանոթ.։

[2] Անդ, էջ XIV—XV։

[3] Ձեռ. № 1778, էջ 134ա։

սերենից, ունի այսպիսի բացատրություններ. խրամ, այսինքն՝ արալխ, արագիլ, այսինքն՝ լէկլէկ, ծրար մի, այսինքն՝ չըխըն մի, փամփուշտ, այսինքն՝ ֆիշէնկ. և հակառակը՝ նախ գործածական տարրը և ապա հայերենը. չպան, այսինքն՝ խոց, մէքթէփհաճասի, այսինքն՝ վարժապետ ուսումնարանի մանկանց և այլն։ Եվ այս նույնիսկ այնպիսի զրույցում, որ ֆրանսիացու, կամ ֆրանսիական կյանքն է նկարագրում. Ծերունի ոմն, Փարիզ քաղաքում «էր կառավարիչ արթէլէրէից, այսինքն՝ ճէպխանէից, և էր հանճարահմուտ հրագինական արհեստի, այսինքն՝ թօփից, թուանքից» և այլն[1]։ Հավանաբար թարգմանիչը (գուցե և թարգմանածն ընդօրինակողը) ապրել է այնպիսի վայրում, ուր գործածական է եղել թուրքերենը (Արևմտյան Հայաստան կամ Թուրքիա), և իր ասածը ժողովրդին մատչելի դարձնելու նպատակով դիմել է տեղի բնակչության համար մայրենիից հետո ամենաըմբռնելի լեզվին։ Այս եզրակացությունը հաստատում է մի ուրիշ՝ № 1778 ձեռագիրը, ուր, բացի այն, որ զրույցների սկզբում, ինչպես տեսանք, ուղղակի նշված է, թե թարգմանություն են իտալերենից (և ոչ թուրքերենից), թարգմանիչն էլ կոստանդնուպոլսեցի է, Պետրոս վարդապետ անունով։ Այստեղ ևս հայերեն բառը բացատրվում է թուրքերենով. սապատող, այսինքն՝ ղամբուռ[2]։ Նույնը վկայող մի այլ ձեռագրում գտնում ենք՝

---

[1] Տե՛ս ձեռ. № 8825, էջ 31ա, 6ա, 25բ, 35ա, 25ա, 29ա, 32ա։

[2] Տե՛ս ձեռ. № 1778, էջ 134ա (№ 1)։ Պ. Կոստանդնուպոլսեցին կատարել է և այլ թարգմանություններ, սրբագրել է 1762—63 թթ. Զմյուռնիայում հրատարակված Եզնիկ Կողբացու «Եղծ աղանդոց»-ը (տիրացու Ստեփաննոս Պետրոսյանի հետ մեկտեղ)։

Թարգմանություններից մեկի հիշատակագրության մեջ ասվում է. «Գիրք կոչեցեալ Եօթնփողեան, առ ի զարթուցանել զմեղաւորս ի յապաշխարութիւն և հանգուցանել զսիրտ... թարգմանեալ ի Պետրոս վարդապետէ Կոստանդնուպօլսեցւոյ, ՝ի յիտալական լեզուէ ի հայ բարբառ...։

Ով մայրդ իմ ցանկալի՝ սուրբ եկեղեցի Հայաստանեայց՝ ահա զայս երրորդ գիրքս աշխատութեան, որ ի յիտալական ծովածոցէ արտահանեալ քե՛զ ընծայի թարգմանութեամբ իմով..., յամի տեառն 1767 և մարտի ԻԲ» (Տե՛ս Ք. Կյուլեսերյան, Ցուցակ ձեռագրաց Ղալաթիոյ ազգային Մատենադարանին Հայոց, Անթիլիաս-Լիբանան, 1961, էջ 632)։

Ինչպես պետք է եզրակացնել այս մեջբերումից, Պ. Կոստանդնուպոլսեցու «Եօթնփողեան»-ի թարգմանությունը երրորդ գիրքն է, նվիրված Հայոց եկեղեցուն։ Սա թարգմանված է 1767 թ., մինչդեռ ծիծաղական զրույցները՝ 1768-ին (որ եկեղեցուն չի նվիրված)։ Այս նշանակում է, թե վերջինս նրա չորրորդ գիրքն է՝ թարգմանված իտալերենից հայերեն։

Աճառյանի անձնանունների բառարանում Պ. Կոստանդնուպոլսեցին բոլորովին չի հիշվում։

աշտարակ, այսինքն՝ սարայ. ձկնորսքն, այսինքն՝ պալըխչին. լծվարն, այսինքն՝ արապաճի, հովիւն, այսինքն՝ չոպանն և այլն[1]։

Նշենք, սակայն, որ թարգմանություն անելով՝ նկատի չպետք է ունենալ բառիս ներկա իմաստը։ Թարգմանական համարվող գրույցների խոշոր մասն, ըստ էության, փոխադրություններ են, մանավանդ եթե հաշվի առնելու լինենք նրանց բազմապիսի ու բազմաթիվ պատումները և տարբերակները, որոնց մեջ երբեմն անփոփոխ է մնում միայն հիմնական իմաստը, կամ բարոյախոսական կողմը, երբեմն էլ իմաստը բոլորովին փոխվում է հակառակի։ Այդ է պատճառը, որ շատ հաճախ ձեռագրերում, նույնիսկ միևնույն ժողովածուի (անգամ հրատարակածի) մեջ հանդիպում ենք նույն գրույցի խիստ համառոտ, համառոտ ու ընդարձակ տարբերակների։ Անշուշտ թարգմանության դեպքում այդ լինել չէր կարող[2]։ «Վարք սրբոց հարանց»-ի առաջաբանում, ուր տրվում է այդ ժողովածուի առեղծման պատմությունը, ասվում է հետևյալը.

«...Կայ մեզ ասել երեք ինչ աներկբայ վասն երկաքանչիւր ասացեալ թարգմանութեանցդ. Առաջին, զի թարգմանութիւնն երկրորդ զբաղումս ի հատուածոց որպէս էրն ի հինն՝ նովին բանիւ և կարգաւ օրինակէ, ուրեք առանց իրիք այլայլութեան և ուրեք դոյզըն և սակաւ փոփոխութեամբ. երկրորդ՝ են զորս ի հնոյն առեալ ծայր ի ծայր այլայլէ և ի նորոյ շարադրէ, զամենայն ոճով ասացեալսն հնոյն կամ մթնախօս ինչ ուրեք տեսեալ պարզէ, և բազում անգամ փոխանակ պարզաբանութեանն նուաստացուցեալ ի սպառ զհնոյն վսեմութիւն. և երրորդ՝ չշատացեալ այնու՝ յաւելու ուրեք ուրեք և զայլ հանգամանս, որ չերևի և ոչ ի յոյն բնագիրն և կամ ի լատին թարգմանութեանն. զուցէ այլ և այլ յոյն բնագիրք կային ի ժամանակին ոճով շարագրածոյն և մատենագրութեանն անմիաբանք՝ հաւաքեալք ըստ կամս օրինակողացն, և այնուհի լեալ իցեն այլաձայնութիւնքն և ոչ ամենայնն ի հայ թարգմանչէն։ Եւ այդ առ հնով թարգմանութեամբն իսկ երևի եղեալ, զի են և ի նմա ոչ սակաւ պատմութիւնք և խրատք կրկին եղեալ ընդարձակ և համառօտ.

[1] Տե՛ս ձեռ. № 2939, 1779—1799 թթ., էջ 930։ Տե՛ս նաև Առակք Եզովպոսի թարգմանեալ ի գաղղիական լեզուէ յաւելմամբ ոտանաւոր իմաստից և բարոյական խրատուց ի Հ. Մինաս վարդապետէ Բժշկեան, Վենետիկ, 1827, ուր ֆրանսերենից թարգմանված բազում հայերեն բառեր բացատրված են թուրքերենով. էջ 7, 18, 19, 24, 30, 31 և այլն։

[2] Այդպիսի օրինակներից մեկն է նաև «Գիրք որ կոչի հարանց վարք»-ում (1720 թ. էջ 154, 398) երկու տարբերակով տպագրված «Եթէ քահանայ, որ յօծանելն զկանայս տկարանայ» զրույցը, տե՛ս «Էջերը», էջ 149 (№ 106)։

*երկրորդս թէ չիցէ յառաջնոյն ամփոփեալ, փոխանցեալ է անշուշտ ի հոյն բնագրէ ու հեռեակ գրչի։ Են դարձեալ ի հինն պատմութիւնք, որոց հաւասարն ընդարձակ է յոյժ յերկրորդ թարգմանութեանն, որոց նոյնպէս էին անշուշտ իւրաքանչիւր յոյն բնագիր, թէպէտ և չերևեցաւ նոցին հաւասար հին ընդարձակն»*[1]։

*Միանգամայն պարզ է, թե ինչպիսի ազատությամբ ու անկաշկանդությամբ են կատարվել այդ ընդօրինակությունները ու թարգմանությունները. և դեռ կրոնականները, եկեղեցու ճանաչված ու սրբացված հայրերի կյանքին ու կենցաղավարությանը վերաբերող գործերը։ Դժվար չէ պատկերացնել, ուրեմն, թե որքան ավելի ստեղծագործաբար են վարվել աշխարհիկ բնույթ կրող կամ աշխարհականներին վերաբերող զրույցների հետ, հեռացնելով բուն օրինակից՝ սկզբնաղբյուրից, մանավանդ եթե նրանք ավելի տարածված են եղել ոչ թե գրավոր, այլ բանավոր վիճակով*[2]*։ Վերափոխման, վերամկրտման այս երևույթը բնորոշ է ո՛չ միայն հայ, այլև օտար գրականություններին, որ կերևա ստորև բերվող օրինակներից։*

*Համաշխարհային գրականության մեջ լայն ճանաչում գտած զրույցներից մեկը, որ հայ միջնադարում շատ տարածված է ու գրված «Վասն հպարտութեան» կարդացվող քարոզների մեջ, ունի բազում տարբերակներ՝ լատինական, հնդկական, չեհական, ռուսական և այլն*[3]*։*

*Հայերենում նրա տասնյակի հասնող մեզ ծանոթ ընդօրինակություններից մի քանիսը կապվում են Սողոմոն իմաստունի անվան հետ, մյուսներն ընդհանրացվել են ու վերագրվել առհասարակ ինչ-որ թագավորի։ Սրանք հիմնականում անբաղդատելի բնագրեր են, նույնիսկ շատ տարբեր բովանդակություններով։ Նրանցից մեկի ընդարձակ բարոյախոսության մեջ, զրույցի Հպարտ թագավորի հետ համեմատության մեջ են դրվում Նաբուգոդոնոսորը, ապա և Հայոց Տրդատ թագավորը, որպես հպարտության զահեր, որ հետո դարձի են եկել ու փրկվել*[4]*։*

---

[1] *«Վարք սրբոց հարանց և քաղաքավարութիւնք նոցին», հատ. Ա. Յառաջաբան էջ [Ե—Զ]։*

[2] *Տե՛ս նույն գրքում, էջ 41—42։*

[3] *Տե՛ս* Александр Веселовский, Собранце сочинений, том VIII, выпуск I, 1921, *էջ 66։*

[4] *Տե՛ս «էջեր», էջ 110 և 112 (տողատակ)։*

*Այս առիթով հետաքրքիր է հիշել և մի այլ ավանդություն, կապված Աղեքսանդրի ու Դարեհի հետ։ Վերջինս, որ դավաճանաբար վիրավորվել էր յուրա-*

*Բերենք մի քանի տարբերակ.*

### ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՈՂՈՄՈՆԻ ՎԱՍՆ ՀՊԱՐՏՈՒԹԵԱՆ

*Յամենայն աւուր երկու անգամ կերակուր պատրաստէր աղքատաց և կարօտելոց և ամենայն ժողովրդեանն, և ինքն բարձրագոյն, քան զչափն, տեղ էր սուցեալ, որպէս թէ յօդն ի վերա սեանց բազմագունից, և նստէր ոսկիակազմ հանդերձիւ ի վերա ժողովրդեանն և ի կերակուրսն հայէր, որք բաշխէին։ Այլև գազանս և զթռչունս զային առաջի նորա և ամենայն ազգ կենդանեաց յամենայն աւուր ի հնազանդութիւն։ Անցաւ հպարտութիւն ընդ միտսն, թէ՝ Աստուծո՛յ այսպէս ամենայն ազգ հնազանդ են։*

*Եղև հրեշտակ մի ի կերպս աղքատի և գնաց առ այն, որ զկերակուրն բաշխէ։ Եւ ասէ.*

*—Տո՛ւր ինձ կերակուր։*

*— Այո՛, սակաւ մի համբերէ, մինչև աման պարպի, զի տեսանե՞ս ա՞ա, սակաւ մի համբերէ՛։*

*Ասէ աղքատն.*

*—Շու՛տ արա, անօթի եմ, չե՛մ կարեր համբերել, լի՛ց ի գետինն, որ ուտեմ, թէ չէ մեռայ։*

*Եւ կերակրին եփողն սրտմտեալ էզարկ շերեփովն զապուրն ի գետինն։ Եւ աղքատն անկաւ ի վերա և կերաւ ազահ-ազահ։ Եւ Սողոմոն հայեցեալ ի վար, տեսաւ և ասաց.*

*— Խի՛ստ ազահ է, ո՛չ լռեց, որ որպէս մարդու պէս ուտէր զկերակուրն, այլ որպէս զանասուն ի գետնէն լեզուի։ Այլ մի՛ տաք աղքատաց։*

*Եւ յետ այն կերակրին իջեալ Սողոմոն ի հայեկ դարպասէն և գնաց ի բաղանիքն։ Եւ այն աղքատն յառաջ մտեալ ի բաղանիսն, և եհան զաղքատակերպ հանդերձն և մտաւ ի ներս։ Եւ եկեալ Սողոմոնու։ Եւ կային հազարք հազարաց ի ծառայութիւն, և բիւրք բիւրոց։ Եմուտ ի բաղանիսն։ Եւ կամաւն Աստուծոյ այն աղքատն ի Սողոմոնի կերպն եղև, և Սողոմոն ի յաղքատին։ Եւ ծառայքն թողին զՍողոմոն, և եկին աղքատին ի հնազանդութիւն, զի գիտէին, թէ թագաւորն է։ Լուացին, առօք և փառօք հանին և զթագաւորին ոսկիակազմ պատմուճանն բերին-հագուցին, և զթագն դրին ի գլուխն և առեալ գնացին։ Եւ մնաց Սողոմոն ի բաղանիքն։ Կանչեց թէ՝ «Բաղնապան, ո՞ւր են իմ ճորտերս»։ Ասէ բաղնապանն.*

*— Յիմա՛ր և անզէտ, շո՛ւտ ել, կու երթանք, յիրիկուն է։*

*Եւ ասէ.*

*—Սողոմո՛ն եմ ես, ու՞ր են ծառայքն իմ։*

---

*յիններից ու մահամերձ էր (մինչ Մակեդոնացու գալը), տեսնելով Աղեքսանդրի մեծահոգությունը, որով կոչում էր տեր մնալ իր գահին, ասում է. «Աղեքսանդրէ, մի՛ երբէք գուցէ բարձրացխս հպարտութեամբ ընդվզեալ ի թագաւորական փառսդ, քանզի յորժամ զգործ հանդիտաստուած գործեսցես և յերկինս ձեռօք թուեսցիս հասանել, ընդ միտ ած և գիտեա զհանդերձեալսն, քանզի դիպուած բախտի ո՛չ գիտէ զթագաւոր և ոչ դիշխան...։ Տե՛ս թէ որպիսի՛ ինչ էի աշխարհակալ և այժմ զի՞նչ եղէ թշուառականս՝ տեարս երկրի, որ և ոչ անձինս տէր եղեալ մեաանիմ»։ Տե՛ս Գ. Զարպհանալեան, Հայկական թարգմանութիւնք նախնեաց (Դ—ԺԳ), Վենետիկ, 1889, էջ 710։*

Ասէ բաղնապանն.

— Շատ մի՛ հաչէր, դու ո՞վ ես, որ Սողոմոն լինիս, չո՛ւտ արա, ե՛լ ի բաղնեացդ, որ զդուռն փակեմ։

Յայնժամ իմացաւ Սողոմոն, որ յԱստուծոյ էր հրաշքն։ Ելաւ ի դուրս և գտաւ զաղքատին զհանդերձն միայն։ Ելեալ հագաւ զմաղեղէնն և գնաց ի յայն տեղն, որ զկերակուրն կու պատրաստէր։ Նայեցաւ ի բարձր յաթոռն իւր, որ նստէր այր մի լուսափայլ։ Եւ ելաց դառնապէս և ոչինչ կարաց ասել։ Եւ յորժամ զկերակուրն տուին, գնաց ինքն այլ, որպէս զայն աղքատն, թէ՝ Քաղցեալ եմ։ Ասէ կերակուր եփողն.

—Դուն ի գետնէն ուտելն սովորեալ ես, որպէս զանասուն։ —Ելից զապուրն ի գետինն։ Եւ անկաւ Սողոմոն ի վերա և լեզեց լալով, որպէս զայն աղքատն։ Երբ ի վեր նայեցաւ, հրեշտակն ելեր —գնացեր էր և դատարկ հանդերձն մնացեալ էր։ Յայնժամ ելաւ նստաւ ի թախտն, և թագն եդ ի գլուխն, և ելաց դառնապէս և եթող զհպարտութեան կարծիքն[1]։

## ՎԱՍՆ ՀՊԱՐՏՈՒԹԵԱՆ. ՏԵ՛Ս ԹԷ ՍՈՂՈՄՈՆ ԻՄԱՍՏՈՒՆՆ ԻՆՉ ՔԱՇԵՑ

Սողոմոնի սահման կայր, որ երբ ի մարմնոյ կարիս լինէր և կամ ջրհեղ, նա զիւր թագաւորական մատանին տայր յիւր հրեշտակն, որ պահէր, և դարձեալ առնոյր, նստէր յաթոռն։ Վասն այն պահէր սրբութեամբ, զի տէր թագաւորութեան իւրոյ այն մատանին էր, և այն ալ իմաստութիւն էր, զի առաջինքն սրբութեամբ պատուէին զապիկին և զատփորն. և նա զիւր մատանին պատուէր։ Հանդիպեցաւ ի ջրհեղն գնալ. եւ զմատանին ցդեն և գիտաց, թէ հրեշտակն էր, զի միտքն և խելքն գնաց վասն հպարտութեան և յոլովութեան մեղացն։ Եւ ո՛չ գիտաց, թէ դե՛ւ է, զի հրեշտակապետ էր կերպարանեալ դեն։ Ետ ի նա զմատանին և գնաց։ Եւ դեն եդիր զմատանին ի ձեռսն և նստաւ յաթոռն թագաւորութեան, և տեսանէին որպէս զՍողոմոն։ Եկն Սողոմոն և տեսաւ յաթոռ թագաւորութեան նստեալ ա՛յլ զարհուրելի՝ քան զինքն. ափշեցաւ և ի վայր մնաց։ Ասէ Սողոմոն ի միտս իւր՝ «Թէ ասեմ ե՛ս եմ Սողոմոն, դա դև է, վախեմ թէ չհաւատան, ասեն՝ Թէ դո՛ւ ես Սողոմոն՝ ապա սա՞ ով է. գան ի վերաս և զիս սպանանեն»։ Մարդոյ իրք չասաց, ելաւ ու գնաց, որ մարդ չգիտաց։ Այս է՞ր եղաւ հանց։ Վասն այն, զի ամենայն մարդ գիտասցէ, թէ Աստուծով լինի թագաւորութիւնն, զով պիտի նստուցանէ յաթոռ և զով չպիտի իջուցանէ յաթոռոյ. ընդ այնմ, թէ Տէր աղքատացուցանէ և Տէր մեծացուցէ։ Եւ վասն առաւել հպարտութեան Սողոմոնի արար Աստուած, որ խոնարհի և այլ ո՛չ առնէ զայն անպատեհ բանն։ Գնաց Սողոմոն՝ խեղճ և դառն և ոչ գիտէր, թէ զի՞նչ առնէր։ Հասաւ ի գետեզր մի, եւտես զի ձկնորսք ձուկն որսային։ Եւ մտաւ նոցա մօտն մշակ։ Եւ տային աւուրն հաց մի և ձուկն մի կերակուր նմա։

Քառասուն օր նստաւ դեն յաթոռն Սողոմոնի և արար թագաւորութիւն։ Յետ քառասուն աւուրն տարաւ ձգեց զմատանին ի գետն. և ձկնորսներն կալան զձուկն, որ կլեալ էր զմատանին։ Եւ Աստուծոյ հրամանաւն տուաւ այն ձուկն և հաց մի Սողոմոնի։ Էառ զհացն կերաւ և եբեկ զձուկն, զի ուտիցէ, և գտաւ զմատանին ի փոր ձկանն։ Ուրախացաւ և գոհացաւ զԱստուծոյ, եղև թագաւոր և նստաւ յաթոռն իւր և արար զիւր թագաւորութիւնն հաստատուն[2]։

[1] Ձեռ. № 6951, 1762 թ., էջ 134ա։

[2] Ձեռ. № 4618, ժէ, էջ 132բ։

## ՀՊԱՐՏ ԹԱԳԱՒՈՐ

Թագաւորն մի յաթոռին նստեալ էր. տեսաւ որ զինչ խօսք ի բերնէն կելանէր, թէզով ծառայքն կատարէին։ Յայնժամ թագաւորն մտօք հպարտեցաւ, թէ՝ «Ես Աստուծոյ նման եմ, որ զիմ խօսքն, զինչ որ ի բերանէս կելանէ, ամենն կու կատարի»։ Աստուած ո՛չ լռեց իւր հպարտութեանն։ Յորժամ թագաւորն պառկեցաւ, քուն եղաւ, Աստուած կրակացաւ մի ձգեց ի վերան, որ էրէր և լափէր։ Զարթեաւ ի քնում թագաւորն, մերկացաւ, և թաւալէր թագաւորն ի վերայ գետնին և ասէր.

—Էրեցա՜յ, լափեցա՜յ, ինձ ճա՛ր արէք։

Ասեն ծառայքն, թէ.—Ե՛լ, որ երթանք ի գետն, մու՛տ ի պաղ ջուրն, միթէ քիչ մի հովնաս։

Եւ առին զօրքն, գնացին ի գետն։ Մերկացաւ թագաւորն, մտաւ ի ջուրն։ Յայնժամ, անտես ի մարդկանէ, իջաւ ի հրամանէն Աստուծոյ հրեշտակ մի յերկնից, մխեաց զթագաւորն ի ջուրն ի վայր։ Եւ հրեշտակն եղաւ ի կերպ թագաւորին և ել ի ջրէն։ Յայնժամ զօրքն հագուցին զհալաւն, գիտացին, թէ իւրեանց թագաւորն է և տարեալ նստուցին յաթոռն։

Եւ մնաց թագաւորն ժամ մի ջրին մէջն, յետոյ ելաւ ի ջրի միջէն, տեսաւ՝ ոչ զօրք կայր, ոչ ծառայք, ոչ հալաւ։ Իւր պատկերքն փոխեր էր յայլ մարդոյ պատկերք, որ զինքն չեն ճանաչէր։

Եւ գնաց ի մէկ իշխանին դուռն և ասաց դռնապաններուն, թէ.—Գնացէք իշխանին ասէք, քո թագաւորն ի դուռն եկեր է, զքեզ կու ձենէ։

Եւ գնացեալ ասին իշխանին, թէ.—Զպլախ մարդ մի, մերկ ի մօրէ, կասէ, թէ՝ «Իշխանին ասէք, որ դուրս գայ»։

Ասէ իշխանն, թէ.—Նե՛րս բերէք։

Գնացեալ բերին ի ներս։ Ասէ իշխանն.

—Զպլախ, ի՞նչ մարդ ես։

Ասէ.

—Ես քո թագաւորն եմ, դուն իմ ծառայն ես։

Յայնժամ իշխանն բարկութեամբ ի դուրս քաշել երետ.

—Խե՛վ, գնա՛ կորիր։

Յետոյ գնաց իւր դարպասի դուռն, ասէ դռնապաններուն, թէ.—Զիս տարէք ի թագաւորին քով։

Եւ նոքա տարան։ Ասէ թագաւորն.

—Ի՞նչ մարդ ես, որ այդպէս մերկ և խայտառակ ի շուրջ կու գաս։

Ասէ.

—Ես այդ աթոռոյդ տէրն եմ, այդ որդիքն իմն են, որ ի քովդ են։

Յայնժամ որդիքն ծեծելով ի դուրս ձգեցին։ Եւ նա լալով գնաց ի վանք. եպիսկոպոսին ասաց.

—Ես քո թագաւորն լինամ, առչափ իշխանութիւն եմ տուեր, դուն ինձ պէտ չե՞ս անէր։

Ասէ եպիսկոպոսն.

—Ո՛վ անիծած խայտառակ, գնա՛ ի դուրս կորիր, որ թագաւոր չիմանայ, զքեզ սատակէ։

Եւ հաբեղանին ծիծաղելով ի դուրս քարշեցին։

Յայնժամ թագաւորն իմացաւ, որ իւր հպարտութիւն զինքն այնպիսի չարի

*եբեր, դարձաւ անկաւ ի հայրապետին յոտսն և խոստովանեցաւ, որ զիւր հպարտութիւն է մեղքն, և էառ խոնարհութեան լուծն յանձն։*

*Յորժամ հայրապետն ասաց զարձակման աղօթքն, յայնժամ թագաւորն առաջին կերպն փոխեցաւ։ Ճանաչեաց եպիսկոպոս, անկաւ յոտն նորա և եբեր հալաւ հագուց և տարաւ իւր դարպասն։ Տեսաւ, որ այլ թագաւոր ո՛չ կայր ի յաթոռն և զարմացեալ ետ փառս Աստուծոյ։*

*Տեսէք զհպարտութեան պատուհասն և խոնարհութեան փառքն[1]։*

## ПОВЕСТЬ О ЦАРЕ АГЕЕ И КАКО ПОСТРАДА ГОРДОСТЬЮ

Аггей, царствовавший в граде Филумене (Филуне, Филуяне, -аие), возгордился своим величием и счастьем, и, услышав однажды чтение евангельских слов «Богатии обнищаша и нищии обогатеша», назвал их несправедливыми и велел вырвать лист евангелия, где они были написаны. Бог наказал его. Однажды царь погнался на охоте за оленем; олень переплыл за реку, царь снял с себя платье и поплыл туда же, а в это время ангел надел его одежды и, принятый всеми за царя, возвратился во дворец Аггея. Между тем, когда настоящий царь переплыл реку, олень исчез, и Аггей остался один, без одежды; все, кого ни встречал он, не хотели признать его царем, говоря, что видели царя, ехавшего в город. Долго блуждал Аггей без пристанища и без пищи, нанимался в работу, но его прогоняли, потому что он был непривычен к труду. Тогда он вспомнил о своем неверии, каялся и просил у бога прощения; он пристал наконец к нищим, которые взялись кормить его с тем, чтобы он носил их сумы. В городе нищие были призваны к царю, который велел угостить их, по случаю праздника; здесь ангел, заступивший место царя, привел раскаявшегося Аггея в особенную комнату, возвратил ему прежний вид его, отдал корону и скипетр и скрылся, велев держать все происшедшее в тайне. Аггей «почал царствовать попрежиему и зело милостив был ко всякому человеку и благоугодио жил»[2].

---

[1] *«Էջեր», էջ 113։*

[2] *Թարգմանություն.*

## ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ԱԳԳԵ ԹԱԳԱՎՈՐԻ ՄԱՍԻՆ ԵՎ ԹԵ ԻՆՉՊԵՍ ՊԱՏԺՎԵՑ ՀՊԱՐՏՈՒԹՅՈՒՆԻՑ

*Ագգեն, որ թագավորում էր Ֆիլումենե (Ֆիլունե, Ֆիլույանե-անե) քաղաքում, հպարտացավ իր մեծությամբ ու բախտով։ Մի անգամ, լսելով Ավետարանի «եղիցին յետինք առաջինք, և առաջինք յետինք» խոսքերը (Մատթեոս Ի, 16), համարեց ոչ ճիշտ և հրամայեց Ավետարանից պոկել այդ թերթը։ Աստված պատժեց նրան։*

*Մի անգամ՝ որսի ելած, նա հետապնդում էր եղջերվին։ Եղջերուն լողացանցավ գետը։ Թագավորը հանեց իր զգեստը և լողաց նրա հետևից։ Այդ ժամանակ հրեշտակը հագավ նրա շորերը և բոլորի կողմից թագավորի տեղ դրվելով, վերադարձավ Ագգեի պալատը։ Մինչ իսկական թագավորը անցնում էր գետը, եղջերուն անհայտացավ։ Ագգեն մնաց մենակ, առանց զգեստի։ Բոլորը, ում պատահում էր, չէին ուզում ճանաչել նրան թագավոր, ասելով, թե թագավորին*

*Ռուս գրականության մեջ այս զրույցը պահպանվել է XVII դարից սկսած, իսկ մեզ մոտ գոյություն ունի նաև XVI դարում[1]։*

*Նույնատիպ փոփոխությունների են ենթարկվել, տարբեր ժողովուրդների մոտ և տարբեր դարերում, բազում այլ պատմություններ, որոնցից մեկն է և ջրհորն ընկած մարդու (ոսկերչի), օձի, կապիկի ու վագրի մասին եղած հայտնի զրույցը (մարդու զբաղմունքը և կենդանիների քանակն ու տեսակը պատումներում փոփոխական են)։ Կենդանիները լավությունը հատուցում են լավությամբ, իսկ մարդը՝ չարությամբ։ Հայկական ձեռագրերից մեկում զրույցն ունի «Այլ խրատ իմաստնոց» վերնագիրը[2]։ Թե՛ սա և թե սրա անտիպ ու տպագիր տարբերակները շատ և շատ զանազանվում են և՛ մեկը մյուսից և այլ ժողովուրդների մոտ պահպանված օրինակներից։*

«Gesta Romanorum»-*ից բերած այս զրույցի փոփոխությունները ցույց տալու նպատակով ակադեմիկոս Օրլովը հարադրում է բուդդայական երեք տարբեր ընթերցվածք՝ հնդկական, մոնղոլական և ռուսական։*

---

*տեսել են քաղաք գնալիս։ Երկար թափառեց Ազգեն առանց օթևանի և սննդի, վարձվեց աշխատանքի. բայց նրան վռնդում էին, որովհետև վարժված չէր գործի։ Այդ ժամանակ նա հիշեց իր անհավատությունը, զղջաց և ներումն խնդրեց աստծուց։ Ի վերջո նա գնաց մուրացիկների մոտ, որոնք կերակրեցին նրան՝ իրենց մախաղները կրելու պայմանով։*

*Մուրացիկներին թագավորը կանչել էր քաղաք և տոնի առիթով հրամայել հյուրասիրել նրանց։ Այդ ժամանակ, որպես թագավոր հանդես եկած հրեշտակը, պաշտպանող Ազգեին տարավ առանձին սենյակ, վերադարձրեց նրա նախկին տեսքը, տվեց թագն ու գայիսոնը և անհայտացավ, պատվիրելով եղածը ծածուկ պահել։ Ազգեն սկսեց առաջվա պես թագավորել, բոլոր մարդկանց նկատմամբ լինելով ողորմած, և բարեհաճո կյանք վարեց։*

***Սա զրույցի համառոտ բովանդակությունն է ըստ Օրլովի։ Տե՛ս*** Акад. **А. С. Орлов,** Переводные повести феодальной Руси и Московского государства XII—XVII веков, Л., 1934, ***էջ 106։***

[1] ***Տե՛ս*** **Орлов,** Переводные повести, ***էջ 107 և ձեռ. № № 1357, ժԶ, էջ 259բ, 3569, ժէ, էջ 136ա, 8727, էջ 37բ։***

[2] *Ոսկերչի, կապիկի, վագրի և օձի մասին հայտնի զրույցի տարբեր պատումներ տե՛ս հայկականում՝ «էջեր», էջ 32, 34,* Գ. Յովնանեան, *Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրէնի վրայ, մասն Ա, տետր Բ, էջ 280,* Ս. Հայկունի, *Կենդանական վեպեր, ժողովրդական առակներ, Ա գրքույկ, Վաղարշապատ, 1907, էջ 78—80։ Հնդկականում, մոնղոլականում և ռուսականում տե՛ս* Օրլով, *էջ 95—105։*

Հնդկական հեքիաթների չինական ժողովածուում (III դար) գրույցն ունի հետևյալ բովանդակությունը[1]. ժամանակին Մո-տիեն-լո թագավորությունն ունենում է նաև անունով մի արքա, որը գիտությունների խորն ուսումնասիրությամբ հասնում է աստվածային իմաստության և, տեսնելով աշխարհի անհաստատությունը, հրաժարվում է իր փառքից ու հարստությունից, քաշվում անտառածածկ մի լեռ՝ միակեցության, որտեղ մնում է 30 տարի։ Այն ծառի մոտ, ուր բնակվում էր նա, կար մի խոր փոս։ Վազելով եղջերվի հետևից, հորն է ընկնում մի որսորդ։ Վախից փախել ու այստեղ էին ընկել նաև օձն ու ագռավը (Պո և Չանգ անուններով)։ Միակեցն ազատում է բոլորին, որոնք, մինչև գետին խոնարհվելով, խոստանում են ամեն գնով երախտահատույց լինել։ Սակայն որսորդը մի ընթրիքով անգամ զլանում է հյուրասիրել իր ազատարարին, մինչդեռ ագռավը բերում է թագուհու մարգարիտը։ Միակեցը այն նվիրում է որսորդին։ Թագավորը մեծ հարստություն է խոստանում մարգարիտը իրեն հանձնողին։ Որսորդը շղթայելով միակեցին՝ ներկայացնում է թագավորին։ Միակեցը լռում՝ չի ասում եղելությունը, ագռավներին չվտանգելու համար։ Նրան ծաղկում են և թաղում հողում մինչև վիզը՝ հաջորդ օրը սպանության մատնելու։ Միակեցը օգնության է կանչում օձին, որը մեռցնում է թագավորի միակ որդուն՝ բուժելու համար դեղ թողնելով միակեցի մոտ։ Սա կենդանացնում է արքայի որդուն, բայց հրաժարվում ստանալ խոստացած հարստությունը՝ թագավորության կեսը։ Թագավորը հասկանում է, որ նա չի գողացել մարգարիտը։ Եղելությունը բացվում է. մահվան է դատապարտվում որսորդն իր մեծ ու փոքր ազգականներով։ Միակեցը վերադառնում է լեռները։ Որպես եզրահանգում՝ ավելացված է. բուդդան ասում է. այդ միակեցը՝ ես ի՛նքս եմ, ագռավը՝ Cariputran-ն, օձը՝ Ananda-ն, որսորդը՝ Devadatta-ն և այսպես մյուսները։ Այս միջոցով ամենաբարձրյալը կատարում է համբերության փորձությունը։

Հեքիաթների մոնղոլական ժողովածուն գրույցը փոխ է առել Պանչատանտրայից։

Շատ հին ժամանակներում Ջիրախա կոչվող մի մեծ հարթության վրա, ուր բոլորովին ջուր չկար, գտնվում էր մի չորացած մեծ ջրհոր։ Այնտեղ են ընկնում մարդը, բազեն, օձը և մուկը, որոնք քաղցից ու ցրտից սովամահ էին լինում։ Լսելով նրանց ողբը, մի անցորդ հանում է բոլորին, որոնք և խոստանում են երախտահատույց լինել։ Ժամանակ անց անցորդն աղքատանում է և որսի դուրս գալով՝ հանդիպում բազեին։ Սա անմիջապես նրա համար որսում է մի նապաստակ ու կաքավ և գնում նոր բան գտնելու։ Քաղաքի վրա շրջելիս տեսնում է թագուհուն, որ սանրում է մազերը, ցած դնելով թանկարժեք մանյակը։ Բազեն վերցնում է այն և հանձնում իր փրկարարին։ Սա մանյակը տանում է քաղաք վաճառելու, ուր հանդիպում է ջրհորն ընկած մարդուն։ Իմանալով մանյակի պատմությունը, վերջինս շտապում է թագավորի մոտ և լուրը հայտնելով՝ պարգև խնդրում։ Թագավորը բանտարկել է տալիս աղքատին ու մեծ տանջանքների ենթարկում։ Նրան օգնության է հասնում մուկը՝ կերակուր հայթայթելով և լուրը հաղորդելով օձին։ Սա հրամայում է մի նամակ գրել թագավորին, ուր ասվում է. Ես՝ վիշապների ամենակարող թագավորս, որպես փրկագին թագուհուն հասա-

[1] Բոլոր տարբերակները բերվում են խիստ համառոտած՝ առանց մանրամասների, որով հագեցված է գրույցը։

*նիլիք աղետի, բերել եմ տվել այդ մանյակը, ինչո՞ւ իզուր տանջում ես այդ անմեղ մարդուն։ Եթե մանյակն ու մեծ հարստություն անմիջապես չպարգևես նրան, մեծ դժբախտություն կպատահի քեզ, քո բոլոր հարազատներին ու թագավորությանդ։ Նամակը գիշերով տանում է մուկը և դնում թագավորի մոտ։ Օձը թունավորում է թագավորին, որի մարմինն ուռչում է։ Նամակը տեսնելով նա է՛լ ավելի է վախենում, իսկ երբ թագուհին էլ խոստովանում է, թե բաղնի է տարել իր մանյակը, բոլորն ահաբեկվում են։ Թագավորը մեծ նվերներով գնում է բանտ և տեսնելով հսկա օձին, որ հովանավորում էր բանտարկյալին, համոզվում է, թե իրոք նա ահեղ պաշտպան ունի, ազատում է նրան, մեծ հարստություն բաշխելով և պատվի ու հարգանքի արժանացնելով։*

*Զրույցը եզրակացնում է. հասարակ կենդանիները մտածում են և փոխհատուցում բարությունը, իսկ մարդը, որ խելք ու իմաստություն ունի, չարիք է գործում։ Պետք է խորհրդածել այս մասին և այդպիսի դատողություններով իշխել սրտին։*

*Ռուսական տարբերակը հետևյալն է.*

*Թագավորն ուներ մի մտերիմ, որին դարձնում է պալատական պաշտոնյա։ Սա սովորություն ուներ որսի գնալ, ուստի ծառաներին հրամայում է խորը հոր փորել, որպես թակարդ։ Այստեղ են ընկնում առյուծը, օձը և կապիկը։ Ձյունը ծածկում է հորը։ Պալատականը ևս իր ձիով ընկնում է այստեղ։ Անցնում է մի փայտահատ։ Լսելով հորն ընկածի աղերսական ձայները, մոտենում է, բայց ասում, թե պարան չունի նրանց հանելու. մինչև բերի, օրը կանցնի ու իր ընտանիքը սովամահ կլինի։ Պալատականը շատ ոսկի է խոստանում՝ միայն դուրս գա հորից։ Փայտահատը բերում է պարանը, բայց նախ առյուծն է դուրս գալիս և մեծապես շնորհակալություն հայտնում։ Դուրս են գալիս նաև օձն ու կապիկը, իսկ վերջում պալատականը։ Սա մեծ քանակությամբ ոսկի է խոստանում խնդրելով ազատել նաև իր ձիուն՝ ավելացնելով. Երբ քեզ հարմար լինի, արի, վարձդ առ։ Փայտահատը գնում է նրա մոտ, սակայն նա հրաժարվում է իր խոստումից, ծեծել տալիս և կիսամահ դուրս անում։*

*Խեղճը երկար հիվանդանում է, կինը ողորմություն հավաքելով խնամում է նրան, որ լավանալով կրկին գնում է փայտահատության։ Կապիկը տեսնում է նրան, օգնում՝ այնքան շատ փայտ է կոտրատում, որ երեք օրում էլ հնարավոր չէր կրել։ Հաջորդ օրն անտառ է գալիս օձը և մի քար բերում. երրորդ օրն՝ առյուծը։ Սա բերում է բազում թանկարժեք իրեր՝ ոսկեղեն, արծաթեղեն և ակնեղեն։ Փայտահատը հարստանում է։ Մի օր հրավեր է սարքում և օձի բերած քարը ևս ցույց է տալիս ընկերներից մեկին։ Լուրը հասնում է թագավորին։ Սա կանչում է փայտահատին, իմանում պատմությունը և նրա՛ն է հանձնում բոլոր ունեցվածքն ու ծառաներին[1]։*

*Հայերենի տարբերակներից մեկն այսպես է. Թագավորը հարցնում է իմաստուններին, թե ի՞նչ կարելի է վստահել մարդուն։ Սա պատասխանում է՝ Ոչինչ, և պատմում զրույցը. Ճանապարհի վրա կար մի չորացած ջրհոր, ուր ընկնում են ոսկերիչը, օձը, կապիկը և վագրը։ Անցորդը հանում է բոլորին, թեև կենդանիները*

---

[1] *Տե՛ս* **Орлов**, Переводные повести, *էջ 95—105։*

խորհուրդ են տալիս ոսկերչին թողնել, որպես չար մարդու: Բոլորը խոստանում են փոխհատուցել լավությունը: Ժամանակ անց հանդիպում է կապիկը և նրան մրգերով հյուրասիրում: Վագրն սպանում է թագավորի աղջկան և բերում ոսկի թագը: Ոսկերիչն իմանալով, հայտնում է թագավորին, որը հրամայում է խաչել անցորդին ու նետահարել: Վագրը լուրը հայտնում է օձին: Սա խեղդում է թագավորի որդուն և մի տերև տալիս մարդուն՝ բուժելու տղային: Թագավորն ազատում է նրան, շատ ոսկի ու արծաթ պարգևելով:

Փոքր ինչ այլ է երկրորդ տարբերակը[1], սակայն երկուսն էլ համառոտ ու սեղմ են, ընդհանրացված, առանց տեղանունների ու անձնանունների: Ոչ միայն ա՛յս զրույցները, այլ հայկական փոխադրությունները առհասարակ աչքի են ընկնում հակիրճությամբ, հիմնական բովանդակության հստակ ու ուղղագիծ ընթացքով, գաղափարական, բարոյա-խրատական կողմի հատուկ, շեշտակի ընդգծումով:

Սակայն, որքան էլ փոփոխությունների ենթարկված, զրույցների մի ստվար մասը պահում է իր փոխառյալությունը՝ ի վերջո մի հին սկզբնաղբյուրից բխած լինելու կնիքը, թեկուզ միայն իր տարածվածությամբ և շատ ժողովուրդների մոտ գոյություն ունենալու փաստով: Չնայած դրան և՛ վերոհիշյալ և՛ հետագայում բերվող օրինակները ցույց են տալիս, թե այդ վերապատումները, որ բնորոշ են միջնադարյան զրույցներին, հեռու են սոսկ թարգմանություն կամ ստարամուտ լինելուց: Հատուկ եղանակով վերապատմելու և վերաշարադրելու ճանապարհին նրանք տեղայնանում են, հայ իրականության մեջ, հայանում[2]: Թարգմանիչները և գրիչները, ստեղծագործաբար մոտենալով նյութին, երբեմն բոլորովին հանում են վայրը, անձը կամ ազգությունը բացահայտող բառերը, տողերն ու անունները, երբեմն էլ փոխարինում հայրենականով:

Այդպիսի փոփոխություններ տեսանք վերը բերած զրույցների տարբերակներում: Լավ օրինակներ են պարունակում նաև №№ 2189, 8076 և 3246 գրչագրերը: Զրույցներից մեկը, որ շատ տարածված է, մեզ պատահած բազում ձեռագրերում ունի այսպիսի սկիզբ. «Պատմէր զայս մեզ ծեր ոմն մեծ, եթէ՝ էր ոմն կոյս ծերացեալ յույժ հասակաւ, որ ուղղէր յերկիւղն Աստուծոյ և փոյթ լեալ յամենայն

---

[1] Տե՛ս «էջեր», էջ 32, 34 (№ 38, a և в տարբերակներ):

[2] Այն զրույցները, որ չեն տեղայնացել, չեն էլ կարողացել ապրել ու հարատևել: Ազգային բնույթ չկրելով, ազգային հող ու ջրից չսնվելով, նրանք ցամաքել են ու վերացել:

*առաքինութիւնս, և սուրբ յամենայնի, որ կոչէր Աննա։ Հարցի ես սորա, ասէ ծերն, որպէսզի պատմեսցէ ինձ զօրինակ հեռանելոյ իւր յաշխարհէ։ Իսկ նա հառաչեաց և ասէ ցիս...»*[1]։ Այսպիսի մեծ նախամուտից հետո միայն, սկսվում է բուն պատմությունը, փոքր ինչ փքուն ոճով, և հասնում շուրջ չորս էջի, սակայն ո՛չ մի տեղ չի նշվում գործողության վայրը։ Մինչդեռ № № 2189 և 8076 ձեռագրերում զրույցը վերապատմված է խիստ համառոտ, դարձրած մոտ տասը տող, դերերը շրջած, դեպքի վայրը նշանակած Լոռին, իսկ անձնանունը հանած. «Կին մի պատմեաց զրուցատրութեամբ ի Լոռի, թէ հայրն իմ յոյժ զրկօղ էր և անիրաւ և ամենայն վարուք վատթար։ Եւ մայրն իմ յոյժ հաւատարիմ և երկիւղած...»[2]։

Մյուս ձեռագրերում առաքինին հայրն է, իսկ անիրավը, վատ վարք ունեցողը՝ մայրը։ Արդյո՞ք սա նույնպես տեղայնացման՝ հայկական կենցաղին ավելի մոտ ու համեմատաբար բնորոշն ընտրելու և ըստ այնմ փոխելու փորձ չէ։ Պատմելու կամ վերապատմելու այս սուղ ոճը, օտար անունները հանելու, հայացնելու, կամ անորոշ թողնելու հակումն առհասարակ բնութագրական է այս, ինչպես նաև № 3246 ձեռագրին, ուր վկայակոչվում են Վան քաղաքը, երկիրն Քաջբերունի, Մեծոփի վանքը, Մխիթար վարդապետը, Հովհաննես Գառնեցին, Վարդան վարդապետը և ուրիշներ։ Նույնն են նաև № 8727 և այլ ձեռագրեր։ Օրինակ «Ի Կեռնին եպիսկոպոս մի, Սենէսիոս անուն, ջանայր քրիստոնեայ առնել զիմաստասէր ոմն Եւագրիոս անուն և ո՛չ կարէր՝ ի ժամանակս յոլովս» սկսվածքով զրույցը[3], որ աղքատասեր ու ողորմած լինելու շատ ընդհանուր՝ կրոնա-բարոյական բնույթ ունի և բազում տարբերակներ, տեղայնացվել է № № 691, 2226 և այլ ձեռագրերում։ Սենեսիոս եպիսկոպոսը դարձել է «Երանոս անուն ճգնաւոր և սուրբ վարդապետ՝ ի Վան քաղաքին», իսկ հեթանոս իմաստասերը՝ Նրա «խոճա սանահար»-ը[4]։

Կան տեղայնացման և այլ եղանակներ։

Եգիպտական հնագույն զրույց-հեքիաթների մեջ կա մեկը, որ կոչվում է «Անգղը և կատուն»։ Սա ունի հետևյալ բովանդակությունը.

---

[1] Տե՛ս ձեռ. № № 770, ժԴ, էջ 167բ, № 84, 1614 թ., էջ 240ա։ № 791, էջ 370ա, № 7993, էջ 63ա և այլն։

[2] Տե՛ս ձեռ. № № 8076, էջ 72բ, 2189, էջ 195ա։

[3] Տե՛ս ձեռ. № 4196, ժԵ, էջ 15բ։

[4] Տե՛ս ձեռ. № 691, էջ 96բ, 2226, էջ 155ա, 3246, էջ 68ա, 3366, էջ 239բ, 3526, էջ 68ա, 4618, էջ 52ա և այլն։

Եգիպտական Ռա աստվածն ուղարկում է Երկնային ուժին՝ պատժելու անգղին, որ սպանել էր կատվի ձագերին։ Երկնային ուժը գտնում է Վրեժխնդրությանը. նա նստած էր հենց այն ծառի տակ, որի վրա անգղի բույնն էր։ Երկնային ուժը Վրեժխնդրությանը հաղորդում է Ռա-ի հրամանը՝ պատժել անգղին։ Վրեժխնդրությունն այնպես է անում, որ մի սիրիացի թռչուն խորովի։ Անգղը տեսնելով միսը, տանում է մի կտոր իր ձագերին՝ չնկատելով մսին փակած շիկացած ածուխի կտորը, որից և բռնկվում է բույնը, այրվում են բոլոր ձագերը։ Այսպիսով վրեժը լուծվում է, այսինքն՝ մեղավորը պատժվում[1]։

Սրան համապատասխանում է հայկական ձեռագրերում պահպանված հետևյալ փոքրիկ առակատիպ զրույցը.

«Այր մի աղքատ խորովէր սակաւ միս յանապատի միոյ. և ահա արծիւ մի անկարծակի եկն ի վերուստ և էառ զմիսն և վերացաւ, իսկ աղքատն անկեալ ի վերայ երեսաց լայր՝ ասելով թէ՝ «Ո՛չ ունես զդա»։

Տարաւ արծիւն զմիսն ի բունն իւր, եդ առաջի ձագուց իւրոց և ինքն գնաց. և կայծ մի փակեալ էր ի միսն, այրեաց զբոյնն և զձագ արծուոյն»[2]։

Երկու զրույցում էլ թռչունի բույնն ու ձագերն այրվում են ի հատուցումն չարութեան. եգիպտականում Վրեժխնդրությունն է Ռա աստծու կարգադրությամբ պատիժ ուղարկում անգղին, մինչդեռ հայկական օրինակն ամբողջովին դուրս է թողնում այդ հատվածը, որ բոլորովին օտար է իր ժողովրդի մտածողությանը և կապվում է եգիպտական հավատալիքների ու աստվածների հետ։ Դրա փոխարեն հայկական զրույցին տրվում է սոցիալական բնույթ. միս խորովողը ո՛չ թե ինչ որ մի սիրիացի է, այլ աղքատ (ազգությունը չի շեշտվում, այլ վիճակը)։ Փոխվել է նաև թռչունը, անգղի փոխարեն բերվել է հայ լեռնաշխարհի ու հայի համար ավելի հարազատ ու ճանաչված արծիվը, իսկ թշնամության ու վրեժի բախումը տեղափոխվել է մարդու ու արծվի մեջ, փոխանակ կատվի ու անգղի։ Եգիպտական զրույց-հեքիաթում սիրիացին մնացել է մի միջանկյալ օղակ, կատվի վրեժը թռչունից լուծելու մի միջոց. մինչդեռ

---

[1] Տե՛ս „Сказки и повести древнего Египта", М., 1956, էջ 144, „Коршун и кошка".

[2] Տե՛ս «էջեր», էջ 9, «Աղքատ մսախորով և արծիւ»։ Պահպանվել է XVII դարի մի շարք ձեռագրերում, տպագրվել է «Աղուէսագրքում», 1668, էջ 103, Մառի ժողովածուում, մասն Բ, էջ 13, մասն Գ, էջ 103, 147։

հայկականում թողունը պատժվում է հենց այն պատճառով, որ փախցրել է աղքատի, քաղցած մարդու ունեցած միակ ուտելիքը, հակառակ դեպքում, թերևս, պատժվելու հարց չհարուցվեր։

Ակնառու է, որ այս զրույցները չեն ստեղծվել մեկը մյուսից անկախ, այլ փոխանցվել են մի ժողովրդից մյուսին և, հարմարվելով նրանց հոգևոր ու բնաշխարհիկ կյանքին՝ տեղայնացվել են, պահելով համեմատաբար բնորոշը և կորցնելով, դեն նետելով օտարը։

Եգիպտական ո՛չ բոլոր զրույցները, բնականաբար, կարող էին անցնել հայ ժողովրդին։

Նրանք, որոնք բնորոշ ու յուրահատուկ են եղել միայն եգիպտացիներին՝ կապված նրանց հավատալիքների, կուռքերի ու աստվածների հետ, տարբեր՝ բնույթով, միջավայրով ու մարդկանց փոխհարաբերություններով, չէին կարող մերվել, տեղայնանալ, կամ հայ ժողովրդի կենցաղի, վարք ու բարքի, իղձերի ու հայացքների արտահայտությունը լինել։ Այդպիսիները, եթե երբևէ պատմըվել են հայերեն, չեն մնացել ժողովրդի հիշողության մեջ ո՛չ գրավոր, ո՛չ էլ բանավոր։ Սակայն համամարդկային հետաքրքրություն ու արժեք ներկայացնող, հարատևելու կենսունակ գաղափարներն ու թեմաները, որոնք եղել են ընդհանուր, հուզել ու զբաղեցրել մարդկային միտքն առհասարակ, անցել են մի ժողովրդից մյուսին, ինչպես և հայերին, բայց և այնպես ո՛չ նույնությամբ ու ամբողջությամբ, ինչպես այդ ցույց տրվեց նախորդ էջերում։ Երբեմն մնացել է հետաքրքրող մտքի միայն կաղապարը, կմախքը, կամ հարազատն ու բնորոշը, երբեմն պոկվել ամբողջից, կիսվել, վերցվել է զրույցի մի հատվածը միայն, երբեմն էլ տարբեր զրույցներ միացել՝ դարձել են մեկը։ Վերջինների թվումն է եգիպտական «Առյուծը և մուկը» զրույցը, որը մեզ մոտ բաժանված է երկուսի։ Զրույցի համառոտ բովանդակությունը հետևյալն է. Հզոր առյուծը հանդիպում է հովազին՝ պատառոտված ու ծանր վիրավոր։ Նա իմանում է, որ դա մա՛րդն է արել, որից խելոքը, ուժեղն ու խորամանկը չկա և որից պետք է խուսափել։ Առյուծը լցվում է չարությամբ և որոշում գտնել մարդուն։ Հանդիպում են էշը և ձին՝ երախակալներով ու սանձերով, ապա եզը և կովը՝ սղոցած կոտոշներով, ծակած քթերով, վզներին լուծ։ Պատահում է և արջը՝ կտրած եղունգներով, քաշած ատամներով. ի վերջո մի այլ առյուծ՝ թաթը ծառի ճեղքում սեղմված։ Հզոր առյուծն իմանում է, որ այդ բոլորն արել է մարդը և էլ ավելի է զայրանում։ (Այսքանը որոշ փո-

փոխությամբ պահպանված է հայկական մեկ առանձին զրույցում, որտեղ ոչ թե ուրիշ, այլ նույն Հզոր առյուծն ինքն է հանդիպում մարդուն և խաբվելով՝ թաթը թողնում է ծառաբնի ճեղքում)։

Եգիպտական զրույցը շարունակվում է. Հզոր Առյուծը հետո պատահում է մկանը, որ խնդրում է չուտել իրեն, միևնույն է՝ քաղցը չի հագեցնի, իսկ ինքը երբևէ վարձահատույց կլինի։ Իրեն ուժեղ ու հզոր կարծող առյուծն ի վերջո ինքն էլ է խաբվում և ընկնում թակարդը։ Մուկն ազատում է նրան՝ կրծելով կապերը։

Հայկական և հնդկական տարբերակներում այս հատվածը մի ինքնուրույն զրույց է, կառուցված նույն բարոյախոսության վրա՝ չմեծամտել. փոքր և անուժ համարվող արարածն անգամ կարող է օգնել, փրկել հզորին[1]։

Առյուծի մասին պատմվող երկու տարբեր զրույցները հետագայում հավանաբար միակցվել են, դարձել մեկը։

«Հարանց վարք»-երից եկող հայտնի փոխադրությունները նույնպես մեխանիկորեն չեն կատարվել։ Սրանց մեջ Հռոմի, նրա Պապի ու հռոմեական եկեղեցու փոխարեն, պետք եղած դեպքում, հանդես են բերվել տեղի հոգևոր հայրերն ու եկեղեցին։

Փոխառյալ թեմա հիշեցնող շատ հեռավոր բովանդակություն և յուրահատուկ ձև ունի մեր ձեռագրերում պահպանված հետևյալ հայկական (հայկականացված?) զրույցը, գրված արձակ և չափածո հատվածներով, որ հիշեցնում է Եզովպոսի առակներից մեկը[2]։ Իր սննդակիցների և իշխանների իմաստությունը փորձելու նպատակով թագավորը հրամայում է զոհել մի ոչխար և բերել նրա վատ մասերը։ Նրանցից յուրաքանչյուրը բերում է տարբեր մասեր՝ մեկը ուղեղը, մյուսը ողնուղեղը, երրորդը՝ աչքը, չորրորդը՝ ականջը, քիթը, լեզուն և այլն։ Ամեն մեկը նախ արձակ և ապա չափածո խոսքով պատճառաբանում է, թե ինչո՞ւ իր բերածը վատ է ու պիղծ՝ նկատի ունենալով մարդու մարմինն ու նրա համապատասխան մասերը.

Աչքն, օրինակ, վատ է, որովհետև ամեն ինչ տեսնում ու մտանում է, կամ ամեն ինչ տեսնում և ցանկանում է։ Լեզուն վատ է, որովհետև հայհոյում է, բամբասում, անիծում, սուտ խոսում և այլն։ Մարմնի տարբեր մասեր քննության են առնվում և գիտականորեն, որով զրույցն ստանում է նաև բժշկագիտական արժեք։

---

[1] Տե՛ս «Индийские сказки», էջ 170, «О тигре и мышке», և հայկական տարբերակը՝ ձեռ. № 1778, էջ 40ա, № 46, Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 111։

[2] Տե՛ս «Առակք Եզովբոսի», էջ 39 և հտո.։

Օրինակ՝ ինչպիսի՞ն է ուղեղը և ի՞նչ գործունեություն ունի. «ըղուղն գլխաւոր է ամենայն զօղուածին, և ինքն հիմն է՝ ղերդ ղծաւին մաղմզուկն... և խիստ նաղուք է և վատուժ, որ ոչինչ իրք մի յինքն դպնի, նա զմարդն հիւանդացնէ, և թէ յինքն իրք կաթէ, նա զմարդըն խեւանցէ»[1]։ Ծոծրակը հիշողական օրգան է, «թօքն է տուն բըլղամի և մաղասի, դի ի յինքն կու ժողովի, և ծերութիւնն ամէն ի բլղամէն է, և թէ բլղամն չէր՝ նա չէ՛ր ծերանայր»[2]։ «Փածեղն նման է ի յախոռ, որ ամէն աղջաղջ աղբ ի յինքն ժողւի, և զինչ որ այրած արիւն կա ի լերդն՝ նա ի յինքն երթա»[3]։ «Լեղին տուն մաղձի է և սաֆրայի. և սաֆրայն և մաղձն ի յիւրմէն լինի»[4]։ «Բուշտ է՛ մութատիլ, մզէ ճառ մանդր, որ դիւրեաւ իւր գողն ելանէ. ապա թէ հով ու գէճ լինի, նա զգողն արգիլէ և չկարէ գողել. և թէ քամի ընգնի, նա կաթ-կաթ գողէ. և այս է գանձակացաւն»[5] և այսպես մինչև վերջ։

Ձրույցն ուշագրավ է իր կառուցվածքով, որ միակն է մեզ հասած բոլոր հայկականներից։ Արձակի և չափածոյի զուգադրումով այն հիշեցնում է մեր ձեռագրերում պահպանված Պղնձե քաղաքի. Փահլուլի, Աղեքսանդրի վարքի մասին եղած պատմությունները[6]։

Հետաքրքիր է և զրույցի լեզուն, որ իր բառապաշարի զգալի մասով ժամանակի գործածական, խոսակցականն է։

Ցույց տալու համար, թե ինչպիսի ոլորապտույտի մեջ է ընկնում ստեղծագործությունը փոխառությունների ու փոխադրու-

---

1 Ձեռ. № 8076, էջ 112բ։

2 Անդ. էջ 113բ։

3 Անդ։

4 Անդ, էջ 114ա։

5 Անդ։

6 Տե՛ս Պատմութիւն պղնձէ քաղաքին, յորում են բանք խրատականք և օգտակարք Խիկարայ իմաստնոյ և այլ բանք պիտանիք, Տփխիս, 1857, էջ 3, 52։ Պղնձե քաղաքի առայժմ հայտնի հնագույն թարգմանությունը կատարված է արաբերենից, X դարում, երկրորդը՝ XIII։ Մանրամասն տե՛ս **Ն. Ակինյան**, Հանդէս ամսօրեայ, 1958, 1—4, էջ 21—48։ Հմմտ. **Պ. Մուրադյան**, «Պատմութիւն պղնձէ քաղաքի» զրույցի հայկական և վրացական պատումների ու նրանց փոխհարաբերության շուրջը»։ Տե՛ս Բանբեր Մատենադարանի, № 6, Երևան, 1962, էջ 249—250։ Հետաքրքիր է Հ. Որոտնեցու կարծիքն այդ ստեղծագործության մասին. «...Որ ամենևիմբ սուտ, որպէս առասպելական գիրք ըստ պատմութեան Արամազդեա և Հերմեա, այպէս և ի նորս Պղնձի քաղաք ի Շերանշահ և այլ սոյնպիսիք, որ ամե՛նևիմբ սուտ են»։ Տե՛ս **С. Аревшатян, С. Лалафарян**, Сочинение Иоанна Воротнеци „Об элементах“, Բանբեր Մատենադարանի, № 3, Երևան, 1956, էջ 378։ «Պատմութիւն Աղեքսանդրի Մակեդոնացւոյ», Վենետիկ, 1842։

թյունների ընթացքում՝ ըստ էության իր ստեղծման բովում կամ խառնարանում, բերենք իտալական միջնադարյան գրականության պատմության փորձից Ֆիլիպ Մոնյեի հանած հետևյալ խիստ պատկերավոր ու կենդանի նկարագիրը.

Այդ ամենատարբեր և ամենաբազմապիսի բնույթ ու ծագում ունեցող՝ մասնատված ու կտոր կտոր եղած պատմությունները (novelette, storie, cantari) վազում են, պտտվում, գնում ու վերադառնում, վերամկրտվում, բախվում ու խառնվում մեկը մյուսին։ Ժողովուրդն անմիջապես յուրացնում է այն, դարձնում իրենը, աղավաղում՝ բերում-հանում է նրա տեղային դրոշմը, հարմարեցնում իր ըմբռնումներին, իր բնության ու մտքի կերտվածքին, ինքը ևս հարմարվում և ընդմիշտ մնում նրան հավատարիմ[1]։

Նույն եզրահանգմանն է գալիս և Ալեքսանդր Վեսելովսկին, փոքր ինչ այլ ձևով։ Ըստ Ն. Գուձիի, նրա դեռևս 1863 թ. հետազոտություններից և 1868 թ. միջնադարյան էպոսի մասին գրած հոդվածից հետևում է, որ ազդեցությունն ավելի ներգործում է լայնությամբ, քան խորությամբ. նա ավելի նյութ է տալիս, քան նոր գաղափարներ մտցնում։ Գաղափարն ստեղծում է ինքը՝ ժողովուրդը և այնպիսին, որ հնարավոր է նրա զարգացման տվյալ վիճակում[2]։

Ընդունելով այս տեսակետը, Ալեքսեյ Վեսելովսկին նկատում է. եթե ժողովուրդն ունի կենսական ուժ, ազդեցությունն ու փոխառությունը ո՛չ միայն չեն սպանի նրա ինքնությունը, այլև ազատ մրցակցության կկոչեն այդ ուժը, իսկ անփորձ ու հետամնաց ժողովրդի համար կդառնան մի դպրոց, ուր կամրապնդվի նրա ինքնագործունեությունը։ Ողորմելի ու չնչին կլիներ ա՛յն ժողովուրդը,— շարունակում է նա,— որը չկարողանալով գտնել ոչ իր խոսքերը, ոչ իր մտքերը, հավիտյան կհետևեր ուրիշի թելադրանքին[3]։ Նա վկայակոչում է և Ժ. Տարդին, որը փոխառությունն անհրաժեշտ է համարում մարդու գործունեության բոլոր բնագավառներում՝ հասարակական, քաղաքական, գիտական, գեղարվեստական և այլն,

---

[1] Տե՛ս **Филипп Монье**, Опыт литературной истории Италии, էջ 363—364, 366։

[2] Տե՛ս **Н. Гудзий**, Забытые имена (Лит. газета, 1956, № 139); **А. Веселовский**, Заметки и сомнения о сравнительном изучении средневекового эпоса (Журнал министерства народного просвещения, часть CXL, СПб, 1868).

[3] **Алексей Веселовский**, Западное влияние в новой русской литературе, М., 1896, էջ 2, 7։

*դրա մեջ չտեսնելով ոչ ամո՛թ, ոչ ստրկությո՛ւն, ոչ էլ անդիմություն*[1]*։*

*Անդրադառնալով հայկական զրույցներին այս տեսանկյունից, ինչպես ասվեց, նկատում ենք, որ հայ միջնադարյան գրականության մեջ պահպանվել է փոխառյալ զրույցների երկու տեսակ՝ թարգմանական կամ փոխադրական և տեղայնացված։ Առաջին տեսակի զրույցները ուրիշից անցել և մնացել են ուրիշինը, իսկ մյուսները՝ փոփոխվել, մշակվել և ազգայնացվել են*[2]*։*

[1] **Ж. Тард**, Законы подражания, СПб, 1892, Հմմտ. **А. Веселовский**, Западное влияние в новой русской литературе, էջ 2։

[2] Միևնույն բարոյախոսության և գաղափարի վրա կառուցված նման զրույցներ կան հնդկական, եգիպտական, իտալական, հայկական, վրացական և այլ ժողովածուներում։ Հնդկական „О коне и воле", „О путнике и шайтане", „О том, как шакал тигра обманул", „О трех золотых куклах", „О тигре, волке и лисе", „О мудреце и хлебосольном хозяине", „О сыне вельможи и змее" („Сказки попугая" շարքում), „О волке и ягненке", „О тигре и мышке" (եգիպտականը՝ „Лев и мышь" տե՛ս „Сказки и повести Древнего Египта" էջ 147) և այլ զրույցների տարբերակները („Индийские сказки" էջ 25, 27, 49, 95, 155, 165, 352, 105, 170,) տե՛ս Մառ, ժողովածու, մասն Բ, էջ 151, 298, 154, (90, տարբերակ), 217, 114, «Էջեր», էջ 125 (№ 92, ծանոթ. էջ 255), էջ 28 (№ 36, ծանոթ. էջ 242), ձեռ. №1778, էջ 140ա (№46)։ Իտալական գրականության մեջ գտնում ենք կնոջ հավատարմության ու կամապաշտության վերաբերող մեր զրույցների մի պատումը (համառոտ բովանդակությունը տե՛ս սույն գրքում, էջ 110). զրույցը տե՛ս ձեռագիր № 691, էջ 217 ա, 217 բ, **Филипп Монье**, Опыт литературной истории Италии XV века, էջ 221։ Եվրոպական գրականության մեջ շատ տարածված և հայկական ձեռագրերում պահպանված զրույցներից մեկը (Մառ, ժողովածու, մասն Բ, էջ 199, ձեռ. № 8825, էջ 10 ա, 6974, էջ 105 ա), տե՛ս նաև „Грузинская проза"-յում, հատ. I, էջ 41 „Рассказ о хозарском царе и трех братьях диламских царевичах" վերնագրով, իսկ էջ 73-ում՝ „Самое сладкое и самое горькое"-ն, որ Եզոպոսի առակներից մեկի համառոտ վերապատումն է։ Սրա մի շատ հեռավոր ու ընդարձակ տարբերակը կա հայերենում (տե՛ս ձեռ. № 8076, էջ 112 ա)։ Նման ուրիշ օրինակներ տե՛ս բերված սույն ուսումնասիրության և այլ էջերում։

Վերջերս լույս ընծայվեց նաև „Сказки Мампруси" փոքրիկ ժողովածուն (Москва, 1966), ուր դարձյալ գտնում ենք ծանոթ թեմաներ ու գաղափարներ՝ վերապատմված ու փոփոխված տարբերակներով։ Դրանցից են Лев и мышь (որ բարոյախոսությամբ համապատասխանում է մեր Օձ և Հողագործ զրույցին. տե՛ս Մառ, ժողովածու, Բ, էջ 90), Сказка о семерых братьях и о маленькой осе (բոլորովին այլ բովանդակությամբ հանգում է հայտնի այն գաղափարին, թե թույլն ու փոքրն էլ երբեմն կարող են փրկել հզորին. Մառ, ժողովածու, Բ, էջ 111), Когда один может одолеть семерых, И у стен есть уши, Мудрый совет, Рассказ о верном слуге և այլն։ Չնայած իրենց գաղափարական եզրահանգումներով սրանք հայտնի են աֆրիկյան, ասիական ու եվրոպական մի շարք ժողովուրդների, սակայն բովանդակությամբ տեղայնացված են։ Տե՛ս „Сказки Мампруси", էջ 40, 49, 68, 70, 71, 84, վերջաբանը, էջ 108, 110, 112։

*Ընդունված է, սակայն, նույնիսկ փոխադրություն հանդիսացող գրույցներն ազգային համարելը ո՛չ միայն այն դեպքում, երբ նրանք վերապրում են փոփոխվելով՝ տեղականի ազդեցությամբ, որ հաճախ գերակշռում է փոխառյալին, այլև նրանով, որ նորություն են մտցնում տեղի ժողովրդի մտավոր ու բարոյական կյանքում։*

*Խոսելով XII—XVII դարերի ռուսական թարգմանական մանրապատումների մասին, Օրլովը գրում է. Երբ ռուս հասարակությունը եվրոպականանում էր Եկատերինյան «լուսավորության դարաշրջանի» մակարդակի չափ, փոխառյալ պատմությունններն արդեն դարձել էին ռուսական «ժողովրդական» գրքեր, մասսայականացած գրականություն և հասարակության ստորին շերտերում վայելում էին մեծ ժողովրդականություն[1]։*

*Ազգային գործ է դիտվում և վրացական ուշ միջնադարի գրականության մեջ ճանաչում գտած հեղինակ Սուլխան Սաբա Օրբելիանու (1658—1725) «Հնարանքի իմաստություն» վերնագրով ստեղծագործությունը։ Այստեղ զետեղված բազմաթիվ զրույցներ, առակներ, անեկդոտներ, ասացվածքներ, որ կան և հայկական ձեռագրերում, անցել են ուրիշ ժողովուրդներից և ունեն ավելի հին ընդօրինակություններ։ Օրբելիանին սրանք մշակման է ենթարկել՝ միջնադարում գեղարվեստական գրականության մեջ ընդունելություն գտած ու շատ տարածված ստեղծագործական ա՛յն եղանակով, որ կոչվում է «շրջանակ». այսինքն՝ տարբեր ժամանակների ու տարբեր ժողովուրդների գործեր մի ընդհանուր թելով կապել, մի շրջանակի մեջ է առել, միակցել մի ընդհանուր սյուժեով, շաղկապել և ներկայացրել որպես ամբողջական երկ[2]։ Նման ստեղծագործություններ են հնդկական Կալիլա և Դիմնան, Պանչատանտրան, հունական Յոթն իմաստասիրաց պատմությունը, արաբական Հազար ու մեկ գիշերները, հնդկական Թութակի հեքիաթները, Բոկաչչոյի «Դեկամերոն»-ը և այլն։ Փոխառություններ լինելով հանդերձ, Օրբելիանու գրքի մեջ բերված ստեղծագործությունները դիտվում են ազգային գործեր, որպես արտահայտություն նաև վրա՛ց ժողովրդի իրական հարաբերությունների, գաղափարների ու ցանկությունների։*

*Բնական է, հայ իրականության մեջ ևս փոխառյալ զրույցները մուտք են գործել ըստ ժամանակի ոգու, ըստ հասարակական, գրա-*

---

[1] *Տե՛ս* Орлов, Переводные повести, *էջ 89։*

[2] *Տե՛ս* **Сулхан Саба Орбелиани,** О мудрости вымысла, М., 1948.

*կան կյանքի պահանջի, ընդունելի ու հարմար են եղել արտահայտելու նրան յուրահատուկ գաղափարներ ու տրամադրությունները։ Դրանում է նրանց մատուցած ծառայությունը, դրանում է և նրանց արժեքը։*

*Փոխառությունները միաժամանակ հայ միջնադարյան զրույցների սյուժեների դարավոր հնությունը հաստատող խիստ արժեքավոր վավերագրեր են։ Նրանց գոյությունը մեր ձեռագրերում վկայում է նաև այդ սյուժեների կենսունակության ու հարատևման մեծ ուժը։*

*Եգիպտական զրույցներից շատերն ունեն մոտ երեք հազար տարվա և ավելի հնություն։ Սրանց արձագանքները հայ բանավոր ու գրավոր խոսքի մեջ, անշուշտ, իրենց հետ բերում են և այդ հնության տարրերը։ Այդպիսի մի հին սյուժեի խոսուն օրինակ է հայ իրականության մեջ առ այսօր գործածվող «Կատուն առաջին գիշերը կոտորեն» ասացվածքը, որ հնդկական զրույցի վերջին տողերից է, որպես նրանից հանված բարոյախոսական եզրակացություն։ Հավանաբար զրույցը հայերեն հաղորդված է եղել գրավոր վիճակում, գուցե և զանազան տարբերակներով, բայց առայժմ մեզ հայտնի չէ։ Ակնբախ է, սակայն, որ հայերի մոտ բանավոր հարատևել է այնքան, որ արդեն վեր է ածվել բարոյախոսական ասացվածքի*[1]*։ Խոսելով 1881 թ. «Բազմավէպ»-ում (էջ 193—198 տպագրված «Բանք վասն խաբող աղուէսուն և չարութեան նորա» վերնագրով առակի մասին*[2]*, Գ. Հովնանյանը գրում է. «...Չկայ ի մեր հաւաքածոյս այսմ նման ընդարձակ Առակ այնչափ մանրամասն նկարագրովք և խօսակցութեամբք լի...։ Թող դայն՝ որ շատ հազւագիւտ և միակ օրինակ կկարծուէր...»*[3]*, սակայն «կերևայ թէ ի նախընթաց դարս այնչափ դոյզնագիւտ կամ անծանօթ չէր Առակս, որովհետև մինչև մեր ժամանակներն ի դաւառս ինչ ժողովրդեան մէջ սովորական է ասածն, թէ՝ «Ի՞նչ ընեմ դմակն, որ մէջն է դանակն», որոյ ծագումն անշուշտ այս Առակէն եղած է»*[4]*։*

---

1 *Տե՛ս զրույցը* Индийские сказки. „О том, кто в первый же день кошку убил", *էջ 163։*

2 *Առակը հետևյալն է՝ խիստ համառոտ. Աղվեսը թակարդում պանիր է գտնում, գայլին ասում է՝ Դու արի և կեր, որովհետև այսօր ուրբաթ է և ես պաս եմ։ Գայլն ընկնում է թակարդը, աղվեսն ուտում է պանիրը։*

3 Գ. Յովնանեան, *Հետազօտութիւնք նախնեաց ռամկօրենի վրայ, մասն Ա, տետր Բ. էջ 323։*

4 *Անդ, ծանոթ.։ Առակը տե՛ս էջ 324, «Աղուէսն և գայլ» վերնագրով։*

*Հետաքրքիր է այս առիթով բերել նաև առած-ասացվածքների հիմնական աղբյուրների մասին բանագետ Ա. Ղանալանյանի հետևյալ կարծիքը.*

*«Քիչ չեն և այնպիսի առած-ասացվածքներ, որոնց սաղմը վերցված է ժողովրդական բանահյուսության էպիկական ժանրին պատկանող այլ ստեղծագործություններից, և առաջին հերթին ու ամենից շատ՝ կենդանական զրույցներից կամ առակներից: Բազմաթիվ առածներ ու ասացվածքներ կան, որոնք ոչ այլ ինչ են, բայց եթե կենդանական որևէ զրույցի հիմնական իմաստի խտացած արտահայտությունը, դրա եզրակացություն-վերջաբանը (բարոյախոսական խրատը), որն անջատվելով բուն զրույցից, ժողովրդի մեջ սկսում է ապրել ինքնուրույն կյանքով, իբրև առած կամ ասացվածք»[1]:*

*Այստեղ, անշուշտ, պետք է նկատի առնվեին ոչ միայն կենդանական զրույցները կամ առակները, այլ զրույցներն առհասարակ:*

* *
*

*Գրականության մեջ արդեն ընդունված ու ճանաչում գտած հայեցակետ է գրական զանազան տեսակների թե՛ փոխառություն լինելը, և թե անկախ առաջացումն ու ծագումը՝ չնայած նրանց մեջ գոյություն ունեցող նմանություններին: Տարբեր ժողովուրդների սոցիալ-տնտեսական, մշակութային, գաղափարական, բարոյական ու հոգեկան կացության նույն կամ նման մակարդակի, նման միճակի հետևանքով, նրանց մոտ կարող են ծնվել, ոչ անպատճառ փոխ առնվել, նման թեմաներով ու մոտիվներով, բայց ոչ երբեք նույն բովանդակությամբ, զրույցներ (վերջին դեպքում նրանք ուղղակի փոխառություններ են): Այդ է պատճառը, որ, նույնիսկ զարգացման տարբեր ընթացքի դեպքում տարբեր ժողովուրդների զրույցների մեջ առաջանում են նաև ընդհանրություններ թե՛ կառուցվածքային առումով ու պատմական զարգացման օրինաչափություններով (կրոնականից՝ աշխարհիկ, դիդակտիկականից՝ երգիծական և այլն), և թե նյութով ու աշխարհայեցությամբ:*

*Հայ իրականության մեջ կան Սողոմոնի «Որ ողորմի աղքատին փոխ տայ Աստուծոյ» ասացվածքի վրա կառուցված տարբեր բովանդակությամբ զրույցներ, այն մեկնությամբ, թե դատաստանի օրն ասված նրանց մեկին հազար, կամ հարյուր կվճարի[2]: Այս*

---

[1] Ա. Ղանալանյան, *Հայկական առածանի, Երևան, 1951, էջ* XII:
[2] *Տե՛ս ձեռ. № № 2226, էջ 155ա, 791, էջ 254ա, 257ա, 8076, էջ 71բ և այլն:*

զրույցները կան և ուրիշ ժողովուրդների մոտ։ Սակայն նույն բաբովանդակությամբ, բայց սրանցից բոլորովին անկախ ծնված՝ մ'յլ բովանդակությամբ մի զրույց է ֆրանսիական գրականության մեջ պահպանվածը. Գեղջուկը լսում է իր հոգևոր հորից, թե հավատացյալները, եթե իրենց ունեցվածքից նվիրաբերեն եկեղեցուն, աստըծուց կրկնակին կստանան, և նրա մոտ է տանում իր կովը։ Քահանան խոնարհաբար ընդունում է ու իր կովի հետ կապելով՝ բաց թողնում արածելու։ Ազատ արձակվելով, գյուղացու կովն ուղղվում է դեպի տուն, իր հետ տանելով և քահանայինը։ Գեղջուկը հավատում է վերջինիս խոսքերի ճշմարտությանը, բայց այլևս չի նորոգում իր փորձը[1]։

Միասնաբար, համերաշխ գործելու գաղափարի վրա ևս կան կառուցված զանազան զրույցներ՝ տարբեր ժողովուրդների, ինչպես և մեզ մոտ։ Դրա մի օրինակն է հետևյալը (բերում ենք հնդկականի համառոտ բովանդակությունը).

Անտառում ցանցի մեջ են ընկնում զանազան թռչուններ։ Որոշելով ազատվել, նրանք սկսում են ցանցը բարձրացնել, բայց նրանց մեջ վեճ է սկսվում. յուրաքանչյուրը պնդում է, թե ի՛նքն է բարձրացնողը և այլևս չեն կարողանում վեր ձգել։ Ցանցը նորից իջնում է և որսորդը բռնում է բոլորին[2]։ Սա հիշեցնում է մեր ցախավելի և ռուսական խեցգետնի, կարապի ու գայլաձկան վրա հյուսված զրույցները։ Վրաց գրականության մեջ ցախավելի փոխարեն երեսուն նետ է, որ միասին չեն կոտրվում, իսկ առանձին-առանձին՝ կոտրվում են[3]։

Այս առիթով հարմար է հիշատակել հնդկական մի զրույց ևս, բովանդակությամբ մերից տարբեր, բայց գրեթե նույն նպատակներով ու նույն գաղափարի վրա ստեղծված։ Զրույցի բովանդակությունն այս է. Մի թագավոր իր հարևան սուլթանի մարդկանց իմաստությունը ստուգելու համար ուղարկում է երեք միատեսակ տիկնիկ՝ տարբեր գներով, և առաջարկում բացատրել դրա պատճառը։ Ոչ ոք չի կարողանում լուծել խնդիրը։ Միայն մի պատանի բանտարկյալ, ազատություն ստանալու պայմանով, մեկնում է այսպես. Մի տիկնիկի երկու ականջն էլ բաց են, ոչինչ չի սովորում, լսածը մեկից մտնում՝ մյուսով դուրս է գալիս. նա ամենից էժանն է։ Երկրորդ տիկնիկի մի ականջից մտցրած ձողը դուրս

---

[1] Տե՛ս „История французской литературы, средные века—переходное время (IX—XV столетия)“, էջ 142։

[2] Տե՛ս „Индийские сказки“, էջ 97։

[3] Տե՛ս „Грузинская проза“, էջ 103։

է գալիս բերանից, նա ամեն լսած բան ասում է ուրիշին։ Երրորդը ամենաթանկն է՝ ականջից մտցրած ձողը մտնում է փորը. նա ամեն ինչ պահող է[1]։

Մեզ մոտ պահպանված զրույցն հետևյալն է.

Մարդ մի գերեզմանակրկիտ էր։ Եւ օր մի խաթուն մի թաղեցին շատ ընչիւք։ Եւ գիշերն եբաց զգերեզմանն և մերկացոյց մինչ ի հանդերձն։ Եւ կինն ափցի յերեսն եզարկ և ասաց, թէ՝ «Եօթ տղաի մայր եմ և զարեն ի յերդն եմ տեսել. և դու չե՞ս վախել յԱստուծոյ», որ զիս հրապարակ կանես։— Եւ ասաց, թէ՝ Հետ ինձ գերեզման մի կայ, որ ի մէջն երեք զանգ կայ, և զինքն առ և տար ծախէ և քեզ ապրանք արա»։

Եւ նա առեալ տարաւ ի ծախել։ Եւ առեալ սառաֆն, և շինեց ոսկի շիշ մի և էած ի մէկին ականջն, նա ի մէկայլ ականջն ի դուրս ելաւ։ Եւ մէկայլին էած, և ամենևին ո՛չ մտաւ, և զայն այլ ի բաց ընկեց։ Եւ դարձեալ ի մէկայլին էած. և գնաց մինչև ի կէսն։ Եւ ասաց. «Այսոր ինչ կուզես գին՝ կուտամ»։ Եւ երետ տասը հազար դրամ և ասաց զխասլիաթն, թէ՝ «Այն որ շիշն ի մէկալ դեհն ելաւ, նա ամենևին բան ի յականջն չէ՛ պահել, ի մէկ դեհն ի ներս մտել էր, ի մէկայլն ի դուրս ելնել է։ Եւ մէկայլն ամենևին բանի տեղիք չէ՛ տվել։ Եւ այս մէկալիս գին չկայ, որ զինչ բարի բան է լսել, զամէնն պահել է։ Եւ այս զանգս ամենայն ցաւոց դեղ է»։ Եւ այս ճըշմարիտ եղած է[2]։

Զրույցը տարածված է և բանավոր, առանց սկզբի մասի. գերեզմանափորը գտնում է երեք զանգ, վերոհիշյալ տարբեր հատկանիշներով։ Իմաստունը մեկնում է, թե՝ Այն, որ երկու ականջն էլ ծակ է, ոչինչ չի սովորել, մի ականջով լսել՝ մյուսով դուրս է հանել։ Երկրորդը դարձյալ չի սովորել՝ նրա երկու ականջն էլ փակ են, ոչինչ ներս չի մտել։ Իսկ երրորդը խելոք է, ամեն ինչ լսել է ու սովորել. պետք է այդպես լինել[3]։

Սակայն կան զրույցներ, որոնց և՛ նյութը և՛ գաղափարը հայկական է, այլև բնորոշ միայն հայ ժողովրդի քաղաքական ու գաղափարական աշխարհըմբռնմանը։ Դրանք միջնադարի բուն հայկական կամ տեղական զրույցներն են։ Զրույցների հայկական լինելը որոշելում ամենից առաջ օգնում են նրանց թեմաներն ու բովանդակությունը՝ հայ կյանքին ու իրականությանը, վիճակին կամ

---

[1] Տե՛ս „Индийские сказки", էջ 95։

[2] Ձեռ. № 6974, էջ 111ա։ Տե՛ս Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 217։

[3] Բանավոր տարբերակը՝ այս բարոյախոսությամբ, պատմել է մայրս՝ երզընկացի Հռիփսիմե Սրապյանը։

վայրին բնութագրական լինելը: Այդպիսի պարագաներում անկասկած է դառնում նրանց հայկական, ազգային բնույթը: Կան և այնպիսի գրույցներ, որ պահպանել են նաև հայկական տեղանուններ ու անձնանուններ՝ Վան, Բջնի, Ամբերդ, Խաչենք, Երզնկա, Եկեղյաց գավառ, Տուաց գավառ, Մեծոփա վանք, Սեթ, Խաչիկ, Հակոբ, Մխիթար, Ներսես, Սարկավագ, Բերդակցի, Խարբերդցի և այլն:

Հայկական և տեղայնացված գրույցների խոշոր շարքեր կապվում են Մխիթար վարդապետի, Հովհաննես Գառնեցու և Վարդանի անունների հետ[1]: Նրանք համապատասխանել են այդ հեղինակների ստեղծագործություններում հարուցված հարցերին, որդեգրվել, բերվել քարոզներին միահյուսված և ձեռագրից-ձեռագիր ու դարից-դար անցել: Նրանք հարստացրել են հայ միջնադարյան գեղարվեստական գրականությունը, իրենք էլ դառնալով այդ գրականության անբաժանելի մասը, այն ամբողջացնող մի հատված: Նրանք պարզում են, թե ի՞նչ հարցեր են հուզել հայ հասարակությանը ո՛չ միայն ողջ միջնադարում, այլև առանձին ժամանակահատվածներում, ի՞նչ մակարդակի վրա է գտնվել երկրի հասարակական, տնտեսական ու մշակութային կյանքը, զարգացման ի՞նչ աստիճաններ է ապրել ու ի՞նչ չափերի է հասել գրավոր խոսքը, լեզուն, ոճը, գեղարվեստական մտածողությունը և այլն:



Բուն հայկական գրույցները բաժանվում են երկու խմբի՝ կրոնական և աշխարհիկ: Առաջին խմբի գրույցների մեջ շեշտն ավելի դրված է հավատի ու դավանության հետ կապված հարցերի վրա, իսկ երկրորդում՝ աշխարհիկի: Սակայն գրույցների այդ երկու խումբն էլ գրված են միևնույն դիտումնավորությամբ և տարբեր ճանապարհներով ծառայում են միևնույն վերջնանպատակին՝ ըստ էության քաղաքական, պետական, հայրենասիրական գաղափարների: Այս հայեցակետով ավելի նպատակամետ են կրոնականները, որոնց մեջ նշանակալից տեղ են գրավում հայ ականավոր եկեղեցականների վարքերի հետ կապված գրույցները: Սրանք գալիս են շատ հնուց և քրիստոնեության մուտքի հետ սկսվելով՝ հասնում մինչև ուշ միջնադար: Ի տարբերություն առհասարակ քրիստոնեա-

[1] Տե՛ս ձեռ. № № 1115, 1408—1409 թթ. էջ 206ա, 2496, էջ 348ա, 352բ, 360բ, 361բ, 364բ, 4251, ԺԶ դար, էջ 9ա, 52բ, 6686, ԺԷ դար, էջ 291բ, 8727, էջ 265ա և այլն: (Այստեղ ուղղակի բացատրված է, թե՝ «Ի Հարանց վարուց բանք պիտանիք՝ ի Վարդան վարդապետէ ասացեալ):

կան եկեղեցու սուրբ հայրերի վարքերի, որոնց մեջ գերակշռող տեղ են գրավում կենցաղային, բնախոսական և հոգեբանական, բարոյա-խրատական հարցեր, հայ եկեղեցու հայրերի վարքը վերարտադրող գրույցները գերազանցապես արծարծում են ժողովրդի քաղաքական ճակատագրի հետ առնչվող խնդիրներ։ Զրույցներում ո՛չ մի խոսք չկա գործող անձանց հոգեկան ու բնախոսական անհավասարակշռության, տատանումների, երկընտրանքի, ներքին պայքարի կամ անկումների մասին։ Իրենց ամբողջ էությամբ՝ հոգով, մտքով ու գործով նրանք ապրում են մի գաղափարի տրված։ Նրանց անձնական կյանքը ևս, մինչև վերջին շունչը, նվիրումի ու մաքառման խոսուն օրինակ է։ Հիշենք Ներսես Պարթևին, Հովհան Մայրավանեցուն, Հովհան Օձնեցուն, Գրիգոր Վկայասերին, Հովհաննես Սարկավագին, Հովհաննես Գառնեցուն, Հովհաննես Երզնկացուն և այլ նշանավոր կաթողիկոսների ու վարդապետների մասին մեզ հասած գրույցները[1]։

Կրոնա-դավանաբանական գրույցները, որ մեծ տարածում են գտել XIII—XIV դարերում, հասնելով մինչև XVIII դար, խստորեն պայմանավորված են ժամանակների հասարակական-քաղաքական կյանքով ու այդ կյանքի ծնունդն են։ Առաջին հայացքից նրանք ընկալվում են որպես լոկ կրոնական ստեղծագործություններ, գրված հավատ ու երկյուղածություն ներշնչելու, ավետարանական որևէ կանոն հաստատելու կամ քրիստոնեական վարդապետություն քարոզելու դիտավորությամբ, բայց իրականում հեռու են դրանց սոսկ վերացական էությունից։ Նրանց խորհուրդը եղել է շատ ավելի խորն ու հեռաթափանց, ծագել ու ծնվել է երկրային փոխհարաբերություններից ու պատմական իրադրություններից և հետապնդել շատ ավելի կոնկրետ, նյութական ու այսաշխարհային նպատակ։ Սրա մեջ առաջնայինն ու հիմնականը եղել է հակամարտությունն ընդդեմ օտար եկեղեցու և օտար կրոնների՝ հանուն հայրենիքի, հանուն անկախության, գոյության ու ազգապահպանության։ Այս գրույցներում գերիշխում են կրոնա-քաղաքական, իսկ պատմական-աշխարհիկ գրույցներում՝ պետական-քաղաքական հակամարտությունները։ Թե՛ մեկում և թե մյուսում՝ հիմքը իրական կամ պատմականն է։ Ժամանակաշրջանի բնութագրումն օգնում է ցույց տալու, որ նրանք միշտ եղել են հայ ազգային ինքնատիպ կյանքի ու աշխարհայեցության արտացոլումը։

---

[1] Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, Պատմություն, էջ 19, 67, 70, 96, 113, 348 և հտ., Ղ. Ալիշան, Յուշիկք, հատ. Բ, Վենետիկ, 1869—1870, էջ 490 և հտ.։

Իր դարավոր պատմության ընթացքում հայ ժողովուրդն հաճախ է կանգնել հայրենիքն ու ազգային ոգին կորցնելու վտանգի առջև և ամեն անգամ գերագույն ճիգեր է թափել, միջոցներ չի խնայել փրկելու իրեն, ազատվելու կործանումից։ Այդպիսի ծանր իրադրության մեջ էր նա XIII—XIV դարերի մոնղոլական արշավանքների շրջանում ևս, երբ հայրենի հողին իշխում էր օտարը և ժողովրդի ուսերին դրվել էր թուրք-թաթարական տիրակալության դաժան լուծը։ Մոնղոլական բռնապետության վարած ծանր հարկային քաղաքականության հետևանքով տնտեսապես քայքայված ու բզկտված հայությունը ենթարկվում էր նաև կրոնական ու ազգային հալածանքի, մահմեդականացման վտանգի։ Ֆիզիկական ոչնչացումից փրկված, թե՛ իր իսկ բնաշխարհում ապրող և թե՛ օտարություն գաղթած ժողովրդին այժմ էլ սպառնում էր բարոյական ու հոգևոր մահը՝ վերասերումն այլ ազգության, այլ հավատի կամ դավանության։ Երկիրը գրաված մոնղոլ զորաբանակները ո՛չ միայն հիմնահատակ էին անում հայկական վանքերն ու եկեղեցիները, այլև անլուր տանջանքներով նահատակում իրենց ազգության ու հավատի մեջ հաստատ մնացող քրիստոնյաներին՝ թե՛ կրոնավորներին, թե՛ աշխարհականներին։ Ազգությունը փրկելու, երկիրը օտար նվաճողներից ազատելու համար հայ ֆեոդալական տների ներկայացուցիչները ելք էին որոնում՝ օգնություն խնդրելով անգամ Հռոմի պապից։ Սակայն պապն ուներ իր ծրագրերն ու նպատակները, որոնցից մեկն էր հենարան ստեղծել Արևելքում՝ հայ եկեղեցին իրեն ենթարկելու միջոցով։ Առիթից օգտվելով, պապն առաջարկում էր դավանափոխություն, թեև ո՛չ բացարձակ ճանապարհով։ Պետք էր միայն որոշ զիջումներ անել կաթոլիկ եկեղեցուն, սակայն, ըստ էության, ընդունել Վատիկանի գերիշխանությունը։ Այս նպատակով պապը Հայաստան էր ուղարկում լատին քարոզիչներ, որոնք միարարական տրամադրություններ էին հրահրում ու համախոհներ հավաքում իրենց շուրջը։

Իր ֆիզիկական ու հոգևոր գոյությունը պահպանելու նպատակով հայ ժողովուրդն ստիպված էր դարեր շարունակ համառ ու երկարատև գաղափարական պայքար մղել այլահավատության ու այլադավանության, այս դեպքում՝ մահմեդականության ու կաթոլիկության դեմ։ Այդ պայքարը կամ մաքառումը տարբեր երանգներով շարունակվել է մինչև ուշ միջնադար[1], այլև մինչև այսօր՝

[1] Տե՛ս Պատմութիւն Առաքել վարդապետի Դաւրիժեցւոյ, Վաղարշապատ, 1884, էջ 405 և հտտ., Զաքարեայ Սարկաւագի Պատմագրութիւն, հտ. երկրորդ, Վաղարշապատ, 1870, էջ 20 և հտտ.։

Սփյուռքում։ Նրա կարևորագույն և հիմնական գենքերից մեկն է եղել գեղարվեստական գրականությունը, ուստի և բնական է, որ այդ գրականության նյութը լիներ հենց ա՛յդ իրականությունն ու նրան հուզող հարցերը։

Այս խսկ առումով մեծ հետաքրքրություն են ներկայացնում հայկական զրույցները, որոնք նույնությամբ չեն կրկնել հասարակական-քաղաքական կյանքի երևույթները, այլ արտահայտել են վերաբերմունք, մոտեցում, կշռադատել ստեղծված իրավիճակն ու հետևությունններ արել, որով և իրենց ուրույն դերն են ունեցել ժողովրդի հոգևոր կյանքը, գաղափարական աշխարհը, միտքն ու գիտակցությունը կազմավորելու գործում։ Այդ է պատճառը, որ միջնադարի ձեռագրերում պահպանված հայկական զրույցների համար ամենից ավելի հատկանշական է հայրենասիրությունը, հայրենասիրական գաղափարը, որ հիմնվում, խարսխվում է ազգի ու լուսավորչական դավանանքի պահպանման՝ ազգապաշտպան քաղաքականության վրա, և երևան է գալիս թե՛ կրոնական զրույցներում՝ կրոնական շղախով, թե՛ աշխարհիկ կամ պատմական զրույցներում՝ մաքառման ու հերոսացման մղող ոգեշունչ գաղափարներով։

Կյանքի, ստեղծված իրադրության ծնունդն ու արտահայտությունը լինելով, զրույցների մի մասն ունի հենց կրոնա-դավանաբանական բնույթ և այդ պայքարի առանձին կողմերը անուղղակի դրսևորելու միջոցով է, որ շոշափում է ժամանակի հրատապ հարցերը։ Դրանք գերազանցապես հրաշապատում զրույցներ են, որոնց մեջ քննության են առնվում հավատի, դավանության ու ազգության հետ առնչվող հարցեր և լուծում կամ պատասխան են ստանում տեսիլների միջոցով[1]։ Այս զրույցների մեջ առաջ է քաշվում, օրինակ, այն խնդիրը, թե ում կրոնն է ավելի ճիշտ ու լավ՝ հայերի՞նը, թե՞ պարսիկներինը. և առավելությունը տրվում է հայերին՝ քրիստոնեությանը[2]։ Մի ուրիշ զրույց որոշում է, թե «ո՞րբ են յազգացս քրիստոնէից ընդունելի աստուծոյ»[3]։ Տեսիլը պարզում է, որ աստծու մոտ ամենապատվավոր տեղում նստած է Գրիգոր Լուսավորիչը։

---

[1] Քրիստոնեական գրականության մեջ հավատի հետ կապված նման զրույցներում վեճը գնում է քրիստոնեայի ու հրեայի (երբեմն՝ մահմեդականի) միջև և տեսիլի կամ հրաշքի միջոցով լուծվում հօգուտ քրիստոնեության։ Տե՛ս զրույցներ լատինական, հունական, սլավոնական և այլն, „Заметки по литературе и народной славесности ак. А. Н. Веселовского", „Записки императорской АН" ժողովածուում, т. 45, СПб, 1883, էջ 14 և հաջ.։

[2] Տե՛ս ձեռ. № 1115, էջ 208բ և հաջ.։

[3] Տե՛ս անդ, էջ 206ա։

*Աստված դատաստան է տեսնում ա՛յն մարդկանց հետ, որոնք փոխելով իրենց դավանանքը, դարձել են հոռոմ, ֆռանկ, ասորի. այդպիսիներին նա թույլ չի տալիս և ո՛չ մի ազգության հետ միանալ. այստեղից էլ եզրակացություն. պետք է հաստատ մնալ սեփական հավատի ու ազգության մեջ, չփոխել դավանանքը: «Երանեցի զազգն հայոց, որք կացին ի կանոնս խրատու սրբոյն Գրիգորի», եզրափակում է իր միտքը զրուցագիրը՝ Հովհան Գառնեցին: Մի երրորդ զրույցում աստված երեք հին ազգերից՝ հոռոմ, ֆռանկ ու հայ, դավանությամբ ու կրոնով առավելություն է տալիս հային*[1]*: Պատմըվում է և մի ուրիշն ու եզրակացվում, «եթէ ճշմարիտ է կրաւնքս մեր»*[2]*: Նույն ձեռագրի մի այլ զրույց հաստատում է հայ եկեղեցու տոների ճշմարիտ ու աստվածատուր լինելը*[3]*: Եվ այս տիպի զրույցները, որ ո՛չ միայն բավականաչափ տարածված են, այլև ունեն իրենց բազում տարբերակները զանազան ձեռագրերում, ինքնանպատակ, սոսկ հրաշքներ պատմելու համար չէին ստեղծված, այլ՝ գոյության ու ազգային անկախության համար պայքարի մեջ մտած հայ ժողովրդին արդարություն, ճշմարտություն, հաղթանակի մեծ կամք ու հավատ ներշնչելու, քանի որ թե՛ պատերազմների և թե գաղափարական պայքարի ալեծուփ ծովում փրկության և ժողովրդի կենսունակության պահպանման ամենահուսալի խարիսխը հայրենին ու հայրենականը հաստատող այդ ուժն էր:*

*Այս առումով մի հետաքրքիր ու գրեթե իրեն ժամանակակից դեպք է նկարագրում Գանձակեցին, ցույց տալով, թե հայ լուսավորչական հավատի ճշմարտությունը վկայող պատմությունները հաղթության ու հպարտության ինչպիսի՛ զգացումով են համակում և՛ ժողովրդին և՛ իշխաններին, ու զորացնում նրանց*[4]*:*

*Սույն հանգամանքը նկատի ունենալով է, որ հայոց հավատի ճշմարտության քարոզներ են կարդացվում նաև բացարձակ մերկությամբ: Ահա մի զրույց, որ, ըստ ձեռագրի հիշատակարանի, թարգմանել է Վարդան վարդապետը՝ ասորերենից. Կիլիկիայի Տորոս լեռան վրա բնակվող մի ծերունի, իր մահվան օրերին, աշակերտներին ասում է. «Գրեցէ՛ք, որդեա՛կք, և առաքեցէ՛ք ընդ ամենայն երկիր, զի յետ ԻԴ (=24) ամի լինի ժողով և ուրանան զՔրիստոս*[5]*: Փախի՛ք և դուք և գնացէք ի Մեծն Հայք և յԱղէքսանդր Եգիպտոսի,*

---

1 *Տե՛ս ձեռ. № 1115, էջ 210ա:*

2 *Տե՛ս ձեռ. № 2496, էջ 355բ:*

3 *Տե՛ս անդ, էջ 354բ:*

4 *Տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *Պատմութիւն, էջ 212 և հտ.:*

5 *Խոսքը Քաղկեդոնի ժողովի մասին է:*

զի անդ մնա ուղղափառութիւն և անտի՛ աճէ յարևելս և ի Միջագետս և փառաւորի Քրիստոս ի նոցունց»[1]։

Որքան էլ որ անուններ ու հեղինակներ են հիշվում, այնուամենայնիվ հաստատել դրանց բոլորի ճշգրտությունն ու դրույցների գրության ժամանակը շատ դժվար է, մանավանդ որ նրանց մեջ տեղ են գտել անցյալին վերաբերող պատմություններ ևս։ Վերջիններս կարող էին ստեղծված լինել ոչ անպայման միջնադարում, այլև հին դարերում ու վերակենդանանալ ըստ ժամանակի ոգու։ Այսպես, օրինակ, Գանձակեցին վկայակոչում է Ներսես Պարթևի մասին IV դարում գրված մի զրույց, որ պետք էր մաքառման հավատ և ուժ ներարկելու համար[2]։ Ուրիշ զրույցում վկայակոչվում է Ներսես Կլայեցին և այլն[3]։

Նման զրույցներ նկատի ունենալով Գանձակեցին ասում է. «Զայս պատմեաց ճշմարտախոհ այրն (Վարդան վարդապետ— Ա. Ս.) ի հաստատութիւն ուղղափառ հաւատոյս»[4]։ Նա բերում է և ուրիշ զրույցներ Հովհան Մայրավանեցու, Հովհան Գառնեցու, կամ ասենք Մորիկ կայսեր մասին, որ անշուշտ պետք է հորինված լինեն մինչև պատմիչը՝ VI—XIII դարերում, սակայն ե՞րբ, հնարավոր չէ ճշգրիտ որոշել[5]։

Ինչպես արդեն ասացինք, զրույցների որոշ շարքերի հեղինակ մասնավորապես հիշվում են Հովհաննես Գառնեցին, Վարդան [Արևելցին] և Մխիթար վարդապետը։ Սակայն դժվար է պնդել, թե նրանք միայն հեղինակներ են և ոչ նաև վերապատմողներ։ Հայտնի է, որ շատ վերագրումներ երբեմն հետագա դարերի են, կամայական, ըստ պատշաճի (ըստ նյութի), ինչպես այդ ցույց տրվեց Հովհաննես Երզնկացու օրինակով (տե՛ս էջ 30—31)։ Հայտնի է նաև, որ շատ վերագրումներ էլ դիտումնավոր են, ցանկացած գաղափարն անառարկելիորեն, այլև անքննելիորեն ընդունելի դարձնելու նպատակով։ Այդպիսի դեպքերում զրույցները վերագրվում են մեծ հեղինակությունների, պատահում է նույնիսկ երկու հեղինակի։ Նման օրինակներ կան Հովհաննես Գառնեցու և Վարդան Արևելցու վերաբերմամբ։

---

1 *Ձեռ. № 6686, էջ 283ա։*

2 *Տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *Պատմություն, էջ 20 և հետ.։ Հմմտ.* Փաւստոսի Բուզանդացւոյ *Պատմութիւն հայոց, ի չորս դպրութիւնս,* Վենետիկ, 1832, էջ 79 և հետ.։

3 *Տե՛ս ձեռ. №2335, էջ 161ա—բ։*

4 Կիրակոս Գանձակեցի, *Պատմություն, էջ 351։*

5 *Զրույցները տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *Պատմություն, էջ 54, 348, 46, 49։*

«Վասն սորա (Հովհ. Գառնեցու—Ա. Ս.) բազումք բազում ինչ պատմէին, բայց առաւել հարազատն մեր և սքանչելին Վարդան վարդապետն, որոյ բանքն արժանի էին հաւատարմութեան, զի նորա սիրով կապեալ էին ընդ միմեանս։ Զի մեք մարմնով զնա ոչ տեսաք վասն հեռաւորութեան, նա ի մխիթարութիւն մեզ պատմեաց ինչ ի վարուց նորա մանաւոր և ասաց թէ՝ «Ինքն իսկ Յովհաննէս ասաց մեզ...» և այլն[1]։

Զրույցի նպատակն է հաստատել հայոց ուղղափառ հավատը. «Վկայէ այս տեսիլ և ցուցմունք հրաշիցս՝ հայոց անսուտ տօնին, որ ասեմք զօր աւետեաց սուրբ կուսին յերեսուն արեգի, և ապրիլի եօթն, և հնգետասան նիսանու, և ո՛չ որպէս հակառակին այլ ազգք, և մանաւանդ յոյնք՝ ասելով ի քսան և հինգն մարտի՝ անխորհուրդ»[2]։

Այստեղ միաժամանակ իրենց աղբյուրի խոսքն են ասում և՛ Հովհ. Գառնեցին և Վարդան Արևելցին։ Հնարավոր է, սակայն, որ Արևելցու նման մի ներգործուն վարդապետ, այնուամենայնիվ, դիմած լինի Գառնեցու հեղինակությանը և իր խոսք-զրույցը վերագրի նրան. «Զայս ի մեր վարդապետէն լուաք մեք», որ է Հովհաննես Գառնեցին[3]։

Սակայն ինքը Գառնեցին անգամ զրույցները պատմել է «ի դէմս այլոց, վասն անձին խոնարհութեան, զի մի՛ գիտասցեն, թէ և ինքն ընդ նոսա էր»[4]։

Բոլոր դեպքերում ակներև է, որ և՛ Գառնեցին և՛ Արևելցին զրույցների որոշ շարքերի հեղինակներ են ու վերապատմողներ։

Վարդանը գրում է. «Աբեղայ մի ծեր՝ բջնեցի, անունն Յովանէս, պատմեաց ինձ և ասէ...», կամ՝ «Ես գիտեմ ի մեր ժամանակս իմ հասակակից աբեղայ մի Յանբերդոյ երկրին, ի վանքն, որ Տեղեր կոչեն, Սարկաւագ անուն» և պատմում է սրա մասին, որպես ականատես. «Սարկաւագ վարդապետն ասացել էր...», «Պատմեաց մեզ սուրբ և երջանիկ հայրն մեր...» և այլն[5]։ Ուրեմն նա պատմել է իր տեսածն ու լսածը, որ նոր, թարմ դեպքեր են, ինչպես բնորոշում է ինքը. «Միշտ կամիմ գիտակ գոլ զձեզ նոր իրաց եղելոց» և պատմում զրույցը։

---

1 Կիրակոս Գանձակեցի, *Պատմութիւն*, էջ 349։

2 Կիրակոս Գանձակեցի, *Պատմութիւն*, էջ 350։ Գանձակեցին բերում է ևս մի քանի զրույց, որոնք բավականաչափ տարածված են ձեռագրերում, անկախ պատմությունից, դարձյալ որպես Գառնեցունը։

3 Տե՛ս ձեռ. № 2496, էջ 352բ, 354բ, 364բ և այլն։

4 Կիրակոս Գանձակեցի, *Պատմութիւն*, էջ 355։

5 Տե՛ս ձեռ. № 2496, էջ 360բ, 361բ, 362բ, 364բ։

Վարդանը հիշվում է նաև որպես թարգմանիչ.

«Թարգմանեցաւ սասրոց ի մերս լոյս վարդապետին Վարդանայ աշխատութեամբ» և Իշաւխ անուն սասրու մասնակցութեամբ[1]։

Ջրույցների հեղինակ է հիշվում և Մխիթար վարդապետը։

Անշուշտ կրոնա-դավանաբանական զրույցների մի մասն ստեղծվել է Գառնեցու, Արևելցու և ուրիշ վարդապետների ձեռքով, հենց միջնադարում։

Մի քանի ձեռագրերում պահպանված տարեթվերը վկայում են, որ դրանք գրված են մոնղոլական արշավանքների և հայ ու կաթոլիկ եկեղեցիների միջև մղվող վերոհիշյալ դավանաբանական մարտերի տարիներին[2], երբ մեծ անհրաժեշտություն էր առաջացել ժողովրդին է՛լ ավելի հաստատ պահելու իր հավատի, կրոնի ու ազգության մեջ, որպես հայրենիքի ու հայրենասիրության պահպանման ամենաանհերկքայելի երաշխիք։

Հայ ժողովրդի գաղափարական կյանքի պատկերումը լինելուց բացի, այդ զրույցներն արժեքավոր են և նրանով, որ արտացոլել են ժամանակի պատմական կոնկրետ իրադարձությունները ևս՝ պատերազմն ընդդեմ ազգին նետողաց, գերեվարություններ, տեղահանություններ և այլն։ «Վասն մեղաց մերոց գերեալ եղև երկիրս մեր յանաւրէն ազգէն նետողաց։ Տարան և զորդեակս իմ ի Խուժաստան։ Եւ մեք փախաք և գնացեալ թագաք, և իբրև դարձաք ես և մայր սորա՝ լացաք զորդեակս մեր»,—պատմում է զրույցներից մեկը, ականատեսի բերանով[3]։

* *
*

Ժողովրդի գոյությանն ու ազգային անկախությանը վերաբերող զրույցների մեջ արժեքավոր տեղ են գրավում պատմական բնույթ կրող ստեղծագործությունները, որոնք հայրենասիրական գաղափարներ են սերմանում ո՛չ անպատճառ կրոնա-դավանաբանական, այլ աշխարհիկ թեմաների. վերհանման միջոցով։ Սրանց աղբյուրը հայ ժողովրդի պատմությունն է, հարուստ այնպիսի հերոսներով, որ անձնազոհության, հաճախ վկայության հասնող սիրով ու նվիրվածությամբ ճակատել են ընդդեմ թշնամու՝ մահը գերադասելով ստրկությունից։ Հետաքրքիր է, որ սրանց մեջ ևս գոյություն ունի նույն օրինաչափությունը, ինչ տեսանք կրոնա-դավանաբանական զրույցները քննելիս։ Այստեղ ևս հետադարձ հա-

---

1 Ձեռ. № 6686, էջ 291բ։

2 Տե՛ս ձեռ. № № 1115, 2496 և այլն։

3 Ձեռ. № 2496, էջ 365ա։

յացք է դցվում դեպի պատմական անցյալը. վերածնվում են նախնիների հանճարն ու քաջությունը գովերգող, հանուն հայրենիքի ու ազգության՝ մաքառման հերոսությունը ցուցադրող ու դրա անհրաժեշտությունը որպես օրվա պահանջ շեշտող, պարավիճակին համապատասխանող հին պատմությունները, նշանավոր դեպքերն ու գաղափարամարտությունները։

Ժանրային առումով այս գրույցները նույնպես գալիս են հնուց։ Կրկնվում ու վերապատմվում են հները, ծնվում նորերը։ Միջնադարի բոլոր պատմիչների մոտ, ներառյալ նաև Զաքարիա Սարկավագը, բերվում են և՛ անցյալի և իրենց ժամանակների պատմական հերոսամարտերն ու քաջերի սխրանքները վերարտադրող գրույցներ։ Պետք է նկատել, սակայն, որ սրանք ավելի գրուցատիպ պատմություններ են, պատմական իրադարձությունների փոքրիկ ճյուղավորումներ ու շեղումներ, իրական դեպքերի դեպադարձումներ, քան բուն առումով զրույցներ։ Զաքարիա Սարկավագը, անելով Ջահան-Շահից մինչև Շահ-Սաֆին և ապա մինչև Ֆարղալի խանը ընկած ժամանակահատվածի պատմությունը, այդպես էլ գրում է. «Այլ և զոր ինչ և դուք գիտէք, դուք ևս գրեցէ՛ք, և զկնի ևս ընկալարուք զսեաւն, և շարադրեցէք բաս դեպեցկադունիցն կարգի»։ Ապա խնդրում է, որ իրեն չպախարակեն՝ «Վասն զի ա՛յս է կարն իմ»[1]։ Մի ուրիշ տեղ դարձյալ կրկնում է. «Չէ՛ պարտ զանց առնել վասն իրացն անցելոց, այլ պատմել բստ մերում կարեաց, և բստ լրոյ համբաւոյն»[2]։

Բանավոր աղբյուրներից գրի առած, բայց հեղինակի ակտիվ միջամտությամբ ու շեշտված անհատականությամբ պատմըված զրույցի մի օրինակ բերենք Առաքել Դավրիժեցուց։ Վարագա վանքի կողոպտման պատմությունը շարադրելիս, նա կատարում է գեղարվեստական շեղումներ, մանրամասնելով «չար» և «անիծեալ» Ջոմարի «սատակման» պատմությունը։

Ջոմարն իր ձիով պաշարման մեջ էր ընկել։ Փրկության միակ ելքը ծովն էր։ Եվ Ջոմարն «հեծաւ ի վերայ ձիոյն և կայեալ զպախուց երիվարին, քաջագոյն պատրաստութեամբ զսպեաց զինքն՝ և ուղղեալ վարեաց զերիվարն ի մէջ ծովուն. և յորժամ վարեաց զերիվարն ի մէջ ծովուն, զառաջինն խորասուզեալ ընկղմեցաւ, և զրեթէ եհաս մինչ ի յատակս ծովուն. քանզի բազում ժամս անյայտ լեալ ո՛չ երևեցաւ։ Եւ իբրև անցին ի վերայ պահք ինչ, տեսին աքքն, որք զերան կային (այստեղ՝ քարանձավ—Ա. Ս.) պահէին, զի ի

[1] Զաքարեայ Սարկաւագի Պատմագրութիւն, հատ. առաջին, էջ 45։

[2] Անդ, էջ 26։

հեռու վայրի ելին յերեսս ջրոյն երիվարն և Զօմարն, և յայնքան հեռի վայրի ելին և երևեցան, մինչ զի թֆանք ոչ հասանէր, քանզի կամեցան ձգել թֆանք և սպանանել զնա, և զի ոչ հասանէր, վասն որոյ և ո՛չ ձգեցին։ Եւ բաղում զօրութեամբ արժանին այն երիվար բարձեալ զվերելեակն իւր և տանէր՝ ոչ թէ իբրև զցամաքային կենդանի, այլ իբրև զջրային կենդանի գնայր լողալով, շնչէր, փնչէր. փանգայր, զանբաւ խորութիւն ջուրց ծովուն յաղթամբ հատանէր, և գնայր լողալով և ելեալ եհաս յեզր ծովուն և ել ի ցամաք ի կողմանս Ոստանայ։

Եւ յորժամ ել Զօմարն ի ցամաք, ոչ գիտէր զսահմանս և զճանապարհս, կամ զցամաքային և զաղմային տեղիս վայրացն, և սատագնալէ երկիւղին վարեաց զերիվարն հանդէպ երեսացն և գնայր, ո՛չ թէ ի վերայ երկրի այլ ի վերայ օդոյ...»[1]։

Այսպես շարունակվում է Զոմարի էջերի առաջ սկսված պատմությունը և ավարտվում հետևյալ բացատրականով.

«Արդ՝ սատակումն սղծոյն Զօմարին այսպէս եղև, որպէս և պատմեցաք. ժամ է մեզ այսուհետև զսատակումն Սալէյման բէկին, և զդարձումն սրբոյ Նշանին պատմել ի Վանայ քաղաքն. քանզի և պատմութիւնս մեր վասն սրբոյ Նշանին է, և ոչ վասն ամբարիշտ սրանց»[2]։

Եվ Դավրիժեցին ճյուղավորում է Վարագա վանքի կողոպտման պատմությունը զուգահեռ զրույցներով, պահպանելով նրանց բանավոր տարածմանն առանձնահատուկ գծերը, ժողովրդական ոճն ու պատկերավորությունը, ավելացնելով նաև իրենը։ Ուշագրավ է, թե ինչպիսի անաչառությամբ ու անզուսպ հիացքով է նկարագրում նույնիսկ թշնամու գովեստի արժանի կողմերը, ավելին. անգամ ցա՛վ է զգում նրա կարճամտության ու սխալի համար. «քանզի ո՛չ էր այր խորագէտ, այլ պարզամիտ, վասն որոյ հաւանեցաւ» դավադիրների սուտ երդումներին,— ասում է նա[3]։

Ինչպես հին, այնպես էլ միջին դարերը հարուստ են վաղեմի ու հետագա ժամանակների վերաբերյալ բազում զրույցներով, որոնք, սակայն, ձեռագրերում լայն տարածում չե՛ն գտել։ Նրանց մի մասը գոյատևել և նորերի հետ մեկտեղ պահպանվել է պատմագրական ու ժամանակագրական երկերում, հենքի մեջ մտած, մեծ մասամբ շղթայի անանջատելի օղակ դարձած, և շատ քիչ է դուրս եկել

---

[1] Պատմութիւն Առաքել վրդ. Դաւրիժեցւոյ, էջ 393։

[2] Անդ, էջ 395։

[3] Անդ, էջ 397։

պատմության համակարգությունից[1]։ Կրելով աշխարհիկ բնույթ, այդ զրույցներն, հավանաբար, ավելի տարածվել են բանավոր քան գրավոր. մի երևույթ, որ բնութագրական է չափածոյի համար ևս, և օրինաչափական է՝ առհասարակ։ Հիշենք թեկուզ միայն հայրեններ ի գոյությունը մեր նշանավոր տաղերգուներից դեռևս շատ առաջ, որ սակայն գրավոր լայն տարածումն են գտել նրանցից շատ և շատ հետո՝ XV—XVI դարերում։ Պատճառն, անշուշտ, միջնադարի դեռևս իշխող կրոնական ոգին էր, որ ավելի դանդաղ և ուշ էր տեղի տալիս, քան բուն իրականությունը, ուր արդեն հաղթել էր նորը, կենսունակը։ Այստեղ չենք կարող չհիշել Վ. Փափազյանի անչափ ճիշտ դատողությունները՝ թեև արված ուրիշ առիթով.

«Որ հայերի մեջ, նույնիսկ հեթանոսական դարերում— և գուցե ավելի շատ ա՛յդ իսկ դարերում— եղել են առասպելներ, այլաբանական զրույցներ, ասացվածքներ ու առակներ, այդ մասին ապացույցներ կան ժողովրդական բանահյուսության և նույնիսկ մեզ հասած հին գրականության մնացորդների մեջ»։

«...Եվ եթե մեզ հասած հայ գրականության մեջ շատ հազիվ են պատահում առակներ ու առհասարակ աշխարհային նյութերի մասին գրվածքներ— պատճառը ո՛չ թե ժողովրդի ոգին է, այլ միմիայն ա՛յն կրոնա-սխոլաստիք ուղղությունը, որով կաշկանդված է եղել հայ գրականությունը տասնյակ դարեր շարունակ»։

«...Ժողովուրդը շարունակել է բանավոր կերպով ծաղկեցնել, բերնից-բերան տեղափոխել ու սերունդից-սերունդ անցկացնել իր աշխարհիկ ստեղծագործությունը, որովհետև նա չի կարողացել կերակրվել, հաճույք ստանալ կրոնական վերացական բանաստեղծությունից»[2]։

Եվ այդ տևել է բավական երկար ժամանակ, հասնելով մինչև ուշ միջնադար։ Այդ են վկայում Առաքել Դավրիժեցին ու Զաքարիա Սարկավագը ևս, որոնք շատ հաճախ նշում են, թե իրենց պատմությունններն ի լրո են (անշուշտ ոչ բոլորը). «Այլ և ասացին ոմանք, թէ խաշնարած ոմն հովիւ...», «զոր ծերք և վաղեմի մարդիկք պատ-

[1] Զաքարիա Սարկավագը մի տեղ ուղղակի այդպես էլ նշում է. «Որ ինչ վասն Մովսէս կաթուղիկոսի՝ գրեալ է Առաքել պատմագիր ի ծննդենէն մինչև ի մահ նորա։ Այլ մեք (ես) զոր ինչ լուաք ի Յակովբ կաթուղիկոսէն վասն նորա, աստէն բացահայտեցից». և վերապատմելով հինը՝ ավելացնում է նորը՝ իր իմացածը։ Տե՛ս Պատմագրութիւն, հատ. առաջին, էջ 53։

[2] Վ. Փափազյան, Պատմություն հայոց գրականության, Թիֆլիս, 1910, էջ 205, 206, 206—207։

մնցին» պատմությունների մի շարքի համար՝ «բայց պատմողքն ասացին թէ»[1], «սակաւք են գիտօղք ժամանակին՝ որք ասէին զամենայն ստուգութեամբ։ Սակայն զոր ինչ լուեալ եմ, զայն գրեմ», «Զոր ինչ պատմութիւն՝ որ լուեալ եմ՝ զայն գրեմ. բայց յետ և առաջ լինելն և զթուականն ոչ գիտեմ. և որք ընթեռնուք՝ մի՛ մեղադրէք...։ Էր այր մի ծեր վաղեմի՝ ի Վաղարշապատ գեղջէ և անուն նորա Երանոս։ Սա ասաց», «Զորս լուեալ եմք, և զորս տեսեալ, զնոյնս շարադրեմք», «իսկ նա պատմեաց մեզ զամենայն ստուգութեամբ» և այլն[2]։

Մինչև XIII դարը եղած պատմական զրույցներից ձեռագրերում մեզ պատահել են երեքը՝ Սարգիս կաղզվանցու, Վարդ Պատրիկի և Թոռնիկի մասին։ Առաջին երկուսն արձագանք են VII, իսկ երրորդը՝ XI դարի սխրագործությունների։

Անշուշտ, որպես գեղարվեստական ստեղծագործություններ, նրանք կարող են բացարձակ նույնությամբ պահպանած չլինել իրերի ընթացքն ու նկարագիրը, սակայն ա՛յս դեպքում դա՛ չէ կարեվորը, այլ նրանց մեջ արտահայտություն գտած գաղափարական-քաղաքական հայացքների հրատապությունն ու արդիականությունն իր ժամանակի համար։

VII դարը վերակենդանացնող երկու զրույցների մեջ պատմական անձնավորություն են Թեոդորոս Ռշտունին, որդին՝ Վարդ Պատրիկը և նրա հետ, երբեմն և նրանից առավել աչքի ընկնող ու նրան ժամանակակից, քաջ զորավար կաղզվանցի Սարգիսը։

Ցավոք, այս վերջինի մասին պատմական կոնկրետ տեղեկություններ գրեթե չկան, թեև զրուցագիրը վկայակոչում է պատմագիրներին։ Ըստ իր ձեռքի տակ եղած աղբյուրի նկարագրելով Սարգիս զորավարի ու Վարդ Պատրիկի փախուստը նավով՝ հույների լարած որոգայթից, հեղինակն ասում է. «Բայց այլ պատմագիրքն ասեն, թէ ձիովք անցին լօղալով, գնացին յաշխարհն իւրեանց ի Հայք»[3]։ Ուրեմն ոչ թե մի՛, այլ մի քանի պատմական աղբյուր ունի զրուցագիրը, որ մեզ դեռ չի հանդիպել[4]։ Զրույցը չի պահպանել նաև տարեթվեր, կամ ժամանակը բացահայտող այլ

---

1 Պատմութիւն Առաքել վրդ. Դաւրիժեցւոյ, էջ 373, 377, 394։

2 Զաքարեայ Սարկաւագի պատմագրութիւն, հատ. առաջին, էջ 23, 31, 45, հատ. երկրորդ, էջ 57 և այլն։

3 Ձեռ. № 2018, 1621 թ., էջ 437բ։

4 Զրույցը հայտնի է մեր Մատենադարանի երկու ձեռագրերից՝ № 2018, էջ 435բ և 3366, էջ 2ա, որից առաջինը թերի է։

վկայություններ, բացի Վարդ Պատրիկի անվան հիշատակությունից, որը և օգնում է իմանալու թե՛ դեպքերի կատարման և թե՛ անձնավորության ապրած ժամանակաշրջանը։

Վարդ Պատրիկը Թեոդորոս Ռշտունու որդին է, որ հերոսական մարտեր է մղել՝ պաշտպանելու հայրենի հողը։ Նրա հետ կաղզվանցի Սարգսի զինակցած լինելը հնարավորություն է տալիս եզրակացնել, թե վերջինս նույնպես ապրել է VII դարի կեսերին։ Այս եզրակացությունը հաստատվում է և Վարդ Պատրիկի մասին եղած առանձին զրույցով, ուր, ըստ էության, շարադրվում են կաղզվանցի Սարգսի հետ միասին նրանց վարած ճակատամարտերին հաջորդող դեպքերը։

Սարգսի զրույցի մեջ նկարագրվում է այն մարտերից մեկը, որ հույների խնդրանքով վարել են հայերը՝ օգնելով նրանց՝ ընդդեմ թշնամու։ Որպես առաջին զորագլուխ և առաջնորդ նշանակվել է Սարգիսը՝ քաջ, ուժեղ և ազնավուր մի հսկա, իսկ որպես երկրորդ զորավար՝ Վարդ Պատրիկը։ Քառասուն հայ հերոսներ ճակատամարտում հաղթություն են տանում և վերադառնում. «Քառասունքըն ըքառասուն հազարըն կոտորեցին»,— ասում է գրուցագիրը։ Սակայն հունաց թագավորն ու իշխանները՝ վախենալով հայերի հզորությունից՝ դավադրությամբ սպանում են նրանց։ Ազատվում են միայն Սարգիս զորավարն ու Վարդ Պատրիկը։ Վրեժով լցված նրանք նոր զորաբանակ են խնդրում Հայոց թագավորից և մեծ կոտորած պատճառում հույներին։ Վերցնում են նաև բազմաթիվ գերիներ և մի մասին, որպես վրեժխնդրություն, վաճառում՝ վաթսունը մի սոխով։ Եվ այս «ո՛չ թէ վասն սոխի..., այլ վասն նախատանաց և վասն ամօթոյ» հույների, նկատում է հեղինակը[1]։

Այս դեպքերի տրամաբանական, անմիջական շարունակությունն են թվում Վարդ Պատրիկին նվիրված զրույցում նկարագրվող իրադարձությունները։ Վարդ Պատրիկը գաղտնի դաշնակցում է պարսիկների հետ և թյուրիմացության մեջ գցում հունաց թագավորին։ Պարսիկները մեծ կոտորած են պատճառում հույներին։ Զրույցի վախճանից երևում է, որ հետո Վարդ Պատրիկն այլևս չի մասնակցել որևէ ճակատամարտի և քաշվել է անապատ։ Ուրեմն՝ Սարգիս զորավարի հետ միասին հույներին օգնելու, ապա նաև հույների դեմ նրանց վարած կռիվները նախորդել են այս դեպքերին, այսինքն՝ մինչև Վարդ Պատրիկի պարսիկների հետ դաշնակցելուն։

1 Ձեռ. № 3366, էջ 5ա։

Արդյո՞ք այս Սարգիսն է նույն այդ տարեթվերին Սամվել Անեցու մոտ հիշատակված հետևյալ անձնավորությունը, որի հետ կապվում են Մաւիե զորավարի տարած հաղթանակները. «Բայց պատճառ տիրելոյ նոցա այս է. լեալ էր իշխան ումն կողմանցն Դամասկոսի Սարգիս անուն, նա բազում ինչս յափշտակէր յԻսմայելացւոց վաճառականացն՝ զոր երիցս աղերսիւ խնդրեալ Քղերթի՝ և նորա թողացուցեալ. ապա ժողովեալ զիւրոյ ազգին զայր և զձի, և երիցս ասպատակեալ, առին զիւրեանցն և զնոցայն. և յորժամ զօրացաւ ի վերայ Հայոց՝ ապա սկսաւ շրջել զհաւատս նոցա, և նոքա ոչ հաւանէին»[1]։

Մի Սարգիս զորավարի մասին հիշատակություն ենք գտնում Միք. Չամչյանի մոտ, որ աղբյուր է նշում Թեոփանեսին (մահացած 817 թ.)։ Թեև ոչ Թեոփանեսի և ոչ էլ Չամչյանի մոտ մեր զրույցը հիշեցնող որևէ ակնարկի չենք հանդիպում, սակայն այն՝ ինչ բերում է Չամչյանն՝ ըստ իր աղբյուրի, հավանական է դարձընում հիշյալ Սարգիսների միևնույն անձնավորություն լինելը։ Չամչյանը գրում է.

«Յետ այսր շփոթութեան ի յառնել այլոց ոմանց ի վերայ միմեանց, յաղթօղ գտեալ Մաւիէ մեծ իշխանն և սպարապետ զօրաց՝ ինքն նստաւ ամիրապետ. և սա գոլով այր խաղաղասէր՝ ի յանդորրու կալաւ զաշխարհն. թեթևացոյց և զլուծ ազգաց հպատակելոց նմա, և առ ամենեսին վարեցաւ արդարութեամբ։ Զայն տեսեալ հայոց՝ խորհեցան յետս կալ ի հնազանդութենէ յունաց և մտանել ընդ իշխանութեամբ հագարացւոց. զի ի կասկածի էին, թէ գուցէ Մաւիէ արձակեսցէ զօր բազում ի վերայ իւրեանց՝ պահանջելով ի նոցանէ զհպատակութիւն ըստ յառաջեդեալ պայմանին. և գիտէին՝ զի յոյնք ոչինչ օգնէին ինքեանց, որպէս և յայլ անգամսըն. որոյ վասն իսկ մեծապէս թշնամացեալ էր ընդ նոսա Վարդ որդի Թէոդորոսի Ռշտունւոյ՝ և պարապոյ սպասէր առնուլ վրէժ ի նոցանէ։ Եւ դարձեալ՝ զի ընդ հպատակութեամբ նոցա գոլով՝ հանապազ ի խռովութեան էին,վասն բանի ընդունելութեան ժողովոյն Քաղկեդոնի։ Ապա բանս եդեալ հաստատութեամբ ի մէջ իւրեանց՝ արձակեցին հրեշտակս առ Մաւիէ ամիրապետ. և անձնատուր եղեն նմա։ Զնոյն արար և Շապուհ իշխան Փոքուն Հայոց.

---

[1] **Սամուէլի Քահանայի Անեցւոյ** *Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, ծայրաքաղ արարեալ Արշակ Տէր-Միքելեանի, Վաղարշապատ, 1893, էջ 81։*

*որ և առաքեալ զզօրավար իւր զՍարգիս առ նա ինքն Մաւիէ ամիրապետ՝ զրգռեաց զնա ընդդէմ յունաց, որպէս գրէ Թէոփանէս»*[1]։

*Այս դեպքերը Չամչյանը դնում է 657—658 թվականների միջև։ Ըստ այսմ, Վարդ Պատրիկի և Սարգիս զորավարի միասին վարած մարտերը՝ ընդդեմ հույների, պետք է եղած լինեն մինչև 657 թվականը։*

*Վարդ Պատրիկին նվիրված առանձին զրույցը, Սարգիս զորավարի քաջագործությունները գովերգող պատմության մեջ նրա գործակցությունը, երկու ստեղծագործություններում նկարագրվող դեպքերի ժամանակագրական, տրամաբանական հաջորդականությունը, Թեոփանեսի, Չամչյանի, թերևս և Սամվել Անեցու վկայությունները թե՛ հավաստում են Սարգիս զորավարի իրական, պատմական կերպար լինելը և թե որոշում նրա ապրած ժամանակաշրջանը, որ է VII դարը։*

*Սարգիս զորավարի զրույցում քիչ է պատմական տարրը, ավելի գերիշխում են ստեղծագործողի երևակայությունը, հնարանքները, վիպականն ու հեքիաթայինը։ Դրանով զրուցագիրը կամենում է առավել ևս շեշտել, խտացրած գույներով ներկայացնել հայ ժողովրդի ազնվությունը, քաջությունն ու հզորությունը՝ ուժեղացնելու համար դեպի հայն ու հայրենին ունեցած սերը։ Դրան նա դիմում է երկու ճանապարհով. մի՛ կողմից ցույց է տալիս հայ ռազմիկների հեքիաթային ուժն ու մեծահոգությունը, հանուն բարեկամության ու խաղաղության՝ իր դաշնակցի համար անգամ անձնազոհության գնալը. մյուս կողմից՝ նույն այդ դաշնակցի, այս դեպքում հույների նենգությունն ու ապերախտությունը, մարդասիրությունը դավով ու սպանությամբ վարձատրելը։*

*Զրույցի մի մասն էլ կրում է վիպական, սիրային բնույթ և ավարտվում հեքիաթային 7 օր ու 7 գիշեր տևող հարսանիքով։ Այս վերջին հատվածում ևս հաղթանակ է տանում մարդկայինը, մարդասիրականը, արդարը*[2]։

---

[1] *Պատմութիւն Հայոց, յօրինեալ ի Հայր* **Միքայէլ վարդապետէ Չամչեանց**, *հատ. Բ, Վենետիկ, 1785, էջ 358։ Տե՛ս նաև* **Theophanis** Chronographia. Corpus Scriptorum Historiae Byzantinae, t. I, Bonnae, 1839, էջ 533։ *Թեոփանեսի համապատասխան հատվածը հունարենից թարգմանեց Հ. Բարթիկյանը, որի համար հայտնում ենք մեր շնորհակալությունը։*

[2] *Հետաքրքիր է, որ Գրիգոր Լուսավորչի վարքի հաբեշական տարբերակում հայ զորքերի հրամանատար է հանդես գալիս Սարգիս անունով մի զորավար, որն իր քառասուն քաջերով՝ Տեր Թադ(-Տրդատ) արքայի հրամանով գնում է օգնության բյուզանդական բանակին՝ ընդդեմ գոթերի։ Սարգիս զորավարի մասին*

Վարդ Պատրիկի գրույցի մեջ ավելի շեշտված է պատմական կողմը՝ հույների ու պարսիկների պարբերական հարձակումները, Թեոդորոս Ռշտունու տարած հաղթանակները և ժողովրդի հարկատրությունը մերթ հույներին, մերթ պարսիկներին։ Առանցքային հարց է Վարդ Պատրիկի գաղտնի դաշնադրությունը պարսիկների հետ, դավադրությունը և հույներին կոտորելը։ Վերջին մասում հեղինակը ծանրացել է հերոսի ներաշխարհի դրսևորման վրա, ներկայացրել է նրա խղճաշարչար մղձավանջային հոգեվիճակը, զղջման ու մեղանչանքի ծանր ապրումները, մաքրման ու քավության հասնելու համար ունեցած մտահոգությունները և հայրենաշեն գործերը։ Հույների ու պարսիկների նենգության ու խորամանկության նա հակադրել է հայերի խղճմտությունը, ազնիվ ու մարդասեր հոգին. հայը վե՛ր է բարձրացել իր մարդկային հոգեբանությամբ ու մարդկային արարքով։

Թեև խոսքը վերաբերում է սիրված հայ հերոսի, սակայն դավաճանությամբ ձեռք բերած հաջողությունը չի՛ արդարացվել, ի վերջո արթնացել է խիղճը, մարդկայինը, մարդասիրականը. սա՛ է ուղիղը, սա՛ է արդարը և սրա՛նն է հաղթանակը։ Թշնամու դեմ անգամ պետք է ազնիվ լինել և միայն այդպե՛ս հասնել ճշմարտության։ Այս է գրույցի գաղափարական եզրահանգումը[1]։

Զրույցի պատմական հենքին առաջինը հանդիպում ենք Ղևոնդ պատմիչի մոտ, ուր փոքր ինչ այլ է իրերի ընթացքն ու մեկնաբա-

---

պատմվող մեր զրույցը հետագայում կցվել է սուրբ Սարգսի հանրածանոթ պատմությանը (վարքին)՝ միայն հաբեշական տարբերակում։ Այստեղ Սարգսի հետ կապվող պատմությունն ավարտվում է այնպես, ինչպես Վարդ Պատրիկին նվիրված զրույցը (որ տարբեր է կաղզվանցի Սարգսի անվան հետ կապվող մեր բերած զրույցից)։ Զղջալով իբր վրիժառություն գործած իր մեծ ավերն ու կոտորածը, Լուսավորչի վարքի հաբեշական տարբերակում երևան եկող Սարգիսը քաշվում է անապատ՝ սրբագործվելու, որտեղից և ծագում է նրա սուրբ Սարգիս անվանակոչումը։

Գրիգոր Լուսավորչի վարքի հաբեշական տարբերակի մասին տեղեկությունները մեզ հաղորդել է պրոֆ. Կ. Մելիք-Օհանջանյանը, ըստ իր «Լուսավորչի վեպը» անտիպ աշխատության, որի համար հայտնում ենք մեր շնորհակալությունը։

«Պատմութիւն կաղզվանցի Սարգսին» զրույցի պատմական հենքը կարելի է տեսնել Փավստոս Բուզանդի մոտ, ուր նկարագրվում են Հայոց Արշակ թագավորի և Ներսես Պարթևի ժամանակ՝ Վասակ Մամիկոնյանի հունաց դեմ վարած առասպելական ճակատամարտերը. «Զվեց ամ զմիմեանց զհետ աւերէր զաշխարհ սահմանացն Յունաց։ Լցան աւարաւ բազմաւ և պէսպէս մեծութեամբ, բոնութեամբ սաստիւ մեծաւ թշնամութեամբ ընդ կողմանս ընդ այնոսիկ» (Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց, էջ 105)։

[1] Տե՛ս ձեռ. № 3965, 1624 թ., էջ 111ա։

նությունը։ Թշնամությունն ընդդեմ հունաց սկսվում է դեռևս Թեոդորոսի ժամանակ։ Կոստանդին կայսրը նրան պաշտոնից հանելով, փոխարենը նստեցնում է Սմբատ անունով մեկին՝ Բագրատունյաց տոհմից։ Եվ երբ նա թուղթ է ուղարկում, թե՝ «Ե՛լ ընդ մեզ ի պատերազմ զօրօք, որ ընդ ձեռամբ քո է», Թեոդորոսը մերժում է։ Երկրորդ անգամ ստանալով ահաբեկիչ գրություն, իր որդուն՝ Վարդին է ուղարկում, տալով «հրաման նենգութիւն առնել սիրելեացն և միաբանել ընդ թշնամեացն»։ Այստ տրվում է պատերազմի վախճանը, շատ համառոտ՝ մի քանի տողով։ Ոչ մի խոսք Վարդ Պատրիկի ու պարսիկների միջև նախապես պատերազմական ծրագիր կազմած լինելու մասին, և ոչ էլ նրա հետագա ղշման ու գործերի[1]։ Նույնը, շատ ավելի սեղմ կա և Վարդան պատմիչի մոտ. «Այլ Կոստանդիանոս թոռն Հերակլայ, ընկենու զԹէոդորոս յիշխանութենէ, և հրամայէ զօրավարին Կիլիկիոյ ելանել ընդդէմ Մաւեայ. և Վարդ որդի Թէոդորոսի նենգ գործեաց զօրացն Յունաց՝ կտրելով զխելս կամրջացն ի վերայ Եփրատու ի փախչելն Յունաց»[2]։ Մինչդեռ Շապուհ Բագրատունու մոտ երևան է եկել զրույցը՝ լրիվ ձևավորված, որ պահպանվել ու հասել է մինչև 17-րդ դար, թեև որոշ տարբերություններով։ Սակայն դրանք հիմնականում վերաբերում են ո՛չ թե բովանդակությանը, այլ գրական-գեղարվեստական մշակմանը[3]։ Ձեռագիր օրինակում որոշ ձգձգվածություններ սեղմվել են, զրույցըն ինչ որ չափով համառոտվել է, հավաքվել, որով ավելի լակոնիկ, ուղղագիծ ու դյուրահաս է դարձել։

Վարդ Պատրիկի մասին մի հետաքրքիր զրույց է հորինվել և նրա մահվանից հետո, հետագա դարերում, որ բերում է Առաքել Դավրիժեցին, որպես 1564 թ. կատարված իրողություն՝ լսած իր ժամանակի ծերերից։ Սկզբում նա երկու տողով հիշում է պատմական աղբյուրներից իր իմացած տեղեկությունը՝ «Որպէս գրեալ է ի պատմութիւնս Վարդ Պատրկայ, որ նենգութեամբ և հնարիւք եա կոտորել զազգն Հոռոմոց՝ Պարսից ազգին», ապա շարունակում, թե՝ «զայս նախանձս և ոխս տակաւին ունին ի մտի ազգն Հոռոմոց, և մինչև ցայսօր հնարեն վրէժխնդիր լինիլ նախանձուն այնմիկ։ Եւ ամաց յամս զան մարդիկք ի Հոռոմոց ազգէն առ ի զողանալ զնշխարս ոսկերաց Վարդ Պատրկայ՝ զի տարեալ ի մէջ իւրեանց

[1] Տե՛ս Արշաւանք արաբաց ի Հայաստան, արարեալ Ղևոնդ վարդապետի Հայոց, ի լոյս ընծայեաց, հանդերձ ծանօթութեամբք Կարապետ վրդ. Շահնազարեանց, Փարիզ, 1857, էջ 31 և հտո.։

[2] Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի, Վենետիկ, 1862, էջ 68։

[3] Տե՛ս Պատմութիւն Շապհոյ Բագրատունւոյ, էջ 29 և հտո.։

կատարեսցեն ի վերայ նորա զչար կամս իւրեանց որպէս և յօժարի սիրտք իւրեանց»[1]։

Ապա սկսվում է զրույցը, թե 1564 թ. «Դարձեալ եկին յազգէն Հոռոմոց արք երկու զողանալ զոսկերս Վարդ Պատրկայ», սակայն տեղի բնակիչները մեծ զգուշություն են ցուցաբերում՝ հնարամիտ լինելով ամեն անբնական երևույթի. «զի ջուրն, որ հանապազօր պարզ և հստակ էր, այժմ պղտոր է, աւէին, անձրև ո՛չ է եկեալ և հեղեղ ո՛չ է եղեալ՝ և վասն է՞ր են ջուրքս պղտոր, աւէին ընդ միմեանս և հիանային և խնդրէին զպատճառն»[2]։ Պարզվում է, որ այդ երկու ծպտյալ մարդիկ են գերեզմանը փորելով՝ ջրի պղտորման պատճառ դարձել։ Որպես պատիժ «ի գիշերի միում գերկոսին զարսն գայնոսիկ եգեալ են ի վերայ ափոյ և հանեալ ի վերայ ծովուն և յառաջ խաղացուցեալ տարեալ ի մէջ ծովուն և կապեալ են քար ի պարանոցս նոցա, և այնպիսի թողեալ են ի խորս ջուրց ծովուն»[3]։ Դրանից հետո հայրենասերի հատուկ կրքով նրանք պաշտպանում են ազգի համար սիրելի հերոսի ոսկորներն «առաւել զգուշութեամբ... իբր պաւանդութիւն ստացեալ յարգիս ի հարց»[4]։

Հաջորդ, կամ երրորդ պատմական անձնավորության մասին եղած զրույցում հայրենասիրությունը, ազգային արժանապատվության գիտակցումն ու հպարտությունը, հավատարմությունն իր երկրին ու ժողովրդին ջատագովվում է՝ հեղինակի բորբոքած վառակիչ ատելությամբ ընդդեմ դավաճանների, ազգուրացների, որոնք ներկայացվում են ավելի վատթար, քան օտարազգի թշնամին։ Այստեղ պատմական անձնավորություն է Մուշեղի որդի և Սասունի տեր, քաջ զորավար Թոռնիկ իշխանը, որ ապրել ու գործել է XI դարում։

Մատթեոս Ուռհայեցին իր ժամանակագրության մեջ նկարագրում է Թոռնիկի բազմաթիվ հերոսամարտերն ու հաղթությունները՝ ընդդեմ ներքին ու արտաքին թշնամիների, առանձնապես ընդգրծելով 1056 և 1072 թվականների ճակատամարտերն ու Թոռնիկի դավադրությամբ սպանվելը[5]։

Նույն տարիների հերոսական կռիվների պատմությունն է ունում արաբ հեղինակ Իբն էլ-Ասիրը՝ իր kâmel et-tewarich (Թ.

[1] Պատմութիւն Առաքել վրդ. Դաւրիժեցւոյ, էջ 376։

[2] Անդ, էջ 376—377։

[3] Անդ։

[4] Անդ։

[5] Մատթէոս Ուռհայեցի, Ժամանակագրութիւն, Վաղարշապատ, 1898, էջ 130, 206—209։

*306) գործում, սակայն Սասունի այդ ժամանակի իշխանի անունը չի տալիս[1]։ Մանուկ Աբեղյանը ենթադրում է, թե դա Մուշեղ Մամիկոնյանն է, «որովհետև մեր պատմագիրները շուտով» հիշում են Սասնո իշխան Թոռնիկ-Մուշեղի որդի, որ Մամիկոնյան է համարվում[2]։*

*Հրաչյա Աճառյանը ևս, անդրադառնալով Թոռնիկի անվանը, գրում է.*

«Թոռնիկ *Ա. Մամիկոնյան, որդի Մուշեղի, հունադավան հայ իշխան Սասնո. փեսա, որ է քեռայր Գրիգոր Բ. Վկայասեր կաթողիկոսի...»[3]։*

*Տարօրինակ կերպով որևէ պատմիչի մոտ չի՛ հանդիպում նախատինքի և ոչ մի խոսք Թոռնիկի հունադավանության առթիվ, այլապես նա պիտի խարազանվեր թե՛ ժամանակակիցների և թե՛ հետագա սերունդների կողմից, ինչպես այդ արվել է ազգով հայ, բայց հավատով հոռոմ Փիլարտոսի նկատմամբ։ Սակայն, այնուամենայնիվ, Թոռնիկին ուղղած Գրիգոր Մագիստրոսի նամակներից մեկը կասկածի տեղիք է բացում, թե նա կարող էր քաղկեդոնիկ լինել, ինչպես այդ անվերապահորեն ընդունում է Կ. Կոստանյանը[4]։*

*«Բայց դու Մամիկոնեա՛ն, որ համոզեան հաւանեցար Ղեւոնեան ընդարձակագոյն տօմարի, ո՞ ոք ի քէն այժմ կարասցէ կորզել ղուղակս, զոր Պոնտոս և Ովկիանոս ոչ հանդուրժէ կերակրել...»,— գրում է Մագիստրոսը[5]։*

*Արդյոք նա կատակի չի՞ ենթարկում Թոռնիկի անչափ ձկնասիրությունը, ասելով անգամ, թե շատ թռչուն և ամեն տեսակ ջրային զեռուն է ուտում, ուրեմն և քաղկեդոնիկ է, որովհետև նրանց չէր արգելվում ուրբաթ օրերին էլ ձկնեղենով ու թռչունով սնվել[6]։ Կամ գուցե խոսքը վերաբերում է հույների քաղաքակա՞ն գերիշխանությանը, որովհետև Թոռնիկը «Երբեմն Յունաց կայսերաց խնամակալութեան տակ, և երբեմն ազատ» էր[7]։*

---

[1] *Տե՛ս Սասուն և Տիգրիսի աղբերաց սահմանները, գրեց* Վ. Տոմաշէկ, *թարգմ. Հ. Բառնաբաս, Վ. Պիլեպիկճյան, մասն Ա. Վիեննա, 1896, էջ 37 և հատ։ Համտ.* Մ. Աբեղյան, *Հայ ժողովրդական վեպը (տե՛ս «Ազգագրական հանդես», 1907, հունվար, էջ 13)։*

[2] Մ. Աբեղյան, *Հայ ժողովրդական վեպը, էջ 13։*

[3] Հ. Աճառյան, *Հայոց անձնանունների բառարան, հատ. Բ, Երևան, 1944, էջ 313։ Նշում է մի շարք աղբյուրներ՝* Ուռհայեցի *(130, 131, 206—209),* Մագիստրոս *թղ. (ՀԴ—ՀԷ), Տարօն. (Բ. § 14),* Սմբատ պատմ. *(72),* Սամ. Անեցի *(111) և այլն։ «Թոռնիկեանց ճիւղագրութիւնը» և «Թոռնիկեանք ի Սասուն» մանրամասն տե՛ս* Ներսէս Ակինեան, *Մատենագրական հետազօտութիւններ, հատ. Դ, Վիեննա, 1938, էջ 49—88։*

[4] Գրիգոր Մագիստրոսի *Թղթերը, էջ 314։*

[5] *Անդ, էջ 214։*

[6] *«Որ և զայլոց ոմանց պատրաստեալ կերակուր, յափշտակել փութայք զթռչնոց և զղեռնոց որպէս զխէչս և զքառաձէտս և զօձասանդրս և զկրայակիրոս և զայլ զբիւրս ի բզզոց անզարդ զեռունս»։ Անդ։*

[7] *Տե՛ս* Ղ. Ալիշան, *Շնորհալի և պարագայ իւր, Վենետիկ, 1873, էջ 107։*

*Թե՛ զրույցից, որ ըստ էության վերապատմում է Ուռհայեցու ժամանակագրության մեջ պահպանված 1072 թ. դեպքերը, փոքր ինչ համառոտած, վերնագրելով «Պատմութիւն քաջին Հայոց Թոռնկայ» և թե՛ Ուռհայեցու պատմությունից այդպիսի եզրակացություն չի հանվում։ Մինչդեռ Փիլարտոսը, որի դեմ Թոռնիկը անհավասար, բայց հերոսական մարտեր է մղում, ներկայացվում է ամենամռայլ ու ամենասև գույներով.*

*«Յայսմ ժամանակի յայտնեցաւ ումն ամենաչար և որդին սատանայի Փիլարտոս, որ ի յանցանելն Տիօժէնին բռնակալեցաւ ի վերայ երկրի։ Այրն չարաշունչ, որ էր իսկ սա կարապետ նեռին պղծոյ և դիւայրընակի, նա սկսաւ պատերազմ տալ ընդ հաւատացեալսն Քրիստոսի, վասն զի է՛ր նա անհաւատ և հրէտիկոս, ոչ հայ, և ոչ հոռոմ, ոչ այլ քրիստոնեայ. վարք և կրօնք հոռոմոց ունէր, իսկ հայրեննեօք և մայրեննեօք հայ էր...»[1]։*

*Արդյո՞ք նույնը չէր ասվի և Թոռնիկի մասին։ Եթե նա ևս հունադավան լիներ։ Մինչդեռ զրույցի սկիզբը և վերջը ևս կարծես մերժում են այդ։*

Գրավելով մի շարք գավառներ ու քաղաքներ, Փիլարտոսը կանչում է Գրիգոր Վկայասեր կաթողիկոսին, կամենալով իր կողմից պատվիրակ ուղարկել՝ Թոռնիկին հնազանդության հրավիրելու։ Կաթողիկոսը ո՛չ միայն չի լսում նրան ու չի ուզում տեսնել երեսը, այլև գնում է Թոռնիկի մոտ։ Նա վերջում նո՛ւյնիսկ հրաժարվում է Փիլարտոսի տիրակալության տակ մնացած հայրապետական աթոռից և հետ է ուղարկում կաթողիկոսական քողը, գավազանն ու տերունական նշանը։

Որոշակի է, որ երկու հակառակ կողմերից մեկում գտնվում են կաթողիկոսն ու Թոռնիկը՝ որպես հայրենիքի հավատարիմ զինակիցներ, իսկ մյուսում՝ Փիլարտոսը, որպես դավաճան ու գործակից ֆրանկների։ Կասկածից դուրս է Փիլարտոսի հունադավանությունն ու դավաճանական քաղաքականությունը, բայց ո՛չ Թոռնիկինը։

Զրուցագիրը ոգեշունչ տողերով նկարագրում է Թոռնիկի վարած մարտերն ու հաղթանակը ընդդեմ ֆռանկների և տաճիկների, ինչպես և ընդդեմ ներքին թշնամու՝ Փիլարտոսի։ Իսկ վերջինիս մասին գրում է.

Սա «ելեալ յանապատէն, եղև քակտիչ և սպականիչ աշխարհի», անողորմաբար և գազանորեն «բազում մեծամեծ գիշխանսն կոտորեաց», ոտքի տակ առնելով, ավերելով սեփական երկրի հողը, ձեռքից-ձեռք տալով բազմաթիվ քաղաքներ[2]։

Այսպիսով, հանուն ժողովրդի գոյության ու հայրենի երկրի պաշտպանության, Թոռնիկն ստիպված մարտեր է մղել ո՛չ միայն

---

[1] Տե՛ս նույն գրքում, էջ 236 (№ 7)։

[2] Անդ։

այլազգիներին, այլև նրանց հետ դաշնակցած հայ այլադավանների դեմ, որ պատակառում էին թե՛ ժողովրդին, թե՛ երկիրը[1]։

Մ. Աբեղյանը գրում է. «Մեծ նմանություն է երևում Թոռնիկ Մամիկոնյանի պատմության և Դավթի վեպի մեջ. այնպես որ եթե չասենք թե Դավիթը միևնույն Թոռնիկն է, միայն ժողովրդի բերանում դյուցազնական հերոս դարձած, գոնե հավաստայալ կարելի է ասել, թե Դավթի վեպը կազմվել է Թոռնիկի նման շատ հերոսների արարքներից, որ ունեցել է Սասունը միջին դարերում, և կամ այդ արարքների ազդեցության տակ ժողովուրդը մտցրել է ավելի հին վեպի մեջ յուր նոր ժամանակի հերոսական կռիվները, որ տվել է օտարների դեմ»[2]։

Հեռու թե մոտ անցյալին վերաբերող այս տիպի զրույցները համապատասխանում էին միջնադարի պահանջներին, հարազատ էին ժամանակի ոգուն, արծարծում էին մշտապես հրատապ ու կենսական նշանակություն ունեցող ա՛յն հարցերը, որ անհրաժեշտ էր սուր կերպով վեր հանել և՛ այդ ժամանակ և՛ հետագայում։ Հարցեր, որ հնուց գալով՝ միշտ նորացել են, հարատևել ու դրսևորվել նոր ժամանակներն արտահայտող նո՛ր զրույցների մեջ, նո՛ր հերոսներով։ Այսպես, ոչ միայն արձակ, այլև չափածո ստեղծագործություններ են հյուսվել XIV դարի պատմական անցուդարձերի՝ Կիլիկյան հայկական թագավորության վերջին տարիների ճակատամարտերի և այդ ճակատամարտերում մեծ համբավ վաստակած Լիպարիտ զորավարի քաջագործությունների մասին։ Ըստ զրույցի Լիպարիտն ապրել է XIV դարում, եկել է Կիլիկիա Սասնո գավառից, կիլիկյան վերջին թագավորների՝ Հեթումի և Թորոսի թոռների ժամանակ։ Նրա եղբոր անունն է Վասիլ, որդունը՝ Հովհաննես և կնոջը՝ Աննա։ Նա բազմաթիվ մարտեր է մղել տաճիկների դեմ, նշանավոր հաղթանակ տարել Մանճառ անունով Մարա զորավարի հետ մղած ճակատամարտում և սպանվել Հայոց թագավորի դավադրությամբ։

[1] Թոռնիկ Մամիկոնյանի մասին Մատթեոս Ուռհայեցու ժամանակագրության մեջ պահպանվել են և այլ պատմական զրույցներ, քաղված գրավոր կամ բանավոր աղբյուրներից։ Տե՛ս էջ 130, 206—209։ Հիշարժան են և ծերունի իշխան Խաչիկի ու նրա որդիների մասին բերված զրույցները։ Տե՛ս էջ 90։ Թոռնիկի մասին տե՛ս նաև Տարեգիրք արարեալ Սմբատայ Սպարապետի Հայոց, ի լոյս ընծայեաց Կարապետ վրդ. Շահնազարեանց, Փարիզ, 1859, էջ 72։

[2] Մ. Աբեղյան, Ազգային վեպ։ Տե՛ս «Մուրճ» 1889, № 11, էջ 1746։

*Ստույգ տեղեկություններ Լիպարիտի անձնավորության վերաբերյալ մինչև վերջերս հայտնի չեն եղել։ Ղևոնդ Ալիշանը նույնիսկ զարմանքով նշել է, թե պատմագրության մեջ նրա անունը չի՛ պահպանվել, և օրհնաբանել է Հովհաննես Թլկուրանցուն, որ անմահացրել ու հուշակել է Լիպարիտին՝ իր գրած տաղով[1]։ Սակայն հետագայում Ալիշանին հանդիպել է Կիլիկիայի մի ժամանակագրություն, ուր հիշվում է Լիպարիտը, որպես քաջ մարաջախտ, որդի Թորոս ավագ Մարաջախտի և կրտսեր եղբայր Վասիլի։*

*«Ժամանակագիրն Կիլիկիոյ ծանուցանէ, զի* Լիպարիտ Քաջն մարաջախտ՝ *որդի է* Թորոսի աւագ մարաջախտի. *և կրսեր եղբայր* Վասլի, *զի սա՛ էր աւագ մարաջախտ ի ժամանակի շահատակութեանն և նահատակութեանն...»*[2]։

*Ղ. Ալիշանը ժամանակագրից անում է և որոշ քաղվածներ, որոնցից է հետևյալը.*

*«Եկին խամայեկացիք (Թարքմանք?) ի վերայ Սսոյ ընդ անցմնցուկն, և սպանին զքաջ սպարապետն Հայոց* Լիպարիտն. *ուստ գլուխն էր Շահար օղլին»*[3]։

*Սա գրույցի պատմական հիմք հանդիսացող հատվածներից մեկն է, որին «Յուշիկք»-ում անդրադառնում է փոքր ինչ ավելի.*

*«Յիշատակագրաց գրուցքէն կերևի, թե Լևոն չորս հինգ այլ և այլ անգամ ու տարիներ զարնուած է Եգիպտացւոց հետ, և մեծ պատերազմ մ'եղած է յամին 1369, յորում Եգիպտացիք առաջնորդութեամբ եղբօր սուլտանին՝ Շահարօղլուի՝ Կիլիկիոյ լեռանց դժուար անցքերէն ներս մտան, Լևոն իրեն նիզակակից և սպարապետ զօրաց ունեցաւ անձ մը, որոյ անունն անգամ անծանօթ և անսովոր է բոլոր Կիլիկեցւոց պատմութեան մէջ, և սովորագոյն է Վրահայոց ու մանաւանդ Օրպելեան տոհմին մէջ (ԺԱ—Դ դարերուն) —*Լիպարիտ: *Լիպարիտ յետին սպարապետ է Հայոց, Վարդանանման քաջութեամբ և նահատակութեամբ, որ իր տիրոջ դիմաց Հայ հայրենեաց և թագին վրայ կռուելով մինչև ի յետին շունչն՝ յաղթութեամբ յառաջեց թշնամեաց խումբերուն մէջ, և հոն ծածկուեցաւ նետերու հարուածոց տակ. իր մահն՝ յաղթութիւնն այլ հետը տարաւ. հարկ եղաւ որ յետ քաշուի Լևոն իր բանակին մնացորդովը, և հաշտութեան պայմաններով՝ այն անգամ այլ յետ դարձնէ Լիպարիտայ արէն ապրող թշնամին։*

*Ինչպես այս պատերազմիս և ուրիշներուն դէպքերն այլ չի պատմէր մեզի ազգային գրիչն, այսպէս և Լիպարիտայ քաջագործութիւնքն ու հնարքն. պատմու-*

---

[1] *«Բարեբաղդաբար պատմչին համառօտութիւնը կամ լռութիւնը երկբայութենէ և տարակուսէ կազատէ, և կու հաւատարմացնէ, կու հռչակէ, կանմահացնէ ազգային երգիչն»,—գրում է Ղ. Ալիշանը և ապա մեջ բերում Լիպարիտի տաղը՝ 15 տնից բաղկացած։ Մեծ հայագետ-բանաստեղծին հայտնի է եղել միայն չափածոն։ Տե՛ս «Յուշիկք», հատ. Բ, էջ 510։ Լիպարիտի տաղի մասին տե՛ս* Հովհաննես Թլկուրանցի, *Տաղեր, աշխատասիրությամբ Էմ. Պիվազյանի, Երևան,* **1960**, **էջ** *265։*

[2] Ղ. Ալիշան. *Սիսուան և Լևոն մեծագործ, Վենետիկ, 1885, էջ 542։*

[3] *Անդ, էջ 226։*

*թեան մէջ փայլակի մը պէս կերևի և կանգնի Լիպարիտ, բայց նախախնամու-թենէ ծագեալ՝ պայծառ և բարեբաստ փայլակի մը պէս»*[1]

*Պատմական այս տեղեկությունները լրացնող վկայության ենք հանդիպում նաև Հովհաննու Դարդելի ժամանակագրության մեջ, ուր ասված է.*

*«Յայնժամ պարոն Վասիլ, որդի պարոն Թորոսի... խորհուրդ արարեալ...» և այլն*[2]*։*

*Հավանաբար հենվելով այս աղբյուրների վրա, Ն. Ակինյանն ուղղակի գրում է. «Պատմական դեմք մըն է Լիպարիտ»*[3]*։ Նրան ծանոթ են Լիպարիտի, նրա քրոջ և յոթ եղբոր ու մի քրոջ մասին եղած երեք զրույցն էլ, որ վերցրել է Մովսես Ջուղայեցու հավաքածուի (1695) 1762 թ. ընդօրինակությունից, տպագրել իր ներքո հիշվող հոդվածին կից և նկատել, որ Ջուղայեցու ավելի հին օրինակներում դրանք չկան (ժողովածուի նկարագրին համար չեն)*[4]*։*

*Լիպարիտի զրույցի պատմական հիմքերն անկասկած դարձնող վկայությունները ստինճանաբար հարստանում են ձեռագրերում պահպանված տեղեկություններով*[5]*։ Դրանցից մեկում կարդում ենք.*

---

[1] Ղ. Ալիշան, *Յուշիկք հայրենեաց Հայոց, հատ. Բ, էջ 509—510։*

[2] Յովհաննու Դարդելի Ժամանակագրութիւն Հայոց, *Պետերբուրգ, 1891, էջ 135։ Վասիլի մասին տե՛ս նաև էջ 79, 108—111, 130, 136—137, 154։ Դարդելը Կիլիկիայի Լևոն Ե. Հայոց վերջին թագավորի խոստովանահայրն ու խորհրդականն էր, որ միաժամանակ կատարում էր այլևայլ հանձնարարություններ ու քարտուղարի պաշտոն (էջ Հէ և հտտ)։ Լինելով դեպքերին ժամանակակից, նա գրի է առել շատ մանրամասներ, Վասիլին հիշատակելով մի քանի անգամ և ներկայացնելով որպես «զմին ի չորից անդի խնամակալաց» Լևոնի (էջ 109)։*

[3] Ն. Ակինյան, *Քաջն Լիպարիտ պատմութեան, տաղերու և զրույցներու մէջ, Տե՛ս Հանդէ՛ս ամսօրեայ, 1933, էջ 129։*

[4] Ն. Ակինյան, *Հանդէս ամսօրեայ, էջ 130 և հտ.։ Զրույցները, որ պահպանվել են և մեր Մատենադարանի ձեռագրերում, տե՛ս սույն աշխատության II մասում։*

[5] *Վերջին տարիներս Մատենադարանն ստացավ Բրիտանական թանգարանի հայերեն ձեռագրերի միկրոժապավենները, որոնց մեջ և ժամանակագրությունների մի ժողովածու (*Or. *5458)։ Սրա մեջ հավաքված նյութերի շարքում գտնվել է և մի թերի հատված, որ, ըստ հրատարակողի, Վասիլ մարաջախտինն է։ Ձեռագրի լուսանցքներից մեկում, ուր ավարտվում է հայոց մարաջախտների թվարկումը, այլ գրչությամբ հիշված է. «Պարոն Վասլին, պարոն Լիպարտին եղբաւրն գրած է, աստուած ողորմի իր հոգուն, ամէն ու հազար ամէն»։ Սա վկայում է, թե գրիչը պարոն Վասիլն է, ինչպես և կոչել է նա իրեն՝ 113ա էջի «կարօտած ծառայս Վասիլ» հիշատակագրությամբ։ Տե՛ս Պատմա-բանասիրական հանդես, 1963, № 4, էջ 183—184, «Հեթում Ախտուց տիրոջ և Վասիլ մարաջախտի ժամանակագրությունները» վերնագրով, որը ծանոթագրել ու տպագրության է հանձնել Մատենադարանի աշխատակից Ա. Մաթևոսյանը։ Մեզ հետաքրքրող տեղեկությունները բերվում են այս հոդվածից։*

«Ի թվին ՊԺԸ (1369)-ն ի մայի[ս] ամսոյ Ի (20)-ն՝ երեկ Տարսոյ նայիպն Շուհորէ որդին ի վրայ Սսու ի շաբաթ օր, կովեցան յուսին դիհն ու իրք մի վզեն չկարցին այնել։ Ու կերակի ի վաղուենէ եկին յԱնցմնցկին կանդարայն հեծմնով ու հետևկով, դրին կռիվ, ու խանկրեցին զքրիստոնէքն, ու սպանին Ճ (100) մարդ, ու սպանին զպարոն Լիպարիտ պարոն Թորոս աւաք մարաջախտուն որդին, ու այրեցին զքաղաքն ու զդարպասն։ Ու կեցաւ Գ (3) աւր ու դարձաւ ի յիր տեղն ի Տարսուս։ Կու ասեն, թէ Կոստանդին թագաւոր պարոն Հեթմու որդին երեր զհիծելն ու տուր տուեց զպարոն Լիպարիտն ու զքաղաքն տաճկին...»[1]։

Այս դեպքերին նախորդող իրադրությունների թերի պահպանված մի նկարագրությունը կա Մաշտոցյան մատենադարանի № 1205 ձեռագրի վերջում.

«Ի թֆարերութեանս Հա[յ]ոց ՊԺԶ (1367)-ն, ի յամսեանն մայիսի Զ (6) աւրն, ի յաղմանէ սատանայի, արար զարաժողովք ամիրայն Տարսոյ Մինչաք անուն, ժողովեաց ի Շամբուն հիծելէն՝ քանի որ կարաց և զուրակիր թուրքմանն զամէնն և այլ բազում խարամնցիք և երեկ ի վերայ աթոռանիս բերդին Սըսոյ, ի ճայրապետութեանն տեառն Մեսրոպա և ի թագաւորութեանն Հայոց երկրորդ Կոստանդեա, որդի ի Քրիստոս հանգուցելոյն ամենագովութեանց արժանաւորին մեծ և հզաւրին և ամենամեծ ջամբլին (Հա[յ]ոց պարոն Հեթմոյ և ի զունտուստապլութեանն Հայոց պարոն Բաղունի, պարոն Լևոն, պարոն Բաղունենց որդոյն, և ի յավաք մարաջախտութեանն Հա[յ]ոց պարոն Լիպարիտ, պարոն Թորոսո ավաք մարաջախտուն որդոյն։ Նայ ի նոյն թիւս, որ ի վերոյ է՝ ի Զ(6)-ն ի մայիսն երեկ ի Յանցմնցկին դիհն բազում հիծման հիծելով և այլ շատ հետիվակաւք, որ էին իբրև ԺԲՌ (12000) մարդ և այլ ավելի, Նայ աջողութեամբն Յիսուսի Քրիստոսի ելավ թագաւորն ընդդէմ նորայ Հայոց Կոստանդին և դրին կռիւ, հողմն կռիւ։ Եւ ի յահէն սուլտանին ո՛չ եղև հրաման թագաւորին կովիլ ընդ նոսա. և այլ ամենայն բազմութիւնն քաղաքին՝ հեծմանք և հետիվակք ի կիր էին ի բերդն զինչս իւրեանց։ Եւ ի միւս աւրն յղրկեաց դեսպան առ թագաւորն, ուզելով հրաման տալոյ, եթէ զամ առաջի քաղաքին ի ֆոուճ, վասն տեսանելոյ զքաղաքն։ Եւ երբ գայր, Նայ խաբնաւք մտանէր ի քաղաքն ու այրէր. և այսպիսի խաբէութեամբ ուզէր դաւաճանել զքաղաքն։ Եւ ի միւս աւրն, որ էր ի յամսոյս Ը (8) աւրն, ի յավուրն կերպ ի շաբաթ, իւր իջվանքն էր ի վերա գետին Մախթլշա։ Նայ ի թող ի տեղն զվրանին քշտած և զիւր մաժառոստունն և զայլ ծանդրոցքն և իառ զզաւրքն իւր և երեկ դէպ Շապլխերոյն քարն, ու իրեկ դէպ ի Կրտունակին քարքիթն ու ի պղլենցած վուքն...»[2]։

---

[1] Պատմա-բանասիրական հանդես, 1963, № 4, էջ 197։

[2] Ձեռ. № 1205, ԺԴ, էջ 197ա—197բ, թերի։ Տե՛ս նաև ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, կազմեց Լ. Խաչիկյան, Երևան, 1950, էջ 477։

Ըստ էության սա Լիպարիտի դրույցի կմախքն է, իրական, պատմական դեպքերի շարադրումը։ Գտնվելով ձեռագրի վերջում (որ է «Համառօտ ժողովումն մեկնութեան սուրբ մարգարէին Եսայեայ, Գէորգայ վարդապետի Լամբրոնացւոյ»), որից թերթեր են պակաս, ցավոք՝ մնում է կիսատ[1]։

Մաշտոցյան Մատենադարանի ձեռագիր հիշատակարաններում գտնում ենք նաև ո՛չ միայն այս տեղեկությունները հաստատող, այլև լրացնող վկայություններ։ Այսպես, օրինակ, Սսում գրված մի ձեռագրի հիշատակարանից իմանում ենք, որ Լիպարիտը և իր եղբայրը՝ Վասիլը մինչև 1361 թիվը եղել են իշխաններ, իսկ նրանց հայրը՝ Կապնցի Թորոսը՝ Հայոց սպարապետ, ունեցել է մի կրտսեր որդի ևս՝ Լևոն անունով։

«Շնորհիւ բարեշնորհ կամացն Աստուծոյ, աւարտեցաւ վայելուչ պատմութիւնս և քաղաքավարութիւն սուրբ քահանայապետին Մեծին Ներսէսի ի թուականութեանս Հայոց ՊԺ (1361), ի թագաւորութեանս Հայոց Կոստանդեայ և ի հայրապետութեան տեառն Մեսրովբայ, ի մայրաքաղաքս Սիս։ Արդ գրեցաւ սա ձեռամբ անարժան քահանայի՝ Թորոսի, որ մականուն Թուքինեաց կոչի, ի խնդրոյ սրբասէր, հեզ, քաղցր և խոնարհ իշխանացն՝ պարոն Լիպարտի և պարոն Վասլի, որդւոցն պարոն Թորոսի Կապնցոյն՝ սպարապետին Հայոց, ի վայելումն անձանց իւրոց. հայցեցէք յԱստուծոյ

[1] Հետաքրքիր է, որ մեր ձեռագրում պահպանված այս հատվածը, Ալիշանի օգտագործած Կիլիկիա ժամանակագրությունը և Բրիտանական թանգարանի ժողովածուում պահպանված հատվածները՝ բոլորն էլ անանուն, միևնույն՝ Կիլիկեցի մի հեղինակի գործը լինեն։ Նույնն են լեզուն, բարբառային ձևերն ու դարձվածքները, բառերն ու բայաձևերը։ Որոշ քաղվածքներ անենք Or 5458 ժամանակագրությունից.

«Եկան գնացին քշտեցին ի հիծելին չէքն, ու այրին աշխարհ ի կորուստ։ Դարձաւ հիծելն ի յետ, ու թաթարն ի հետ ու հայնց փախան զէտ ամենայն մուկն» (էջ 196)։ Ուշադրության դարձնենք և հետևյալ բառերին, բայաձևերին, ինչպես նաև ուղղագրությանը. Տարսոյ, սուլտան, խառ, երևկ, իջուանքն, կռվեցան, կսիվ, հիծելն, հեծմնով, զհեծելնին, զարձնին, կուերթին, բռնել ին, տապլխանայք և այլն։ Եթե նույնիսկ սրանք բխում են Կիլիկիայի այդ դարերի խոսակցական լեզվից, պատճառ չեն դառնում նույն տարիների ու նույն դեպքերի նկարագրության մեջ մի քանի ժամանակակից հեղինակի գոյությունը։

Մեր կարծիքով ճիշտ չէ Ա. Մաթևոսյանը՝ Վասիլին ժամանակագրության հեղինակը համարելով (տե՛ս Պատմա-բանասիրական հանդես, էջ 185)։ Ավելի հավանական է գրիչ լինելը միայն, որով և պետք է բացատրել նրա կատարած հավելումները՝ և՛ բնագրում և՛ ձեռագրի լուսանցքներում։ Վասիլինը չի թվում և ա՛յն հատվածը, որ բերինք վերը՝ նույն Or 5458 ձեռագրից։ Վասիլը չէր կարող օտարի սառնությամբ ու հեռվից իմացողի պես միայն անդրադառնալ ա՛յն դեպքերին, որ կապվում են իր եղբոր, մանավանդ նրա մահվան հետ. «Կու առեն, թէ Կոստանդին թագաւոր... տուր տուեց զպարոն Լիպարիտն», «Թորոս աւաք մարաջախտուն որդին», և այլն (էջ 197)։

զկեանս խաղաղական շնորհել պարոն Լիպարտին և պարոն Վասլին և պարոն Լիկոսին դեռա...

Ի թուին Հայոց ՊԹ (1360), ի յամսեան ի մայիսի, երեկ Հալպայ ամիրայն Պայտամուրն Մսրայ զօրօքն ի Հայք։ Նայ տուին զԱտանայ ու զՏարսուն, յբարի Քարուկն ու զտղայ Լևոնին...։ Ո՜վ քաղցր և բարի պարոն իմ, Պարոն Լիպարիտ, ընկալ դաս և զմեղաւոր Թորոս յիշեա»[1]։

Երկրորդ հիշատակարանը ևս գրված է XIV դարում, դարձյալ Լիպարիտի կենդանության օրոք, սակայն վերոհիշյալ թվականից մի քանի տարի հետո և ա՛յն ժամանակ, երբ Լիպարիտն, արդեն փոխարինելով հորը, դարձել էր ավագ մարաջախտ։ Մանճաք (Մինչաք) ամիրայի հարձակումը Սսի վրա հիշատակարանը դնում է 1367 թ.։ Ուրեմն զրույցում հիշված վերջին մարտերն ընդդեմ Մանճաքի Լիպարիտը վարել է 1367—69 թվականներին, այն ժամանակ, երբ արդեն հայոց զորքերի ավագ սպարապետն էր[2]։

Լիպարիտը և Վասիլը կապված են եղել նաև մտավոր կյանքի հետ, պատվիրել ու ստացել են ձեռագրեր։ Վերոհիշյալ ձեռագիրը, որ «Մեծին Ներսէսի վարուց պատմութիւն»-ն է, ինչպես երևաց հիշատակարանից՝ գրվել է նրանց խնդրքով։ Եվ դա պատահական երևույթ չի եղել այդ սերնդում։ Դրա մի վկայությունն է Բրիտանական թանգարանում պահպանված հայկական ժամանակագրությունը, որի գրիչը հաստատապես և հեղինակը՝ թեպետ Թորոս ավագ մարաջախտի որդի Վասիլն է։

Դեռևս փաստերի կարոտ է Լիպարիտին և նրա նախնիներին Կիլիկյան ու վրացական թագավորական տոհմերից սերված համարելու ենթադրությունը։ Ա. Մաթևոսյանը գրում է.

«Գրչի (Վասիլ մարաջախտի—Ա. Մ.) կողմից Սմբատի Պատմության լուսանցքներից մեկում ավելացված է մի շատ կարևոր վկայություն (էջ 99բ—100ա), որից իմանում ենք նաև, որ 1308 թ. Օշին թագավորն իր փոքր քրոջը՝ տամուժել Ալիծին ամուսնացնում է Վրաց թագավորի որդի Դավիթի հետ, որոնց հարսանիքը 1311 թ. Տարսոնում կատարելուց հետո, նրանց որպես բնակության վայր նվիրում է Կապանը։ Դավիթը դառնում է Կապանի տեր։ Սրանց որդին կարող էր կոչվել Կապանցի։ Եվ ահա Պաղտինի մահից հետո (1336) հայոց սպարապետի պաշտոնում տեսնում ենք Թորոս Կապնցի (Կապանցի) ավագ մարաջախտին, Վասիլի և Լիպարիտի հորը։ Վասիլը, ինչպես տեսնում ենք, իր տոհմի նախնիներին վերաբերող վկայություն է մտցրել Սմբատի գործի մեջ, հավաստելու համար իր թագավորական ընտանիքից սերված լինելը»[3]։

---

[1] Ձեռ. № 6332, ժթ, էջ 36ա (ընդգծումները մերն են—Ա. Մ.)։ Տե՛ս նաև ԺԴ դարի հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, էջ 451 (բերված № 6273 ձեռագրից, ԺԹ, էջ 156—157)։

[2] Հիշատակարանը տե՛ս նույն գրքում, էջ 95. ձեռ. № 1205, էջ 197ա—197բ։

[3] Տե՛ս «Պատմա-բանասիրական հանդես», էջ 184—185։ Տե՛ս նաև Պ. Խաչատրյան, Հովհ. Թլկուրանցու «Տաղ քաջի Լիպարտին» պատմական ողբը, անդ, 1964, № 2, էջ 111։

Պետք է ասել, սակայն, որ առայժմ որևէ աղբյուր հայտնի չէ, ուր հիշատակված լինի Թորոսի մարաջախտ լինելը՝ 1336 թվից հետո և կամ նրա հոր անունը: Դա հնարավորություն կտար վստահորեն ընդունել կամ մերժել այդ վարկածը:

Կարելի է մտածել և այլ կերպ: Ղ. Ալիշանը գրում է. «Օտար և եկամուտ ումն թուի անուամբն՝ սպարապետդ քաջ, զոր գիտեմք Օրբելեան տոհմին յատուկ»[1]: Իսկ Օրբելյանները, ինչպես հայտնի է, Զաքարյաններին մատուցած մեծ ծառայությունների համար, ժառանգական իրավունքով այլ կալվածքների հետ մեկտեղ ստացել էին և Սյունիքը, որ է Կապանը (կամ Ղափանը)[2]: «Սիւնեաց հին Ձորք գաւառի համապատասխանող երկիրն ԺԱ—ԺԲ դարուց մէջ և մինչև այժմ ևս ծանօթ է այս անուամբ: ...Հռչակաւոր էր գաւառիս Կապան բերդաքաղաքը, որ ի սկզբան իշխանանիստ եղած էր, և յետոյ Սիւնեաց նահապետներու ոստան եղաւ»[3]: Հայտնի է նաև, որ «զինվորական տեսակետով նոքա բոլորը (խոսքը նաև Օրբելյանների մասին է Ա. Ս.) Զաքարյանների զորապետներն էին, որ օգնել էին երկու եղբայրներին նվաճման գործում և այդպիսի ծառայության համար մի մի գավառի կողմնակալ իշխան նշանակվել ժառանգական իրավունքով»[4]:

Նույնն են հաստատում Լիպարիտի ու նրա հարազատների մասին և Ալիշանի հետևյալ տողերը. Լիպարիտն և «իր հայրն Թորոս, հօրեղբայրն՝ Օշին և իր մեծ եղբայրն՝ Վասիլ, որք յիշուին ի պատմչէն Կիլիկեցւոց՝ ամենքն այլ մարաջախտ էին, այսինքն զօրապետք»[5]:

Արդյոք ճիշտ չէ՞, ի հաստատումն Լիպարիտի Օրբելյան ծագման մասին Ալիշանի հայտնած կարծիքի, ենթադրել, թե նրա հայրը՝ Թորոսը Կապնցի է կոչվել հենց ա՛յս՝ Օրբելյան ժառանգական տան անունով, քան տեղացի եղել. այլապես Ալիշանը հարկ չէր ունենա զարմանալու, թե «ինչպե՞ս այս Կիլիկիոյ կողմեր եկեր է դա, անծանօթ է»[6]:

Լիպարիտի եկվոր և ոչ տեղացի լինելն է վկայում և գրույցը.

«Քաջ Լիպարիտ էր ի Սասնոյ գաւառէն, որ եկեալ բնակէր ի Կիլիկէ, ի ժամանակս վերջին թագաւորացն Հայոց, որ ի յազգէն Ռուբինանց՝ Հեթմոյ և Թորոսի և ի նոցին թոռանցն»[7]:

Բոլոր դեպքերում այս հարցն առայժմ մնում է լուծելի: Ավելացնենք միայն, որ գրույցում Լիպարիտի սասունցի համարվելը, թերևս, ունի ժողովրդական ծագում և, հավանաբար, կապվում է մեր էպոսի՝ Սասնա ծռերի հետ, որպես վկայություն քաջության ու հայրենասիրության:

Զրույցը վերարտադրում է Կիլիկյան հայկական թագավորության վերջին տարիների իրադարձություններից ա՛յն հատվածը, երբ հայ ժողովուրդն ու հայկական թագավորությունը դարձյալ դո-

---

[1] Ղ. Ալիշան, *Սիսուան*, էջ 226:

[2] *Տե՛ս* Գարեգին Հովսեփյան, *Խաղբակյանք կամ Պռոշյանք Հայոց պատմության մեջ, մաս առաջին, Վաղարշապատ, 1928, էջ 17 և հտտ., 35:*

[3] *Հ.* Ս. Էփրիկեան, *Պատկերազարդ բնաշխարհիկ բառարան, հատ. երկրորդ, Վենետիկ, 1907, էջ 277:*

[4] Գ. Հովսեփյան, *Խաղբակյանք կամ Պռոշյանք, մաս առաջին, էջ 17:*

[5] Ղ. Ալիշան, *Հայապատում, հատ. Բ, էջ 539—540, ծանոթ. № 15: Տե՛ս նաև Սիսուան, էջ 548:*

[6] Ղ. Ալիշան, *Հայապատում, հատ. Բ, էջ 539. ծանոթ. № 15:*

[7] *Տե՛ս զրույցը սույն գրքում, էջ 238 (№ 8):*

յուԹյան կռիվ ու հերոսական մարտեր էին մղում ընդդեմ թշնամու։ Սակայն, ի լրումն ժամանակագրությունների ու հիշատակագրությունների միջոցով մեզ հասած պատմական սուղ տեղեկություն-ների, զրույցը բաց է անում հերոսի վիպական կերպարը, ներքին ու արտաքին բարեմասնությունները, հոգեկան աշխարհը, հույզերն ու խռովքը։

Էպոսի հերոսներին վայել քաջությա՛մբ է նա հրաժեշտ տալիս հարազատներին.

— Բարո՛վ կացէք, զի թշնամեաց ո՛չ վախենամ, ապա յիմոցս թշնամութեամբ խորհուրդ խորհէին ինձ. բայց ես միամտութեամբ գնեմ զանձն իմ ի վերայ քրիստոնէից։— Եւ համբուրեաց զեղբայրըն իւր՝ Վասիլ և զորդին իւր՝ զՅոհաննէս, և զկինն իւր՝ զԱննայ, և բազում ողբով գովեց, և ասէ...։

Ապա գեղեցիկ ձևով նկարագրվում է նրա զինավառ՝ կազմ ու պատրաստ վիճակը, դյուցազնին վայել ուժն ու քաջությունը.

«Եւ եբեր զձին, Թամբեց և հեծաւ քաջն Լիպարիտ, և բռամբն ի ձեռինն խաղայր առաջի զօրացն Հայոց Թագաւորին, և օրհնէր զաստուած»։

«Եւ էր նա քաջ՝ նման Տրդատայ, նման Մուշեղայ։ Զոր գային տաճկաց ազգն ի Մարայ բազում զօրօք..., քաջ Լիպարիտն միայն ելանէր ի դէմ և կոտորէր զամենեսին և դիզէր զլաշն որպէս բլուր բլուր։ ... Եւ ի յահէ նորա ո՛չ իշխէր գալ հեծել՝ ասպատակել զՀայս։ ... Եւ ի ձայնէ գոչմանէ նորա՝ ահաբեկ լինէին Թշնամիք և սրտակոտր, որպէս զգոչիւն առիւծոյ։ ... Եւ մնամ, Թէ շատք ի յահէ նորայ մեռանէին ի վերայ ձիոց։ Եւ նա ըզկռուողսն կոտորէր, որպէս զհուր յեղեգն։ Եւ որք հարկանէին զնա սրով և նիզակաւ և նետով... Թուէր, Թէ տաճկինակով հարկանէին զինք»։ Անգեն ժամանակ անգամ «ո՛չ ոք իշխէր, որ մերձենայր առ նա»։ Եվ միայն հեռվից էին համարձակվում նետել «բռոմբ և նիզակս և գեղարդս՝ ի վերայ նորա»։

Զրույցը ծավալվում է, գովերգելով Լիպարիտի հայրենասիրությունը, ազնվությունը, անձնազոհությունն ու նվիրվածությունը երկրին ու ժողովրդին.

— Իմ ջանս վասն եկեղեցեաց է և քրիստոնէից, և ո՛չ վասն Թագաւորութեան,—ասում է նա, ընդգծելով իր անշահախնդրությունն ու հասկացնելով Թագավորին, Թե զահը ձեռք գցելու համար չէ՛ իր կռիվը, ինչպես երկյուղ ունի նա, այլ հայրենիքի ազատության։

Այնքան մեծ էր նրա ազնվությունը, ուժն ու հերոսությունը, որ թշնամին անգամ գնահատում էր այն, արժանի համարելով մինչև իսկ թագավոր դարձնել՝ իրենց հակառակորդների դեմ «որպէս պարիսպ» կացուցանելու։

Չնայած այս ամենին, Լիպարիտն սպանվում է, ավելի շուտ նահատակվում, պալատական հակամարտությունների ու դավադրության զոհ դառնալով։

Ժողովրդական հերոսի մահը ճակատագրական է դառնում և ժողովրդի համար։ Հայերը պարտություն են կրում անմիաբանության պատճառով, վտանգի տակ դնելով թագավորության ո՛չ միայն ներկան, այլև ապագան։

Ավելի հեքիաթային քան պատմական երանգ ունեն հաջորդ երկու զրույցները, թեև նրանցից առաջինն ուղղակիորեն կապվում է Լիպարիտի հետ։ Նա այդպես էլ սկսվում է. «Եւ կայր քոյր մի Լիպարիտին, փախուցեալ ի գիւղ մի, առնայկին, եկեալ իբրև հիսուն ամաց»[1]։ Այս զրույցում շեշտված է հայի հայրենասիրությունը, ուժն ու քաջությունը և ծիծաղելի վիճակի մեջ է դրված տաճիկը։ Լիպարիտի քույրը գոտեմարտում և հաղթում է տաճիկ ըմբիշին, որն իմանալով նրա կին լինելը, արհամարհում է՝ այր մարդ խնդրելով մարտնչելու իր հետ։ Սակայն կինը, որ հսկայաձև էր, բարձրացնում է նրան երկու ձեռքերի վրա, տանում, բերանքսիվայր գնում իշխանի առջև, պոկում-նետում մի ականջը և, որպես վարձատրություն, շալակում տանում է այնքա՛ն բամբակ, ինչքան կարող էր, չիմանալով թե մեջը դրված է քառասուն լիտր քար։

Այս, և նախորդ զրույցը ևս, հետապնդում են բարձրացնել հայ ժողովրդի ազգային հպարտության գիտակցությունը. հայ կինը նույնպես հերոս է և անգամ մենակ կարող է հաղթել տղամարդ թշնամուն։

Երրորդ զրույցը, թեև կորցրել է անձնանունների որոշակիությունը, սակայն պահպանել է տեղի ու ժամանակի հիշատակությունները, մասամբ նաև պատմականության հետքերը[2]։ Այստեղ մի եղբոր՝ Լիպարիտի փոխարեն հանդես են գալիս յոթը, որոնք զոհ են գնում թագավորի դավադրությանը, իսկ քույրը հաղթում է ըմբիշին։ «Այսպէս քաջ կային ի Սիս քաղաքի և ի աշխարհս Կիլիկեցոց». ավարտում է զրուցագիրն իր միտքը և ցավ է հայտնում, որ

[1] Զրույցը տե՛ս նույն գրքում, էջ 241 (№ 8)։

[2] Տե՛ս անդ (№ 9)։

*«Հիմի ունայն եմք թէ թագաւորէ և թէ իշխանաց»։ Դեպքերի տարեթիվ է նշվում 1387-ը։*

*Որպես եզրահանգում հայ միջնադարյան պատմական զրույցների ոգու ընդհանուր բնութագրման, անդրադառնանք հայ ժողովրդի արժանապատվության զգացումը, ըմբոստությունն ու հերոսական ոգին բացահայտող հետաքրքիր զրույցներից մեկին, որը պահպանվել է Մատթեոս Ուռհայեցու ժամանակագրության մեջ և վերաբերում է XII դարի սկզբներին.*

*«Յայսմ ամի (1111—1112—Ա. Ս.) եղև վրէժխնդրութիւն յԱստուծոյ անմեղ արեան Գագկայ Շահնշահի՝ որդւոյ Աշոտոյ Բագրատունւոյ, ի ձեռն առն հզօրի մեծ իշխանին Հայոց Թորոսի՝ որդւոյ Կոստանդի՝ որդւոյ Ռուբենայ։ Արդ, ի յաւուրս Թորոսի էին սպանողքն Գագկայ արքային Հայոց ի բերդն, որ անուանեալ կոչի Կնդռօսկաւիս»[1]։ Սրանք հաշտության դաշն էին կնքել և որոշ խոստումներ արել Թորոսին, սակայն հետագայում դրժել այն։ Թորոսը գրավում է իրեն խոստացած ամրոցը և պահանջում բերել Գագիկ արքայի թուրն ու հանդերձը, որ տեսնելով «ելաց դառնապէս, և լային ամենայն զօրքն»։ Ապա հրամայում է ցույց տալ գանձարանը։ Նրանք մերժում են։ Գագիկին սպանողներից մեկն ինքն իրեն գահավեժ է անում, իսկ մյուսն ասպառնում է Թորոսին, թե՝ «Դու հայ մարդ ես, և մեք Հոռոմի իշխանք, զի՞նչ կամիս պատասխանի տալ Հոռոմոց թագաւորին, որ դատես զՀոռոմ մարդ»։ Յայնժամ սրտմտեալ Թորոս, և զոյն երեսացն այլագունեցաւ, և առեալ ի ձեռին իւրում բիր մի կռանի և գազանաբար յարձակեցաւ ի վերայ նորա և ասէր, եթէ «Ո՞վ էիք դուք, որ զայր հզօր և զօծեալ թագաւոր Հայոց սպանանէիք, և կամ զի՞նչ պատասխանի ետուք ազգին Հայոց»[2]։*

*Հայկական պատմական զրույցների միջով անցնում է մի ընդհանուր գիծ, որ հետապնդում է որոշակի գաղափարական նպատակ. խարազանել այն ամենը, ինչ թուլացնում է երկրի դիմադրողականությունը, պայքարի ուժը, հանուն կյանքի, ժողովրդի հոգևոր ու ֆիզիկական գոյության, հանուն հայրենիքի խաղաղության ու ազատության։*

*Գաղափարական-քաղաքական նույն նպատակին են ծառայել հայկական ազգային զրույցներն առհասարակ. և ո՛չ միայն զրույց-*

---

[1] Մատթէոս Ուռհայեցի, *ժամանակագրութիւն, էջ 318։*

[2] *Անդ, էջ 320։*

*ները։ Միջնադարի մեր գրականության մասին խոսելիս Մ. Աբեղյանը գրում է (Գրիգոր Տաթևացու առիթով).*

*«Զպետք է մոռանալ, որ այն մարդիկը տքնել և հորինել են գործնական նպատակի համար—պատրաստել, ըստ իրենց ժամանակի հասկացության, գիտուն աշակերտներ, որ ընդունակ լինեին մաքառելու և ազգային անկման առաջն առնելու»*[1]։

*Իրենց արծարծած հարցերի այս բնույթով էլ բուն հայկական գրույցները տարբերվում են միջնադարի մյուս գրույցներից՝ ընդհանրապես։*

---

[1] Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն, գիրք 2, էջ 364։*

ԳԼՈՒԽ II

## ՔՐՈՒՅՑՆԵՐԻ ԱՇԽԱՐՀԱԿԱՆԱՑՈՒՄՆ ՈՒ ԱՆԿԱԽԱՑՈՒՄԸ

*Հայ միջնադարի զրույցները,—ինչպես ասացինք,—կարելի է բաժանել երկու խմբի՝ կրոնական և աշխարհիկ։ Կրոնական զրույցների գոյությունն այդ դարերում օրինաչափ և անխուսափելի երևույթ էր, մանավանդ հայ իրականության մեջ, ուր քրիստոնեական եկեղեցին միշտ ունեցել է առանձնահատուկ դեր՝ իր համապատասխան աշխարհայեցողությամբ ու գաղափարախոսությամբ։ Գրականությունը, այդ թվում և զրույցը, որ միշտ էլ այս կամ այն չափով ժամանակի ոգու արտահայտությունն է, ժամանակի հայելին, բնականաբար չէր կարող չարծարծել քրիստոնեական ուսմունքի հետ կապված, կյանքի ու կենցաղի մեջ արմատավորված բազում հարցեր, որ պետք է դիտվեն որպես օրվա անհրաժեշտ պահանջ, ժամանակի արտացոլում։ Ըստ այսմ, ո՛չ միայն զրույցների զարգացման ընթացքը, այլև միջնադարի ոգին, տնտեսական-քաղաքական, մտավոր ու հոգևոր կյանքը բացահայտելու համար, կարևոր է նկատել, թե ե՞րբ ինչ տիպի զրույցների է առավելություն կամ գերակշռություն տրվում, ինչպիսի՞ զրույցներ են դառնում ժամանակի հուզող ու հրատապ հարցերին անդրադառնալու միջոց, ի՞նչ արժեք են ներկայացնում նրանք պատմականորեն, ի՞նչ օբյեկտիվ եզրակացությունների են հանգեցնում դարաշրջանի հասարակական կյանքի, մարդկային փոխհարաբերությունների մասին և, վերջապես, ի՞նչ պատկերացում են տալիս միջնադարյան արձակ խոսքի այս կարևոր ճյուղի տեսակների, զարգացման ու գեղարվեստականության չափի վերաբերյալ։*

*Աստվածաբանական, կրոնական նպատակ հետապնդող գործերի, Ավետարանի որևէ դարձվածքի վրա կառուցված, մասամբ և շինծու, պատմությունների հեղինակները, ընդօրինակողներն ու*

վերապատմողներն անգամ միաժամանակ օգտվել են կյանքից ու բանահյուսությունից։ Դրա շնորհիվ է, որ զրույցների մեջ անմիջական դրսևորումն են գտել ո՛չ թե սոսկ աստվածաբանական հարցերը, եկեղեցական կանոններն ու օրենքները, կամ հոգևոր կյանքը, այլև իրական երևույթները, մարդու անձնական ու ընդհանրական վարքագիծը՝ լինի նա կրոնավոր թե աշխարհական։ Գրեթե բոլոր դեպքերում ատաղձ են դարձել հասարակական ու մարդկային իրական փոխհարաբերությունները, բնավորությունները, հոգեբանությունը, կենցաղը, վարք ու բարքը և սովորույթները՝ կենդանի ու ճիշտ նկարագրով, որի վրա միայն կառուցվում է բարոյական, կամ կրոնա-բարոյական, խրատական բնույթ ունեցող ընդհանրացումը, եզրափակումը։ Թեև նյութն այդ զրույցներում առնվում է կրոնական կաղապարի, կամ կրոնական շրջանակի մեջ, այսինքն՝ և՛ ելակետը և միտավորությունը դառնում է կրոնա-աստվածաբանական, ավետարանական, սակայն վկայակոչվում է ա՛յն իրական վիճակը, որ գոյություն ունի մարդու թե՛ ներքին և թե՛ արտաքին՝ հասարակական-քաղաքական ու գաղափարական կյանքում։ Երևան է գալիս մարդն իր առօրյայով՝ գործելով, ուրախություններով ու հոգսերով, իր խառնվածքով, բնական ցանկություններով՝ իրական կյանքով ու կենսահայեցությամբ։ Այդ պատճառով էլ կրոնական համարվող զրույցների գերակշիռ մասի նյութն անգամ, իր էությամբ, դառնում է աշխարհը՝ լայն առումով և աշխարհիկ իրականությունից հեռու պահելու ձգտումը։ Ըստ Ավետարանի աղքատասիրություն ու ողորմածություն քարոզող զրույցն իսկ անդրադարձնում է լիովին աշխարհիկ ու առօրեական կյանք՝ շուկա, ընտանիք, հյուր ու հյուրասիրություն, այլև բնավորություն ու սովորույթ[1]։ Հիշենք «Ուր գանձք ձեր են՝ անդ և սիրտք ձեր եղիցին» հայտնի դարձվածքի վրա կրոնական ոգով կառուցված զրույցը, որտեղ երևան են բերվում աշխարհիկ փոխհարաբերություններ՝ մոլի աշխարհային հակումներ, արծաթասիրություն, ագահություն, վաշխառություն, սրանցից բխող՝ անսրտություն, անգթություն, եսասիրություն և այլն։ Այլ կերպ չէր կարող լինել։ Նպատակ ունենալով քարոզել ու հաստատել բարեպաշտություն, սրբակեցություն, պատվիրանապահություն, դատապարտել եկեղեցու և քրիստոնեության համար մերժելի աշխարհըմբռնումներ ու աշխարհավարություն, զրույցներն անխուսափելիորեն պետք է անդրադառնային իրական կյանքում այդ իսկ

[1] Հարուստ, բայց ողորմություն չտվող մարդ, որ «Բնաւ պզղի կերակուր չէր կերեր»։ Տե՛ս «էջեր», էջ 19 (№ 25), «Մեծատուն խոճա և խորովու գառ»։

երևույթների առավել տարածում գտած արտահայտություններին։ Վերացական, տեսական, կրոնական դրույթների ուղղակի քարոզը նպատակին չէր կարող ծառայել, մինչդեռ իրական, ծանոթ վիճակների ցուցադրումը նպատակամետ էր։

XIII—XIV դարերի հայ իրականության մեջ վերջնականապես մուտք էր գործել աշխարհիկ ոգին, որի արմատներն աստիճանաբար ավելի ու ավելի խորն էին գնում հասարակության ո՛չ միայն կենցաղում, այլև գաղափարական-քաղաքական ու մշակութային կյանքում։ Այլևս անհնար էր դռները փակ պահել սաստկորեն ծավալվող այն կենսակիր ու հարաճուն ուժի առջև, որ դարերի ընթացքում, մեծ դիմադրության հանդիպելով, ավելի էր հզորացել ու այլևս առաջ էր գնում ճանապարհի բոլոր արգելքները խորտակելով, տիրականորեն կյանքի բոլոր բնագավառները ներխուժելով։ Աշխարհային ամեն բան անելանելիորեն մխրճվում էր ոչ միայն արտաքին, իրային հարաբերությունների, այլև մարդու էության մեջ, անխնայորեն թափանցում նրա ներաշխարհը, կենդանություն ու լույս սփռում հոգու ու մարմնի յուրաքանչյուր խորշում, չդնելով ոչ մի տեսակի՝ սոցիալական, կրոնական կամ սեռական խտրություն։ Եվ որովհետև չկար այդ խտրությունը, ապա նա իր ողջ էությամբ համակում էր նաև կրոնավորներին, այստեղ ևս տարբերություն չդնելով աստիճանների ու պաշտոնների միջև՝ հոգևոր առաջնորդ թե վանական, եպիսկոպոս, վարդապետ թե աբեղա։ Աշխարհը հորդացած, իր ափերից ելած, լցվում էր վանքերն ու անապատները, մենաստաններն ու ճգնավորների խուցերը։ Ժամանակակիցներից մեկի նկարագրությամբ, աշխարհիկ ոգու հաղթանակը հասել էր այնտեղ, որ XIII—XIV դարերի հոգևորականներն իրե՛նք էին հասարակությանն առաջնորդում դեպի զվարճավայրեր.

«Եւ յաւուրս կիրակէին քահանան առաջնորդէ ժողովրդեանն ո՛չ յարդարութիւն և ի դրունս եկեղեցւոյ սրբոյ, այլ ի վաճառատունս և ի փողոցս, ի կատակերգութիւնս, յարբեցութիւնս, ի թատերս և ի խաղս, զոր մանաւանդ բարւոք էր յաւուրս միաշաբաթու..., զի քահանան եղև իբրև զմի ի ժողովրդենէն, մանաւանդ թէ առաւելու ի չարիս և ի նոյն բանայ ճանապարհ, բազմաց տալով համարձակութիւն...»[1]։

Չնայած աշխարհիկ կյանքն հանդիպում էր դիմադրության և դարեր շարունակ մարդու մտավոր ու հոգեկան զարթոնքը կաշկանդած, իրեն ենթարկած կրոնական ոգին հեշտությամբ չէր ուզում

[1] Ձեռ. № 581, ԺԴ (1371 թ.), էջ 255բ—256ա։

գիշել դիրքերը, սակայն, այլևս անկարող էր արգելել կյանքի, իրականության մուտքն իր տիրակալության շրջանակները, և միայն վերջին ճիգերն էր թափում դուրս մղելու արդեն ներս խուժածը։ Եթե հարյուրամյակներ անընդհատ կրոնական ստեղծագործությունների մեջ հիմնականում արծարծվում էին քրիստոնեության ծավալման ու ամրապնդման և եկեղեցու ու աստվածաբանության հետ անմիջականորեն առնչվող զանազան հարցեր, որոնք քարոզվում ու տարածվում էին ուղղակիորեն, ապա այժմ նպատակը մնալով նույնը, փոխվում էր ստեղծագործության տաղձը, ուղղակիորեն շոշափվող հարցերի բնույթը։

Մարդու, հատկապես հոգևորականի համար, աշխարհայինի վնասակարությունը ցույց տալու նպատակով, կրոնական զանազան ստեղծագործությունների մեջ օգտագործվում էին իրական կյանքից վերցված, ընդհանրացված օրինակներ, որոնք մեջ էին բերվում առակի, ասացվածքի, զրույցի կամ հանելուկի ձևով։ Այս ճանապարհով ասպարեզ եկած փոքրածավալ գործերը միջնադարում երկար ժամանակ, մնում էին կցված տարբեր կրոնական գրվածքների, միչոց էին դառնում պարզաբանելու ցանկացած գաղափար՝ աստվածասիրություն, սրբացում, ապաշխարանք, աղոթասիրություն, հոգու և հանդերձյալ աշխարհի գոյություն և այլն։ Թվում էր, թե հիմնականը հենց ա՛յդ է սույն։ Մինչդեռ բուն նյութը ա՛յլ էր՝ աշխա՛րհն էր նրանց մեջ։ Իրենք իսկ հոգևորականները՝ ճգնավորներ, վանականներ, եկեղեցու սպասավորներ, զրույցներում հիմնականում երևան են գալիս ո՛չ այնքան իրենց անխախտ հավատով, այս կամ այն կրոնական պարտականությունը կատարելիս, իրենց սրբակրոն վարքով կամ առաքինություններով, որքան որպես մարդ՝ մարդկային լայն խառնվածքով՝ թուլություններով, արատներով ու բարեմասնություններով, աշխարհիկ գործերով։ Որքան էլ ճգնազգյաց, նրանց մեջ չի՛ մեռնում, կամ ի վերջո գլուխ է բարձրացնում աշխարհայինը, մարմնականը, բնականը[1]։ Առանձնապես նշավակվում է գինարբուքը, անառակությունը, արծաթասիրությունը, վաշխառությունը, ագահությունը, գողությունը, խարդավանքը, սպանությունը և այլն։ Որոշ զրույցներ, ընդգծելով այդ արատները,

[1] Հետաքրքիր է այս առիթով հիշել եկեղեցու սուրբ հայրերի շարքը դասված և իր կյանքն անապատում ճգնակեցությամբ անցկացրած Եվագր Պոնտացու (IV դար) խոստովանությունը՝ մահից առաջ. «Այս երեք ամք են յորմէհետէ չէ՛մ նեղացեալ ի ցանկութենէ մարմնոյ»։ Տե՛ս Բ. Սարգիսեան, Սրբոյ հօրն Եւագրի Պոնտացւոյ վարք և մատենագրութիւնք, էջ 7։

հանգեցնում են հակառակ արդյունքի՝ բացասական վերաբերմունք առաջացնելով դեպի կրոնավորները։ Բերենք մի օրինակ № 3526 ձեռագրից, ուր աշխարհային վայելքները և դրանց մեջ ամենամեծ ու աններելի հանցանք համարվող գինեսիրությունը խարազանվում են հետևյալ կերպ.

Որպէս գրեալ է, թէ երեք ճգնաւոր մի յանապատ աղօթէին։ Եւ ի փոքրուստ գնացեալ էին յանապատս և ոչ գիտէին զաշխարհի գնացս։ Եւ յաւուր միում թողին զաղօթս և զճգնութիւնս իւրեանց, ի միասին նստեալ [հարցանէին] զմիմեանս, թէ զի՞նչ է փառք աշխարհիս։ Եւ առաջին ասաց, թէ՝ «Զգինին գովեն, զի նա՛ է սիրոյ օրինակ»։ Եւ միւսն ասաց, թէ՝ «Զմիսն կու գովեն մէջ ամենայն կերակրոց»։ Եւ միւսն ասաց թէ՝ «Զպոռնկութիւնն գովեն»։

Եւ թողին զհոգևոր մշակութիւնն։ Առաջին ասաց, թէ՝ «Ես կերդամ գինի խմել. տեսնում, թէ գինին ի՞նչ լազաթ ունի և կամ ո՞րպէս խասիաթ»։ Եւ միւսն ասաց թէ՝ «Միս ուտեմ և զայնոր ճաշակն իմանամ և զխասիաթն»։ Եւ միւսն ասաց. «Ես գնամ պոռընկիմ և զմեղաց ճաշակն իմանամ»։

Եւ եկին ի քաղաքն՝ ի շուկայն։ Զայն, որ ասաց, թէ միս ուտեմ, նա գնաց աշչնոցն և էառ զմըսի զարշահոտն և դժար թուաց։ Եւ ասաց, թէ՝ «Ա՞յս է, որ միսն կու գովեն. սայ ինձ հարամ կենայ»։ Եւ այլ ոչ եկեր, այլ դարձաւ յանապատն ի ճգնութիւն իւր։ (Յերբ Աստուած զմարդն սիրէ, մարդոյն բարի սիրտ կուտայ, որ յամենայն մեղաց զարշի և ատէ սրտով և փախչի։ Դըժար բանն ա՛յն է, որ մեղքն մարդոյն յառաջ քաղցր թուի և յետ գործելոյն դառնանայ հոգով, իբրև զլեղի)։

Այն, որ ասաց, թէ գնամ պոռընկիմ, գնաց ի պոռնկատան դուռն և ետես արք և կանայք անամօթ և անպատկառ գործէին զչարն, և ասաց. «Հազա՞ր վայ ձեր կենացդ, որ անցաւոր կենացս համար զրկիք յանանց կենացն և ձեր հոգւոյդ կրակ վառէք և անքուն որդունք ծնանիք»։ Եւ էառ զդժոխոց հոտն և ի բաց փախեաւ։ (Ճշմարիտ, պոռընկի տունն դժոխք է և նիգք, և նորա տան ճանապարհքն դժոխոց ճանապարհն է, որպէս ասէ Սողոմոն. «Ճանապարհք դժոխոց՝ տուն նորա»։ Որպէս ճանապարհն ի քաղաքն տանի, այսպէս թէ մարդ զպոռընկի տան ճանապարհն բռնէ, հաշուեց թէ դժոխոց ճանապարհն բռնեց։ Եւ յերբ պոռընկի տունն մտաւ, համարիր թէ մարմնով դժոխքն իջաւ)։

Այն, որ ասաց, թէ գինի խմեմ, գնաց ի չար դժոխաց դուռն և ետես շատ գեղեցիկ երիտասարդ, զի նստեալ ըմպէին զմեղաց գինին։ Եւ սիրով մեծարեցին զնա և նըստուցին ի մէջ իւրեանց և ամենեքեան ուրիշ-ուրիշ թաս բռնեցին։ Եւ յերբ գինով հարբեցաւ, եկեր միս։ Եւ փորն լցաւ գինով և մսով. և ապա գնաց ի պոռընկատունն։ Եւ այնպէս երկուքն ազատեցան և գինիէխումն կորաւ։ Ապա յայտ է, որ ասէ. «Գինի՛ն է ամենայն մեղաց պատճառ և զամենայն մեղք գինի՛ն տայ գործել»։ Քանի որ մարդն փորովն սոված է՝ կերակրի ցանկանայ, և յերբ կշտանայ՝ պոռընկութեան սէրն և փափագ ընկնի...»[1]

Մի ուրիշ զրույց, որ աշխարհականների կյանքից է, հոգևոր նպատակներով գրված՝ հաստատելու քարոզի, «Յաղագս աղքատու-

[1] Ձեռ. № 3526, էջ 62ա։

ցեան» գլխում եղած այն միտքը, թէ աստված միշտ օգնության է հասնում աղքատին, դիմում է հետևյալ պատմությանը, որ ըստ էության քարոզչի կամքով է միայն բռնազբոսիկ կերպով առնչվում ցանկացած գաղափարին.

Այր ոմն աշխարհական, ունէր դստերս՝ ոչ սակաւ տիօք հասեալս ի կնութիւն։ Եւ ղի աղքատ էր, ո՛չ ունէր ուստեք խնամարկել զնոսա։ Խրատու եպիսկոպոսին իւրոյ, միշտ երթայր յեկեղեցին Աստուածածնին և զօգնութիւն ի նմանէ հայցէր, յամենայն աւուր մինչև ի վերջ հասարակաց աղօթից՝ յեկեղեցւոջն մնայր։ Յաւուր միում եկեա՛լ յեկեղեցին քաջ ընդ առաւօտն, եգիտ անդ՝ գաւթի առաջի դրան զերկուս կոյրս, որպէս սովորութիւն է, մուրացիկս, որք ոչ կարծելով անդ զոք գոլ, քանզի այրն այն թագնաբար եկեալ էր և լռութեամբ կայր, ընդ միմեանս սկսան խօսիլ, թէ ո՞վ ոք ի նոցանէ աւելի ողորմութիւն ի մարդկանէ առեալ էր։ Մինն ասէ. «Ես երկու հարիւր ոսկի ի գթակի կարեալ ունիմ»։ Եւ միւսն ասէ. «Ես երեք հարիւր ոսկի ունիմ»։ Զայս լուեալ այրն այն, վաղվաղակի գնաց առ եպիսկոպոսապետն և պատմեաց նմա զամենայն։ Եւ նա հրամայեաց զնոսա կոչել առաջի իւր, և յանդիմանեաց զնոսա իբրև ստախօսս և գողս, որք կերպարանին աղքատս լինել և զայնքան դրամն կարօտելոց վեր առնուն։ Եւ ասէ ցնոսա. «Ո՛չ կարէք առանց խղճի մտաց զայդքան դրամ առ ձեզ ունել»։ Եւ նոքա խոստովանեցան տալ զայնքան դրամն ի ձեռս եպիսկոպոսին, զի բաշխեսցէ առաւել կարօտելոց։ Եւ եպիսկոպոսն ետ միում ի նոցանէ քսանևհինգ կարմիր, և միւսումն՝ երեսուն. և զմնացեալն ետ առն այն աղքատին, զի զկարիս դստերաց իւրոց լցուսցէ[1]։

Ինչպես ա՛յս, այնպես էլ մյուս զրույցներում դրսևորվում է կյանքի կենդանի նկարագիրը՝ մի կողմից արդեն հաղթանակ տանող և մարդկային իրական փոխհարաբերությունների մեջ իշխող աշխարհայինի բուռն արտահայտությունները, մյուս կողմից՝ հոգևոր կյանքում դեռևս տիրող կրոնական ոգու դիմադրությունը, լայն առումով՝ մարմնի կամ հոգու նախընտրելիության դեռևս չլուծվող, տևական պայքարը։

Կապվելով կյանքի ու կենցաղի նման կոնկրետ երևույթների հետ, զրույցները կրոնական գրականության մեջ մտցնում են նոր որակ. ուղղակիորեն ցանկացած գաղափարը քարոզելու կամ գովելու համար նկարագրում ու խարազանում են խոչընդոտները, արգելքները՝ լայն տարածում գտած աշխարհիկ կյանքը, որով ավելի ևս սրում են հետաքրքրությունը դեպի այն։ Հակառակ մտադրության, նրանք ընդգծում ու ցցուն են դարձնում իրականության ճիշտ պատկերը՝ այն գույնավիճակն ու տրամադրությունները, որ ի սպաս են դրվում քարոզվող գաղափարներին։ Այսինքն, կրոնական նպատակներով սահմանված շեշտը թուլանում է, ընկնելով նաև

[1] Ձեռ. № 691, էջ 153ա։

ա՛յլ տեղ, ա՛յլ ձևով։ Հոգևոր միտումները առաջնային լինելով հանդերձ, մնում են հետին գծում, դառնում երկրորդական, հաճախ ստվերի տակ առնվում, մթագնվում և դիպուկ չեն հասնում նշանակետին։ Սրա հետևանքով է, որ կրոնական ծնունդ ու գույն ունեցող բարոյախոսություններով մեկտեղ, այդ զրույցներն ընկալվում և գիտվում են ո՛չ որպես սոսկ հոգևոր ստեղծագործություններ, այլ կրոնի հետ կապված, կրոնական նպատակներով ստեղծված, բայց և աշխարհիկ կյանք բացահայտող, աշխարհի հետ սերտորեն առնչվող գործեր։

Այսպիսով, աշխարհիկ ոգին նախ աստիճանաբար մուտք է գործում կրոնական նպատակներով գրված զրույցների մեջ, որով իրական կյանքի նկարագիրը, տարբեր կողմերով, ակամայորեն, առաջ են քաշում հենց ա՛յդ ստեղծագործությունները։ Եվ մյուս կողմից՝ վաղուց ի վեր մարդկային իրական փոխհարաբերությունների մեջ մտած և խորն արմատներ ունեցող, աշխարհայինն է իշխում այնքան, որ ի՛նքն էլ փնտրում է իր տեղն ու դրսևորումը՝ տարբեր ձևերով ու եղանակներով։

Իրականության արտացոլումն գտնելու այս տիրական պահանջը և այն խարազանելու անհրաժեշտության կրոնական մոտեցումը՝ երկուստեք խթանում ու անխուսափելի են դարձնում աշխարհիկ տրամադրությունների առավել աշխուժացումը գրականության մեջ։

Զրույցի կորիզը կամ միջուկը կազմող այդ աշխարհայինը, որ կարծես համեմատաբար մատչելի ու հեշտ ճանապարհ ընտրած լինելով, նախ երևան էր եկել կրոնականի միջոցով, արդեն մեծ տարածում գտած կրոնական ստեղծագործությունների հետ գիրկընդխառն, աստիճանաբար սկսում է ավելի հիմնավորվել, ծավալվել և ուժեղանալ այնքան, որ ճեղքելով դուրս է գալիս իր պատյանից, կրոնական շրջապատումից։

Անշուշտ, չպետք է այնպես պատկերացնել, թե կրոնականը միանգամից, ամբողջովին տեղի է տալիս աշխարհիկին։ Նա մնում է, հարատևում տարբեր գույներով, բայց նրա մեջ մուտք գործած աշխարհն սկսում է անկախանալ և գոյակցել առանձին։ Նշենք մի օրինակ № 691 գրչագրից, որ «Կոչի Քարոզգիրք և Հարանց վարք ֆռանկաց և խիստ պիտանի ժողովաց պատմութիւն՝ մէջ սուրբ աստուածային գրքոց» (այսպե՛ս է ճիշտ կերպով սահմանում գիրքը հիշատակարանի հեղինակը՝ ձեռագրի գրիչն ու նկարիչը՝ Ստեփան-

նոս Սարկավագը)[1]։ Այստեղ՝ քարոզների մեջ՝ «Յաղագս կամապաշտութեան» գլխում, բերվում է հետևյալ զրույցը.

*Դարձեալ այլ ոմն ունէր կին խիստ ինքնահաւան և կամապաշտ։ Եւ յորժամ անկաւ ի գետ և խեղդեցաւ, այրն խնդրէր զնա ընդդէմ ջրոյն գնալով։ Հարցին ցնա մարդիկք, թէ՝ «Վասն է՞ր ընդդէմ ջրոյդ խնդրէք»։ Պատասխանի ետ.*

*— Կին իմ հանապազ էր ինձ հակառակ՝ բերանով և արեամբ։ Արդ, զոր օրինակ առնէր ի կենդանութեանն, նոյնպէս, կարծեմ թէ զկնի մահուանն արար։ Եւ այնպէս հաւատալով, զի գնացից ընդդէմ ջրոյս[2]։*

Քարոզգրքերի այս գլխի տակ մեր ձեռագրերը պահպանել են նման մի ուրիշ աշխարհիկ զրույց, շատ տարածված և՛ ռուս և՛ եվրոպական գրականության մեջ, ուր ջրում խեղդվող կինը մինչև վերջին րոպեն, ի հեճուկս ամուսնու, մատներով ցույց է տալիս մկրատ, ասել կամենալով թե՝ արտը խուզած է և ոչ հնձած[3]։ Համանման մի այլ զրույց, որպես ժողովրդական ոգով գրած սրամիտ պատմություն, պահպանվել է իտալական գրականության մեջ, Պոջիոյի «Facetiae» գրքում, որ ունի հետևյալ համառոտ բովանդակությունը. Միշտ ամուսնուն հակառակվող անհաշտ կինը մի անգամ էլ կռվելիս նրան ասում է ոջլոտ։ Ոչինչ, նույնիսկ ծեծն ու մահվան վտանգը չեն վախեցնում նրան։ Ամուսինը նրան կախում է ջրհորը, սակայն նա շարունակում է կրկնել նույնը։ Եվ երբ միայն մատների ծայրերն էին երևում, երկու բթամատով դարձյալ նշան է անում՝ ոջլոտ[4]։

Զրույցներում, ինչպես որոշակի երևում է, մի կողմ է մնացել կրոնական միտումը և նույնիսկ առաջ է քաշվել ծիծաղի, կատակաբանելու, կամ ըավեշտի սրամիտ ոգին։ Այդ հակումը որոշակի արտահայտվում է նույնիսկ կրոնավորներին վերաբերող զրույցներում։ Դրանցից մեկն է հետևյալ հայկական, կամ հայկականացված զրույցը, դարձյալ գրված քարոզների մեջ.

*ԶՏիրատուր վարդապետն ի պաշտօն տարան և այն օրն հաց մոռացան տալ ուտելոյ։ Յերեկոյին ժամուն տարան ի տուն։*

*Ասէ պարոնն.— Վարդապետ, քանի՞ տարոյ ես։*

---

[1] Ձեռ. № 691, էջ 320ա։

[2] Անդ, էջ 217բ։

[3] Անդ, էջ 217ա։

[4] Տե՛ս Филипп Монье, Опыт литературной истории Италии XV века, էջ 221։

Ասէ.— Քառասուն տարոյ՝ պակաս մի օր։
Ասէ.— Մէկն է՞ր է պակաս։
Ասէ.— Օրս այս, որ քաղցած պահեցեր, ժամանակի կարգ ոչ է[1]։

Ձեռագիրը 1449 թ. գրչություն է։

Այս զրույցն ի ցույց է հանում ո՛չ միայն այն հանգամանքը, թե կատակել կարող է նաև կրոնավորը, վարդապետը, այլև այն, որ զրույցների հեղինակներն արդեն իրավասու են հոգևորականներին բնութագրելու աշխարհիկ հոգեբանությամբ, աշխարհիկ կերպարով ու խառնվածքով։

Այս առումով ուշագրավ է մի ուրիշ զրույց, ուր աշխարհային պոռթկումները կրոնավորների մոտ ևս բնական դիտվելուց բացի, հնարամտորեն ու շատ նուրբ կերպով, նույնիսկ եկեղեցու սուրբ համարվող հայրերի բերանով, անխուսափելի են համարվում։ Հաստատվում է մարմնի իրավունքը, աշխարհի անհրաժեշտ ու իրական լինելը, այն մեռցնելու անմտությունն ու անհնարությունը.

Որսորդ ումն, տեսեալ զԱնտոն, զի ուրախանայր ընդ եղբայր, և տկարացաւ։ Եւ իմացեալ Անտոնի, ասէ ցնա. «Քարշեա զաղեղդ»։ Եւ քարշեաց. եւ ասէ. «Ե՛ւս ձգեսցես»։ Եւ նա ասէ. «Հա՛յր, եթէ աւելի քարշեմ, կտրի աղեղն իմ»։ Եւ ասէ Անտոն. «Այդպէ՛ս է, որդեա՛կ, և մե՛զ պարտ է երբեմն զիջանել ըստ մարմնոյ, զի մի՛ սպանցուք զմարմին տկար»[2]։

Անշուշտ, այս զրույցն հետապնդում է և մի ուրիշ նպատակ, որ դարձյալ խոսում է հօգուտ աշխարհայինի հաղթանակի, այն է. բացատրել, պատճառաբանել ու մեղմել հոգևորականության մեջ մեծ չափերի հասնող և բացարձակ արտահայտություն ստացած աշխարհիկ տրամադրությունններն ու վարքը՝ թուլացնելու համար դրանց վարակիչ ուժն ու արտառոց տպավորությունը։

Զրույցի միջոցով՝ հնարագիտությամբ ու առիթի օգտագործումով, կրոնական գործերի մեջ խուժած թարմությունը՝ նորը, գեղեցիկն ու աշխարհիկը, ոչ միայն չի մերժվում ընդհանուրին, այլև խստորեն առանձնանում, սահմանազատվում է, ունենալով բոլորովին ինքնուրույն իմաստ, բովանդակություն ու ձև։

Այս ճանապարհով էլ աշխարհն սկսում է հաղթանակել և, թողնելով իր զարտուղի ընթացքը, բեռնաթափվում, ազատվում է կրոնական շաղախից, աստիճանաբար դրսևորվում որպես առանձին

---

1 Ձեռ. № 2226, էջ 59 բ, տե՛ս սույն գրքում, էջ 266 (№ 29)։
2 Տե՛ս սույն գրքում, էջ 267 (№ 30)։

ստեղծագործություն, ստանձնաբար էլ փոխելով թե՛ արտաքին ձևը, թե՛ բովանդակությունն ու միջավայրը, մի բան, որ բացորոշ կերպով իր արտահայտությունն է գտնում XIII—XIV դարերում վերջնականապես աշխարհականացման ուղին բռնած հայ տաղերգության մեջ ևս։

Երևան են գալիս աշխարհիկ թեմաներով զրույցներ, որոնք և խշխում են ուշ միջնադարում։ Սրանց մեջ նշանակալից տեղ են գրավում թարգմանություն-փոխադրությունները, որոնք դառնալով հայ միջնադարյան գրականության մի անկապտելի մասը, մեծ չափերով նպաստում են աշխարհիկ տրամադրությունների ներթափանցմանը, արտահայտմանն ու ծավալմանը հայ գրականության մեջ։

Աշխարհիկ զրույցները ևս, կրոնականների նման, քիչ բացառությամբ, պահպանում են մի հիմնական հատկանիշ՝ դաստիարակչական, բարոյա-խրատական, ուսուցողական և ծառայում են որևէ կոնկրետ նպատակի։ Ինչպես արդեն ասել ենք, նրանք գրվում են հատուկ մտադրությամբ, կենցաղային ու գաղափարական այս կամ այն կարգը հաստատելու, արմատավորելու մղումով, իրենց նպատակայնությունը, հաճախ, ուղղակիորեն ևս զրույցի վերջում շեշտելով. «Վասն այլոցն մանաւանդ արարի, զի զգուշասցին», կամ՝ «զոր ասեմքս բանիւ, գործովք արժան է առնել»[1]։ Մյուս տեղ, ուր քարոզիչն իր տեսիլը պատմելու միջոցով բացավառում է ժողովրդին՝ հաստատ մնալու «ի կանոնս խրատու սրբոյն Գրիգորի», վերջում մեկ անգամ ևս շեշտում է իր մղումը. «Եւ վասն այնորի՛կ յայտնեմ ձեզ ըզտեսիլս, զի և դո՛ւք ի միամիտ սրտէ փառաւորեսցէք զՔրիստոս աստուածն մեր...»[2]։

Առակատիպ մի այլ զրույց պատմվում է «ի յամօթ շահ առնողացն»[3], կամ ասվում է. «Եւ մե՛ք հետևեսցուք խրատոյ սորա» և այլն[4]։

Հասարակության և մարդու բարոյակրթման այս խնդիրը զրույցներն իրագործում են երկու ճանապարհով։ Առաջինը, և ավելի տարածվածը, կյանքից կամ մարդուց վերցրած արատավոր, խոտելի կողմերի նկարագրումն է, մերկացումն ու խարազանումը։ Երկրորդը, ի հակադրություն դրա, լավ, ընդունելի ու օրինակելի

---

[1] Տե՛ս Ձեռ. № № 3179, 1449 թ., էջ 126ա, 2496, էջ 355բ։

[2] Ձեռ. № 2496, էջ 352ա։

[3] Ձեռ. № 5623, էջ 291բ։

[4] Ձեռ. № 770, էջ 173բ։

*երևույթների դրվատումը, առաքինի ու ազնիվ արարքների դրսևորումը։ Երկու դեպքում էլ մերժվում է վատը, ուսուցվում և խրախուսվում հաստատակամը։ Մի զրույցում, ասենք, երկրի տերերին, թագավորներին խաղաղասեր լինելու, չպատերազմելու, հանգիստ կյանքի մղելու գաղափարն ու ձգտումը արտահայտվում է դրականի ցուցադրումով և ընտրությամբ, մյուսում բացասականը ամոթանքի ենթարկելու ուղիով։ Օրինակ.*

*Թագաւոր մի ունէր երեք որդիս։ Եւ եկեալ որդիքն ի միասին՝ խաւսէին ընդ միմեանս։ Եւ հայրն ծածուկ ունկն դնէր նոցա։ Եւ նոքա ասէին՝ Թէ անասուն էիք, ո՛րպիսի կամէիք լինել։ Եւ մինն ասէր.*

*— Եթէ ես մարդ ո՛չ էի, կամէի առիւծ լինել, զի թագաւոր է ամենայնի և պատառող։*

*Եւ միւսն ասէ.*

*— Ես կամէի արծիւ լինել, զի և նա՛ պատառող է և բարձր թռչի։*

*Եւ միւսն ասէ.*

*— Ես կամէի աղաւնի լինել, վասն զի անմեղ է և անվնաս, այլ սիրէ խաղաղութիւն և ընկերաւք թռչի։*

*Եւ հայրն գիտաց զնոսա, որ մինն պատառող լինէր և միւսն բարձրամիտ, վասն որոյ խրատեաց զնոսա և կացոյց զխաղաղասէրն թագաւոր*[1]*։*

*Նույն հետևությանն հանգեցնող ուրիշ զրույցում ի ցույց է հանվում և մերժվում Ալեքսանդր Մակեդոնացու ռազմատենչությունը։ Իմաստունները նրան ասում են. Եթե չե՛ս կարող տալ անմահություն և գիտես, որ ինքդ էլ մահկանացու ես «ընդէ՞ր ոչ խաղաղիս և խաղաղութիւն տաս աշխարհիս։ Այլ մի՛ շրջիր, ասեն, այլ արդ նիստ հաստատ աթոռն քո և խաղաղութիւն արայ աշխարհիս»*[2]*։*

*Հասարակության զանազան արատների մերկացումով ու մխտումով զրույցները նպատակ ունեն տարածել գիտություն ու լուսավորություն, դաստիարակել և մաքրել անհատի, նրա միջոցով նաև հասարակության բարքերը, վերափոխել, բարոյակրթել կյանքն ու կենցաղը՝ ըստ ժամանակի իշխող ուսմունքի ու պահանջվող գաղափարախոսության։*

*Իսկ այդ գաղափարախոսությունը դարից դար իր նոր կնիքն է դնում, փոփոխություն մտցնելով զրույցների բովանդակության մեջ, ընդարձակելով նրանց պարագիծը, առաջ քաշելով նոր հարցեր, որին ծառայում են ծիծաղաշարժ պատմությունները, արագամիտ պատասխաններն ու երգիծանքը։*

---

1 *Ձեռ. № 2226, էջ 17ր։ Տե՛ս* Մառ, *Ժողովածու, մասն Բ, էջ 277։ Զրույցի հեռավոր տարբերակը Թաթար Չանգզ ղանի և նրա երեք որդու մասին տե՛ս* Կիրակոս Գանձակեցի, *Պատմություն, էջ 232։*

2 *Ձեռ. № 2226, 184ա։*

Այսպես, զրույցների նյութը ոչ միայն աստիճանաբար կրոնականից դառնում է աշխարհիկ, այլև (այդ ընթացքում) ձեռք է բերում իմաստային նոր որակ, հարստանում ու գունազարդվում նոր երանգներով, խրատա-դաստիարակչականի հետ մեկտեղ ծառայում ա՛յլ նպատակների, դառնում նաև ժամանցի միջոց։

«Առակք ստեղծականք պիտանիք, առնուլ ի զրուցատրութիւնս և յասացուածս, արարեալ Յոհաննու Ծործորեցու» վերնագրի տակ առանձին շարքով բերված են զրույցներ և առակներ[1]։ Հեղինակը կամ ժողովողը վերջում գրում է. «Եւ արդ մի՛ ոք ծաղր առնիցէ զմեզ, զի առնուլ ի սոցունց ի զրուցատրութիւնս և ասացուածս ի դէպ համարեցաք, քան աշխարհականացն վարիլ սովորութեամբ։ Եթէ հաճոյ ումանց թուեսցի՝ տեառն շնորհ, ապա թէ ոչ՝ թողութիւն մեզ արասցէ սիրով նորին»[2]։

Վերջաբանը ցույց է տալիս, որ այս երևույթը դեռևս այնքան էլ սովորական չէր։ Որքան էլ աշխարհականների մեջ բանավոր պատմվում էին զրույցներ ու առակներ, գրավոր խոսքի մեջ նրանց մուտքը գրեթե նորություն էր XIII—XIV դարերում։ Եվ մասնավորապես, որ նույն այդ շրջանի նշանավոր մատենագիրներից մեկը՝ Հովհաննես Երզնկացի-Ծործորեցին է, զգուշությամբ ու երկմտանքով է ձեռնարկել այդ գործը[3]։

Հետաքրքիր է, որ ինչպես այս, այնպես էլ այլ ձեռագրերում զրույցների մի մասը բերվում է քարոզների հետ միջանկյալ, իսկ մյուս մասն անջատվում, անկախանում է և նույն այդ ձեռագրերում շարունակվում որպես առանձին շարք, դրանց օգտագործման որոշակի նպատակն ընդգծող վերնագրով[4]։ Նշենք և № 6974 ձեռագիրը. «Առակաւոր բանք վասն զրուցաւորութեան մարդկան»[5]։ Սրանք, իրոք, հետաքրքրաշարժ մեծ ու փոքր պատմություններ են, գրված զրուցելու, ժամանակ անցկացնելու համար, որոնցից կան և այլ ձեռագրերում։ Սակայն այստեղ արժեքավոր նորություն է դրանց բնութագրումը՝ ժանրային առումով, գիտակցումը որպես

---

[1] Ձեռ. № 2189, էջ 424ա։

[2] Անդ, էջ 434ա։

[3] Այս առակավոր զրույցների՝ «Առակք ստեղծականք»-ի հեղինակի հարցը դեռևս կարոտ է լրացուցիչ փաստերի։ Տե՛ս Մառ, ժողովածու, մասն Ա, էջ 75։

[4] № 2189 ձեռագրում Հովհ. Երզնկացու «Խրատ հասարակաց»-ի մեջ բերված զրույցները տե՛ս էջ 193ա, «Բանք պիտանիք և ոգէշահ, ժողովեալ ի սուրբ գրոց, առ ի խրատ մարդկան» ընդհանուր վերնագրի տակ։

[5] Ձեռ. № 6974, էջ 99ա։

ստեղծագործության, գեղարվեստական խոսքի առանձին տեսակ և ա՛յս դեռևս XIII—XIV դարերից սկսած, եթե ոչ ավելի վաղ[1]։

Աշխարհականացման ու անկախացման այս ճանապարհին աստիճանաբար շատանում ու մեծանում է սրամիտ զրույցների թիվը։ Ժողովրդի բանավոր ստեղծագործության մեջ հնուց ի վեր գոյություն ունեցող երգիծական ոգին արտահայտվում է նաև գրավոր։ Դեռևս XIV դարի ձեռագրերում գտնում ենք հետևյալ զրույցները.

Բազում չարիք գործած ավազակը՝ զղջալով դառնում է միայնակյաց, սակայն երկմտում է, թե կարող է շուտ քավել այդքան ծանր ու շատ մեղքերը։ Հրեշտակը կապում է նրա լեզուն, որ այդպես չխոսի։ Ավազակը պատասխանում է.

«Մինչ գործէի զամենայն չարիս և խաւսէի, ո՛չ կապեցեր զլեզու իմ. և ա՛րդ, զի փառաւորեմ զտէրն և զաստուած Քրիստոս, կապե՞ս զլեզու իմ»[2]։

Կամ. «Այլ ոմն շինէր տուն. և փորէր հիմն, և դնէր աղիւս ի ներքոյ և զքարն ի վերայ աղիւսին։ Եկեալ ոմն ասէ.—Զի՞նչ գործես, եղբա՛յր, զի պա՛րտ է զքարն ի ներքոյ դնել և ապա զաղիւսն։—Եւ նորա ծիծաղեալ ասէ.—Հանդերձեալ եմ կին առնուլ. և նա եկեալ շրջէ զտունն և ուղղեսցէ որմն»[3]։

Այս տիպի զրույցների մեջ կան պարզ, անմեղ, զվարճության համար միայն ստեղծվածները՝ ուղղակի կառուցված սրամիտ պատասխանների, սրախոսությունների վրա։ Սակայն գնալով նրանք ստանում են նաև զավեշտական, երգիծական բնույթ, ծառայում ո՛չ միայն ժամանցի ու ծիծաղի, այլև ծաղրի միջոց։ Թեև սրանց մեծ մասի համար ևս բնութագրական է արծարծել ընդհանուր ընդունելություն ու տարածում գտած, բոլոր ժամանակներին բնորոշ, համամարդկային հարցեր, բարոյական նորմաներ, արատներ կամ թուլություններ, սակայն նախորդների խրատա-դաստիարակչական, ուսուցողական, երբեմն և սառը պատմողական ոճին միանում կամ փոխարինում է աշխույժ, հաճախ նաև զավեշտական ոգին, զրույցներին տալով նոր իմաստ ու բովանդակություն. զվարճալի կատակների, խոսքերի կամ միմիկների ցուցադրումով հարուցվում է բարեկամական, հավանություն ու համակրանք արտահայտող,

---

[1] Հնարավոր է, որ սրանից առաջ ևս ձեռագրերում եղած լինեն նման նշումներ, որ, սակայն, չի պատահել, կամ վրիպել է աչքից—Ա. Ս.։

[2] Ձեռ. № 848, ԺԴ դար, էջ 187բ։

[3] Ձեռ. № 2189, էջ 388ա, «Յաղագս ամենայն պիտոյից, բանք իմաստասիրաց» ընդհանուր վերնագրի տակ (էջ 365ա)։ Զրույցը տե՛ս սույն գրքում, էջ 284 (№ 52)։

*բայց ոչ ծաղրող ուրախ տրամադրություն։ Այսպես, օրինակ, Վարդանն իր քարոզների մեջ պատմում է հետևյալ զրույցը. Բժիշկն ազդարարում է, թե կարող է աստծո օգնությամբ ողջացնել ամեն մարդու, որ հիվանդ է։ Հավաքվածներից մեկը գրպանից հանում է մի չորացած ագի և հարցնում, թե կարո՞ղ է ողջացնել։ Բժիշկը մնում է անելանելի վիճակում և պատասխանում. «Չէ՛ հնար թէ ողջանայ դա ի բժիշկաց, քանզի յիշուէն ագին միայն կայ։ Իսկ թէ աստուած ի հարկ անկանի և յանձն առնու, ապա կարէ ողջ առնել զդա, որ զայլ անդամքն նոր ստեղծանէ»[1]։*

*Կամ.*

*Դեսպանը հրաժարվում է պատվիրակության մեկնել, վախենալով այնտեղ գլխատվելուց։ Թագավորը խոստանում է այդ դեպքում վրեժ լուծել՝ իր տերության մեջ գտնվող թշնամի թագավորության հպատակների գլուխները կտրելով։ Դեսպանը պատասխանում է.*

*«Իրաւի, արքա՛յ, հաւատամ ես, որ կարող ես առնելոյ զայդ, զոր ասեսդ, բայց աղաչեմ խոկալ, որ ի մէջ այնքան հատեցեալ գլխոց հպատակաց նորին ո՛չ կարես գտանել գլուխ մի, որ լիցի այսպէս յարմար անձին իմոյ, որպէս որ յարմար է սոյն գլուխ, զոր այժմ ունիմ»[2]։*

*Սրանց միջոցով նույնպես խարազանվում են արատները, դատապարտվում առաքինություններ, բայց, ինչպես տեսանք, զվարճախոսությամբ, սրամիտ արարքներով ու խոսքերով։ Շատ անգամ նույն նյութն է ծառայում, թե՛ խրատա-դատապարտչական և թե երգիծական զրույցի համար, կամ հաճախ նո՛ւյն բանն են ուսուցանում ու խրատում երկուսն էլ, սակայն տարբեր ելակետերով, տարբեր միջոցներով։*

*Գինու վնասակարությունը ցույց տալու և նրանից հեռու պահելու նպատակով դարերի ընթացքում գրվել են բազմապիսի խրատական զրույցներ։ Այժմ սրանց ավելանում է նորը, ասված զարմանք ու ծիծաղ հարուցող կատակով.*

*«Իմաստասէր մի կոչէին ի սեղան թագաւորին ի ճաշակել։ Եւ նա բազմեցաւ ընդ իշխանսն։ Եւ մատրուակ մի ոսկի բաժակաւ մատուցին նմա գինի։ Եւ նա եկաց յոտն և ասէ. «Ո՞վ բարի թագաւոր, զգինիս ի փառս քո՛ ըմպեմ»։ Եւ եհեղ զգինին յերկիր։ Եւ իշխանքն ծիծաղելով ասացին. «Յիմարեցա՞ր, ո՛վ իմաստասէր»։ Եւ*

---

[1] *Տե՛ս զրույցը սույն գրքում, էջ 325 (№ 91)։*

[2] *Ձեռ. № 8825, էջ 41ա (տե՛ս սույն գրքում, էջ 324, № 89)։*

նա սաէ. «Դո՛ւք էք ծիծաղելոյ արժանի. զդա յեղաւ յերկիր, թէ արբեալ էի՝ ի՛նքն զիս յեղոյր յերկիր»[1]։

Տեղին է այս առթիվ հիշել ձեռագրերից մեկում եղած հետևյալ խիստ հետաքրքիր դիտողությունը, որ պատկանում է եթե ոչ ավելի վաղ շրջանի, ապա ամենաուշը՝ XIII—XIV դարի մի հեղինակի.

«Բազում անգամ ամենայն սրբոց գրոց բանք զմի՛ և զնո՛յն օրինակ ունին, որ ինչ վասն աստուծոյ ասացեալք, և վասն առաքինութեան, բայց նկարագիր բանիցն փոփոխեալ՝ զանազան երևի»[2]։

Սրամիտ, զավեշտական զրույցների մի մասը գնալովստանում է ավելի սուր երանգ, խարազանող, դատապարտող բնույթ, որ երբեմն հանգեցնում է նույնիսկ կրոնական ու բարոյական նորմաներին հակառակ եզրակացությունների, եկեղեցական օրենքների քննադատության։ Սրամտությունն ի վերջո վեր է ածվում ծաղրի ու ծիծաղի, բացահայտում ո՛չ միայն կենցաղային արատներ, այլև գաղափարական հակադիր հասկացություններ՝ ավետարանական քարոզների ու ճշմարտության հակասականություն, կասկածի տակ առնում որոշ հավատալիքներ, երգիծանքի ենթարկում հոգևորականներին։ Ինչպիսի՜ դառն ծաղր կա այս պարզ, անմիջական, բայց և ըմբռնումով ասված ու սրամիտ խոսքերի մեջ.

«Աւազակ ոմն տարեալ եղև ի կախարանն։ Եւ խոստովանահայրն, յորդորելով զնա ի մահ, ասէր թէ՝ «Որքա՛ն երջանիկ ես դու, սիրելի՛ եղբայր, զի յուսով այսօր կարես բազմիլ ի սեղանի արքայութեան՝ ընկերակցութեամբ Աստուծոյ և հրեշտակաց»։

Պատասխանի ետ աւազակն և ասէ. «Սիրելի՛ Հայր, մեծ շնորհ իմն առնես ինձ, եթէ գնասցես ի տեղի իմում, զի զեռևս ո՛չ եմ քաղցեալ և ոչ է ինձ ժամ ճաշելոյ»[3]։

Այստեղ բացվում է ա՛յն թերահավատությունը, որ գոյություն ունի հանդերձյալ կյանքի լինելության հարցում, որ և արտահայտվում է ուրիշ զրույցներում ևս[4]։

Ավելի ուշ համարձակություն է առաջանում սրամտորեն ծաղ-

---

[1] Տե՛ս սույն գրքում, էջ 324 (№ 90)։ Տե՛ս նաև «Աղէքսանդր և երկոտասան կին և Արիստոտել» զրույցը («էջեր», էջ 117), ուր արատը մերկացվում է ծիծաղելի արարքների ու խոսքերի միջոցով։ Զրույցի սյուժեն տե՛ս **Филипп Монье,** Опыт литературной истории Италии XV века, էջ 85, որ ֆրանսիական գրականության մեջ բերվում է որպես ֆաբլիո-զավեշտական պատմություն։ Տե՛ս «История французской литературы“, том, I, էջ 142։

[2] Ձեռ. № 2178, ԺԴ դար, էջ 209բ։ Հնարավոր է, որ հեղինակը Պլուզ Հովհ. Երզնկացին լինի։

[3] Ձեռ. № 1778, էջ 135բ (№ 20)։

[4] Տե՛ս սույն գրքում, «Աւազակ և խոստովանահայրն» զրույցը, էջ 329 (№ 110)։

բելու նույնիսկ ավելի բարձր կրոնավորների, արքեպիսկոպոսների[1]։ Ամենածանր պարագաներում անգամ երգիծանքը ծիծաղ, ուրախ ու աշխույժ տրամադրություն է հարուցում, դրանով ավելի ևս հաստատելով կյանքը, հեռացնելով աշխարհի կրոնական ըմբռնումը. մարդն իրեն լավ ու թեթև է զգում։

Երգիծական այս ստեղծագործությունները, որ վաղուց հետէ գոյություն են ունեցել ժողովրդի մեջ և ձեռագրերում երևան եկել ճառերի ու քարոզների հետ ընդելուզված, տարածվում են XIII—XIV դարերում[2], և ազատորեն ծավալվում հետագայում՝ XVI—XVII դարերում՝ իրականության թելադրանքով, ժամանակի ու անդառնալիորեն փոխված հասարակական-քաղաքական կյանքի պահանջով։

Մարդն այլևս չի գոհանում հանդերձյալ՝ դրախտային կյանքի արժանանալու սին հույսերով, լացով, գործած կամ չգործած «մեղքերի» համար մեղանչելով ու ապաշխարելով։ Լայնացել է նրա մտահորիզոնը, հասել աշխարհն ու աշխարհայինը ճանաչելու, նրա անցողիկությունն զգալու և ափսոսալու, վայելքի հնարավորություններից չզրկվելու իմաստությանը։ Նա ուզում է ապրել ազատ ու անկաշկանդ, կյանքից հաճույք ստանալ առանց վախի, առողջ ու զվարթ ծիծաղով, հաճախ շատ պարզ, անմեղ ու անմիջականորեն ասված սրամտություններով։ Այս հողի վրա է, որ ծնունդ են առնում խրատա-դաստիարակչական հատուկ նպատակ չհետապնդող սրամիտ զրույցներ, որոնք օգնում են պարապ ժամերը լցնելու, հոգեկան ու ֆիզիկական ցավերն առժամանակ մոռացության տալու, կյանքը հեշտացնելու, ժամանակը կատակով ու ծիծաղով անցկացնելու՝ ծառայում աշխարհիկ տրամադրությունների։

«Երբեմն զօրական ոմն գտանելով ընդ կնոջ իւրում ի բարձր ծովում, ի ժամանակի մեծի ալէկոծութեան, տեսանէր որ նաւավարքն թափէին ամենայն կարողութեամբ զամենայն ինչ և իցէ կարասիս՝ թարց երեսպաշտութեան իմիք՝ որք պատահէին ի ձեռս իւրեանց։ Մանաւանդ աղաղակէին ամենքն, թէ՝ «Ընկեցուք նախապէս զծանրագոյն բեռինս, առ ի փրկել զկեանս և զերծանիլ ի ծովէն, զի մի՞ ընդ իրացն համանգամայն ընկղմեսցուք»։ Իբրև լուաւ զայս զօրականն, խոյն կալաւ զկին իւր և ընկեց ի ծովն, ասելով թէ՝ «Ոչի՛նչ է ծանրագոյն և անտանելի բեռն ինչ ինձ ի մէջ աշխարհիս, քան զկին իմ»[3]։

---

[1] Տե՛ս ձեռ. № 1778, էջ 138ա (№ 37)։

[2] Տե՛ս №№ 2226 (էջ 59բ), 4196 (էջ 4բ), 8356 (էջ 9ա). ձեռագրերից բերված զրույցները տե՛ս սույն գրքում, էջ 266—267 (№ 29, 30), 324 (№ 91)։

[3] Ձեռ. № 1778, էջ 139ա (№ 41), տե՛ս սույն գրքում, էջ 335 (№ 124)։

*Ահա թե ինչպես էին ընդունվում զվարճալի նովելները Բոլոնիայում, ըստ Սաբբադինո Դելի Արիենտիի նկարագրության. Ոմանք ծիծաղից թեքվում էին առաջ, ոմանք՝ հետ, ուրիշները պահում էին փորները, իսկ շատերը մատներով կամ թաշկինակով սրբում էին անչափ հուզմունքից արցունքոտած աչքերը*[1]։

*Երգիծական զրույցներն, իրենց այս առանձնահատկություններով, էլ ավելի են մոտեցնում գրականությունը հասարակությանը, հեշտացնում խորտակելու այն պարիսպը, որ անջրպետում էր նրա մուտքը դեպի ժողովրդական ավելի լայն խավերը, ինչպես և ժողովրդականի մուտքը գրականության մեջ։ Իրենց մեջ արտացոլած բարքերի, զվարճությունների ու մարդկային տարբեր վիճակների նկարագրությամբ նրանք հեշտացնում են նաև որոշել հետաքրքրությունները, ճանաչել հասարակությունը, բնութագրել ժամանակները։*

*Զավեշտն ու երգիծանքն իրենց հերթին բերում են զրույցների ձևական կամ կառուցվածքային փոփոխություն, որ արդեն իսկ երևան էր եկել բովանդակության աշխարհականացման ճանապարհին։*

*Սկսելով բուն նյութից՝ պատմությունից կամ գործողությունից, առանց հատուկ մուտք ունենալու, երգիծական զրույցներն ավարտվում են նա՛և առանց հատուկ բարոյախոսության, թողնելով ընթերցողին, կամ լսողին զվարթ տրամադրության մեջ՝ կատարելու ցանկացած եզրահանգումը։*

*Դարով ու ժամանակի փոխհարաբերություններով բնորոշվող այս երևույթը հատկանշական է նաև XV—XVII դարերի հայկական տաղերգությանը։ Մկրտիչ Նաղաշի ստեղծագործություններում արդե՛ն իսկ երևան եկած երգիծական ոգին՝ երևույթները ծիծաղի ու կատակի, ծաղրի ու հեգնանքի միջոցով բացահայտելու ուղին գնալով ծավալվում է՝ ընդգրկումով խորանում ու լայնանում։ Հետագայում երգիծանքը բանաստեղծության մեջ հիմնավոր տեղ է գրավում և XVII դարում իր կատարելությանը հասնում Նաղաշ Հովնաթանի գործերում։*

*Անշուշտ, հնուց էլ եղել են աշխարհիկ բովանդակություն ունեցող, մանավանդ երգիծական զրույցներ, որոնք ավելի տարածված են եղել բանավոր, անեկդոտների ձևով, բայց միանգամից չէ՛, որ մուտք են գործել գրավոր խոսքի մեջ, այլ աստիճանաբար, երբ*

---

[1] *Տե՛ս* **Филипп Монье,** Опыт литературной истории Италии XV века, *էջ 43։*

*աշխարհիկ միտքն արտահայտվելու ազատություն է ստացել: Ցավոք գրույցների անհեղինակ լինելը և գրության ժամանակի անհայտությունը արգելք են հանդիսանում որոշելու նրանց ժամանակագրությունն ու զարգացման ճշգրիտ ընթացքը: Այս հանգամանքը նկատի ունենալով է, որ հոգևոր երգերի մասին Մ. Աբեղյանը գրում է.*

*«Մի անգամ, որ մեր հոգևոր երգերի հեղինակներն անհայտ են կամ հավաստի հայտնի չեն, ասել չի ուզիլ, որ այժմ այդպիսի վիճակի մեջ անհնար է մեր այդ բանաստեղծության զարգացման ընթացքը ճշտությամբ ըմբռնել և ժամանակաբանական կարգով բացատրել. այլ այդ կարելի է միայն ընդհանուր և էական գծերով որոշել»[1]: Մի բան, որ արել ենք և մենք, զրույցների առաջխաղացման ընթացքը ցույց տալու համար հիմք ընդունելով հայ հասարակական-քաղաքական, ինչպես նաև մշակութային կյանքի զարգացման ոգին ու առանձնահատկություններն՝ ընդհանրապես, զրույցներինը՝ մասնավորապես: Եվ եթե հնարավոր չէ ուղղակի որոշել, թե ո՛ր զրույցը ե՛րբ է առաջացել, ապա հնարավոր է ասել, որ XIII—XIV դարերում աշխարհիկն ավելի հաճախ է երևան եկել, իսկ հետագայում, մասնավորապես XVII դարում մեծ չափերի հասել:*

---

[1] **Մ. Աբեղյան.** *Հայոց հին գրականության պատմություն, գիրք 1,* Երևան, 1944, էջ 475:

## ԳԼՈՒԽ III

# ԿՅԱՆՔՆ ՈՒ ԱՇԽԱՐՀԱՅԵՑՈՒԹՅՈՒՆԸ ԶՐՈՒՅՑՆԵՐՈՒՄ

Միջնադարյան զրույցի ելակետը, նպատակն ու վերջնակետը մարդն է, նրա գաղափարական, բարոյական կերպարի մաքրումը, ազնվացումն ու բարձրացումը:

*Ինչպես քանդակագործն արձան կերտելիս մեծ կամ փոքր շտկումներով մինչև վերջին րոպեն աշխատում է հղկել, կոկել, ամբողջացնել ու կատարելության բերել իր ստեղծած մարդկային կերպարը, այնպես էլ զրույցներն՝ իրենց ընդհանրության մեջ ձգտում են մարդկային էության կատարելությանը։ Ամեն մի զրույց մարդու հոգևոր կերտվածքը հնարավոր կատարելության հասցնելու մի առանձին մեծ կամ փոքր շտկում է։*

*Խնդիր ունենալով մարդն առհասարակ, զրույցներն առաջ են քաշում նրան բանական բարձր էակ դարձնելու համամարդկային ընդհանուր հարցեր, համապատասխան ժամանակի աշխարհըմբռնման ու աշխարհայեցության։ Ըստ այդմ նա պետք է ձգտի հասնել աստվածային մաքրության՝ լինի բարի, ազնիվ, մարդասեր, գթած ու ողորմած, անշահախնդիր, անկաշառ ու արդար, դեն նետի մարդու էությունը խաթարող ամեն մի արատ՝ չարություն, նախանձ, ոխ, ատելություն, ընչաքաղցություն, զանազան մոլություններ և այլն։*

*Իրականության արտացոլումը, կյանքի, կենցաղի ու բարքերի նկարագիրը ինքնին զրույցի անմիջական, ուղղակի նպատակը չէ. սակայն, հիմնականում կոչված լինելով ծառայելու մարդու կյանքի բարեփոխման ու բարեկրթման, հոգու և կենցաղի մաքրման ու ազնվացման նպատակներին, յուրաքանչյուր զրույց, բնականաբար, դիմում է նույն այդ կյանքին, իր հետ բերում նրա որևէ մի կողմի, որևէ մի երևույթի նկարագիրը, այս կամ այն չափով դառ-*

նում նրա գրական, գեղարվեստական արտահայտությունը։ Մարդու գաղափարական, բարոյական ու հոգեկան աշխարհի լայն, բազմակողմանի ընդգրկման ձգտումն է, որ հասցնում է նաև իրականության դրսևորման՝ լայն առումով, հնարավորություն ընձեռում բազմակողմանիորեն, գրեթե նույն ուժով ու նույն պարագծով շրջառելու իրական փոխհարաբերությունները՝ մարդու և՛ ներաշխարհը և՛ արտաքին, իրային կյանքը, երևույթների միջնադարյան հասկացողությամբ, մոտեցումով ու արժեքավորմամբ։ Այս՝ մի՛ կողմից։ Մյուս կողմից միջնադարում, կյանքի աշխարհականացման ճանապարհին, երբ գնալով ավելի ու ավելի էր պակասում հանդերձյալի գոյության հետաքրքրությունը և խորանում կյանքի կարճատևության գաղափարը, այնքա՛ն էր մեծանում նա՛և երկրայինը վայելելու տենչանքը, որ իր բուռն արտահայտություններով երբեմն հասնում էր արտավոր չափերի, ծայրահեղությունների, մանավանդ ըստ կրոնա-եկեղեցական աշխարհայեցության։ Եվ դա դրդապատճառ էր կանգ առնելու կյանքի հա՛տկապես այդ կողմերի վրա՝ դրանք վերացնելու մղումով։ Զրույցներն իրենց հերթին (որպես գեղարվեստական ստեղծագործություն), հաճախ ավելի են ընդգծում ու խորացնում, խտացնում ու գունավորում երևույթները, առանձին, կոնկրետ դեպքեր ու հարցեր վեր հանելով մեկտեղ՝ կատարում ընդհանրացումներ, պատկերավոր, արտահայտիչ ու ներգործուն դարձնում եզրահանգումը՝ առաջադրված գաղափարը։ Այս հանգամանքն սկիզբ թաքնված ծնում էր կյանքի արտացոլման և երրորդ անհրաժեշտությունը. ի հակադրություն աշխարհականացող իրականության՝ հաստատել քրիստոնեական եկեղեցու հավատալիքները, օրենքներն ու կանոնները՝ հասարակությանն հանրամատչելի միջոցներով, որոնցից էին և զրույցները։ Ունենալով խրատա-դաստիարակչական և ժողովրդական բնույթ, սրանք օգտագործվում էին քարոզչական նպատակներով, կրոնական աշխարհայեցությունը, բարոյականությունն ու ծեսերը պահպանելու ու տարածելու ձգտումով՝ դարձյա՛լ դիմելով փաստերին։ Եվ անգամ կրոնական զրույցները, կամա թե ակամա, արձանագրում ու գրառում են կյանքը, կենցաղը, բարքերն ու սովորությունները, հոգեբանությունները՝ նպատակ ունենալով ավելի դիպուկ բացահայտել ցանկացած հասկացողություններն ու երևույթները։ Կրոնավորի մեջ հեզություն, համբերություն ու խոնարհություն դաստիարակելու, և առհասարակ երկայնամտություն, մեծահոգություն ու առաքինություն քարոզելու նպատակով ներկայացվում է միջավայրը,

վանական կյանքը, ա՛յն պայմանները, որ զրկարտություն, ատի ու արհամարհանքի ճանապարհով ստորացնում, ոչնչացնում են մարդկային բոլոր արժանապատվությունները, ըստ էության մեռցնում մարդուն և՛ բարոյապես և՛ ֆիզիկապես։ Հակառակ քարոզվող գաղափարախոսության անուղղակիորեն, լայն ֆոնի վրա, բացվում է վանական կյանքն իր ներքին մեքենայություններով, անարդարություններով, ծանր պատիժների ու տանջանքների բազմագույն ցանցով, չար ու բանսարկու կրոնավորներով, փառքի ու դիրքի ձգտող միաբաններով։ Ընդգրկումը լայն լինելով, վանականների հետ մեկտեղ մերկացվում են և աշխարհիկ առաջնորդները՝ գործին միջամուխ, բայց ո՛չ խորագետ, ճշմարտությանն անտեղյակ ու անհետամուտ, անհոգի ու անսիրտ, անարդար վերաբերմունքով[1]։

Կյանքի և իրականության արտացոլումը զրույցներում պայմանավորված է նաև նրանց գեղարվեստականության չափով։ Որքան ավելի մեծ է արվեստը, ստեղծագործական ճաշակի նրբությունը, այնքան ավելի խորն է ընդգրկումը։ Որքան անհանգիստ է նորն իմանալու, փորձելու և ճանաչելու հեղինակի միշտ պրպտող միտքը, որքան նուրբ մարդու հոգեբանության ու աշխարհի ճանաչման հասնելու նրա ձիրքն ու շնորհքը, այնքան լայն է իրականության դրսևորման սահմանագիծը։ Այս դեպքում առաջնային, էական գաղափարի բացահայտմանն ի նպաստ տարվում է և երկրորդ գիծը, սուր ու դիպուկ արտահայտություններով դրսևորվում է իրականությունը, որը լրացնելով ու խտացնելով զրույցի հիմնական իմաստը, ստեղծում է մարդու ներքին ու արտաքին աշխարհն ըմբռնելու նոր՝ ավելի բարձր մակարդակ։

Բնության, այս դեպքում թերևս նե՛ղ առումով իրականության, կոնկրետ նկարագիր քի՛չ է պատահում, որը ևս բացատրվում է զրույցների բնույթով, նրանց մեջ արծարծված թեմաներով, որ, ինչպես ասվել է, գերազանցապես նեղ ու կոնկրետ որևէ միջավայրի, տեղի ու ժամանակի հետ չեն կապվում, այլ հիմնականում ընդգրկում են համամարդկային ընդհանուր, անհատական կամ հասարակական բնույթ կրող հարցեր՝ առաքինություն, ազնվություն, բարեպաշտություն, ընկերասիրություն, արդարադատություն, ինչպես և ագահություն, գինեմոլություն, արծաթասիրություն, մեծամտություն և այլն։

Այդ է պատճառը, որ ո՛չ միայն արտահայտելիք գաղափարի համեմատ, այլև իրենց ստիճանական զարգացմանը զուգընթաց՝

---

[1] Տե՛ս ձեռ. № 791, էջ 149բ։

կրոնականից աշխարհիկ, նրանք փոխում են նաև ա՛յն միջավայրն ու իրադրությունները, որոնցից քաղում են համապատասխան «վավերագրեր», համապատասխան ցուցադրական նյութ։ Ջրույցի թեման ինքնըստինքյան դառնում է կյանքը, այն բուն աղբյուրը, որով սնվում է նա և որը ծնում կամ կազմավորում է տվյալ բանական էակին։

Ընդգրկման այսպիսի մեծ ծավալն, անշուշտ, բնութագրական է զրույցներին ընդհանրապես՝ որպես ժանր։ Բոլոր զրույցների ամբողջության մեջ է, որ իրականությունը գտնում է լայն արտացոլում՝ մի կողմից մարդկանց, հասարակական երևույթների մեջ պահպանված պարզ, ազնիվ, անկեղծ ու միամիտ փոխհարաբերություններով, մյուս կողմից՝ արատավոր, խոցելի ու մերժելի գծերով, մերթ աշխարհիկ կյանքի պոռթկումներով և մերթ դեռևս իշխող կրոնական աշխարհայեցության սահմանափակումներով։

Մինչդեռ՝ յուրաքանչյուր զրույց, առանձին վերցրած, արտահայտում է այդ մեծ ընդգրկման լոկ մի կողմը, յուրովի լուծում առաջ քաշված որևէ խնդիր, բացում մարդու ներաշխարհի՝ հոգեբանության, խառնվածքի, կամ աշխարհայեցության մի՛ գիծը միայն՝ հայրենասիրություն, անձնվիրություն, մարդասիրություն, ժլատություն, ագահություն, անիրավություն, կաշառակերություն և այլն։ Անշուշտ, դերազանցապես նկատի են առնվում ժամանակի համար առավել բնորոշ, ուշադրության զարնող, շատ տարածված, սուր արտահայտություն գտած, ընդհանուր բնույթ կրող և ընդհանրացման արժանի երևույթներ։

Կյանքի այսպիսի անկողմնակալ՝ կամ անաչառ արտացոլումն ի ցույց է հանում իրականությունն իր և՛ դրական, ընդօրինակելի գծերով, գովեստի ու խրախուսանքի արժանի գույներով, և՛ արատներով, հանգեցնում հասարակական, գաղափարական կամ բարոյական կյանքի զանազան կողմերի մերկացմանն ու խարազանմանը, մարդկային զանազան թուլություններն ու թերությունները ի ցույց հանելու միջոցով։ Այսինքն՝ թե՛ մարդը և թե՛ իրերն ու երևույթները վեր են հանվում բնական վիճակով, այնպե՛ս, ինչպես լինում է կյանքում, կամ ինչպես չպե՛տք է լինի. սակայն վերջին դեպքում ցույց է տրվում նաև, թե ինչպիսին պետք է դառնա նա։ Բոլոր պարագաներում՝ թե՛ լավի դրսևորման և թե՛ վատի խարազանման ժամանակ, հիմնական խնդիրը մնում է նույնը՝ մարդը, նրա անձնական, բարոյական, հասարակական վարքագծի վերադաստիարակումը։ Երկու դեպքում էլ բացառություն չեն կազմում

մարդու ոչ սոցիալական ծագումն ու հասարակական դիրքը, և ո՛չ էլ հոգևոր կամ աշխարհիկ վիճակը։

Զրույցներում հանդես են բերվում թագավորներ, թագուհիներ, զանազան պալատականներ ու իշխաններ, մեծատուններ, հարուստ վաճառականներ ու վաշխառուներ, դատավորներ, զորականներ, ինչպես նաև շինականներ, հողագործներ, մշակներ, ծառաներ, արհեստավորներ, աղքատներ, մուրացկաններ։ Խտրություն չի դրվում նաև կրոնավորների միջև՝ շարքայիններից մինչև բարձր աստիճանավորները՝ աբեղաներ ու քահանաներ, վանականներ ու կույսեր, ճգնավորներ, վանահայրեր, վարդապետներ ու եպիսկոպոսներ։

Ամեն տեղ, ուր կա կյանք, առաքինություն ու արատ, մուտք ունի զրուցասացի կամ զրուցագրի քննախնդիր աչքը, որ իրերն ու երևույթները դիտում է դարերի ընթացքում հաստատված իմաստություններից ելնելով, փորձառության վրա հիմնված, կյանքի ու մարդու հոգեբանության խորն իմացությամբ, խոր ճանաչմամբ, ինչպես նաև ժամանակի աշխարհըմբռնումներով ու աշխարհայեցությամբ։ Այս ամենը միատեղ է, որ ստեղծում են իրականության բնական, երկկողմանի պատկերը. երկկողմանի ո՛չ միայն դրականի ու բացասականի առումով, այլև հոգևորի ու աշխարհիկի։ Կյանքի արտացոլումն առաջնահերթ, անմիջական խնդիր չլինելով հանդերձ, դառնում է անխուսափելի, նպատակի իրագործման ճանապարհին կատարված անհրաժեշտ քայլ, ծառայում որպես հիմք կամ պաստառ, որպես հիմնական հարցի լուծման էական միջոց։ Սա մասնակի, պատահական երևույթ չէ, այլ զրույցները բնութագրող առանձնահատուկ ընդհանրություն՝ բնորոշ գրեթե բոլորի համար։

Կյանքի արտացոլմանը մեծապես նպաստում է և միջնադարյան զրույցի յուրահատուկ կառուցվածքը, որ բխում է բովանդակությունից, սերտորեն պայմանավորվում նրանով։ Բաղկացած լինելով երկու հիմնական մասերից՝ գաղափարական և ցուցադրական, զրույցն իր նպատակային, բարոյա-խրատական դրույթներն հաստատում է փաստերով։ Այդպիսի դեպքերում վերացականը՝ աստվածն, աստվածամորը կամ սրբերին վերաբերող մասերը, ինչպես նաև կրոնավորի հոգևոր կերպարի ու հոգևոր պարտականությունների կատարման դրսևորումները մղվում են հետին գիծ, ստանում երկրորդական, կողմնակի արժեք. կարևոր են դառնում վկայակոչվող փաստերը, գլուխ բարձրացրած աշխարհայինը, իրականությունը, մարդն իր հոգեվիճակով, խոհերով, ապրումներով, ցանկություններով ու ձգտումներով, կենցաղային մանրուքներով, հա-

սարակության հետ ունեցած փոխհարաբերություններով ու բախումներով։ Երևան է գալիս իրականության հրապույրն ու անդիմադրելի ուժը մի կողմից և, այդ նույն ուժի անհաղթահարելիության հետևանքով, հոգևորականության որակական փոփոխությունն ու նոր բարքերը՝ մյուս, որոնք խախտում են հասարակության կրոնական հայացքները, պակասեցնում հավատը, բարեպաշտությունն ու խստակեցությունը։ Այլևս չեն հնչում կրոնական քարոզներն ու խորհուրդները, չեն գրավում եկեղեցական արարողություններն ու աղոթքները, որոնք հաճախ նույնիսկ ձևական բնույթ են կրում։ Մարդիկ ավելի ազատ են խորհում ու գործում։ Աշխարհիկ բարքերն ու կենցաղը իշխում են այնքան, որ զվարճավայրերն ու հարսանքատները գրավում են նույնիսկ կրոնավորներին, իսկ աշխարհականների համար ժամանցի մի լրացուցիչ վայր է դառնում եկեղեցին, ուր ավելի հետամուտ են մտքեր փոխանակելու, լուրեր լսելու, քան աղոթելու. «Այսօր Տէրունի է և շատ ժողովուրդ կուգայ, շատ զրոյց կուտան ընդ իրար, պիտի գրեմք զմեզս նոցա»,—ասվում է զրույցում[1]։

Այս նշանակում է, թե եկեղեցին ու նրա սրբավայրերն արդեն ավելի հետաքրքրում են ոչ որպես աղոթատեղեր, կրոնական ծեսերի ու արարողությունների տաճարներ, այլ որպես հավաքատեղեր, ուր կարող են հանդիպել, զրուցել կամ մտածել առօրյա գործերի ու հոգսերի, ըստ ժամանակի կրոնական մտայնության՝ մեղքերի մասին։ Հայ իրականությանը վերագրված և որպես Վերին Խաչենքում կատարված իրողություն պատմվող զրույցից, մարդկային հոգեբանության խորն իմացության, ճշմարիտ արտացոլման ու ընդհանրացումների շնորհիվ, հետևում է, թե մարդու մեջ այնքա՛ն են իշխում կենսական, իրական շահախնդրությունները, որ մեծ հորձանքով շեղում են նրա միտքը կրոնական, եկեղեցական զբաղումներից։ Նա գնում է եկեղեցի՝ պատարագի որոշյալ հատվածում Քրիստոս տեսնելու հույսով ու ակնկալությամբ, բայց այդ պահին անգամ ո՛չ միայն չի աղոթում ու չի լսում քարոզչին, այլև հոգով ու էությամբ մնում է կապված աշխարհիկ գործերին։ Նրա միտքը բոլորովին ա՛յլ տեղ է, զբաղված իրական կյանքով, առօրյա հոգսերով՝ կնոջով, նրա արդ ու զարդով, հագուստով։ Նա մտովին տարվել է հեռու երկրներ, հասել Թավրիզ, կլանվել առևտրով. Նա

---

[1] Տե՛ս «էջեր», էջ 15 (№ 19)։

չի սթափվում անգամ զգուշացումից։ Ի վերջո այսպիսի երկախոսություն է տեղի ունենում նրա ու պատարագիչ որդու միջև.

— Ո՛վ որդի, յայն ժամն ես ո՞ւր է՞ի. զի միտքս ա՛յլ տեղ էր։

Եւ ասէ որդին.

— Ո՞ւր էր, Հայր, խելքդ։

Ասէ Հայրն.

— Իբր թէ ի պազարն էր գնացեր՝ ի վաճառ, և քո մօրն ծիրանի էպրշմէ գլխադիր գնել կամէի, և ասէի թէ՝ սուլթանին մեծ ուղտն, զոր Պօղտի կոչեն, պաշարի աման՝ տկճոր քարշել կամի տալ զմորթն նորա։ Նա և գիտել պարտ էր ինձ, թէ քանի՞ լիտր գինի տանէր նա[1]։

Տարբերակում.

— Միտքս ի Թաւրէժ էր, և քո մաւրն գլխադիր և կաւշիկ կուգնէի[2]։

Եվ միայն նա՛ չէ այդպես, «այսպէս են ազգ մարդկան», ընդհանրացնում է հեղինակը՝ իրականության անմիջական ճնշման տակ, «ոչ քահանայի լսեն և ոչ հրեշտակի, այլ իւրեանց կանանցն զարդարանք առնեն և պճնեն»։ Ըստ հեղինակի, նրանք կանանց ավելի՛ են սիրում, քան աստծուն. սա՛ է բարձրաձայն չասված կարծիքը, որ բխում է հայտնածից. «Վա՜յ մարդուն, որ զկինն աւելի սիրէ, քան զաստուած»[3]։

Հետաքրքիր է նաև նույն զրույցի տարբերակներից մեկն ընդօրինակող մի ա՛յլ հեղինակի մեկնությունը, որտեղ ավելի լա՛յն են բացվում փակագծերը՝ դուներն ա՛յն աշխարհի, որ գրաղեցնում է մարդուն. «տկճորն հարբեցութիւն (է), և գլխադիրն՝ ցանկութիւն, շնութիւն, և պազարն՝ բոզատուն»։ Ո՞րն է ժամանակի իրական վիճակն առհասարակ՝ ըստ բարոյախոսի. այն, որ «այսաւր միտք մեր... խորհին և աղտեղացուցանեն զհոգիս մեր շնութեամբ, արբեցութեամբ և պղծութեամբ...»[4]։

«Վասն աղօթից» գլխում, քարոզների մեջ բերված մի ուրիշ զրույցից նույն հետևությունն է արվում. աշխարհիկ հոգսերն ավելի՛ են զբաղեցնում մարդուն, գրավում ուշադրությունը, քան հոգևորը, եթե նույնիսկ նա հենց ի՛նքն է կրոնավոր, քարոզիչ, սերմանող «զբանն կենաց»։

---

[1] Ձեռ. № 8076, էջ 183բ։

[2] Ձեռ. № 3179, էջ 127ա։

[3] Անդ։

[4] Ձեռ. № 8076, էջ 184ա, տարբերակը՝ ձեռ. № 3963, ժէ—ժԸ դար, էջ 120ա։

«Մեն քարոզող սրբաւէր և աստուծահաճոյ, իշով երթայր այսրր և անդր՝ վասն սերմանելոյ զբանն կենաց։ Անդ, ի միում աւուր մտեալ յեկեղեցի՝ վասն աղօթից, զէշն առ դրանն եթող. և մինչև զմի «Հայր մեր» կատարեալ, քանիցս անգամ մտօք զբաղեալ էր՝ խորհելով վասն իշոյն, մի գուցէ ոք գողանայցէ զնա. և այլ սոյնպիսի խորհուրդ խափանէին զնա յաղօթից»[1]։ Ո՞րն է ելքը սրանից, ըստ կրոնական աշխարհայեցողության. ա՛յն, որ վաճառվի թևկուզ և վերջին, միակ ունեցվածքը։ Հետաքրքիր է և սրա մի ավելի հին, տեղայնացված (հայկականացված) տարբերակը, ուր ավելի մանրացրած է աշխարհիկ մտադբաղումների նկարագիրը.

«Բարի մարդ մի զամենայն ինչս իւր ետ աղքատաց, բայց միայն պահեաց էշ մի, որով երթայր ուր և կամէր։ Եւ երթեալ յեկեղեցի մի, զի աղաւթեսցէ, և զէշն կապեաց ի դուռն։ Եւ յորժամ սկսաւ ասել «Հայր մեր որ յերկինս», ի միտն անկաւ, թէ էշն միայն է ի դուռն։ Եւ յորժամ ասաց, թէ «սուրբ եղիցի անուն...», անկաւ ի միտն, թէ գողանայ ոք զէշն։ Եւ յորժամ ասաց՝ «եկեսցէ արքայութիւն...», ասաց ի միտն, թէ նեղիմ հետևակ երթալ։ Եւ յորժամ ասաց՝ «եղիցին կամք քո», ասաց ի միտն՝ քաղցած է էշն։ Եւ ելեալ ի դուրս, ասաց իշուն. «է՜, իմ պարոն էշ, դու աւելի՛ բաժին առեր յիմ աղաւթիցն, քան ղաստուած»[2]։ Հետաքրքիր է նաև եզրակացությունը՝ «զի որ էշ ունի, ծառայ է իշուն», այսինքն աշխարհի, կյանքի հետ կապված ամե՛ն բան շեղում են մարդու միտքը հոգևորից և միակ ելքը դարձյալ մնում է դրանցից լիովին ազատվելը, որ անհնար է. մարդն ապրում է աշխարհում և չի՛ կարող նրանից դուրս ելնել, քանի կենդանի է։

Մի ուրիշ զրույց, գրված աղոթասիրություն տարածելու նպատակով, պնդում է, թե հնում հավատն ավելի ուժեղ է եղել.

«Մարդիկք մինչև ցայն ժամանակ քաջ ընդ առաւօտ յեկեղեցին գնային և աղաւթից պարապէին, սպասելով սրբոյ պատարագին, քանզի երկնչէին մի գուցէ անկանիցեն, ի պատարագէ զրկեացին։ Իսկ այժմ զկնի լսելոյ զձայնի զանգակին ապա յեկեղեցին դայցեն և աղաւթից հեղգասցեն»[3]։

Կան մարդիկ էլ, որ եկեղեցի գնալով ննջում են, միտ չե՛ն առնում հասկանալու աստվածային գրքերը, որքան էլ որ խրա՛տ են

---

[1] Ձեռ. № 681, էջ 74ա—74բ։

[2] Ձեռ. № 2226, էջ 22ա։

[3] Ձեռ. № 691, էջ 152բ։

լսում՝ չեն զգաստանում ու օրերն անց են կացնում ծուլությամբ[1]։

Այսպիսով զրույցների փաստական կողմերն ի ցույց են հանում ժամանակները՝ իրական կամ ձևական ու կեղծ բարեպաշտություններ (աղոթք, պահք, կուսություն), առաքինություններ կամ «խորհուրդք զագիրք և խենէշք և պիղծք... ի սիրտս» մարդկան[2]։ Եվ ոչ միայն խորհուրդք, այլև գործք։

* * *

Միջնադարյան կյանքն ու աշխարհայեցողությունը բնութագրող կարևոր գիծ է հասարակության բաժանվածությունը երկու հիմնական հատվածի՝ հոգևոր ու աշխարհիկ դասի, որոնցից յուրաքանչյուրն ունի իր ուրույն դիմագիծը, իր տեղն ու դիրքը, դերն ու նպատակը, իր ներաշխարհը։ Հոգևորականությունը, որ հասարակության պատկերը բնորոշող մի ստվար շերտ էր կազմում, բնականաբար, զրույցներում նշանակալից տեղ էր գրավում իր բազմազան ներկայացուցիչներով (ճգնավորներ, վանականներ, զանազան կրոնավորներ ու եկեղեցականներ)։

Հասարակության այդ շերտը հոգևոր ու բարոյական մաքրության շատ ավելի մեծ պատասխանատվություն էր կրում՝ իր վրա վերցրած լինելով աստծուն սրբությամբ ծառայելու դժվարին գործը։ Միջնադարը, որ առհասարակ խիստ էր իր աշխարհըմբռնումներով ու բարոյականության սահմաններով, է՛լ ավելի էր խստանում հոգևորականության համար։ Միս ու արյուն լինելով, աշխարհում ապրելով և այն զգալու ու վայելելու բոլոր հնարավորություններն ունենալով,հոգևորականը դատապարտված էր փակելու աչքերն ու ականջը աշխարհի հանդեպ, հրաժարվելու կյանքից, մեռցնելու մարմինը՝ հանուն հոգու հավիտենության։ Մինչդեռ ներկան խուսափուկ էր և այն ևս անցնում էր հավիտենականության գիրկը։ Իսկ այդ հավիտենականության՝ հոգու և հանդերձյալի գոյության հավատը սկսել էր խախտվել։ Մարդն սկսել էր պրպտել բնության գաղտնիքները, որոնել ճշմարտությունը, քննել հոգու և մարմնի փոխհարաբերության սահմանները, հասնել իրական կյանքով ապրելու գիտակցությանը։ Եվ այնպես, ինչպես աշխարհն ու աշխարհայինը ճեղքում են զրույցի բուն գաղափարական բովանդակությունն ու երկփեղկում այն՝ ստեղծելով երկու հակադիր կողմեր՝ ա՛յլ բարոյախոսություն և այլ իրականություն, այնպես էլ ստեղ-

[1] Տե՛ս «էջեր», էջ 101 (№ 70)։
[2] Տե՛ս «էջեր», էջ 130 (№ 99)։

ծում են մարդու, նույնիսկ կրոնավորի, մտավոր, գաղափարական ու բարոյական աշխարհի երկփեղկում. մեկն ուզում է կատարել հոգու կամքը, մյուսը՝ մարմնի, որ արգելված էր։ Հայտնի է, սակայն, որ արգելված պտուղն ավելի քաղցր է լինում։ Հոգևորականության մեջ աստիճանաբար ծավալվում է վաղուց ի վեր բույն դրած, կաթի ու արյան հետ ստացած, բայց մեռցնելու դատապարտված աշխարհայինը՝ իր բնական ու անբնական, ընդունելի ու մերժելի պահանջներով։ Որքան էլ նա ձգտում է հեռանալ իրականությունից (նույնիսկ փախչել մենաստան, ապրել ճգնությամբ), կյանքն ամենուր հետևում է նրան, նրա հետ է, նրա մեջ։

Մարդու էությունն է աշխարհն ու կյանքը, եթե նույնիսկ մանկությունից անապատում է[1], եթե նույնիսկ չի՛ տեսել վայելքի սեղաններ, կին ու գինի. այդ ամենի զգացողությունը նա ժառանգել է իր մարդկային խառնվածքով, հաջորդական փոխառությամբ ու դո՛ւրս հանել այն՝ ո՛չ մի կերպ հնարավոր չէ[2]։

Կրոնավորի մարդկային էության մեջ ներքին մի բան միշտ մնում է աշխարհին կառչած, անանջատելի, մարմնական, որը երբեք չի մեռնում. Նա գլուխ է բարձրացնում ամեն առիթով, հաղթում բազում անգամներ, մեծ ճիգ ու ջանք, մեծ լարում պահանջելով լռեցնելու իր ձայնը, իր պոռթկումները։ Կրոնավոր լինելով, նա շարունակում է մնալ մարմին ու արյուն՝ և ոչ միայն հոգի, միշտ թուլություն ունենալով շեղվելու, դուրս գալու իր հոգևոր կերպարից[3]։ Նրա համար ևս բնութագրական է երկընտրանքը, ներքին կռիվը, հոգու և մարմնի պայքարը։

Իմանալով, թե ոչինչ ավելի մեծ ու սարսափելի հանցանք չէ, նույնիսկ մարդասպանությունը, քան անզսպությունը, աշխարհիկ կյանքով ապրելը, կրոնավորներն այնուամենայնիվ չե՛ն կարողանում հաղթահարել աշխարհը[4]։ Նրանցից ոմանք ի վերջո ստիպվում են խոստովանել, թե չկարողացան դիմանալ, որովհետև մարդու խառնվածքն է այդպես, որովհետև «խնդրեաց բարքս»[5]։ Զգալով այդ և մերժելով ծայրահեղությունները (զանազան մոլություններ ու անառակություն), կրոնավորներից ոմանք չե՛ն թաքցնում, որ չի կարելի մեռցնել աշխարհն ու աշխարհայինն իսպառ[6] և հանուն

---

1 Տե՛ս «էջեր», էջ 80 (№ 57)։

2 Տե՛ս ձեռ. № 791, էջ 433ա։

3 Տե՛ս անդ, էջ 328բ, 136ա։

4 Տե՛ս ձեռ. № 848, էջ 185բ։

5 Տե՛ս ձեռ. № 770, էջ 119ա։

6 Տե՛ս ձեռ. № 4196, էջ 4բ. «Եւ մեզ պարտ է երբեմն զիջանել ըստ մարմնոյ, զի մի՛ սպանցուք զմարմին տկար»։

դրա երբեմն անում են անհրաժեշտ զիջումներ, անգամ ծածկում այլոց աշխարհիկ «մեղքերը»։

Կրոնավորներից մեկը մշտապես գաղտնի տեսակցում էր կնոջ հետ։ Մեկ անգամ, երբ վերջինս նրա մոտ էր, ամբոխը գազազած հավաքվում է կնոջը դուրս անելու։ Կրոնավորը նրան պահում է կարասում։ Եկեղեցու հայրերից մեկն, իմանալով այդ, դիմում է օգնության, նստելով կարասի վրա։ Տունը խուզարկում են, բայց կնոջը չեն գտնում։ Եկեղեցու հայրը հանդիմանում է հավաքված-ներին.

— Ջի՞նչ է գայս, զոր գործէք զրպարտել զայր անմեղ։— Իսկ կրոնավորին խրատում է.

— Զգո՛յշ լեր անձին քում[1]։

Ջրույցներից մի ուրիշում բնական է դառնում և գրեթե արդարացվում կրոնավորի, այն էլ միաեցի, աշխարհիկ կյանքը։ Երեք տարի անընդհատ նա մեղանչում է, բայց խույս վերադառնալով աղոթում ու ներումն է հայցում. և ներվում է. գաղտնիքը չի բացվում։ Սակայն մի օր, երբ ծուլանում է աղոթել, իմացվում է նրա գիշերային բացակայությունը։ Սատցվում է և կարծես լռելյայն թույլ տրվում, թե կրոնավորը զղջալով ու աղոթելով կարող է շարունակել իր գաղտնի աշխարհիկ կյանքը, հավատացած լինելով, որ այդ կմնա ծածուկ[2]։

Այսպիսի դեպքերում բարձրաստիճան կրոնավորները դրսևորում են շատ խոր, նուրբ ու ճիշտ հոգեբանական մոտեցում, կյանքի մեծ փորձ ու իմացություն, մարդու խառնվածքի ու ներաշխարհի լայն ճանաչում, որից և բխում է նրանց մեծահոգությունն ու ներողամտությունը։ Սրանք դրական կրոնավորների կերպարներ են՝ աշխարհաճանաչ, լայնախոհ, իրավամիտ ու իրավադատ, որ երևույթները քննում են հնարավորի տեսանկյունից, ավելի լրջամիտ ու սառնարյուն, հեռու մնալով ծայրահեղություններից թե՛ անձնական կյանքում և թե այլոց դատելիս։

Մի եպիսկոպոսի մոտ են բերում «կոյս ումն, որ էր յղի, և ասեն. «Տո՛ւր սմա կանոնս, տէ՛ր»։ Իսկ նա կնքեաց խաչ ի վերայ որովայնի նորա և հրամայեաց տալ նմա երկուս կտաւս։ Եւ ասէ. «Մի գուցէ ի գնալ դորա ի ճանապարհի մեռցի դա, և կամ որդի դորա, և ոչ գտանին պատանք (ձեռ. պատրանք) դոցա»։ Իսկ նոքա ասեն. «Ջի՞նչ գործես, տէ՛ր։ Տո՛ւր կանոն գմա ի պատիժս»։

---

[1] «Էջեր», էջ 126 (№ 93)։

[2] Տե՛ս ձեռ. №№ 1722, ԺԶ դար, էջ 61բ. 791, էջ 117ա։

*Իսկ նա ասէ. «Տեսանէք և դուք, եղբարք, զի և ի՛նքն մերձ է ի մահ, և զի՞նչ արարից դմա»։ Եւ արձակեաց զնա»*[1]։

*Ահա վանական կյանքի մի ուրիշ պատկեր. երիտասարդ վանականներից «մինն անկաւ ի մեղս առ կին ումն... և հանապազ գնայր անդ...։ Արդ, ծանեան եղբարքն զայն. ծանեաւ և Հայրն, այլ պահէր զեղբայրն այն և ո՛չ յանդիմանէր։ Բազում անգամ յարեան ի վերայ նորա [աշակերտքն] և կռուեցան ընդ Հայրն՝ վասն նորա։ Այլ Հայրն քաղցրութեամբ շիջուցանէր զնոսա և հրահանգեալ ծածկէր զգործն», մինչև որ հարմար առիթով ու առանձին խրատեց նրան.— Զգո՛յշ լեր անձին քում յայսմ հետէ, զի զի՞նչ շահ եղև քեզ ի պղծութենէն յայնմանէ...*[2]։

*Մարդու նկատմամբ մարդկային վերաբերմունք ունենալու, նրա ներքինը՝ հոգին ու էությունը հասկանալո՛ւ են մղում և ուրիշ զրույցներ՝ իրենց ենթաբնագրով, որ հանգեցնում են ա՛յն գաղափարին, թե պետք է հավատալ մարդուն, նրա խոսքին, անկեղծությանը, չտնահարել նրա անմեղությունն ու արդարությունը, չհինել կեղծ, սուտ ու ստորաքարշ*[3]։

*Հոգևոր դասի այսպես դատող և ուրի՛շ դրական կերպարներ զրույցներում ներկայացվում են ի ցույց մյուսների՝ ճիշտ ճանաչելու կյանքն ու մարդկանց, և շիտակ ճանապարհի բերելու անխորագետ, անուղղատես ու անուղղադատ կրոնավորներին, իմանալով, որ անարդարություններն ու բռնությունները և աշխարհն արհեստականորեն մեռցնելու ջանքերը երբեմն հասցնում են հակառակ արդյունքի, մեծացնում կյանքի կարոտը, հանգեցնում անհագության, արատավոր ու հիվանդագին չափերի։ Այդպիսի դեպքերում թվում է, թե տասը կին էլ ունենան, «ո՛չ են կարաւղ նոքա լնուլ բղցանկութիւն» յուրյանց*[4]*։ Ոմանք ձարահատյալ ըմբոստանում են, ասելով թե՝ «Ոչ կարեմ համբերել, եթէ ոչ արարից զկամս իմ»*[5]*։ Ուրիշ ելք չունենալով, նրանք այցելում են հասարակաց տներ, պանդոկներ։ Ոմանք ստիպված են լինում ընդմիշտ թողնել կրոնավորությունը*[6]։

*Կյանքը հրապուրում ու շեղում է հոգևոր ճանապարհից ո՛չ միայն երիտասարդներին, ցածր աստիճանավորներին, այլև ամե-*

---

[1] Ձեռ. № 791, էջ 176ա։

[2] «էջեր», էջ 81 (№ 58)։

[3] Տե՛ս ձեռ. № 791, էջ 149բ։

[4] Տե՛ս անդ, էջ 115ա։

[5] Անդ, էջ 116ա։

[6] Անդ, «էջեր», էջ 82 (№ 59), էջ 142 (№ 105) և այլն։

նախելոքներին, ծերերին ու սրբակյացներին, վանահայրերին, վարդապետներին, եպիսկոպոսներին[1]։ Ենության մեծ ուժը կոտրում է նույնիսկ սուրբ համարվող ճգնավորների կամքը։ Պատահում է, որ կին են պահում բնակությունից դուրս, ճգնակեցության մեջ, ամենահեռու, խոր անապատում, ուր ապավինել են սատծո՛ւ հետ միայն հաղորդակցելու հուսով[2]։ Անգամ Հակոբ Անապատականը, որ 40 տարի ճգնությամբ էր ապրել և «ոչ միայն առաքինի վարուք իւրուք զբաղումս էած յաստուածգիտութիւն, այլև բազում սքանչելագործութեամբք յաշխարհի փայլէր... ոչ միայն ի պոռնկութիւն անկաւ, այլ և զմարդասպանութիւն կատարեաց, քանզի երկուցեալ, մի գուցէ աղջիկն զչարութիւն նորին երբեմն յայտնեսցէ, էսպան զնա»[3]։ Եվ նա միակը չէր ճգնավորների մեջ. «Յամենայն ճգնաւորք միանձունք, զի նոքա մարդիք էին իբրև զմեզ, ի պատճառս լիրբ կանանց փախեան աշխարհէս և ելին ի ծերպս վիմին, մերկացան, սովեցան, ծարաւեցան, ցրտացան, տապացան, պաղեցան, խարշեցան, խոտաճարակ եղան և այլ բազում նեղութիւնս ճգնութեանն անձն առին, հեռի կացին աշխարհէս, զի մի՛ անկանիցին ի փորձութիւնս կանանց..., զի բազում ճգնաւորք իջուցեալ են ձեռամբ կանանց և հանեալ են ի կուսութենէն...»[4]։

Փորձությանը դիմանում են աննկարագրելի ուժեղ կամք ու հավատ ունեցող բացառությունները միայն, այնպիսի ծերունի միակեցներ, որոնք չեն անում ո՛չ մի զիջում և դժվարին ու մեծ զոհողությունների գնով են միայն հաղթում գայթակղությունը[5]։

Կամքի հսկայական մեծ ուժ էր պետք «անկումներից» հետո վերականգնելու նախկին հավասարակշիռ վիճակը, որ քչերին և ոչ միշտ էր հաջողվում[6]։ Ինչպես երևում է մեջբերումներից, փախուստն անգամ անապատ՝ չէր օգնում փրկվելու մեղանչումներից։ Չեն օգնում ու փրկում ոչ աղոթքները, ոչ սաղմոսերգությունը, ոչ ծնրադրությունը, մանավանդ որ, ինչպես անկեղծորեն բացում է իր սիրտը կրոնավորներից մեկը, չեն իմանում «զմիտս բանին»։ Նա երկմտում է, ելք փնտրում, հարցնելով թե՝ «ի՞նչ արարից, Հա՛յր, զի խորհուրդք իմ միշտ զպոռնկութիւն խոկան և տան ինձ թոյլ հանգչել և ոչ ժամ մի. և սակս սորա տրտում է անձն իմ յոյժ»։ Նա

[1] Տե՛ս, ձեռ. № 791, էջ 328բ, 136ա։

[2] Տե՛ս «Էջեր», էջ 131 (№ 100), ձեռ. № 791, էջ 123ա։

[3] Տե՛ս ձեռ. № 691, էջ 274ա։

[4] «Էջեր», էջ 83 (№ 59)։

[5] Տե՛ս ձեռ. № 791, էջ 126բ։

[6] Անդ, էջ 117ա։

խոստովանում է, թե «անկար» է և հաղթում է «ախտն» այն[1]։ Եվ ո՛չ միայն նա, այլև շատերը չգիտեն ու չեն հասկանում սաղմոսները, նրանց խորհուրդը, թեև միայն դրանց են ապավինում՝ «չարից» ազատվելու համար. աղոթում են, թեպետ և ո՛չ գիտեն «զզաւրութիւն սաղմոսացն»։ Ահա թե ինչպիսի հետաքրքիր զրույց է տեղի ունենում ծեր կրոնավորի ու հավանաբար մի երիտասարդի միջև.

Ասէ եղբայրն.

— Եւ զի՞նչ արարից, Հա՛յր, զի անկար եմ և յաղթէ զիս ախտն այն։

Ասէ ծերն.

— Զգոյշ լեր նմա... և յարուցեալ կրկնեա ծունր, աղաւթեա և ասա՝ «Տէ՛ր Քրիստոս, ողորմեա՛ ինձ»։

Ասէ ցնա եղբայրն.

— Ահա արդեաւք ասեմ զսաղմոսն և ո՛չ գոյ զեղջ ի՝ սրտի իմում, զի ո՛չ իմանամ զմիտս բանին։

Ասէ ցնա ծերն.

— Դու առանց ձանձրութեանց սաղմոսեա, որդեա՛կ, քանզի լուայ ես ի հօրէն Պիմենէ, զի ասէր թէ «Թովիչն ո՛չ գիտէ զբանսն, զոր ասէ՝ այլ աւձն գիտէ և հնազանդի նմա»։ Այսպէս և մեք. թէպէտ և ո՛չ գիտեմք զզաւրութիւն սաղմոսացն, այլ դևք գիտեն, որք լսեն և փախչին ի մէնջ»[2]։

Հետաքրքիր է և մի ա՛յլ զրույց իր մեկնությամբ։ Հարցնում են. «Թէ որ յորժամ աղաւթէ և ո՛չ հասկանայ զիւր ասելն, կամ զքահանային, զի խրթին բառով ասէ, կամ այլ լեզուաւ աղաւթէ, ի՞նչ աւգուտ է, թէպէտ որ միտ դնէ»։ Ելքը մեկն է. աղոթքն աղոթք է և նույն արժեքն ունի թե՛ իմացողի և թե՛ չիմացողի համար, եթե միայն կատարվում է մաքուր սրտով, այնպես, ինչպես թանկարժեք քարի արժեքը չի փոխվում նրա գինը չիմացող շինականի և իմացող սեղանավորի ձեռքում[3]։

Հոգևորի՝ սաղմոսների ու աղոթքների իմաստն ու օգուտը չիմացող նույն այդ կրոնավորները գիտեն ու հասկանում են աշխարհայինի «զաւրութիւնը» այնպես, որ ոմանք թողնում են «հրեշտակաց» կարգն ու մշտապես մտնում «աշխարհ», ամուսնանում։ Այդ է պատճառը, որ խարազանման ու ապաքինման նպատակով զրույցներում երևան են գալիս ոչ այնքան հավատավորները, ասածու

---

1 Ձեռ. № 791, էջ 125ա—125բ։

2 Տե՛ս անդ, էջ 125ա։

3 Ձեռ. № 2226, էջ 22ա—22բ։

անդավաճան ծառաները, որքան այդ ճանապարհից շեղվածները, «մոլորվածները», որպես մարդ՝ լայն առումով, մարդկային բնական վիճակով, հողածին խառնվածքով, դեպի կյանք, դեպի աշխարհ ձգտող հակումներով։ Նրանք ունեն մարդկային նույն խառնվածքը, նույն շաղախը, նույն առաքինություններն ու արատները, ինչ աշխարհականները՝ բարություն, ազնվություն, անձնվիրություն, անկաշառություն, մարդասիրություն, բայց և չարություն, ատելություն, զրպարտություն, բամբասանք, ագահություն, կաշառակերություն, գողություն ու բազում այլ բացասական, դատապարտելի գծեր ու մոլություններ, որոնք փոխում են հոգևորականի բարոյական, ծրագրային կերպարը[1]։

Երբեմն աշխարհը գերիշխում է այնքան, որ հասցնում է ծայրահեղ ու անհաղթահարելի մոլությունների. կուրանում են հոգով ու մտքով, խտրություն չեն դնում կանանց միջև՝ աշխարհի՞կ թե վանական, կո՞ւյս, ծե՞ր թե երիտասարդ[2]. չեն խնայում անգամ հարազատներին՝ հարսներին, սեփական աղջիկներին ու ծնողներին՝ պղծությունը միախառնելով մարդասպանությանը[3]։ Արատն այնքան է մեծանում ու շատանում, որ աշխարհականները մեղք գործելով՝ կրոնավորների վրա են բարդում. և այդ թվում է բնական, ոչ մի կասկած չհարուցող. դատապարտվում է կրոնավորը[4]։

Ինչպես երևում է բազում զրույցներից, այս ամենը բացառություն չեն, այլ բնականոն ընդհանրություն, ուստի և բնութագրական հոգևորականության վարք ու բարքի և կենցաղավարության համար առհասարակ։ Որ հոգևորականության անկումը միջնադարում դարձել էր ընդհանուր, համեվրոպական երևույթ, այդ ցույց է տալիս զանազան երկրներում և զանազան ժողովուրդների մեջ տիրող միանման վիճակը։ XIII դարի անգլիական գրականության մեջ հոգևորականությունը, հատկապես միակեցությունը բնորոշվում է հետևյալ նկարագրով. չկա ավելի ագահ, ավելի դավաճան, խարդախամիտ էակ, քան կրոնավորը, որը պատրաստ է տիրանալ ամեն ինչի, որ տալիս են, և չունենալ՝ երբ խնդրում են որևէ բան։ Երբ նա ուտում է, ուրախ կլինի խոսել չիմանալ, որպեսզի լեզուն չխանգարի ատամներին աշխատել, եթե խմում է, ապա անպատճառ նստած, որպեսզի ոտքերը չծալվեն որովայնի ծանրությունից։ Ցե-

---

[1] Տե՛ս ձեռ. № 791, էջ 104ա, 149բ։

[2] Անդ, էջ 238բ, 136ա։

[3] Տե՛ս անդ, էջ 133բ։

[4] Տե՛ս անդ, էջ 159բ։

ինկը դողդողացով պաշտում է տակառը, գիշերն անց է կացնում երկոտանի գազանի հետ։ Այսպիսի դժվարություններով, այսպիսի զրկանքներով է նա արժանանում երկնքի արքայությանը։ Խոստովանելիս նա ընդունում է, թե սիրում է կանանց, գինի ու գինետուն, ուր հենց կուզենար գտնել իր երանելի վախճանը՝ գինու բաժակը ձեռքին։

Ասվում է նույնիսկ, թե չկա սատանայից ավելի վատը, քան հոգևորականը[1]։

XV դարի իտալական գրականության մեջ ավելի խիստ են գույները։ Հոգևորականներն այնտեղ ներկայացվում են որպես աշխարհի ամենաագահ մարդիկ։ Նրանք մրցակցում են, թե ով ավելի շատ կունենա ո՛չ այն, ինչ պետք է ունենա՝ առաքինություն և գիտելիքներ, ո՛չ. նրանք ուզում են մեկը մյուսին գերազանցել ճոխությամբ ու սնապարծությամբ, ունենալ ավելի շատ բատծ ու՞ զարդարուն երիվարներ, հասարակության մեջ երևալ պնակալեզների հոծ խմբերով շրջապատված։ Այդ ամենի հետ մեկտեղ, առաքինության պակասի ու պարապության հետևանքով, նրանց հակումներն օրըստօրե դառնում են ավելի վավաշոտ, սանձարձակ ու թեթևամիտ։ Եվ ո՞վ, իրոք, նրանց կկոչի իսկական դատավորներ, երբ շահախնդրությամբ են մոտենում գործին՝ եղրմնազանցությանը, վաշխառությանը, կտակներին, պսակադրությանը, հողերին ու եկեղեցիներին[2]։

Հոգևորականությունը,— ինչպես գրում է Ֆիլիպ Մոնյեն,— իր մեջ ամփոփում է ամբողջ աշխարհի արատներն այնպես, կարծես դրանց հայելին լինի։ Այնտեղ կարելի է գտնել միայն հպարտություն, անբարտավանություն, ագահություն, կեղծավորություն, պարծենկոտություն, որկրամոլություն, հեշտասիրություն, եղբմնազանցություն, ստորություն, խաբեբայություն և այլն[3]։

Ֆրանսիական իրականությունը պատկերող զրույցներից մեկը հիմար, անարգ ու ամոթալի վիճակի մեջ է ներկայացնում բազմաթիվ հոգևորականների, հրապարակորեն բանալով և ծիծաղի, ծաղրի ու ծանակի ենթարկելով նրանց փողասիրությունն ու ագահությունը։

Հրանոթային գործի շատ հմուտ զորականներից մեկը կա-

---

1 Տե՛ս „История английской литературы“, том I, выпуск первый, М.-Л., 1943, էջ 66—67։

2 Տե՛ս Филипп Монье, Опыт литературной истории Италии XV века, էջ 73—74։

3 Տե՛ս անդ։

կում է իր թաղումը կատարել մի քանի հազար եկեղեցականի մասնակցությամբ՝ կերոններով, որ վառվելու էին միաժամանակ։ Ով կարողանար մոմը ձեռքին մինչև գերեզմանատուն գնալ և վերադառնալ՝ առանց մարելու, կստանար մեկ ոսկի։

Իմանալով կտակի մասին «գումարեցան և կարգաւորք յոյժ բազումք, որք թևակոխէին միմեանց՝ յառումն կերոնից, յերկիւղէ՝ զի մի՛ պակասեսցի յինքեանց կերոնքն...։ Եվ այնպէս վառեալ մոմք եկին ի ճանապարհ առ գերեզմանատուն, որ եթէ պատահմամբ շիջանէր մոմն միոյն, խսկոյն լուցանէր ի նոյն վայրկենի, և իւրաքանչիւրն գնայր յամենայն զօրութենէ՝ անշէջ պահել զկերոն իւր, զի մի պակասաւոր գտեալ՝ զրկիցի ի նմանէ և ի ոսկոյն»[1]։

Սակայն ո՛չ մի զգուշություն չի փրկում նրանց և չի լցնում ագահությունը։ Զորականը գաղտնի կերպով նախապատրաստել էր, որ այդման վերջին վայրկյաններին, քաղաքի մուտքի մոտ, կերոնները պայթեին ու մարեին՝ թռչելով մարդկանց ձեռքերից։ Այդպես էլ լինում է. կերոններն «ահագին ճայթմամբ պայթուցեալ այնպէս ցրուեցան, որ նշմար մոմոց ևս ոչ երևեցաւ. և համայն կարգաւորք դարձան դատարկք և կորագլուխք ի տեղիս իւրեանց, կարի տխրամածեալ։

Աստ էր տեսանել զծիծաղս բոլոր ամբոխին...»[2]։

Թերևս նման մի զրույց է և հետևյալը, ուր կրոնավորների ագահությունն ու փողասիրությունը ծաղրի են ենթարկում գնչուները, իրենց մեռյալին ներկայացնելով որպես մեծահարուստ իշխան։ Տասը-շատ հավաքվում են մի խումբ եկեղեցականներ ու քահանաներ, թաղման կարգը կատարելու՝ մեծ վարձ ստանալու հույսով ու հավատով. սակայն ո՛չ միայն մնում են ձեռնունայն, այլև արժանանում ծաղրանքի[3]։

Հայ հոգևորականությունը, սակայն, ճակատագրորեն այլ դեր էր տրված։ Ի սկզբանե անտի շատ ավելի մեծ ու ծանր պարտականություններ էին ընկած նրա ուսերին։ Երկրի ու ժողովրդի պատմական վիճակը՝ կենաց և մահու խնդիրը մեծապես ու մշտապես կապված լինելով կրոնի ու դավանանքի պահպանության հետ, ընդարձակում էր հոգևոր դասի առաքելության սահմանագիծը՝ նեղ կրոնա-եկեղեցական, աստվածաբանական ու բարոյա-խրատական հարցերից հասցնելով մինչև գաղափարական-քաղաքական խնդիրներ, մինչև հայրենասիրական, ազգապահպան գործեր։ Ըստ էու-

---

1 Ձեռ. № 8825, էջ 34ա—34բ։

2 Անդ, էջ 34բ—35ա։

3 Տե՛ս ձեռ. № 1778, էջ 138բ (№ 39)։

*թյան, նրա վրա էր դրված հայ ժողովրդի ո՛չ միայն հոգևոր, այլև գիտական, հասարակական ու քաղաքական մտքի կազմակերպման ամբողջ ծանրությունը։ Դրա լավագույն կրողներն են մեր ա՛յն բազում վանականներն ու վարդապետները, որ հայ ժողովրդի ամբողջ պատմության ընթացքում, իրենց մեծ կամ փոքր գործերով, ծառայել են ո՛չ միայն նրա հոգևոր մշակույթի ծաղկմանը, այլև եռանդուն մասնակցություն են ունեցել երկրի հասարակական-քաղաքական կյանքում։ Գրեթե անուններ չհիշելով, Աբեղյանն անում է այսպիսի ընդհանրացնող, բնութագրական նկարագիր.*

*«Մեծ խեղճության ու տագնապի, նեղության ու կողոպուտների, հալածանքների ու կոտորածների, անգամ Լանկթամուրյան ավերմունքների օրերին կային դեռ վարդապետներ, մեծ մասամբ Հովհաննես Որոտնեցու աշակերտները, որոնք անսպառ եռանդով, ամեն տնտեսական զրկանքներ կրելով, ճիգեր էին անում լուսավորության ճրագը վառ պահելու մեր վանական դպրոցներում։ Նրանք պահում էին բազմաթիվ աշակերտների խմբեր, երկար տարիներ, նույնիսկ տասնամյակներ սովորեցնելով նրանց ոչ միայն հայոց եկեղեցու մեջ ընդունված ուսմունքը, այլև արտաքին գիտությունները, որքան կարողացել էին իրենք ձեռք բերել։ Եվ հեշտ չէր այն ժամանակ ուսում առնելը. վարդապետները հաճախ նեղվում ու հալածվում էին, և ստիպված էին լինում մի տեղից մի ուրիշ տեղ թափառելու, անգամ փախչելու իրենց բազմաթիվ աշակերտների խմբերով։ Բայց և այնպես նրանց մեծ ճիգերը ապարդյուն չեն մնում. նրանք կարողանում են Հայաստանի որոշ թվով անկյուններում, գոնե ժամանակավորապես, կուլտուրական և եկեղեցական անկման առաջն առնել»[1]։*

*Եվ պետք էլ չէր անուններ հիշել. այսպես էր եղել միշտ։ Հայ հոգևորականությունը ո՛չ միայն իր ժողովրդի պատմությունն է հյուսել, մշակույթը կերտել, այլև որոշիչ դեր խաղացել նրա ազատության, անկախության ու գոյության համար մղվող պայքարում։ Սակայն այս ամենը չի կարելի տարածել հայ հոգևոր դասի վրա՝ բացարձակապես։ Նրա ընդհանուր բնութագիրը նկատելիորեն տարբեր լինելով մյուս ժողովուրդների հոգևոր դասի նկարագրից, առանձին դեպքերում նմանվում էր նրան։ Ա՛յդ են վկայում հայ եկեղեցու ժողովներում ու կանոնգրքերում սահմանված օրենքները, որոնք, անշուշտ, հայկական միջավայրում արտահայտված նման երևույթների արձագանքներն են և որոնք ոչնչով չեն տարբերվում*

---

[1] Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն*, գիրք 2, էջ 356։

աշխարհի մյուս երկրներում իշխող ընդհանուր վիճակից: Բարոյալքման՝ հարբեցության, կաշառակերության, վաշխառության, ագահության ու բազում այլ արատների համար դատափետվել են եպիսկոպոսներ, վարդապետներ, քահանաներ, սարկավագներ ու այլ հոգևորականներ:

Դեռևս հին դարերի հայ հոգևորականության մեջ արդեն կային ազատ վարք ու բարքի այնպիսի սաղմեր, որ մեծ չափերի հասան հետագայում: Կիրակոս Գանձակեցու մոտ պահպանված որոշ գրույցներ արձագանք են IV դարում կատարված նման դեպքերի՝ անկամ, բռնի ձեռնադրությունների, այս դեպքում թերևս հենց դրանով պայմանավորված աշխարհիկ կենցաղավարության և այլն: Ահա գրույցը.

Նոր ձեռնադրված երկու սարկավագ, «թողեալ զգործ եկեղեցւոյ, ուտելոյ և ըմպելոյ պարապեալք. և փոխանակ սաղմոսից և երգոց հոգևորաց, գուսանօք և վարձակօք և բողխւք շատանային:

Եւ յաւուր միում նստեալ յեկեղեցւոջն՝ յուտել և յըմպել կանամբք և մանկտիւք, հուր անկաւ յերկնից և այրեաց զերկոսեանն՝ նորանշան մահուամբ խայտառակեալ: Եւ զաւուրս բազումս ի ներքս եկեղեցւոջն մնացեալ՝ ոչ ոք իշխէր մտանել և հանել արտաքս զդիս նոցա»[1]:

Ավելի ուշ դարերում երբ ուժեղացել էր կյանքի աշխարհիկ տարրը, մեծացել էր և նրա ազդեցությունը հոգևորականության վրա: Ցույց տալու համար, թե ինչպիսի փարթամ, երբեմն և շքեղ աշխարհիկ կյանք էին վարում կրոնավորները, դիմենք նախ Ներսես Շնորհալու «Թուղթ ընդհանրական»-ին, ուր կարդում ենք.

«Բազումք են ի ժամանակիս կրօնաւորաց, որ յաշխարհի առանց ժառանգութեան էին, և հարկաւորք իշխանաց, և աղքատք ի գոյից, և կարօտք հարկաւորացն. և յորժամ զձև կրօնաւորութեան ընկալան՝ տեարք եղեն ի վանորայս բազում ժառանգութեան, և փարթամացան ստացուածովք. և ո՛չ միայն հարկաւոր պիտոյիցն եղեն անկարօտ, այլև աւելորդօքն լցան. և յաշխարհի հոգովք և երկօք տաժանեալք, և աստ անհոգութեամբ և հեշտութեամբ ստուարացեալք»[2]:

«Էն ոմանք դարձեալ յաշխարհաւէր և ի մեղկ կրօնաւորաց, զի ... անձամբ խսկ ընդ աշխարհականս բնակեն ի գիւղս և ի քաղաքս,

---

[1] Կիրակոս Գանձակեցի, *Պատմութիւն Հայոց*, էջ 19—20: Համտ. Փաւստոսի Բուզանդացւոյ *Պատմութիւն Հայոց ի չորս դպրութիւնս*, Վենետիկ, 1832, էջ 47:
[2] *Թուղթ ընդհանրական* Ներսիսի Շնորհալւոյ, Էջմիածին, 1865, էջ 28:

*և ի բանից բերանոյ զարշութիւնս և ի գործս վատթարութեան, և յորովայնամոլութիւնս անպատկառս, և յարբեցութիւնս անառակս, և յամենայն անկարգութեանց բերմունս՝ առաւելուն քան զնոսա»*[1]:

*Կամ քահանաներից ոմանք «յառաւօտէ մինչև ցժամ պատարագին ի վաճառափողոցս քաղաքին շրջին ի տուրևառութիւն վաճառաց»*[2], *կամ «ձիավարժս լինել և զէնս առնուլ ըստ զինուորաց, և ի խրախճանութիւնս խաղուց ձիընթացից ընդ նոսին արշաւել երիվարօք և ի յորս երէոց և ի նետաձգութիւնս և յամենայն ինչ յայսպիսիս»*[3]:

*Եպիսկոպոսների մեջ կան այնպիսիները, որոնք՝ «սրընթաց ձիովք» շահատակին, «և շամբք և բազէիւք որսականօք» դիմեն առ «երէվայրիս և թռչունս», հագնին «զգեստ բեհեզեայ ընդ սաւոյ և այծեաց» և այլն*[4]:

*XIII դարի հոգևորականությունն ստանում է հետևյալ ընդհանուր բնութագիրը.*

*«Եպիսկոպոսք արծաթով առնէին ձեռնադրութիւն՝ զպարգևսն աստուծոյ անարժանից ծախելով, և զմանկունսն և զտգէտսն որ ոչ մարթէին ուղղակի խոսել առաջի մարդկան՝ միջնորդ ընդ աստուած և ընդ մարդիկ կացուցանէին: Եւ անարժան քահանայք և պոռնըկեալք, և յայտնի բոզս նստուցեալ, առնէին քահանայագործութիւն և այլ բազում չարիս, զոր գործէին ի մեծամեծաց մինչև ցփոքունս. ըստ այսմ, թէ՝ «Քահանայքն և ժողովուրդքն ի միասին յիմարեցան, կշտամբիչ ոչ ոք»*[5]:

*Հոգևորականության դրվատանքի ենթակա գործերի հետ մեկտեղ նման բարքերի նկարագիր ենք գտնում և XV դարում՝ Թովմա Մեծոփեցու երկերում. բարոյական քայքայում, զեղծումներ, «խարդավանքներ, կաշառակերություն, անուղղա և անկարգ ու վավաշ, հեշտասեր ու ցոփ կենցաղ»*[6], *որ նա պատճառաբանում է քաղկեդոնականությամբ.*

*«Անառակութեամբ և արբեցութեամբ և պիղծ վարուք շրջէին, և ինքեանք կապող և արձակող նստէին Հայոց»*[7], *«զանուղ-*

---

1 *Թուղթ ընդհանրական, էջ 26:*

2 *Անդ, էջ 74:*

3 *Անդ, էջ 89:*

4 *Անդ, էջ 57:*

5 Կիրակոս Գանձակեցի, *Պատմութիւն Հայոց, էջ 294:*

6 *Տե՛ս* Մ. Աբեղյան, *Հայոց հին գրականության պատմություն, գիրք 2, էջ 367:*

7 *Տե՛ս* Թովմա Մեծոփեցու *Յիշատակարանը, հրատարակեց իւր յառաջաբանով* Կարապետ Կոստանեանց, *Թիֆլիս, 1892, էջ 56:*

ղայս և զանկարգս ձեռնադրէին, տեարք գոլով ընչից, և զաղքատս խոտէին։ Որ և ի միոյ եպիսկոպոսէ հազար երեսուն (ու) ֆլօլի առին, և ապա ետուն զայն կարգ. և նոքա, որ ոչ կարէին տալ, զկարգ եպիսկոպոսութեանն գրաւ առնուին»[1]։

Ինչպես հետագայի, այնպես էլ XV դարի եկեղեցական դասն իր ընկած ու վատթար կողմերով անմահացել է նաև չափածոյում։ Անդրադառնանք միայն Մկրտիչ Նաղաշի անչափ դիպուկ ու խտացրած բնութագրումներին.

Կաթողիկոսքն շատացան անօրինացն բռնութեան,
Եպիսկոպոս օրհնեն անբան, ամէնն վասն ագահութեան.
Վարդապետքն որ նոր ելան, բանին եղեն վաճառական
Եւ քարոզեն զհաճոյս մարդկան, ամէնն վասն ագահութեան։
Եպիսկոպոսք զկանոնն անցան, որ պոռնկաց տան հրաման,
Կաշառ առնուն կարմիր դեկան, ամէնն վասն ագահութեան։
Հաբեղանին զվանքն ուրացան, բնաւ զսաղմոսն մոռացան,
Դռնէ ի դուռ ի շուրջ կուգան, ամէնն վասն ագահութեան։
Երիցանին յիրար կռուան, բիր վերուցին և գաւազան,
Փետեն մորուք, կոտրեն բերան, ամէնն վասն ագահութեան[2]։

Ավելի լավ չէր վիճակը XVII դարում։ Դարձյալ դատափետվել են եպիսկոպոսներ, վարդապետներ, քահանաներ՝ նույն արատների համար։ Գրիգոր վարդապետ Կամախեցին իր Ժամանակագրության մեջ հիշատակում է մի շատ անվանի վարդապետի՝ Մկրտիչ անունով, որ «անկանելով ի գինամոլութիւն և զվարդապետութիւնն խափանելով, և ոչ ուրեք գնալով՝ ոչ աշակերտի և ոչ ուրուք ասել քարոզ կամ դաս, մինչ յօր ելիցն յաշխարհէս»[3]։

XVI—XVII դարերի մասին Մ. Աբեղյանը գրում է.

«Անկումը սոսկալի էր, մեր հին քաղաքակրթությունը գրեթե ամբողջապես ոչնչացել էր այդ ժամանակ։ Մարդիկ կտրվել էին հնից այն աստիճանի, որ հոգևորականներն եկեղեցուց դուրս աշ-

---

[1] Թովմա Մեծոփեցու *Յիշատակարանը*, էջ 57։

[2] Մկրտիչ Նաղաշ, *աշխատասիրությամբ* էդ. Խոնդկարյանի, *Երևան*, 1965, էջ 118։ *Տե՛ս նաև* Ա. Մարտիրոսյան, *Մարտիրոս Ղրիմեցի*, *Երևան*, 1958, էջ 83 և *հտտ.*, Նաղաշ Հովնաթան, *Բանաստեղծություններ*, Ա. Մնացականյանի և Շ. Նազարյանի *աշխատասիրությամբ*, *Երևան*, 1951, էջ 117 և *հտտ*։

[3] *Ժամանակագրութիւն* Գրիգոր վարդապետի Կամախեցւոյ կամ Դարանաղցւոյ, *Երուսաղէմ*, 1915, էջ 405։

խարհական հագուստով էին շրջում, տրեխներով ու չուխայով սեղան բարձրանում և մոռացել էին նույնիսկ շատ եկեղեցական կարգեր»[1]։

Ահա և XVIII դարը։

«Շատ ճիշտ բնութագրում է Աբրահամը (Կրետացին—Ա. Ս.) մեր սևագլուխներին՝ տգետ և ալերախտ, ոչ մի բանի հոգ տանել և ոչ ցավել, յուրաքանչյուրն իր հանգստությունը, բարեկեցությունը որոնող և դրա համար ջանացող և այն ապահովող, հասարակաց բոլոր հոգսը, «զամենայն ցաւս ընկենով ի վերայ գլխոյն», «պաշտիչ ուրուականին լերոյ», կեղծավոր ու շողոքորթ մեծավորի առաջ՝ այն էլ յուր օգտի և բարեկեցության համար, իսկ մեծավորի մեռնելուց հետո՝ երբ այլևս շահ չունին, եպերել և հեգնել..»[2]։

Ոչ թե առանձին անհատների, այլ հոգևորականության բարոյալքում առհասարակ նկարագրվում է և որոշ ձեռագրերում.

«Եւ լուաք վասն քահանայից, որք ի քաղաքի, և վասն սարկաւագաց, թէ առանց խոստովանութեան յաւուրս պահոց ո՛չ արգելուն զինքեանս ի գինոյ, այլ և անչափ յագեցմամբ արբեցութեան ախտին՝ հրապարակին ի մէջ գինեբրուացն, և անպարկեշտաբար նստին ի ժողովս, և խրախանան գուսանական երգովք ի կաքաւ լկտի խաղուց, և վասն այլ պէս պէս իրաց և անասնաբարոյ մարդոց։ Այլ և վասն ագահութեան գբողսն, որք ի տունս պոռնկութեան, և զկանայս այլազգեաց մեծարէին...»[3]։

Եթե այսպես էր «յաւուրս պահոց», հապա ի՞նչ էր ուտիքին։

Առակատիպ զրույցներից մեկի վերջում էլ ուղղակի արձանագրվում է, թե «շատ կարգաւորք և առաջնորդք կորընչին ի դժոխս վասն ագահութեան, և արծաթասիրութեան, և որովայնամոլութեան, որ գայթակղեցուցանէ պտղչոս և լինի ոչնչելի»[4]։

Քարոզների մեջ հաճախ գլուխներ են հատկացվում զանազան արատների ու մեղքերի, որոնց թվում և գինեմոլությունը, ագահությունը, որկրամոլությունը, ընչասիրությունը, արծաթասիրությունը, կաշառակերությունը, վաշխառությունը, ժլատությունը, անարժան մարդկանց կարգ տալուն՝ եպիսկոպոս, վարդապետ կամ քահանա ձեռնադրելուն, որ իրականության մեջ մեծ տարածում էր գտել և խարազանվում էր, համարվելով աններելի հանցանք[5]։ Ի հաստա-

---

[1] Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք 2, էջ 438։

[2] Անդ, էջ 460։

[3] Հատվածը բերվում է ըստ № 2329, էջ 273բ և № 2189, էջ 164ա ձեռագրերի, Հովհ. Երզնկացու «Խրատ հասարակաց»-ից։

[4] Ձեռ. № 1722, ԺԵ դար, էջ 56բ։

[5] Ձեռ. № 3246, էջ 82ա—բ։

տումն քարոզի, բերվում են զրույցներ։ Նրանցից մեկում նկարագրվում է, թե ինչպես ճգնավորը՝ գինարբուքի տրվելով կորցնում է իր ոչ միայն կրոնական, այլև առհասարակ մարդկային բարոյական կերպարը։ Վերջում եզրակացվում է, թե «գինին է ամենայն մեղաց պատճառ և զամենայն մեղք գինին տայ գործել»[1]։

Գինեմոլությունը հասնում է հիվանդագին չափերի, նույնիսկ վեր է ածվում հիվանդության։ Զրույցներից մեկում ներկայացվում է խիստ ժուժկալ և բարեպաշտ մի քահանա, որ բազում հյուրասիրությունների հետևանքով «ուսաւ զվնասակարն, այսինքն քան զչափն առաւել ըմպել։ Եւ այնչափ եա գինքն յարբեցութիւն, մինչ զի յանապաղ տեսանիւր արբեալ։ Յետ այսորիկ, յորժամ արբեցութիւնն եւ քան զեւ ի նմա աճէր և յաղթէր», բանվում է գինու տենդով։ «Ապա հարկ եղև շղթայիւք կապել զնա և ի սենեկի հանդերձ պահապանօք ունել։ Եւ այսպէս այսահարեալ և տանջեալ զերկու ամս՝ մեռաւ»[2]։

Առանձնապես պարսավանքի է ենթարկվում ագահությունն ու ընչասիրությունը, որ հոգևորականության թերևս ամենից ավելի բնութագրական արատն էր։

«Ճգնաւոր մի վաղջանեցաւ և ի զսպելն և ի պատանելն ի ներքոյ սնարիցն գտին վաթսուն դահեկան...» պատմում է մի զրույց[3]։

Եվ եթե որոշ հանգամանքներ կային ինչ որ չափով մեղմելու աշխարհականի ընչասիրությունը, ապա ո՛չ հոգևորականինը։ Այս միտքն է զարգացվում ու նախորդում զրույցին, որ հնչում է որպես ժողովրդի դատողություն, որպես նախատինք։

«Աշխարհականն տուն և խիզան ունի, վասն որդոցն և դատեբացն ժողովէ, և հարկայպահանջութիւն. դո՛ւ, կրօնաւոր, ո՞ւմ համար ագահիս...»—հարցնում է հեղինակը զրույցի սկզբում[4]։

Մի ուրիշ զրույց նույն միտքն է հայտնում, հետևյալ կերպ. «Մանաւանդ որ հոգևորականք մի՛ իցեն ագահ և վայելչասէրք, կամ փառամոլք, այլ անշահասէրք, խոնարհ, հեզ, մաքուրք, ժուժկալք և հոգածուք սորաբրելոց իւրեանց»[5]։

Ըստ այդ դատողության և ըստ նախորդ զրույցից հանվող հետևության, արծաթասեր, ագահ ու ժլատ մարդն անհոգի է ու անսիրտ. նրա հոգին ու սիրտը իր գանձի մեջ են, իր գանձի հետ։

---

[1] Ձեռ. № 3526, էջ 63ա։

[2] «Էջեր», էջ 130 (№ 98)։

[3] Տե՛ս ձեռ. № 2226, էջ 206ա։

[4] Ձեռ. № 2226, էջ 206ա, № 681, էջ 72ա (տարբերակ)։

[5] Ձեռ. № 8825, էջ 14ա։

Արծաթասիրությունն ու ընչասիրությունը կարող են դառնալ սովորույթ, հասնել ծայրահեղությունների, նույնիսկ գողության։ Գողանում են միմյանցից, անգամ համակեցության մեջ.

«Եղբարք երկու բնակեալ էին ի միասին, ի միում լերին։ Իսկ մինն սովորեալ գողանայր զդրամս երկրորդին և դնէր ի սենեկի իւր. նոյնպէս բղհաց և զարմաւ առնէր։ Եւ ո՛չ գիտեր միւս եղբայրն զայն գործ, այլ միայն զարմանայր ընդ հարստանալ նորա»[1]։

Ագահությունն ու կաշառակերությունը հասցնում են ստի, կեղծիքի, խաբեության ու ստորացման։ Օգտվում են անգամ մահամերձի ծանր հոգեվիճակից, նույնիսկ ննջեցյալի կարգը կատարում են կաշառքով.

— Եթէ զձի քո կամիս տալ ինձ,— ասում է քահանան մահամերձին,— ես զմեղս քո յօժարութեամբ առից ի վերայ իմ[2]։

Յուրատեսակ կաշառակերություն, որ հիշեցնում են Յոհան եպիսկոպոսի մասին եղած հայտնի զրույցները[3]։ Հանուն ձիու, հանուն ագահության քահանան ո՛չ միայն պատրաստ է ներել ամեն տեսակի մեղք ու հանցանք, այլև իբր, իր վրա առնել այդ մեղքերը։

Եվ նա բացառություն չէ։ Մի ուրիշն այնքա՛ն է առել ժողովրդից, որ ի վիճակի չէ հաշիվ տալ արածների համար.

«Եւ բերին զամենայն կերեալսն և զայն, որ առեալ էր ի ժողովրդենէն, կապեցին բեռինս և հանին ի վիզն ծեր քահանային. և նա ո՛չ կարէր բառնալ, զի կարի ծանր էր»։ Եվ ո՛չ միայն ծերն, այլև նրա երիտասարդ որդին չկարողացավ բարձրացնել այն[4]։

Ագահությունը հանգեցնում է նաև անկշռության, որկրամոլության։ Ուրիշներին խրատելով հանդերձ, կրոնավորն ինքն է մոլեգնում, պահք անգամ չկարողանալով ու չուզելով պահել։ Նա պահանջում է տալ ուտելու ի՛նչ որ կա, և անպատճառ մսեղեն։ Զգոհանալով ձկնով, նա հարձակվում է, բռնում հավը և եփելուց հետո ընտրում հատուկ համեղ տեղեր ուտելու, և անհամբերությամբ ու ագահաբար կլլելով, խեղդամահ է լինում[5]։

Միակեցների մոտ անգամ, որ թվում է զերծ պետք է լինեն բոլոր աշխարհային մեղքերից ու նյութական շահախնդրություններից, մուտք են գործում բազում սրատներ, այլև նախանձ ու չարակա-

---

1 Ձեռ. № 791, էջ 104ա։

2 «Էջեր», էջ 26 (№ 33)։

3 Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց, էջ 266—269։

4 «Էջեր», էջ 27 (№ 34)։

5 Անդ, էջ 22, (№ 28)։

մությունն դեպի մյուսի և՛ ունեցվածքը, և՛ իմաստությունն ու հանճարը[1]։

Արատներն այնքա՜ն են շատանում ու տարածվում, որ եկեղեցական, կանոնական ժողովների հատուկ նյութ են դառնում։ Պատահական չէ, որ կանոնագրքերում առանձին օրենքներ են սահմանվում հոգևորականության վարք ու բարքի, կենցաղավարության ու կրոնական պարտականությունների կատարման մասին (հավատ, պահք, աղոթք, պատարագ և այլն)։

Հիշենք մի քանիսը Կոստանդին Բարձրբերդցի կաթողիկոսի սահմանած կանոններից.

— Ամենայն ձեռնադրութիւն յեկեղեցի, որ է պարգևք հոգւոյն սրբոյ, զոր տայ արժանաւորացն, առանց արծաթոյ լիցի...

— Այսուհետև արժանաւորքն միայն և գիտունքն առցեն զաստիճան եպիսկոպոսութեան մեծաւ քննութեամբ և վկայութեամբ և թեմին կամակցութեամբ առանց կաշառոյ. հասակաւ մի՛ պակաս քան զերեսուն ամն։

— Ամենայն քահանայագործութիւն՝ կնունք, պսակ և թաղումըն, երկիւղիւ եղիցի՝ առանց գրուցի և ծաղու...

— Տէր և գիտուն խոստովանահայրս կարգեսցեն, որ յամեն կիրակէի առանց դրամի ի խոստովանութիւն կոչեսցէ վասն շաբաթուն յանցանաց, և քահանայքն խոստովանահարցն հրամանաւ զիւրեանց ժողովրդեան զարժանաւորն հաղորդեսցեն առանց դրամի, նոյնպէս և զհիւանդսն առանց դրամի։

— Քահանայ, որ զատ յեկեղեցւոյ գործոյ, այլ գործս առնէ՝ նոտարութիւն կամ որսորդութիւն, զժողովուրդսն ի բաց առցեն ի նմանէ. նմանապէս զանուանսն երիցանց, մինչ լաւ ուսցին, և յանարժանիցն ևս առցեն և այլն[2]։

Կիրակոս Գանձակեցին նկարագրում և պատճառաբանում է, թե ինչպես ընդունվեցին կանոնները.

«Եւ զի ամենայն որ խոտորեալ էր ի ճշմարտութենէն՝ ըմբռնեալք ախտիւ ագահութեան և արծաթսիրութեան, ծանր թուեցաւ հրամանն, բայց սակայն ոչ իշխեցին արհամարհել, այլ ի վերին երեսս մեծարեցին և ետուն ձեռագիր երդմամբ և նզովիւք առնել զհրամանն...»[3]։

---

[1] Տե՛ս ձեռ. № 791, էջ 216ա։

[2] Տե՛ս Կիրակոս Գանձակեցի, Պատմություն, էջ 303—309։

[3] Անդ, էջ 310։

Այս ամենն, այնուամենայնիվ, վկայում են աշխարհի ու կյանքի հաղթանակը, որ արձագանքվում էր տարբեր ձևերով ու արտահայտություններով և՛ իրականության մեջ և՛ գրականության։

* * *

Կրոնավորներից ու վանական միաբանություններից քիչ են տարբերվում նաև կույսերն ու կուսանոցները։ Տարբերությունը թերևս սեռի զսպվածության մեջ էր միայն, որի շնորհիվ աշխարհը նրանց մեջ ևս մուտք ունենալով հանդերձ, չէր հասնում ծայրահեղությունների, մոլորությունների ու սանձարձակությունների։

Կանայք կուսանոցներում չէին ապրում միամտաբար՝ իրենց վիճակի հետ հաշտված։ Արևն ու լույսը, կյանքն իր անըմբռնելի ու անհաղթահարելի մեծությամբ, ամեն արգելք ու խոչընդոտ խորտակող ուժով, իր գեղեցկությամբ ու հմայքներով խախտում էր հավասարակշռությունը, նրանց ևս դյութում ու գրավում։ Ոմանք միայն խորհո՛ւմ, մտածո՛ւմ են թողնել վանքը, գնալ աշխարհ։ Ոմանք անցնում են ավելի վճռական քայլերի, դիմում փախուստի, բայց երկընտրանքն ու երկմտությունը թուլացնում են կամքը, պակասեցնում համարձակությունը, հրաժարեցնում նպատակադրումից և հետ դարձնում՝ ճանապարհի կեսից[1]։ Ուրիշների մոտ հաղթում է վճռականությունը. այդպիսիները հեռանում են վանքից ու ամուսնանում։ Այնքան ուժեղ է աշխարհն ու աշխարհայինը, որ երեսուն տարի կուսանոցում մնացողն անգամ թողնում է վանքը.

— Սո՛ւրբ Աստվածածին, այս երեսուն տարի է, որ կու պահեմ ըզկուսութիւնդ և ծառայեալ եմ քեզ միամտութեամբ. այժմ կերթամ աշխարհ...,— ասում է կույսերից մեկը, վաճառականի հետ ամուսնանալով[2]։

Կան և միայն ձևականորեն աշխարհը թողած, վանքում մնացած կույսեր, որոնք, ըստ էության, շարունակում են կապված մնալ կյանքին, ապրում են, հղանում[3]։

Մյուսներն ավելի ուժեղ են, աննահանջ, հավատարիմ տված երդումին։ Ա՛յս էլ հենց կյանքն է իր բազմերանգությամբ, իր տարբեր արտահայտություններով, որ խլրտում է կուսանոցներում ու կույսերի մեջ։ Թեև շատ սուղ բառերով, բայց դրսևորվում է նրանց հոգեբանությունը՝ խռովքը, փոթորկումները, հույզերն ու ապրումները, տատանումներն ու երկընտրանքը։

---

[1] Տե՛ս ձեռ. № 686, ժէ դար, էջ 200բ։

[2] Տե՛ս «Էջեր», էջ 74 (№ 54)։

[3] Տե՛ս ձեռ. № 791, էջ 176ա։

* * *

Զրույցների շնորհիվ ավելի անմիջականորեն ու լայն են բաց-վում միաբանությունների՝ վանքերի, կուսանոցների ու եկեղեցի-ների դռները, լույս է սփռվում կրոնավորների ներքին կյանքի վրա՝ բարքեր, սովորություններ, կենցաղ, զբաղմունք (արհեստագործու-թյուն, վաճառականություն և այլն)։ Երևան է գալիս երիտասարդ կրոնավորների ծանր վիճակը՝ տանջանքը, ծեծը, հալածանքը, դըր-սևորվում են մեծավորների ու վանահայրերի արտոնությունը, փոքրավորների ու գիրք ունեցողների միջև եղած հակամարտու-թյունները, ներքին, գաղտնի պայքարն ու դավադրությունները, աթոռի, պաշտոնի ու աստիճանի համար որոգայթները և այլն։

Խորամանկներն օգտվում են խարդախ ու քսու միջավայրում ստեղծված այդ վիճակից, ներքին հակամարտությունները, ատելու-թյունն ու վատ փոխհարաբերությունները, սուտն ու խաբեությունը օգտագործում իրենց անձնական դիտավորությունների, կեղտոտ ու շահադիտական նպատակների համար։

«Վանական կրոնավորների անկումը սկիզբն էր առել շատ վա-ղուց,—նկատում է Մ. Աբեղյանը.—Ներսես Շնորհալու գրվածք-ների մեջ արդեն այդ տեսանք։ Այդ դրությունը երբեմն զորանալով, երբեմն թուլանալով հարատևել էր, և 15—16-րդ դարերում արդեն, կարելի է ասել, ծայրահեղության էր հասել։ Թեպետ կային, ան-շուշտ, և սրբակրոններ, բայց նրանք փոքրաթիվ են եղել և հետզհե-տե կորցրել են իրենց ազդեցությունը։ Այդ է պատճառը, որ էջմիա-ծինը 1441 թ. դառնալով եկեղեցական կենտրոն, երկու հարյուր տարի շարունակ, մինչև 1640-ական թվականները, չի կարողացել դառնալ նաև կուլտուրական կենտրոն և առաջ բերել գրականու-թյուն»[1]։

Զրույցներն հաստատում են պատմությունն ու պատմիչների անաչառությունը.

«Աբեղայ մի ցանկայր առաջնորդութեանն վանաց, բայց գի-տէր, թէ ի կենդանութեանն հօրն ո՛չ կարէր այնմ հասանիլ, հնա-րս իմացաւ ի ձեռն ուրումն մանկան, զոր հայր վանացն սովոր էր գանել, տուեալ ի նա փոքր ինչ մահացու դեղ, ասելով. «Եթէ զայս փոշի ցանես ի կերակուր հօրն, հանապազ սիրէ զքեզ և ոչ ևս յա-ւելցի գանել զքեզ»։ Հավատալով նրան, երիտասարդ կրոնավորն այդպես էլ անում է։ Բայց «աբեղայն այն մարդասպան, հասեալ

[1] Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք 2, էջ 368։

յիշխանութիւն նորին, զնոյն մանուկն, զոր և առաջինն Հայրն, զանէր»։ Հետաքրքիր է սակայն, որ արատը, որպես վարակ, շարունակում է տարածվել. նա՛, ով հասնում է վանահայրության, դառնում է նույնը, ինչ նախորդը։ Չարիքը միայն անհատի, անձնավորության հետ չի կապվում, այլ նրա սոցիալական վիճակի, աստիճանի, դիրքի, աթոռի։ Եվ խաթարվում է անմեղությունը, սրվում հակամարտությունը։ Երիտասարդը, որ նախ ուրիշի թելադրանքով էր կատարել սպանություն, երկրորդ անգամ ինքն է մտածում նոր վանահորը թունավորել՝ մահացողի երկրորդ կեսով, տարբերություն չտեսնելով նախորդի ու հետնորդի միջև[1]։

Ուրիշ մեկը, որ կարողանում է պահպանել իր աղնվությունն ու հոգու մաքրությունը, վանական ստորացումներից, արհամարհանքից ու լլկումներից ձանձրացած՝ հեռանում է անապատ, գերադասելով մենությունն ու անասունների հետ ընկերակցելը, քան նման մարդկանց[2]։

Իր արժանապատվությունը հասկացող ու պահող կրոնավորներից մեկը, հեռանալով մյուսներից, ուղղակի ասում է. «Այլ ես ո՛չ ևս կացից ընդ ձեզ, զի ո՛չ ոք էր ի ձեզ, որ դատէր ուղիղ»[3]։

Կան և ավելի սողոչ դատող, համարձակ և ուժեղ կամքի տեր կրոնավորներ, որոնք քննադատում են վանական միջավայրը, բարքերի այլասերումը, խաբեությունը, ստորությունն ու կեղծիքը, ըմբոստանում դրա դեմ, մերժում համարվել այդ մթնոլորտին, ընդունել կեղծ բարեպաշտի կերպար։ Չկատարելով վանահոր անարդար ու անազնիվ պատվերները, նրանցից մեկն ասում է.

— Կարծես, ո՛վ հայր, թէ ես մտեալ իցեմ ի վանս այս առ ի խաբել զմարդիկ և առ ի կորուսանել զհոգի իմ, խօսելով ըզստութիւն վասն վաճառման իշոց...

Այստեղ բացվում է նաև կրոնավորի հուսախաբությունը. նա թողել է աշխարհը, բոլորովին ա՛յլ պատկերացում ունենալով վանական կյանքի մասին, մինչդեռ երկուստեք տեսնում է նույնը ու զարմացած բացականչում.

— ... Ո՞չ արդեօք թողի ես յաշխարհի զբազմութիւն իշոց, ջորեաց, ձիոց և այլոց կենդանեաց և ուրացայ զճոխութիւն իմոյ փարթամութեան առ ի ծառայել միում և իսկական ճշմարտութեան, փախչելով յունայնութենէ աշխարհի։ Մի՞թէ ո՛չ կարէի ես կալ

[1] Տե՛ս «էջեր», էջ 23 (№ 30)։

[2] Անդ, էջ 24 (№ 31)։

[3] Ձեռ. № 791, էջ 160ա։

անդ ամենայնիւ հեշտութեանց, բայց քանզի այն ամենայն օրըստօրէ առթէին զտուժանս հոգւոյ իմոյ, վասն որոյ լքեալ հրաժարեցայ ի նոցունց։

Եւ լուեալ զայս ամենայն հօր վանացն, զարմացաւ և ոչ կարաց անդրէն խօսիլ ընդ նմա»[1]։

Պարզվում է, որ ավետարանական կանոններն ու գաղափարները միայն խոսքով են պահպանվում, իրականության մեջ դրանք թյուրվում են, որ առհասարակ մեծ հակասություն կա կրոնավորի վարքի ու իր քարոզածի միջև։ Նրանցից շատերը այն դրական, ազնիվ կերպարը չեն, որ խրատում են լինել և որ պետք է լինեն իրենք, որպես օրինակ, այլ փառասեր, հպարտ, մեծամիտ, ագահ ու կաշառակեր, ոչ ողորմած և ոչ աղքատասեր։ Նրանք և՛ խաբում են, և՛ ստում, և՛ կեղծում. չեն ծառայում ճշմարտությանը[2]։

«Կրօնաւոր մի նստեալ դրամ համրէր. և եկեալ աղքատ մի՝ խնդրեաց ողորմութիւն և զձեռն կալաւ ի դէմ կրօնաւորին։ Եւ կրօնաւորն եհար ապտակ մի ի յերեսն աղքատին»[3]։

Անգամ վանահայրերն են զանց առնում պատվիրանները, աղքատին չեն լսում, չեն ընդունում, զբաղված ձևանում, նույն պահին ստորաքարշությամբ ներս առնելով հարուստին[4]։ Պատահում է, որ քարոզի իմաստն ու նպատակը աշխարհականն է բացում կրոնավորին, զգաստացնում ու սթափեցնում, հետ պահելով մոլորությունից[5]։

Նա, որ իր էությամբ պիտի առաքինության ու մարդասիրության մարմնացումը լիներ, շնանում է, պոռնկում ու սպանում։ Նա կարող է դառնալ դահիճ, այն էլ ամենադաժան ու անողորմ՝ մահապարտին անլուր տանջանքներով չարչարող, պատժի առավել խստագույն միջոցներ փնտրող ու գտնող[6]։ Այդպիսիներն անարժան են ու հեռու ո՛չ միայն կրոնավոր, այլև մարդ լինելուց առհասարակ։

Բացվում են և կրոնավորի հոգու գաղտնիքները։ Պարզվում է, որ աստծուն նվիրաբերվելը ո՛չ միշտ և ոչ բոլորի համար է ինքնակամ՝ համոզմունքով, ցանկությամբ կամ հաճույքով կատարված

---

[1] «էջեր», էջ 26 (№ 32)։

[2] Տե՛ս «էջեր», էջ 25, 106, 126, 132 (№ 32, 75, 94, 101) և այլն։

[3] Ձեռ. № 3963, էջ 182ա։

[4] Տե՛ս «էջեր», էջ 124 (№ 91)։

[5] Անդ, էջ 126 (№ 94)։

[6] Անդ, էջ 142 (№ 105)։

երևույթ։ Աշխարհիկ կյանքն իր հարմարակեցությամբ մնում է բաղձալի, քաղցր հիշողություն, ցավալի կորուստ, որ նեղսրտություն է պատճառում, հասցնելով դառն խոստովանության։ Հիվանդանոցային պայմաններից վանք վերադառնալու առիթով, կրոնավորներից մեկը կրկին անգամ ցա՛վ է զգում իրեն աշխարհիկ կյանքից զրկած լինելու համար։ Նա մտովին վերապրում է անցյալը, վշտանում իր անդառնալի կորստի համար և, փորձելով մեղմել սրտի կսկիծը՝ ծիծաղով ու խոսքին ուրախ, կատակի տոն տալով, բա՛ց է անում հոգու ծածուկ անկյունը.

«Այնչափ ինձ դժուար թուի դառնալ ի վանս, որչափ առաջագոյն, յորժամ թողեալ յաշխարհ՝ մտի ի կրօնաւորութիւն»[1]։

Եվ այդ աշխարհը, որ անմոռանալի էր, անուրանալի ու հզոր, հախուռն հորձանքով մեծ տեղ է գրավում զրույցներում, ի վերջո հասնելով լիարժեք մենաշնորհի։

Աշխարհը և աշխարհային ամեն ինչ գլուխ է բարձրացրել և իշխում է ո՛չ միայն աշխարհականների, այլև հոգևորականների, նույնիսկ ճգնավորների վրա, որ նո՛ւյնպես ուզում են վայելել կյանքի հաճույքները՝ զվարճալիքներ, կեր ու խում, կին ու գինի, իմանալ նրա գաղտնիքները։ Աշխարհիկ ոգին, աշխարհային ցանկություններն ու մտապատկերները հանգիստ չե՛ն տալիս, չե՛ն հեռանում նրանց գլխից գիշեր թե ցերեկ, աղոթելիս թե արարողությունների ժամանակ։ Այդ դեռ բավական չէ՛. նրանք իրականություն են վերածում ցանկությունները, չե՛ն բավարարվում վերացականով, մտացածին պատկերներով, մասնակցում են խնճույքների, ուտում և արբում, այցելում կանանց, նույնիսկ կին պահում[2]։ Աշխարհի հաղթանակը միջնադարում ավելի որոշակի է դառնում հենց ա՛յս՝ կրոնավորներին վերաբերող զրույցներում։ Ըստ էության դրանց մեջ արտացոլվում է մարդն՝ իր աշխարհային ապրումներով, զգացումներով ու ցանկություններով, անկախ այն բանից աբեղայի՞ թե եպիսկոպոսի վեղարով է ծածկված նա։ Հանում ես վրայից արտաքին զգեստը, մնում է մարդը՝ միջնադարյան մարդը և այլևս չե՛ս կարող որոշել ո՞վ է նա՝ քահանա՞, կաթողիկո՞ս, անապատակա՞ն թե... աշխարհական։

Այսպիսով զրույցներն ի ցույց են հանում ա՛յն ճանապարհները, որով կյանքը, աշխարհիկ ոգին ո՛չ միայն ներթափանցում,

---

[1] «Էջեր», էջ 23 (№ 29)։

[2] Տե՛ս անդ, էջ 82, 96, 124, 128—130, 132, 137—149 (№ 59, 65, 91, 95—98, 101, 104—106) և այլն։

այլև տիրապետում է մարդու էությանը։ Մեծացող հետաքրքրությունը դեպի աշխարհն ու կյանքը իր արտահայտությունն է գտնում և՛ կենցաղում և՛ հոգեբանության մեջ, մարդու խոհերի, ձգտումների ու ցանկությունների, հույզերի ու ապրումների, փիլիսոփայական հայացքների, մտքերի, գաղափարների ու դատողությունների՝ ժամանակի աշխարհայեցության մեջ ա՛ռհասարակ, տարբեր գույներով ու երանգներով։

Թեև կրոնական գունավորումով, բայց հետաքրքիր ձևով է վերջանում, օրինակ, զրույցներից մեկը, ուր դժգոհություն է հայտնվում, թե օր ու գիշեր կարդացվող քարոզներն անգամ չեն օգնում աղոթելու, խոստովանության գալու։ Սատանան (ներքին մղումը՝ ըստ ժամանակի աշխարհըմբռնման չարի մարմնացումը, չարագործության դրդիչը) «ի ժամ մեղացն գործելոյն զամաւթն և զվախն կուտանի, և ի խոստովանելոյն ժամն զամաւթն ի վերայ կու ձգէ, որ չեն խոստովանիլ»[1]։

Մեծ խորաթափանցությամբ բացվում է մարդու ներաշխարհը, արարքների պատճառը գտնվում նրա խառնվածքի, հոգեվիճակի մեջ. «մեղքեր» գործելիս իշխում են զգացմունքները, թուլանում կամ կորչում է նույնիսկ հավատի հետ կապված վախի ու ամոթի գիտակցությունը և վերադառնում ուշացած՝ զղջման խորն զգացողության հետ, երբ արդեն իշխում է սառը դատողությունը։

Նույն միտքը մի այլ զրույցում հայտնված է ուղղակի. «Մեղքն մարդոյն յառաջ քաղցր թըւի և յետ գործելոյն դառնանայ հոգով, իբրև զլեղի»[2]։

* * *

Հավատի հետ կապված աշխարհայացքային խնդիրներում հետաքրքիր լուծում է ստանում նաև հոգու և մարմնի փոխհարաբերության հարցը։ Արդեն միշտ չէ՛, որ գերիշխում է այն պնդումը, թե մարմինը պետք է կատարի հոգու կամքը, ենթարկվի միայն նրա՛ ցանկություններին։ Մարմինն ինքն էլ ունի իր պահանջները, նրա գոյությունն անհրաժեշտ է հոգու համար, իսկ այդ գոյությունը հնարավոր է պահպանել բավարարելով ո՛չ միայն հոգու, այլև մարմնի կարիքները. «Մեզ պարտ է երբեմն գիջանել ըստ մարմնոյ, զի մի՛ սպանցուք զմարմին տկար»[3]։

---

1 Ձեռ. № 6974, էջ 104բ, Ձեռ. № 5623, էջ 291բ (տարբերակ)։

2 Ձեռ. № 3526, էջ 62բ։

3 Ձեռ. № 4196, էջ 4բ։

*Անուղղակիորեն մարմնի հաղթանակն է հաստատվում ուրիշ նպատակներով գրված և մի ա՛յլ զրույցում, ուր երևան է գալիս նաև մարմինը մեռցնելու միջոցով հոգին պահելու անհնարությունը.*

*— Աղաչե՛մ զքեզ, կերակո՛ւր տուր ինձ, զի ահա պակասի հոգի իմ, զի ո՛չ յիշեմ, թէ զի՞նչ իցէ կինն՝ ի բաղում սովոյն և ի պակասելոյ զօրութեան իմոյ*[1]։

*Զրույցներից մեկում ուղղակիորեն նշվում է, թե մարդկանց ավելի հետաքրքրում է ո՛չ թե հոգևոր, այլ աշխարհիկ կյանքը, և այնքա՛ն, որ այլևս ցանկալի չէ լսել կրոնական խոսքեր, նույնիսկ բարեկամություն անել կրոնավորի հետ, եթե նա զրուցում է միայն «աստվածային» բաներ։ Ավելի՛ն. կրոնավորն ի՛նքն է ենթարկվում աշխարհականի հակումներին և զրուցում ո՛չ թե հոգևոր, այլ «մարմնավոր» բաներ։*

*«Մեծատուն ոմն յաշխարհս զբաղեալ էր խիստ և ոչ կամէր լսել զբանն աստուծոյ։ Եւ ունէր վարդապետ մի բարեկամ։ Ասաց մեծատունն ցվարդապետն. «Թէ կամիս զբարեկամութիւնս մեր՝ հետ քեզ, երբ գաս ի տունս մեր, մի՛ զրուցեր զբանն աստուածային ինչ, ո՛չ կամիմ»։ Ասէ ցնա վարդապետն՝ «Այլ ո՛չ ասեմ»։ Այնուհետև «վարդապետն գայր ու շատ բան զրոյցէր յաշխարհէս մարմնական...»*[2]։

*Հոգո՞ւն թե մարմնին գերիշխանություն տալու հարցում ժամանակի աշխարհայեցության մեջ առաջացած ճեղքվածքը երևան է գալիս և ուրիշ զրույցներում։ Նրանցից մեկն հանգեցնում է այն հետևության, թե ինչ խրատ ուզում ես տուր, մարդն զգայական է, մարմնական, և առաջին հերթին ա՛յդ է նրան զգալի, ա՛յդ է նրան զբաղեցնում ու մտահոգում։ Մեծատունն այսպես է խրատում իր միակ ժառանգորդին՝ քրոջ որդուն. «Ո՜վ որդեակ, հայեա՛ց և տես, զի ահա մերկ երթամ յաշխարհէս, զի սնոտի և անցաւոր է փառք և հեշտութիւն աշխարհիս՝ նման երազոյ, վասն որոյ աղաչեմ զքեզ, որդեա՛կ, մի՛ մոռանար զաւր մահուն և զդժոխքն և հեռացիր յամենայն մեղաց և սիրէ զգործս բարիս՝ մեծ հուսով և զղջմամբ»։ Եվ երբ հարցնում է, թե իր ասածները հասկացա՞վ, տղան պատասխանում է.*

*— Յէ՜ քեռի, ի՞նչ կու հրամես և կամ ի՞նչ առեցեր. բնաւ ո՛չ գիտեմ, թէ դու զի՞նչ խոսեցար, քեռի։ Ապա դու ինձ լսէ, որ ես պատմեմ քեզ գործ մի հրաշալի։ Քանզի այժմն ի թիւ և ի համ արկի,*

---

1 «Էջեր», էջ 93 (№ 63)։

2 Ձեռ. № 8502, 1619 թ., էջ 109բ—110ա։

և ահա՛ տասն և երկու երակս կայ ի փորիս խմաւմ և ամենայն ի պորտս կու գնա և յերանքս իջեալ ժողովի[1]։

Թեև քեռին սպառնում է նրան զրկել ժառանգությունից, բայց այդ ահաբեկումն իսկ չի շեղում նրան իր աշխարհըմբռնումից, չի՛ հեռացնում նրա միտքն աշխարհիկ ու մարմնավոր զբաղումներից, որովհետև ա՛յն, ինչ որպես աշխարհայեցություն քարոզվում կամ խրատվում է՝ վերացական է, չեղած, ցանկալի, մինչդեռ կյանքն ու աշխարհն այն իրականն են՝ առկա վիճակը, որի մեջ ապրում են, և որը գերադասելի է ապառնիից՝ ըստ ժողովրդի իմաստության, ուր գերադասվում է ներկայում թեկուզ ամենաաակավն ունենալ, քան հետագայում՝ առավելը (կանխիկը լավ է, քան ապառիկը)։

Այսպիսով, միջնադարյան զրույցները ցույց են տալիս, որ «ինչքան էլ տեսականի մեջ դեռ իշխում է ճգնավորական հայացքը, գործնականի մեջ, ընդհակառակն, ուրախ կյանքը, աշխարհիկ ոգին է տերը», ինչպես նկատում է Մ. Աբեղյանը առակների առիթով[2]։

Անշուշտ աշխարհի և աշխարհայինի մեջ համեմատաբար լայն արտացոլումն են գտնում միջնադարյան իրականության, հասարակական-քաղաքական ու բարոյական կյանքի, մարդկային փոխհարաբերությունների առավել աչքի ընկնող, բնորոշ, կենցաղում համեմատաբար սուր կամ ցայտուն արտահայտություն ստացած կողմերը, որոնց մեջ զգալի տեղ են գրավում նաև մերժելի երևույթները։



Հոգևորականությունից բացի, զրույցներում մեծ դեր են կատարում հասարակության գրեթե բոլոր հիմնական խավերն ու դասերը՝ թագավորներ, իշխաններ, զանազան պալատականներ, զորավարներ, դատավորներ, մեծատուններ, վաճառականներ, արհեստավորներ, շինականներ և կանայք՝ իրենց առավել բնութագրական գծերով։ Բնական է, հոգևորականության մեջ այնչափ տարածված ու արմատացած արատները, որ կյանքի ու աշխարհի ծնունդ են, ավելի ընդգծված ու խտացած գույներով պիտի արտահայտվեին աշխարհականների մոտ, թեև այստեղ ևս չի բացառվում լավը՝ բարին, ազնիվն ու արդարը, որ ի ցույց է հանվում եր-

[1] Տե՛ս սույն գրքում, էջ 268 (№ 32), Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 39։

[2] Տե՛ս Մ. Աբեղյան, Հայոց հին գրականության պատմություն, գիրք 2, էջ 184։

*քեմն իբրև իրականություն, երբեմն՝ իդեալ, ի հակադրություն մերժելի բարքերի ու արարքների։*

*Թագավորները գերազանցապես երևան են գալիս աշխարհակալական ձգտումներով, իշխաններն ու պալատականներն անմիաբան, մեկը մյուսի փառքին նախանձող, գահասեր, դավադիր ու անբարո, մեծատունները՝ փառասեր, ագահ ու ժլատ, վաճառականները՝ ստախոս ու կեղծող, արհեստավորները՝ խաբող ու գողացող, դատավորներն՝ անարդար ու անիրավադատ։*

*Ի հակադրություն հոգևորականության մասին եղած զրույցների, որոնց մեջ ավելի ընդգծված է ձգտումը դեպի աշխարհ և կյանք, աշխարհականներին վերաբերողներն առավելապես շեշտում են նույն այդ կյանքում ու աշխարհում տիրող անարդարությունները, նախանձը, դավն ու որոգայթը, հարստության, մեծության ու դիրքի նկրտումը՝ իր բազմերանգության մեջ։ Սակայն հոգևորականության բնութագրող արատներից ագահությունը, ընչաքաղցությունը, արծաթասիրությունն ու ժլատությունն ավելի սուր երանգներով և ավելի բնորոշ գծերով են արտահայտվում մեծատունների ու հարուստների՝ իշխողների մոտ։*

*Պատահական չէ, որ զրույցների տարբերակներն այդ արատները միևնույն համոզչականությամբ վերագրում են և՛ կրոնավորի և աշխարհիկի։ Գրված «ի բանն ավետարանին», որ ասէ. «Ուր գանձք ձեր են, անդ և սիրտք ձեր եղիցին» զրույցի տարբերակներից մեկն սկսվում է այսպես. «Ծգնաւոր մի վաղջանեցաւ և ի զսպելն և ի պատանելն ի ներքոյ սնարիցն գտին վաթսուն դահեկան...»*[1], *մյուսը՝ «Մեռաւ ոմն իշխան, որ ունէր գանձս բազում ոսկոյ և արծաթոյ և ականս պատուականս սնդուկով...»*[2]*։*

*Ագահը, ժլատն ու վաշխառուն զրույցներում հասնում են խորը ճանաչողության։ Նրանք ներկայացվում են հոգեբանական նրբերանգներով, արատի դրսևորման զանազան եղանակներով ու արտահայտչականությամբ, բնավորության, դատողության ու զգացողության տարբեր գծերով։*

*Ոմանք ուզում են ոսկի և արծաթ դառնա ամենը, ինչի դիպչում են*[3]*, ոմանք մեռնելիս, այլ ելք չգտնելով, ցորենի հատիկի պես կլլում են ոսկիները*[4]*, ոմանք էլ դրանք հետները գերեզման դնել տալիս.*

---

[1] *Տե՛ս ձեռ. № 2226, էջ 206ա։*

[2] *Տե՛ս ձեռ. № 5623, էջ 285ա,* Մառ, *Ժողովածու, մասն Բ, էջ 213։*

[3] *«Էջեր», էջ 14 (№ 17), ծանոթ. էջ 239։*

[4] *Անդ, էջ 14—15 (№ 18), ծանոթ. էջ 239։*

*«Յոյժ ագահ» մի մեծատուն «ի վաշխիս տայր համապազ մարդկան զինչս իւր. և ի մեռանիլ իւրում խնդրէր ի կնոջէ իւրմէ, զի մի քսակ դրամ դիցէ առ նմա ի գերեզմանի, զոր նա որպէս կարաց՝ արար թագնաբար...»*[1]*: Նրանց սիրտն է մնում աշխարհում՝ իրենց գանձի հետ: Այնքա՛ն մեծ է ագահորեն դրամ կուտակելու սերը դեպի ունեցվածքը, որ թվում է, թե իրոք, սիրտն այդունոտելու չափ ցավ զգալով, արյունաթաթախ էլ մնում է գանձի հետ: Ժլատի հոգեբանության մեծ իմացությամբ, գրուցագիրն ավելի է ուժեղացնում փոխաբերական իմաստ արտահայտող այդ միտքը՝ ներկայացնելով որպես առարկայական, իրային ճշմարտություն. «Եւ բացեալ զսնդուկն տեսին, զի սիրտն արենաթաթախ կայր ի վերայ ընչիցն»*[2]*:*

*Արծաթասերը ժլատ է, անխիղճ, անհոգի ու անսիրտ, որովհետև նա իր հոգին դրել է իր գանձի մեջ, որովհետև «զոսկին է պաշտել, և որչափ աղաւթք է արեր, միտքն մոտ ոսկին է եղեր»*[3]*:*

*Ահա մի այլ մեծատուն ևս, որ հարստացել է ո՛չ ազնիվ ճանապարհով, ո՛չ առանց մեղքի: Սակայն այդ չէ զարմանալին, այլ ա՛յն, որ մեռնելիս նրան հուզողը, մտահոգություն պատճառողը իր գործած անարդարությունները չեն, այլ իր ամբողջ էությամբ դիզած ու իր էությունը դարձրած գանձի ու ունեցվածքի կորուստը, ա՛յն, որ ամենը պիտի մնա ուրիշի, ուրիշը պիտի ժառանգի ու վայելի: Զրույցի մեջ հետևյալ կերպ են նկարագրվում նրա վերջին ծանր ապրումներն ու մենախոսությունները.*

*«Ի մահիճս այսր-անդր շրջելով աւաղէր ի խորոց սրտէ, լայր, կոծէր և ողորմելի ձայնիւ ողբայր, ասելով.*

*— Աւա՜ղ, զիա՞րդ բազում աշխատութեամբ ջանացի, զի զինչս ստանայցեմ, և ահա այլ մարդիք զգանձս իմ ժառանգեսցեն և վայելեսցեն: Ո՛վ ինչք իմ, ո՜վ մեծութիւնք իմ, ո՛վ մխիթարութիւնք սրտի իմոյ, յո՞յր ձեռն արկանիցիք, ո՞ւմ թողից զձեզ»*[4]*:*

*Այդ գանձի սերն էլ, կամ հենց այդ գանձն էլ, որդի պես լափում է մի այլ ժլատի սիրտը*[5]*: Ուրիշ մեկը «Ի յագահութենէն ախտին և ի սիրոյ արծաթին այրէր, խորովէր, տոչորէր և ցանկութեամբ միշտ ժողովէր զրկանօք զնա՝ յամենայն ժամ»*[6]*:*

---

1 *Ձեռ. № 681, էջ 72ա—72բ:*

2 *Տե՛ս ձեռ. № 5623, էջ 285ա,* Մառ, *ժողովածու, մասն Բ, էջ 213:*

3 *Ձեռ. № 2226, էջ 206ա:*

4 *Ձեռ. № 681, էջ 72բ:*

5 *Տե՛ս ձեռ. № 2226, էջ 206ա (տարբերակ):*

6 *«Էջեր», էջ 14 (№ 17, C տարբերակ), ծանոթ. էջ 239:*

Մեծության ու հարստության ձգտող ագահ ու անհագ արծաթասերները ո՛չ մի օգուտ չեն տալիս հասարակությանը, ձեռք չե՛ն մեկնում աղքատներին և ո՛չ մի բարի գործ չեն կատարում[1]։ Նրանք շատ ավելի անսիրտ են ու անողորմ, քան նույնիսկ շունը, որ իր ունեցածից բաժին է հանում հարևանին, մինչդեռ տերը ոչ ոքի ողորմություն չի տալիս[2]։

«Մեծատուն խոճա մի ունէր չափէ ի դուրս ոսկի և արծաթ, մլքեր և այգիք և ողորմութիւն չէր ի տար աղքատաց», պատմում է մի ուրիշ գրույց[3]։ Եվ այսպես կարելի է շարունակել թվարկումը։ Սակայն և նրանք, որ ողորմություն են անում, սրանցից քիչ են տարբերվում՝ ի ցույց հանելով ագահության ու ժլատության մի ուրիշ բնութագրական կողմ. ամեն ինչ առատաբար ունենալով և շտեմարանելով հանդերձ, միայն ավելցուկներ, փշրանքներ ու գրոշներ նվիրաբերել աղքատներին, այն էլ ո՛չ այնքան հանուն աստծո կամ աղքատի, այլ իրենց հոգու փրկության։ Ահա նկարագիրն այն ամենի, ինչ տվել են նրանք և ինչով լցված է աստծո «գանձարանը».

«Եբաց դդուռն մի, ուր ետես լցեալ փշրանօք, բորբոսեալ պատառօք, չորացեալ սպիտակ և սեաւ հաց։ Այլ սենեակ եցոյց, յորում էին կիսանեխեալ մսոց և աւելորդ, հոտեալ կերակուրք, բորբոսեալ պանիրք, կոտոր հաւուց, ձկնից, թռչնոց։ Յայլ սենեակ՝ կիսաքացախ գինիք և ղայլ անհամ, ապախորժ ըմբելիք։ Յայլ սենեակ՝ պատառոտուն, ա[ն]լուայ, աղտեղի շապիկք և այլն։ Յայլ սենեակ, յորում էին լցեալ պղնձի լումայք, և հազիւ թէ գտանիւր դեկանս և կոտորն արծաթի, ճմլեալ պղնձի գօտիք և այլ անօթք»[4]։

Այս նշանակում է նաև, թե խախտված է, չկա հաստատուն հավատ, երկյուղածություն ու նվիրվածություն առ եկեղեցին ու նրա խորհուրդները, կեղծ է հարուստների բարեպաշտությունն ու աղքատասիրությունը։ Փաստորեն ո՛չ թե հոգու, այլ մարմնի, կյանքի փըրկության համար են նրանք աղքատներին, մանավանդ հիվանդներին, հաշմանդամներին, կույրերին ու կաղերին ողորմություն անում, որովհետև ավելի «երկիւղալի է լինիլ կոյր և կաղ, քան թէ վաստակ այնպիսիացն» տալ[5]։ Ուրեմն մարդասիրությունից չէ, որ բխում է այդ

---

1 Տե՛ս ձեռ. № 681, էջ 72ա։

2 Տե՛ս ձեռ. № 4618, էջ 56բ, Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 275։

3 «Էջեր», էջ 19 (№ 25), ծանոթ. էջ 240։

4 Ձեռ. № 8825, էջ 17բ—18ա։

5 Ձեռ. № 1778, էջ 135ա (№ 12)։

ողորմածություն, այլ եսասիրությունից, անձնապաշտությունից, անահավատությունից ու վախից։ Սակայն հաճախ այդ անգամ չի օգնում լիաթոք ու լիասիրտ ողորմելու։ Ոմանք զղջում են տվածի համար, սգում նվիրաբերած փողերի «կորուստը», ոչնչի առաջ կանգ չառնելով ու ամեն գնով ջանում տվածը հետ ստանալ.

«Էր ոմն յԱղեքսանդրիայ այր մեծատուն յոյժ։ Սա հիւանդացեալ երկեաւ ի մահուանէ և հանեալ ոսկի լտերս երեսուն՝ ետ աղքատաց և ողջացաւ։ Եւ իբրև ետես զինքն ի մէջ իւր առողջութեան, սկսաւ ապաշաւել զբարի գործն, զոր արար։ Եւ էր նորա բարեկամ ոք, այր հաւատարիմ և սիրելի. նմա պատմեաց զխորհուրդ իւր՝ եթէ դժուարիմ ընդ գործն։ Նա ասէ ցնա, թէ՝ «Ընդ այդ առաւել ուրախանալ պարտ է քեզ, զի Քրիստոսի ընծայեցեր զայն ամենայն»։ Իսկ նա ո՛չ լսէր և ոչ առնոյր ի միտ»։ Բարեկամը համաձայնում է նրան տալ իր 30 լիտր ոսկին, եթե նա հրաժարվի արած ողորմությունից։ Այդպես էլ լինում է։ Մեծատունը «յօժարութեամբ գնաց... և էառ զոսկին իւր»[1] ։

Ժլատությանն ու ժլատին բնորոշ գծերից է ո՛չ միայն աղքատներին բաժին չհանելը, այլև իր իսկ ունեցվածքը իր անձնական պետքերի համար խնայելը, պահելը չվայելելը։ Մինչդեռ կուտակածը լավ նպատակներով ծախսելու համար է, ո՛չ պահելու,— հասկացնում է զրույցը,— պահած գանձից օգուտ չկա։ Գանձ կամ քար, այս դեպքում միևնույն է, «զի այն աւելորդ էր և չէր... ի պէտք անցանելոց... զի այսպէս անշահ և անաւգուտ էին...»։ Չնայած այդ անօգտությանը, կորցնելով ոսկիները, հարուստը պատրաստ է ոսկիների հետ կորչել և ինքը՝ անձնասպան լինել, խեղդվել պարանով «ի կսկծոյ և ի սրրոյ արծաթոյն»[2]։ Սակայն այդպես մեռնողն,— ըստ զրույցի,—այն աշխարհում էլ հանգիստ չի ունենալու, մնալու է ծարաւ ու քաղցած՝ ինչպես ա՛յս աշխարհում։

«Ի կենդանութեանն ընդէ՞ր ոչ եկեր և էարբ», մեղադրում է հարուստին հրեշտակը, կրկին ցավեցնելով ժլատ սիրտն ու բորբոքելով վերքը[3]։

Չթաքցնելով իրենց անհատական մոտեցումն ու ժխտական վերաբերմունքը, զրուցագիրներն առողջ բանականությամբ նկատում են, թե մեծություն ու հարստություն են հասնում ազահության ու ժլատության պատճառով, այն էլ ոչ սեփական աշխատանքով ու

[1] Ձեռ. № 791, էջ 254ա։

[2] Տե՛ս սույն գրքում, էջ 274 (№ 40), Սառ, ժողովածու, մասն Բ, էջ 230։

[3] Ձեռ. № 4630, ժԵ դար, էջ 7բ։

աղնիվ վաստակով. «էին ամենայն ինչ նորա ժողովեալ վաշխիւ, և ստութեամբ, և անիրաւութեամբ և ուստ վկայութեամբ...»[1], կամ «Բազում ինչս ժողովեալ էր, բայց ո՛չ առանց մեղաց...»[2] կամ՝ «Ոմն մեծատուն ունէր տուն իւր մեծ և ընդարձակ...։ Յաւուր միում յանկողնի իւրում անկեալ վշտանայր և ոչ կարէր ննջել՝ վասն խորամանկութեան և առաւել ագահութեան՝ ստանալոյ ընչս»[3]։

Հաստատելով ագահության մասին զրույցներից մեկում եղած առակավոր՝ փոխաբերական միտքը, հեղինակն այն լրացնում է նոր ու սաստկացնող համեմատությամբ.

«Ճշմարիտ է առակս, թէ յաշխարհ զինչ ոսկի և արծաթ, ակն և մարգարիտ կայ, թէ զամէն ագահ մարդոյն տան, նա ոչ հերիք կ՚ասէ և ոչ կշտում ունի։ Ագահութիւնն աղի ջրի նման է, որչափ մարդ խմէ, այլ առաւել կու ծարաւի, ապա թէ մեռանի՝ մէկ ափ հողն կու լնու զաչքն»[4]։

Զրույցներից մեկը մեծ արվեստով, խոսուն համեմատություններով ու պատկերավորությամբ, կյանքի հաստատուն փորձով ու ճշմարտացիությամբ ընդհանրացնում է փողամոլի կերպարն առհասարակ, խտացրած գույներով դրսևորում նրա ողջ էությունը, ընչաքաղցությունը, անկշտությունն ու անհագությունը և ա՛յն ճանապարհները, որով հարստանում է նա։ Գանձասերը նմանեցվում է հմուտ աղեղնավորի, որ իր հաջողակությանը վստահ այնքա՛ն է հանդգնանում, մինչ հասնում է երկրի լուսատուները, արեգակն ու լուսնկան նետահարելու, իր տունը տանելու անմտությանը, որպեսզի միայն ի՛նքը տեսնի նրանց լույսն ու փայլը։ Այս չափազանցված ու խորհրդանշական համեմատությունից հետո զրուցագիրն անցնում է ավելի իրական, երկրային, նյութական բաղդատությունների, որով առավել ևս ավարտուն է դարձնում գանձամոլի բնութագիրը.

«Ամենայն մարդ, որ ջանիւ ելանէ ի խնդիր արծաթսիրութեան, և ագահութեան և հարստութեան, վաշխէ, զրկէ, գողանայ, նենգաւոր պատճառանաւք տուգանէ, կաշառաւք զիրաւունքն թիւրէ, և այնպէս ագահէ, ի սիրէ զգանձն՝ ո՛չ կամի թէ մարդ բնաւ արծաթ տեսանիցէ...։ Զի թէ զան և կուտին գանձք յաշխարհի, ո՛չ կարեն լնուլ զակն և զմիտք նորա, որպէս և գետք ոչ կարեն լնուլ զծովն, և

[1] Ձեռ. № 7324, ԺԷ դար, էջ 199բ, 791, էջ 257ա (տարբերակ)։

[2] Ձեռ. № 681, էջ 72բ։

[3] «Էջեր», էջ 18 (№ 24), ծանոթ. էջ 239։

[4] Անդ, էջ 119—120 (№ 85), ծանոթ. էջ 253։

աղրուկն ոչ յագի արեամբ, և հուր ոչ յագի փայտիւ. և թէպէտ և լինու տուն մի գանձիւ, թուի թէ մի փող ոչ ունի»[1]։

Հարստության տենչն այդպիսիներին հասցնում է ո՛չ միայն անխղճության, խաբեության, խարդախության, անիրավության, զրկանքի ու կողոպուտի, այլև անգամ աղքատի վերջին ունեցվածքը զրպարտությամբ ձեռք գցելու անսրտության.

«Մեծատուն ոմն զտուն իւր ետ վարձու աղքատի ուրումն. և կամելով զնա կողոպտել... զաղքատն զրպարտէր սակս գողութեան»[2]։

Ագահությունը, ընչաքաղցությունն ու դրանից բխող գողությունը այդպիսիների միսն ու արյունն է, առանց այդ դժվար է պատկերացնել առհասարակ հարուստ ու հարստություն։ Ոմանց, կամ հասարակության հատուկ խավերի համար դա նույնիսկ դառնում է արհեստ՝ մշտական, բնութագրական հատկանիշ։ Գողությունից չեն կարող չանել, օրինակ, որոշ արհեստավորներ, ասենք՝ դերձակը. այդ կնշանակեր կորցնել «զսովորական համբաւն արհեստակցաց», ընդհանրացնում է զրուցագիրը։ Արատը նրանց մոտ դառնալով սովորույթ, հասնում է ծայրահեղ չափերի, որ զրույցներից մեկում սրամտորեն արտահայտվում է հետևյալ կերպ.

«Դերձակ ոմն այնքան վարժեցեալ էր գողութեամբ, խորհելով կամ գողանալով զասուեղէնս և զայլ իրս այնոցիկ, որք բերէին առ նա՝ ի ձևել տալոյ կամ կարելոյ զհանդերձ ինչ ինքեանց, մինչ զի և ոչ կնոջ իւրոյ արարեալսն թողոյր թարց գողանեցման...»[3]։

Վաճառականությանը ևս օտար չէ գողությունը, խաբեբայությունը, ուրացությունը, ուրիշի վաստակն ուտելը, նույնիսկ՝ հարաղատ[4]։ Մինչև անգամ բարության ու ազնվության համբավ ունեցողը «ինչ տեղ կարէր գողանալ, ո՛չ երբէք անփոյթ առնէր»։ Իմանալով, որ գանձն իրեն պահ թողած մարդը «ոչ վկայ ունէր և ոչ ձեռագիր, ուրաստ եղև թէ՝ «Ոչ զի՛նչս քո տեսի և ոչ զքեզ երբէք ճանաչեմ»։ Նա հաշտվում է մարդու ունեցվածքը վերադարձնելու մտքի հետ միայն ա՛յն պատճառով, որ վստահություն շահի և դրանով իսկ ավելի մեծ գանձերի տիրանա[5]։

Իրենց խոստովանության մեջ, որոշ վաճառականներ ասում են.

---

[1] Ձեռ. № 7993, էջ 141բ։

[2] Ձեռ. № 681, էջ 75բ։

[3] Ձեռ. № 1778, էջ 135ա (№ 11)։

[4] Տե՛ս «էջեր», էջ 37—43 (№ 40, 41, 42), ծանոթ. էջ 244։

[5] Անդ, էջ 37 (№ 40)։

*«Ոչինչ կարեմք գնել կամ ծախել, թէ ոչ սուտ ասիցեմք և սուտ երդնուցուք»*[1]։

*Մի գրույցում վաճառականը ծաղրվում ու ծիծաղի է ենթարկվում երեսը սև ներկվելով, որպես սևերես մարդ, այսինքն՝ անաղնիվ, խարդախ, անարգ մեկը։ Ժողովուրդը ծիծաղում է նրա վրա, ասելով՝ «քան զքեզ առակ չենք տեսեր», «քան զքեզ խախք մարդ այլ չենք տեսեր», «ամենայն տիեզերս շրջեալ եմ և չեմ տեսեր իբրև զքեզ, կամ քան զքեզ, կամ այլ առակ քան զքեզ»*[2]։

*Նրանց մասին ուղղակի ասվում է. «Եզև փարթամ խաբելով՝ ըստ սովորութեան վաճառականաց»*[3], *կամ՝ սուտ ասելն ու սուտ երդվելը «թէպէտ ըստ ինքեանց են յոյժ ծանունք, սակայն վասն սովորութեան առ վաճառականս թեթև համարին և կամ թէ ոչինչ»*[4]։

*Սրանց շարքում, որպես գողության մի այլ ճանապարհ բռնածներ, ամոթի ու նախատինքի են ենթարկվում նաև տոկոսով ու շահով փող տվողները, վաշխառուները*[5], *կաշառակերները և այլն։*

*Ուրիշի ունեցվածքը ստությամբ ու խաբեությամբ հափշտակողների մեջ են և այնպիսի մարդիկ, որոնք «կարի յառաջադեմ» են, «յառաջին խորհրդական կամ հոգաբարձու քաղաքական իրակութեանց, անուանի... վասն մեծի ուշիմութեան»*[6], *այլև դատավորներ, որ պետք է արդարության մարմնացումը և կիրառողը լինեն։ Ո՞ւր կարող է խոսք լինել իրավունքի ու արդարադատության մասին, երբ հասարակության մեջ շատացել են կեղծիքն ու գեղծարարությունը, մարդիկ նախանձ են ու գրկող, փողասեր, հարստության դերի, զրպարտիչ, ստախոս և կաշառակեր։ Կաշառակեր ու անիրավադատ են նույնիսկ նրանք, որոնք օրենքի ներկայացուցիչներ են և օրենքի անունից հենց իրենք են քարոզում անկաշառ, ազնիվ ու արդար լինել։ Հակառակը գործելով, ավելի մեծ ու ավելի շատ կաշառք են վերցնում հենց մեծամեծները*[7], *դատավորները և այն էլ ո՛չ թե ուղիղ դատելու, այլ արդարությունը թյուրելու համար. «Կաշառօք չէ՛ պարտ թիւրել զիրաւունս», փաստերից*

---

[1] «Էջեր», էջ 42 (№ 42, Ի տարբերակ)։

[2] Ձեռ. № 7227, 1603 թ. էջ 28ա, Մատ. ժողովածու, մասն Բ, էջ 49։

[3] Ձեռ. № 8825, էջ 21բ։

[4] «Էջեր», էջ 42 (№ 42, Բ տարբերակ)։

[5] Տե՛ս ձեռ. № 5623, էջ 291ա։

[6] Ձեռ. № 8825, էջ 5ա։

[7] Տե՛ս անդ, էջ 1ա։

ձևնելով սահմանում է գրուցագիրը[1]։ Շատ դատավորներ արատավոր են իրենց և՛ գործում, և՛ կենցաղում առհասարակ։ Ահա մեկն իր առօրյայով. իր խորհրդականներով նա կեղծում է ու կողոպտում՝ ամեն հարմար առիթով, ուտում, խմում, արբենում և ուրախանում ի միտս՝ նոր ավարով։ Օգտվելով փոքրավորների ճարպիկությունից, որ սուտն ու խաբեությունը գործիք դարձրած «շրջէին ի քաղաքն և ի շուկան՝ ըստ ամենայն պիտոյից դատավորին», վերջինս ցածրացրած արժեքով գնումներ է կատարում, ձեռք գցում նույնիսկ չքավորի վերջին ունեցվածքը, անգամ կանայք տանում իր մոտ։ Մինչդեռ ի ցույց հասարակության պահում է «Գիրք դատաստանի» ու պատժիչ գործիքներ և պարծենում, թե դրանով է անում «արդար դատաստան որբոր և այրեաց..., վճիռ չարագործաց, եթէ ոք արժանի իցէ գանի և չարչարանաց՝ ըստ հրամանի գրոց...»[2]։

Իրականում ո՛չ միայն այդպես չէր, այլև նա՛ ու նրա նման ուրիշները խորշում էին աղքատից ու քաղցածից, չէին ուզում լսել ու տեսնել նրանց աղաղակները, տանջանքներն ու տառապանքները, վարկաբեկում ու ստորացնում էին նրանց՝ շուն համարելով, և փոխանակ օգնելու՝ փախուստ տալիս նրանցից։ «Դատավոր ումն ի ժամանակի սովոյ, զի մի՛ լուիցէ զձայն աղքատաց, փոխեցաւ յայլ տուն, որ էր մերձ եկեղեցոյ, ուր աղքատաց տառապեալ և նուաղեալք ի սովոյ աղաղակէին։ Եւ նա, զի մի՛ լուիցէ զձայն նոցա, ասէ.—Ո՛չ կարեմ հանդուրժել ընդ շանցս այսոցիկ։— Եւ հրամայեաց զսեղան իւր յայլ օթևան տանել»[3]։

Թեև գրույցները որպես գրական օրինակ երևան են բերում նաև իրավադատ, գործին ու արդարության հետամուտ առաջնորդներ, իշխաններ ու դատավորներ, սակայն առիթ բաց չեն թողնում ներկայացնելու և ծաղրի ենթարկելու այնպիսի անբանների, որ բացառություն չեն քաղաքի դատավորների մեջ։ Նրանք դատարկամիտ են, կողմնակի հարցերով ու զվարճություններով զբաղված և նույնիսկ հիմար այնքան, որ խոստովանում են անձամբ։ «Արդարև յիմար ու ախմախ եմ», մտովին քննում է նրանցից մեկն ինքն իրեն, բայց և խորհում «ցինքնին, թէ գո՞յ այլ ևս ախմախ, թէ միմեայն ե՛ս եմ»[4]։ Դժբախտաբար գտնվում են այդպիսիները,

---

1 Ձեռ. № 1976, էջ 106բ։

2 Տե՛ս գրույցը սույն գրքում, էջ 297 (№ 68)։

3 Տե՛ս սույն գրքում, էջ 275 (№ 42)։

4 Ձեռ. № 8825, էջ 29ա։

այն էլ ուսումնականների, մանկանց և հասարակության դաստիարակության, ուսուցման ու հավատի գործը ղեկավարողների մեջ։ Եզրակացությունը պարզ է. միայն մեկը «չէր ախմախ, այլ գտանին բազումք»[1]։

Ելնելով ժամանակի տիրող վիճակից, ուր բնութագրական էին անարդար դատաստանները, կաշառքն ու անիրավությունները, ուր «շատ արդար մարդիք դատին և մեռանին անիրաւ ընդ վայր»[2], զրույցները ջանում են ստեղծել որոշ հավասարակշռություն, մեղմել վիճակը՝ գեթ հնարավորի սահմաններում. միայնակ դատաստան չանել, չշտապել, երկար ու մանրակրկիտ ուսումնասիրել գործը, խորը քննել նրա հետ կապված բոլոր հանգամանքները, չհիմնվել խաբուսիկ՝ կարծեցյալ ճիշտ վկայությունների վրա, մեծ հմտությամբ, բարեխղճությամբ ու անաչառությամբ զննել արտաքին պարագաները, որ հաճախ ա՛յլ բան են ասում, իսկ իրականությունն՝ այլ, ճշմարտության հասնելու, անմեղներին զուր չդատելու գոնե ա՛յն ժամանակ, երբ մոտեցումն անկաշառ է, անշահախնդրական։ Նրբանկատ ու սրտացավ չգտնվելով, այդպիսի դեպքերում իրավադատներն անգամ շեղվում են ճշմարտությունից՝ իրենք էլ չիմանալով այդ. «Եւ դատաւորն գիտէ ի միտս իւր, և այլքն, թէ ուղիղ դատեցաք»[3]։

Եվ զրուցագիրը խրատում է.

«Ապա շատ պիտի զննել դատաւորին զբանն և զվնասն, և համբերէ բազում աւուրս՝ սակաւ սակաւ յայտնի ճշմարտութիւն։ Նաև միայնակն ի դատաստան չէ պարտ առնել, զի շատ վնաս լինի անտի։ Նաև կաշառօք չէ պարտ թիւրել զիրաւունս, զի անթողելի մեղք է առաջի աստուծոյ»[4]։ Զուր, անմեղ դատապարտությունից, չարչարանքից ու տուգանքից ավելի ծանր բան չկա. այդ ավելի ծանր է, քան արճիճն ու երկաթը,— եզրակացնում է մի ուրիշը[5]։

Սուր ծաղրի են ենթարկվում երկրի նաև ա՛յն առաջնորդներն ու մեծամեծները, որոնք հպարտանալով՝ ձգտում են փառքի ու մեծության, ոչ մի օգուտ չտալով ոչ հասարակությանն ու ժողովրդին և ոչ իրենք իսկ իրենց։ Այդպիսիները նմանեցվում են անմտության հասած իմաստունի, որ գրում է ու քանդակում, թեև ոսկով ու ար-

---

1 Ձեռ. № 8825, էջ 31բ։

2 Տե՛ս նույն գրքում, էջ 297 (№ 67)։

3 Ձեռ. № 1976, էջ 106բ։

4 Անդ։

5 Տե՛ս ձեռ. № 2226, էջ 183բ, «էջեր», էջ 122 (№ 88), ծանոթ., էջ 254։

ծաթով, բայց՝ ծովի վրա[1]։ Ջրույցը փոխաբերական պատկերներով ու համեմատություններով անողոք մերկացման է ենթարկում նրանց, ապա բերում մի ընդարձակ բարոյա-խրատական հատված՝ համոզելու, թե ոչինչ են սին փառքը, մեծությունն ու հարստությունը, և անցողիկ.

«Այսպէս և ամենայն մարդ, որ ի խնդիր ելանէ փառաց և մեծութեան՝ և ցանկութեամբ զհետ մտէ, բազում ծախաւք և ջանիւ և աշխատութեամբ, ստուգապէս զհողմս որսա, զոր բնաւ ո՛չ կարէ ըմբռնել, զի թէպէտ և հասանէ փառաց և մեծութեան և հարստութեան, և նստի աթոռ թագաւորական կամ իշխանական, կամ դատաւորական, և լնու գանձով զըշտեմարանս իւր, սակայն փութով անցանէ՝ նման երազու, և իբրև զարծուի և զհողմն՝ անցանէ ի ձեռն մահու։ Եւ դու տե՛ս, թէ ո՛ւր են առաջին կայսերքն և թագաւորքն, և փառաւոր իշխանքն և թագուհիքն, և առաջնորդքն, զի մերկ մտան աշխարհ և մերկ ելան»[2]։

Վերջում արվում է և մի ընդհանրացնող եզրակացություն.

«Այսպէս են ամենայն առաջնորդք, և քահանայք, և գիտնականք, և միանձունք, որ իբրև զիս յիմարք են և ծոյլք, խաբեբայք և կեղծաւորք, որք թողան զգործն աստուծոյ և շրջին, և խնդրեն զփառս, և զագահութիւն, և զսէր ախտից յաշխարհիս. և լինին մարդապաշտ և պատառաբոյծք, որ վասն միոյ խերևիշի վաճառեն զաւրէնքն աստուծոյ, ոչ պահեն զաստիճանս իւրեանց, որ ցանկալի է հրեշտակաց՝ այլ ի զբաղումն փառասիրութեան, զաւշաքաղութեամբ ձեմին ի դրունս մեծատանց, գայթակղեցուցանելով զտեսաւղսն և ոչ աւգտեցուցանել և խնամ հօտին ոչ տանելով»[3]։



Շարունակելով այսպես, զրույցները մուտք են գործում նաև պալատ. օրինակներ բերում իշխանների ու թագավորների կյանքից, ընդգծում նրանց բնութագրող ավելի հատկանշական երևույթներ՝ նենգություն, զրպարտություն, դավաճանություն, անիրավություն, դեխություն, ամբարշտություն և այլն[4]։

---

[1] Տե՛ս ձեռ. № 7993, էջ 141ա—142ա, Մառ, Ժողովածու, մասն Գ, էջ 78։

[2] Ձեռ. № 7993, էջ 141ա։

[3] Անդ, էջ 142ա։

[4] Տե՛ս «Էջեր», էջ 69, 70, 115, 117, 123 (№ 50, 52, 81, 83, 89 համապատասխան ծանոթագրություններով)։

Պարզվում է, որ խարդախությամբ նույնիսկ պալատական են դառնում, այլոց ունեցվածքը սեփականելով ու գողանալով, և արարքը ծածկելու համար իրենց անունը փոխելով՝ վեզիրության հասնում[1]։ Ահա մի իշխան, որին դիմել են ճշմարտությունը պարզելու, արդար դատելու, մահու և կենաց հարց լուծելու. «Իբրև լուաւ զԹիւ ոսկւոյն, իշխանն ուրախութեամբ լսէր նմա՝ յուսով շահոյն, և սկսաւ ջերմ սրտիւ քննել զդահիճն ձեր...»։ Բայց երբ տեսավ, «եԹէ ոչինչ շահի անտի, հրամայեաց սպանանել զդահիճն զայն»[2]։

Շատ իշխաններ իրենց փարթամ կյանքն ու մեծազոր ուժը վատնում են նախատինքի և արգահատանքի արժանի գործերում, հանուն իրենց հաճույքների ոչնչի առաջ կանգ չառնելով, ոչինչ չխնայելով, մահ ու ավեր սպառնալով[3]։ Նրանք չեն խնայում նույնիսկ մենաստանները, ոտնատակ են անում կրոնական ու հասարակական բարքերը՝ անձնական հաճույքն ու եսը վեր դասելով ամենից։ Այդպիսիներին ոչինչ չի պարտավորեցնում. նրանք չունեն հաստատուն վարքագիծ, փոփոխական են ու կամայական Թե՛ հաճույքների ու վայելքի և Թե՛ գործի մեջ[4]։

Նրանցից մեկը խոստովանում է, Թե «երկրորդ եմ Թագաւորութեանս..., զամենայն յիմ իշխանութիւն է տուէր Թագաւորն. յորժամ սակաւ մի բարկանայ ինձ, նա ես կասեմ ի սրտի իմում, Թէ՝ ճար լինէր, որ զԹագաւորս սպանանէի, զկինն և զԹագաւորութիւն առնէի»[5]։

Նույն մտադրություններն ունի և մեկ ուրիշը՝ նախանձով ու չարությամբ լցված դեպի ենԹադրյալ Թագաժառանգը.

«Եւ զայրացաւ ընդ բարուԹիւն նորա և ընդ Թագաւոր լինելոյ նորա՝ մեծ այր մի։ Հնարս իմացաւ, Թէ որպէս չարախօսեսցէ զքուրօչորդին առ Թագաւորն, զինքն կալցէ յետ Թագաւորին զԹագաւորուԹիւնն»[6]։

Այդ հարցերում հետ չեն մնում և Թագավորները։ Նրանցից մեկը, երբ ստիպվում է խոստովանել, ասում է. «Երկոտասան Թագա-

---

[1] Տե՛ս ձեռ. № 8325, էջ 4բ։
[2] «Էջեր», էջ 146—147 (№ 105), ծանոթ., էջ 257։
[3] Տե՛ս զրույցը նույն գրքում, էջ 278 (№ 45)։
[4] Ձեռ. № 691, էջ 221ա, 221բ։
[5] «Էջեր», էջ 69 (№ 50), ծանոթ., էջ 247։
[6] «Էջեր», էջ 58—59 (№ 47, Ե տարբերակ), ծանոթ., էջ 246։

*տրաց վերայ իշխանութիւն ունիմ, յորժամ մարդ ի մօտս գայ, ի ձեռն կու հայիմ, թէ ի՞նչ կու բերէ»*[1]։

*Եւ այսպես, բացվում է պալատական ներքին կյանքն իր ամբողջ մերկությամբ, իր երկկողմանի, երկդիմի պատկերով, թվացող արտաքին խաղաղության ու հանդարտության, սիրալիր ու բարեկամական փոխհարաբերության, ժպիտների ու քաղաքավարական խոսքերի ներքո թաքնված ճշմարտությամբ՝ իրական դեմքով ու բարքերով, մշտապես լարված մթնոլորտով՝ դավեր, սպանություններ, գահակալության կամ ժառանգության հասնելու համար մղվող մարտեր, մեկը մյուսի փառքին նախանձող, չար, պառակտիչ, բանսարկու և զրպարտող իշխաններ ու պալատականներ*[2]*։ Սեր ու հավատարմություն կեղծելով նրանք դավում են և՛ իրար, և՛ թագավորին, չարախոսելով խռովություն սերմանում թագաժառանգների, ազգականների ու թագավորի միջև, թագավորության հասնելու ակնկալությամբ նյութում սպանություններ ու մահ։*

*Թագավորության ու ժառանգության հասնելու հողի վրա ծագում են վեճեր, խռովություններ ու դավեր ժառանգորդների միջև։ Շահամոլությունն ու ագահությունը հասնում են այնպիսի չափերի, որ ընտանեկան փոխհարաբերություններում, հարազատների՝ եղբայրների, քույրերի ու ծնողների միջև սկսում են իշխել դրամական, շահադիտական փոխհարաբերությունները, կեղծիքն ու ստը։ Հանուն ժառանգության դավում ու զրպարտում են նույնիսկ ծնողներին, զրկում ունեցվածքից։ Եղբայրները քրոջը ժառանգությունից մաս չհանելու համար ուրանում են «զքոյր իւրեանց, ասելով, թէ նա փողոցագիտ աղջկորդի է, զոր հայր մեր սնոյց և որդեգիր արարեալ է զնա վասն բարերարութեան. չէ՛ հարազատ քոյր մեր»։ Դատելով մորը, շարունակում են թե՝ «Մեք զճշմարիտն խօսիմք և դու վասն ագահութեան ընդէ՞ր միաբանեալ ընդ նմա, զրկել կամիս զմեզ»*[3]։

*Որոշ զրույցներ ավելի լայն են բացում կյանքի դռները, ներս մտնում նեղ, անձնական, ընտանեկան փոխհարաբերությունների մեջ, մարդու արտաքին՝ հասարակական միջավայրի ու էության զննումից բացի, վեր են հանում նաև վիպական մանրամասներ, ներքին փոխհարաբերություններ, կենցաղ, սովորույթ բարքեր։*

---

[1] *«Էջեր», էջ 69 (№ 50), ծանոթ., էջ 247։*

[2] *Տե՛ս ձեռ. № 4630, էջ 6ա, «Էջեր», էջ 54 (№ 46), ծանոթ., էջ 246, էջ 57 (№ 47), ծանոթ., էջ 246։*

[3] *Ձեռ. № 8825, էջ 2ա—2բ։*

Թագավոր մի չար, իր միամոր որդու մահից հետո, «կամեցաւ առնել զկինն որդոյ իւրոյ» և երբ չգտաւ հնար, «սպան զբազումս»[1]։ Մի ուրիշը «ոչ վարէր իշխանութիւնն ըստ իրաւանց և բարեպաշտութեան, որպէս օրէն է թագաւորաց, այլ ընթանայր զհետ անիրաւութեան, զեղխութեան, զրկանաց և ամենայն ամբարշտութեան»[2]։ Երրորդն ուներ որդի. մի բարի, բայց ինքը «խիստ անիրաւ դատաստան առնէր։ Ասէր որդին հօրն, թէ՝ «Հա՛յր, Քրիստոս Աւետարանն հրամայէ թագաւորաց, թէ որով դատաստանաւ դատիք՝ դատելոց էք. չե՞ս վախեր աստուծոյ, որ այսպէս անիրաւ դատաստան կաննես»։ Յայնժամ բարկութեամբ հայրն զորդին և զհարսն ի դուրս արաւ և վարեց ի այլ աշխարհ՝ մերկ և դատարկ»[3]։

Զրույցներից մեկում թագավորի մասին ուղղակի ասվում է՝ նրան ամեն ինչ թույլատրելի է, որովհետև նա չար է, անհավատ, աներկյուղ, թերի և օրինազանց[4]։ Ճշտորեն նկատվում է, թե թագավորների ուղեղը մթագնված է գահին ամուր փակած մնալու մարմաջով, թագավորությունից զրկվելու մտավախությամբ, որը խլում է իրերն ու երևույթները ճիշտ տեսնելու և դատելու կարողությունը, դարձնում դյուրագրգիռ ու դյուրահավատ, ծնում մտակուրություն, ամեն ինչ գլխիվայր տեսնելու ընդունակություն, հասցնում չարագործության։ Գահն ու հարստությունը կորցնելու սարսափը մեռցնում է նույնիսկ ամենանվիրական զգացումները, խիղճն ու սիրտը, հասցնում անտեսելու ազգակցական ամենամոտ կապերն ու արյունակցությունը՝ ընդհուպ զավակներն ու նրանց ապագան։

Ահա պալատական կյանքի մի նման պատկեր. իրեն անիրավության ու անբարշտության տված թագավորներից մեկը, չկամենալով լսել խրատներն իր խորհրդակիցների, որ հորեղբայրներն էին, «խորհէր բառնալ զնոսա ի կենաց, ի սադրել կնոջ իւրոյ»։ Մահամերձ ձևանալով, նա կանչում է բոլորին. «Ոստի պալատ արքայի լի եղև կոծով և լալով, և արտասուալից ողբովք կանանց»։ Ապա թագուհին, գինուն մահադեղ խառնելով, տալիս է հորեղբայրներին, որոնք մեռնում են...։ «Եւ թէպէտ յայտնի նշան մահադեղին երևէր ի մարմինս և յաղիս նոցա, սակայն վասն երկիւղի բռնաւորին, ոչ ոք իշխէր ինչ ընդդէմ խօսել»[5]։

---

[1] Տե՛ս, նույն գրքում, էջ 276 (№ 43)։

[2] «Էջեր», էջ 70 (№ 52), ծանոթ., էջ 248։

[3] Ձեռ. № 2939, էջ 761, Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 146։

[4] Տե՛ս նույն գրքում, էջ 276 (№ 43)։

[5] «Էջեր», էջ 70 (№ 52), ծանոթ., էջ 248։

Մերկացվում է թագավորների նաև շվայտությունը, որկրամոլությունն ու ագահությունը։ Օրինակներ են բերվում նույնիսկ պատմական կամ առասպելական անձնավորությունների կյանքից՝ ցույց տալու նրանց ընչաքաղցությունից ծնված չարիքների ա՛յն անհասանելի չափերը, որ տանում են դեպի խորտակում թե՛ բարոյապես և թե՛ ֆիզիկապես։

Ի հակադրություն հայկական պատմական զրույցների, պատմական անձնավորությունների հետ կապված թարգմանականներն արտահայտում են ոչ այնքան հայրենանվեր, անձնազոհ ու հերոսական գործեր, որքան կենցաղ ու բարքեր, դրսևորում անհատական ու հասարակական կյանքի համեմատաբար ընդգծված ու բնութագրական կողմեր։ Այս զրույցների մեծ մասը կապված է Սողոմոն իմաստունի և Ալեքսանդր Մակեդոնացու անվան հետ[1]։ Կան նաև փոքրիկ պատմություններ Հոմերոսի, Արիստոտելի ու զանազան կայսրների մասին՝ փիլիսոփայական, գաղափարախոսական, կենցաղային, առասպելական կամ զավեշտական բովանդակությամբ։ Հետաքրքիր է բյուզանդական կայսր Փոկասի կյանքին վերագրվող մի առասպելախառն զրույց, ուր վեր է հանվում նրա բարոյական կերպարը, թե՛ ներքին՝ պալատական, անձնական կյանքում և թե՛ որպես կառավարող՝ թագավոր։ Նկարագրվում է նրա զանազան խաղերով տարված ու ա՛յն աստիճանի զեխ կյանքը, որ նույնիսկ «յուտել և ի յըմպել չափն անցուցեալ էր»։ Ժողովուրդըն անգամ ծաղրում և նախատում էր նրան, ասելով թե՝ գինին խմում է և հանճարը կորցնում։ Որպես վրեժխնդրություն, կայսրը տանջամահ էր անում, չարչարում ու սպանում շատերին, բռնագրավում ունեցվածքը, բռնադատում նախարարների կանանց և այլն։ Ի վերջո նրան գահազուրկ են անում, ըստ զրույցի՝ «զաջոյ ձեռն նորա և զերկուս ոտս հատին, տիկ ի մարմնոյ հանին, զծածուկ անդամս կտրեցին և զգլուխն հատեալ՝ զգեղարդէ կախեցին. և զդէշ մարմինն, ուր զանասունս ծախէին, այսր և անդր նախատանօք քարշէին. և ապա հրով այրեցին»[2]։

Ըստ մի այլ զրույցի, արտառոց, թերևս ավելի տարօրինակ կյանք ու վախճան է ունեցել Զենոն կայսրը.

---

[1] Զրույցների զանազան շարքեր կան նվիրված Սողոմոն իմաստունին և Ալեքսանդր Մակեդոնացուն. տե՛ս ձեռ. №№ 4618, էջ 132ա, 132բ, 133ա, 4231, ժԾ դար, էջ 59, 6974, էջ 107բ, 108ա, 108բ, 109բ, 109բ—110ա, 110ա և այլն, Մատ., Ժողովածու, մաս Բ, էջ 205—207, 215, 284, 316, 329, 332, նույն գրքում, էջ 317—322 (№ 77—84)։

[2] Տե՛ս նույն գրքում, էջ 323 (№ 86)։

«Զենոն կայսրն այնչափ զեխէր և արբենար, մինչ զի ի խելաց անկանէր և իբրև զմեռեալ յերկիր անկանէր, անշնչանայր. վասն որոյ կնոջ իւրում յոյժ ատելի եղև։ Յաւուր միում արբեալ, իբրև զմեռեալ, հրամայեաց ի գերեզման թագաւորաց ձգել և քար ի վերայ թաւալեցուցանել։ Որ իբրև ի գինոյ թափեաց, լալով և կոծելով, եղկելի և սոսկալի մահուամբ մեռաւ, քանզի թագուհին հրամայեաց ո՛չ բանալ զգերեզման և ոչ ածնել նմայ»[1]։

Բարքերի մեջ աններելի հանցանք է դիտվում հայհոյանքն ու գինեմոլությունը։ Վերջինս համարվում է արատներից ամենավտանգավորը և մեղքերից ամենամեծը, որովհետև մղում է ուրիշ մեղքերի, ծնում նոր մոլություններ[2]։ Զրույցներից մեկում գինեմոլությունն ու հարբեցողությունը կրկնակի և ավելի վատ չարիք են դիտվում, քան դիվահարությունը[3]։ Գինեմոլի ամբողջ էությունը խմիչքն է. հրաժարվել նրանից, նշանակում է ամայեցնել էությունը, քանդել հոգեկան ու մարմնական շինվածքը։ Արբեցության վարժվածը պատրաստ է նույնիսկ կուրանալ, բայց ոչ երբեք հրաժարվել գինուց, ինչպես սրամտորեն «տրամաբանում» է նրանցից մեկը. «Կամիմ ես մանաւանդ կորուսանել զպատուհան իմն, քան թէ զբոլոր տունն ամայի առնել»[4]։

Որպես հնարավոր ելք, խրատվում է գինին օգտագործել չափավոր, անհրաժեշտ քանակով, նրանից շահելու և ո՛չ վնասվելու համար[5]։

Բազում զրույցներում դատապարտվում է նաև դավաճանությունը, ուրիշի կնոջ հետ կենակցելը, ընտանեկան հարկի սրբապղծությունը, հայհոյանքը, որոնք հավասարազոր են դասվում մարդասպանության ու արյունահեղության հետ[6]։

* * *

Պալատի և միջնադարյան բարքերի նկարագիրն ա՛ռհասարակ էլ ավելի են ամբողջացնում կանայք, իրենց կյանքի վիպական մանրամասներով։ «Թագաւորին մէկ մեծ իշխանն հետ թագուհոյն

[1] Տե՛ս նույն գրքում, էջ 323 (№ 87)։

[2] Տե՛ս ձեռ. № 3526, էջ 62ա։

[3] Տե՛ս, ձեռ. № 2939, էջ 166բ։

[4] Տե՛ս նույն գրքում, էջ 325 (№ 93)։

[5] Տե՛ս «էջեր», էջ 60 (№ 48), ժանոթ., էջ 247, ձեռ. № 8420, 1613 թ. էջ 105ա (տարբերակ, «Վէպք» վերնագրով)։

[6] Տե՛ս ձեռ. № 2939, էջ 974։

կու շնար»։ Վախենալով հանցանքը բացվելուց, թագուհին որոշում է զրպարտել ա՛յն պալատականին, որ տեսել էր իրենց. և «պատառեաց զհանդերձն և զերեսն իւր և ճիչ բարձեալ ասէ.

— Թագաւո՛ր, քո սիրական ծառան եկաւ ի տուն և կամեցաւ զիս բռնութեամբ ապականել»։

Կայացվում է մահվան դատավճիռ, սակայն պարզվում է երիտասարդի անմեղությունը և «թագաւորն չարաչար մահուամբ սպան զկինն և պահեաց զծառան ժառանգ թագաւորութեան իւրոյ»[1]։

Մի այլ թագուհի հարկադրված բացում է իր սրտի գաղտնիքն, ասելով. «Աստուած զայս ամէն իշխանութիւնս ետես ինձ, և թագաւորիս կին եմ, յորժամ աղէկ կտրիճ մի տեսանեմ, կու ցանկամ, թէ ճար լինէր, նա ես զթագաւորս դեղէի և զնա առնէի»[2]։

Երրորդ զրույցում թագավորն սպանում է իր հարազատներին՝ կնոջ սադրանքով։ Այպա «կին թագաւորին հրամայեաց զմարմինս նոցա անթաղ արտաքս ընկենուլ, կոչելով զնոսա դաւաճանողս վասն կենաց թագաւորին, և համբաւ տարածեաց, թէ յայտնի և արդար իրաւամբ զդատաստան պատուհասի կրեցին»[3]։

Ահա և արքայադուստր, որ «գոլով զի սիրահարեցեալ ի գեղ ուրումն պատանւոյ Ամոն կոչեցելոյ, կամէր ունել զնա՝ ըստ ըղձի իւր։ Եւ ո՛չ հաւանիլն նորա, վասն ահին կայսեր, խորհեցաւ Փարազնեայ զայրաբար մատնել զնա։ Եւ յաւուր միում, մինչև անցանէր Ամոն զգրան սենեկին նորա, աղաղակեաց ասելով.

— Օգնեցէք ինձ, զի կամի Ամոն բռնադատել զիս»[4]։

Իր խառնվածքով նրան նման է և մեծատան աղջիկը՝ համարձակ, նախահարձակ. և ուժեղ, քան ժամանակի բարոյական սահմանափակումները, բայց և ինքնասեր ու վրեժխնդիր.

Աղքատ ամուսինները՝ իրենց որդու հետ «իջևան եղան ի տուն մեծատան միոյ, որոյ աղջիկ մի, տեսեալ զպատանին՝ տռփացաւ ի գեղ նորա։ Եւ խնդրեաց աղջիկն ի տղայէն՝ լինիլ ընդ նմա։ Եւ նա ոչ էառ յանձն։ Ասէ աղջիկն ցտղայն.

— Որովհետև ոչ լցեր զփափակն, տես զի՛նչ ածից ի վերայ քո։

Եւ ապա գտեալ զիպող ժամ աղջիկն այն, զիւր հօր արծաթէ սկաւառակն եդ ի մաղախ պատանւոյն, ոչ գիտելով տղային։ Իբրև ելին ի գնալ, առին զիւրաքանչիւր զմաղախս իւրեանց, և երթային հետիոտս։ Եւ իբրև հեռացան, աղաղակեաց աղջիկն և ասէ.

---

1 «էջեր», էջ 52—54 (№ 45), ծանոթ., էջ 245։

2 Անդ, էջ 69 (№ 50), ծանոթ., էջ 247։

3 Անդ, էջ 71 (№ 52), ծանոթ., էջ 248։

4 Անդ, էջ 115 (№ 81), ծանոթ., էջ 252։

— Աղքատքն այնուքիկ տարան արծաթէ սկաւառակն։

Յայն[ժամ] մեծատունն այն ձիրնթաց արշաւմամբ հասեալ՝ ըմբռնեաց զնոսա...»[1]։

Ոչինչ այնքան պարզ չի ցուցաբերում բարքերի փոփոխությունը, քան այն հանգամանքը, թե ի՞նչ տեղ է տրվում կնոջը՝ տվյալ ժամանակներում,— գրում է Ֆ. Մոնյեն, ելնելով XV դարի իտալական գրականության ուսումնասիրության իր փորձից[2]։ Եվ իրոք։ Կանանց վարքի, կյանքի ու կենցաղի նկարագրության մեջ ընդհանրապես բացահայտվում են ոչ միայն բարքեր, այլև աշխարհայեցողություն, որ է՛լ ավելի է մեծացնում զրույցների ճանաչողական արժեքը։ Հաճախ մանրակրկիտ ներկայացվում է նրանց և՛ արտաքինը, արդ ու զարդը, կեցվածքն ու քայլվածքը, և՛ ներքինը՝ հոգեբանությունն ու բնավորությունը, տարբեր կողմերով՝ առավել բնութագրական գծերով և ի ցույց հանվում թե՛ դրականը, թե՛ բացասականը։ Սակայն այս նկարագրությունը միայն գեղագիտական նպատակներ չի հետապնդում, այլև գաղափարական, դրսևորում մոտեցում, վերաբերմունք, աշխարհըմբռնում։ Լիարժեք աշխարհիկ կյանք վարող, նրա բոլոր գեղեցկությունների ու հմայքը զգացող ու ապրող գեղուհին, որ դրսում թե ներսում շրջապատված է երկրպագու երիտասարդներով, ներկայացվում է միջնադարին հատուկ այսպիսի՛ մոտեցումով.

«Նա յաւուր միում ելեալ ի քաղանեաց և զգեցեալ բեհեզս և ծիրանիս, և զարդարեալ ոսկւով և մարգարտով, և զարդարեալ քարամբք պատուականօք զգլուխ, և զլանջս, և զպարանոցս, և զբեթլ զամենայն մասունս մարմնոյն, և սնութեամբ՝ զաչսն, և ի սպիտակութենէ և ի կարմրոյ՝ զայտսն, և օծեալ անուշահոտ իւղովք, գայր-անցանէր լկտի կերպարանաւք ընդ մէջ քաղաքին ի բազմաց յայնոցիկ հեշտացելոց սպասաւորեալ։ ... Տեսի զկինն զայն, զի ամենայն հնարիւք պէսպէս և զանազան զարդիւք զարդարեալ զինքըն, որչափ և էր կարողութիւն, և այն վասն մոլական երիտասարդացն, զի նոցա հաճոյ երևեսցի, զմեղսասէր և զախտաւոր ցանկութիւն նոցա շարժեսցէ ի տոփումն ինքեան»[3]։

Որ ա՛յդ էր ժամանակի ընդհանուր ոգին, երևում է մի այլ զրույցում կատարված ընդհանրացումից. «Զիւրեանք պճնեն, պար-

---

[1] Տե՛ս նույն գրքում, էջ 282 (№ 49)։

[2] **Филипп Монье,** Опыт литературной истории Италии XV века, էջ 49։

[3] Ձեռ. № 737, էջ 114բ—115ա։

*դարեն, ծարուրեն և դեղեն, ոտքն և ձեռքն հինայեն, կարմիր ու կանաչ հագնեն, ոսկի, արծաթ վզանոց, գինտ, մատանի դնեն և մազէ վերայ և ոսկի հալխայ ձեռքն անցնեն՝ թող զայլ ղումաշեղէն հանդերձքն...։ Գինի խմեն և կարմրին, ելնեն պարեն, կաքաւեն, աչքընկքն ոլոր տան, ձեռքը, մատերն խաղացնեն հաւրսանեաց կամ պատիւի մէջ, այն սօխպաթին մէջը հարիւր մարդ լինի, ամէնն ցանկանան»*[1]։

*Սրանց մեջ կան և անբարոյական կանայք, որոնք դատվում են ո՛չ միայն ըստ նիստ ու կացի, շարժ ու ձևի և վարք ու բարքի, այլև ըստ գործի։ Թեթև հաճույքներով տարված, նրանք շարժվում են որպէս ծախու արարածներ, և գործի դնելով իրենց բոլոր հնարանքները՝ փորձում են զվարճանալ ու զվարճացնել՝ տառապանք պատճառելով, կրոնավորներ գայթակղելով.*

*«Ի գեղեցիկ դրախտի ուրեմն դրեալ եղև տախտ փղոսկրեայ։ Եվ արկին ի նմա անկողինս փափուկս և բազմագինս. և զսուրբն զայն եդին և վերա նորա՝ կապեալ ձեռամբ և ոտիւք։ Եւ կին մի պոռնիկ, յոյժ գեղեցիկ տեսլեամբ, և լիրբ, և անաւրէն, մուծին ի վերա նորա...։ Եւ եկեալ կինն՝ փարէր զնովաւ, և համբուրէր ... և խաղայր և նեղէր... և համբուրմամբն զտրփութիւն մեղացն բորբոքէր...»*[2]։

*Կամ մեկ ուրիշը.*

*«Կին ոմն պիղծ և լիրբ, իբրև լուաւ զնմանէ (միակեցի մասին— Ա. Ս.), ասէ ցհոմանիս իւր.*

*— Զի՞նչ տայցէք ինձ, եթէ ընկեցից զմիայնակեաց ձեր։*

*Եւ խոստացան նոքա տալ նմա ինչ։ Եւ ել նա ընդ երեկոյ և եկն ի գիշերի ի սենեակ ծերոյն, իբր թէ մոլորեալ իցէ...։ Սկսաւ կինն պատերազմել ընդ ծերն... եւ վառէր ցանկութեամբ սիրտ նորա...»*[3]։

*Երրորդը, թերևս մի քիչ ազնիվը, իր մո՛տ է հյուր կանչում կրոնավորին, դիմելով ավելի անմեղ միջոցների.*

*«Եւ կինն էր այրի. ընկալաւ աբեղայն ի տունն իւր, կերակրեաց անուշ կերակրօք, լուաց զոտս նորա և անուշ վարդի ջրով օծ զնա...։ Եդ բարձ ի գլխով աբեղային. և իբրև կամէր ննջել աբեղայն, և կինն եդ զգլուխ ի բարձն աբեղային... և ի ձեռն էառ աբեղային համբուրել և խաղալ ընդ նմա, վերջ բանիս՝ մինչև շնացան»*[4]։

---

[1] *«էջեր», էջ 82—83 (№ 59)։*

[2] *Ձեռ. № 791, էջ 109ա։*

[3] *Ձեռ. № 7993, էջ 10բ (ձեռ. № 791, էջ 126բ տարբերակ)։*

[4] *«էջեր», էջ 85 (№ 59)։*

Ընդգծվում է նաև կանանց խորամանկությունն ու հնարագիտությունը, պատմվում նույնիսկ բոկաչիոական նովելլատիպ զրույցներ[1]։ Այդպիսի մի զրույց կա նաև Ալեքսանդր Մակեդոնացու և Արիստոտելի հետ կապված։ Վերջինս հորդորում է Մակեդոնացուն՝ ազատվել իր կանանցից։ Նա այդպես էլ անում է։ Կանանցից մեկը որոշում է վրեժ լուծել Արիստոտելից՝ հնարամտորեն գայթակղելով նրան և այնպես, որ իմանա Մակեդոնացին։ Սա տեսնում է կնոջն ուսերին առած և գավթում շրջող Արիստոտելին, որը և հազիվ է ազատվում Մակեդոնացու զայրույթից[2]։

Կանանց բնավորության ու դրական գծերից շեշտվում է նաև կամակորությունը, ծայրահեղ համառությունը, ընդդիմության ու հակաճառության ոգին՝ այնքան ուժեղ, որ հասնում է անեկդոտային չափերի։ Մահն անգամ չի կարող զսպել կամակորին՝ մինչև վերջ պնդելու ասածը, եթե նույնիսկ ճշմարիտ չէ[3]։ Խիստ ինքնահավանությունն ու կամապաշտությունը ծնում են անհնազանդություն թե՛ խոսքով և թե՛ գործով. թվում է, թե այդպիսիները կարող են բնական կանոններին, բնության օրենքներին անգամ հակառակ գնալ նույնիսկ մահացած վիճակում[4]։ Արգահատության արժանի կանանց շարքում երևան է բերվում նաև խաբեբա ու երեսպաշտ կնոջ կերպար, որ խորամանկաբար՝ աստվածասեր ու առաքինի ձևանալով, բարեպաշտություն, աղոթասիրություն ու պահեցողություն խաղալով, կրոնական ու եկեղեցական օրենքները ծառայեցնում է խարդախությունների, կողոպուտների ու կուտակումների։ Կրոնն ու հավատը, հայրենասիրությունն ու աղքատասիրությունը նա դիտում է որպես հարստություն դիզելու ճանապարհ.

«Ոմն կին ներքոյ կեղծաւոր աստուածապաշտութեան պահէր՝ յերկար աղօթէր, անչափ հսկէր և յուխտատեղիս անդադար շրջէր։ Յորժամ այնպիսի կերպարանեալ առաքինութեամբ կայր, բազում ինչս ի մարդկանէ առնոյր և յոլով ոսկի, զոր հանապազ ժողովէր, և զոր ինչ աստուածասէր քրիստոնեայք տային վասն ազատելոյ զգերիս, նա զայն ի քսակն դնէր, և զոր ինչ տային ի պէտս կարօտելոց, նա զայն յարկեղի պահէր»[5]։

Կնոջ խորամանկությունը, հնարամտությունն ու արագամտությունը կարող են ծառայել և՛ բացասական և դրական նպատակ-

[1] Տե՛ս նույն գրքում, էջ 280 (№ 47)։ Մառ, ժողովածու, մասն Բ. էջ 181։

[2] Տե՛ս «էջեր», էջ 117 (№ 83), ծանոթ., էջ 253։

[3] Տե՛ս զրույցը նույն գրքում, էջ 283 (№ 50)։

[4] Տե՛ս զրույցը նույն գրքում, էջ 284 (№ 51)։

[5] Տե՛ս նույն գրքում, էջ 281 (№ 48)։

ների, օգնել թե՛ իրեն, թե՛ ուրիշին (նայած երբ ինչպես է պետք), ճարպկորեն դուրս գալու ամենասուղ վիճակից անգամ, անակնկալի բերելով դիմացինին։ Զրույցներից մեկում եզրակացվում է նույնիսկ, թե «մարդ հետ ֆեղլով կնոջ ի հուն ոչ կարէ ելանել, որպէս ասեն գեղջուկ բառով, թէ՝ Կնկան ֆեղլն բեռներով է և յաղթէ մարդկան. և մարդ ո՛չ կարէ դիմանալ կնկան ֆեղլին»[1]։ Այսուհանդերձ ո՛չ բոլոր կանայք են խարազանման արժանի։ Զրույցներից մեկը ցույց է տալիս, թե այնուամենայնիվ ամենախորամանկ կինն անգամ կարող է հնազանդվել ու ենթարկվել տղամարդուն, ի վերջո մնալով իր բնույթին հավատարիմ թույլ էակ[2]։

Եվ իրոք, զրույցներում հանդես եկող կանանց մի գերակշիռ մասը առաքինի է, բարոյական, ազնիվ ու պարկեշտ։

«Եւ էր մեծատանն այնորիկ կին գեղեցիկ յոյժ և սրբասէր, որպէս և ցուցանեն բանքս, որ գկնի»[3]։ «Եւ նա... էառ ի կնութիւն իւր և ծանեաւ զնա գոլ կին՝ մեծաւ առաքինութեամբ և համեստութեամբ զարդարեալ»[4]։ «Իսկ ունէր այրն այն դուստր այրի, գեղեցիկ յոյժ...», այլև իմաստուն, զգաստ, հանդարտ ու հանճարեղ...[5] և այլն։

Այս տիպի կանայք հավատարիմ են ամուսիններին ու ընտանիքին (իսկ կուսակրոնության նվիրվածները՝ վանական կարգերին)։ Նրանք ո՛չ միայն չեն գայթակղվում, զուսպ են ու ողջախոհ, այլև խելամիտ այնքան, որ կարողանում են ներգործել տղամարդկանց վրա, ուշքի բերել մոլորությունից և հետ կանգնեցնել սխալ ճանապարհից։ Այդպիսի դեպքերում նրանք չե՛ն խուսափում նույնիսկ զոհողություններից, իսկ ավելի հաճախ ներգործում են խելքով ու իմացությամբ, խրատելով, բացատրելով ու հասկացնելով[6]։

Բնավորության ինչպես բացասական, այնպես էլ դրական հատկությունները կնոջ մեջ կարող են հասնել ծայրահեղ չափերի, նույնիսկ անձնազոհության։ Երբ առաքինի է, բարոյական, ոչինչ չի՛ կարող խաթարել նրա մաքրությունն ու անբծությունը։ Նա պատրաստ է զոհել իր գեղեցկությունն ու անձը՝ հանուն փրկության,

---

[1] Տե՛ս սույն գրքում, էջ 281 (№ 47)։ Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 181։

[2] Տե՛ս ձեռ. № 8076, էջ 236ա, Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 156, 173։

[3] Տե՛ս «էջեր», էջ 92 (№ 63), ծանոթ., էջ 250։

[4] Անդ, էջ 87 (№ 60), ծանոթ., էջ 249։

[5] Անդ. էջ 127 (№ 94), ծանոթ., էջ 255։

[6] Տե՛ս սույն գրքում, էջ 278 (№ 45), «էջեր», էջ 55, 70, 86, 92, 94, 226, (№ 46, 51, 60, 63, 64, 94 համապատասխան ծանոթագրություններով), ձեռ. №№ 691, էջ 163բ, 791, էջ 116բ ևլն։

հանուն ներքին՝ բարոյական մաքրության, հանուն գաղափարի ու հայրենասիրության։ Չարը, վատը պարտության մատնելու համար կնոջ ֆիզիկական թուլությունը փոխհատուցվում է բարոյական դիմադրության մեծ ուժով, հաստատակամությամբ, նվիրվածությամբ, որ հաղթահարում է թե՛ սեփական թուլությունը և թե՛ դիմացինի բիրտ ուժը[1]։ Ահա դրանցից մեկը, որ թշնամու ձեռքն ընկնելով բանտարկվում է և մատնվում «ի տանջանս, զի ասասցէ զպատճառս ոչ ուտելոյն զոլոռն։ Եւ նա զլեզուն ծամեալ եթուք յերեսս բռնաւորին և ո՛չ ասաց զհայրենի ծածուկսն»[2]։

Այսպիսի մեծ ուժ, կամք ու համարձակություն, անհրաժեշտության դեպքում, հանդես են բերում և շատ ուրիշ կանայք։



Զրույցներն օբյեկտիվորեն հանգեցնում են այնպիսի եզրակացության, թե բարքերի ապականումն ավելի բնութագրական է վերին խավերին, թագավորներին, թագուհիներին, պալատականներին, մեծատուններին ու հարուստներին, քան աշխատավորությանը։ Վերջիններիս մոտ արատավոր գործեր կամ ցանկություններ են առաջանում հատկապես այն ժամանակ, երբ ձգտում կամ հասնում են դիրքի ու բարձրության։ Շինականը կորցնում է իր բնական կերպարը, անճանաչելի դառնում նույնիսկ ինքն ի՛ր համար, երբ հասնում է թագավորության[3]։ Թագավոր դարձած մի ուրիշ շինական հիվանդությունից բուժվում է, երբ կարողանում է «զառաջին պարկեշտութիւնն ստանալ, զոր ի շինականութեանն ունէր»[4]։

Ուրիշ զրույցում երևան է բերվում աշխատասեր ու ազնիվ մի քարհատ, որ իր վաստակով և՛ ապրում է, և՛ գովեստի արժանի կյանք վարում։ Նա հյուրասեր է, աղքատասեր, ունեցածից նույնիսկ կենդանիներին բաժին հանող։ Մինչդեռ երբ անակնկալ հարստանում է, հասնում մեծ դիրքի, թողնում, մոռանում է այդ ամենը, «մեծանում», անհասանելի դառնում։ Միայն նախկին վիճակը դառնելն է նրան վերադարձնում իր մարդասիրությունը՝ առաքինություններն ու արժանիքները[5]։

---

1 Տե՛ս նույն գրքում, էջ 278 (№ 45)։

2 «Էջեր», էջ 115 (№ 79), ծանոթ., էջ 252։

3 Անդ, էջ 13 (№ 15), ծանոթ., էջ 238։

4 Անդ, (№ 16), ծանոթ., էջ 239։

5 Տե՛ս զրույցը նույն գրքում, էջ 305 (№ 70), Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 179։

Անպարկեշտ կյանք վարում են հարուստներն ու իշխանավորները։ Հարստությունը փչացնում է ազնվությունն ու մարդկայնությունը, աղքատն ավելի հյուրասեր է, առատաձեռն, ամենքին օգնող, մինչդեռ հարուստն իր բարեկամներին անգամ չի ուզում ճանաչել,— հետևում է զրույցից։ Մի ուրիշ հարստացած կորցնում է հանգիստը, զրկվում քնից ու ամենօրյա զվարթությունից։ Մեծատուն ոմն տեսնելով իր աղքատ հարևանի երջանկությունը և «նախանձելով ընդ ուրախութիւն նորա, խորհեցաւ առնել զնա հաղորդակից տրտմութեան և տառապանաց իւրոց»։ Ո՞րն էր այդ միջոցը։

«Յարուցեալ ի գիշերի և բացեալ զդուռն տան աղքատին, կախեաց քսակով դրամ առ դրանն, զոր առաւօտուն գտեալ աղքատն, ոչ կամէր երթալ ի սովորական գործն, երկուցեալ մի գուցէ ոք գողասցի զդրամսն»։ Հետևանքը եղավ ա՛յն, որ «զբաղում աւուրս էր վշտացեալ և ոչ ուրախանայր, և դադարեալ էր յերգելոյ»։ Իսկ դրամը դրել էր «ի ներքոյ խուցոյն, ուր ննջէր և, պատճառելով զհիւանդութիւն, անկեալ դնիւր ի վերայ դրամին, մինչև խորհեցի, թէ զի՞նչ արասցէ»։ Ելքը գտնում է մեծատունը. նա հետ է պահանջում իր դրամը, որից հետո շինականը «եկն յառաջին ուրախութիւնն»[1]։

Եվ այսպես, ո՛չ թե աղքատը հարուստին, այլ հարուստն է նախանձում աղքատի կյանքին, որովհետև հանգիստն ու վայելքը ազնվության ու աշխատանքի մեջ են։

Գանձն ու մեծությունը զրկում են անհոգ, ուրախ ու երջանիկ կյանքից. նույնիսկ հանգիստ քնից, հոգս, վիշտ, տառապանք, տրտմություն ու ծուլություն բերում, մեծացնում ագահությունը, անհագությունն ու ժլատությունը։ Հարստանալու մոլուցքն ի վերջո հանգեցնում է մահվան։ Միայն ոսկեղենով շրջապատվածը սովամահ է լինում, իր դրամներն ագահորեն կլլողը՝ խեղդամահ։ Մինչդեռ աշխատանքով ու ազնվությամբ վաստակ ձեռք բերողը հանգիստ է քնում, վայելում ընտանեկան երջանկությունը, ուրախանում կնոջ ու զավակների հետ, երգով ու զվարճությամբ անցկացնում ժամանակը։ Իր քիչ ունեցվածքի և աղքատության մեջ անգամ աշխատավոր, շինական մարդը ազնիվ է, արդար ու շիտակ։ Նա ո՛չ միայն ուրիշինը չի հափշտակում, այլև խղճմտանքով է դատում. արդար վաստակից բացի, ոչինչ նրան չի գայթակղում, անգամ գանձ ու հարստություն՝ եթե իրենը չէ, սեփական աշխատանքի արդյունք չէ։ Ազնիվ, քրտնաթոր ու ջանադիր աշխատանքն է միայն,

---

[1] Նշխարք, էջ 18 (№ 24), ծանոթ., էջ 239։

*որ անկեղծ, մարդասիրական հարաբերությունների, փոխադարձ վստահության ու հավատի պայմաններում հարստություն է ստեղծում.*

*«Ի պատմութեանց ասեն, թէ ի խալաթայէն մարդ մի աղքատացաւ և արտ մի ունէր՝ վաճառեաց։ Եւ այլ ոմն գնեաց զարտն զայն, և երթեալ վարէր զարտն. Եւ գտաւ երեք կարաս ոսկի, և յղեաց առ տէր արտին և ասէ. «Ե՛կ, ա՛ռ զոսկին, զի վարեցի զարտն և գտայ»։ Եւ ասէ տէր արտին. «Ո՛չ է իմ, այլ քո՛ է, զի ես վաճառեալ եմ զարտն քեզ»։ Եւ նա ասէր. «Ես զարտն եմ գներ ի քէն և ոչ զդրամն»։ Եւ վիճէին ընդ միմեանս զբարիօք մարտն»։ Միակ ելքը լինում է ամուսնացնել մեկի տղային մյուսի աղջկա հետ, որպեսզի գտնվածը հավասարապես բաժին ընկնի երկու ընտանիքին էլ. և հետո, երբ այդ արտը ցանեցին «ի ժամանակի հնձոյն երթեալ տեսին, զի մարգարիտ էր բերեալ։ Եւ քաղեցին…»*[1]։

*Նույն հայեցողությամբ աշխատանք ու ջանասիրություն է ջատագովում և ուրիշ մի զրույց, դարձյալ դատապարտելով ծուլությունը.*

*«Իմաստասէր ոմն աղքատ ունէր ծոյլ որդի մի։ Եւ ի մահուն իւրոյ կոչեաց զորդիսն և ասէ.*

*— Ո՛վ որդեակ իմ, բազում գանձս պահեալ կա ի հարանց իմոց յայգին մեր. իսկ զտեղին ո՛չ ցուցանեմ ձեզ, այլ որ աշխատի և խորագոյն բրէ, նա՛ գտցէ զգանձսն։*

*Եւ յետ մահուան հօրն սկսան որդիքն ջանալ մեծ աշխատութեամբ և խորագոյն վարէին զայգին. և ամեն մէկ ջանային զինքն գտցէ զգանձն։ Եւ սկսաւ այգին աճել և զօրանալ, և ետ բազում պտուղ, և ելից զնոսա գանձով։*

*Ցուցանէ առակս, թէ մեծ բարի է աշխատանքն և շատ օգուտ է յայս կեանքս և այն. իսկ ի յոյլքն և ծոյլքն ոչ ա՛սս բարի աշխին և ոչ անդ վայելեն»*[2]։

*Աշխատասիրությամբ, ազնվությամբ, սեփական քրտինքով ապրելը գերադասվում է հեշտությամբ ձեռք բերածից, խարազանվում է ծուլությունը, պատրաստի ունեցվածքի ձգտելը, խրախուսվում արդար վաստակով ապրելը, որ արտահայտվում է նույնիսկ այնպիսի դեպքերում, երբ խոսքը վերաբերում է ուրիշի միայն մեկ խնձորին*[3]։

---

[1] *Տե՛ս նույն գրքում, էջ 290 (№ 60), «Հէքր», էջ 31 (№ 37), ձառոթ., էջ 243։* Մառ, *ժողովածու, մասն Բ, էջ 214։*

[2] *Ձեռ. № 1976, էջ 101ա,* Մառ, *ժողովածու, մասն Բ, էջ 237։*

[3] *Տե՛ս զրույցը նույն գրքում, էջ 291 (№ 61)։ Ձեռ. № № 5623, էջ 277ա, 2963, էջ 174ա (տարբերակ),* Մառ, *ժողովածու, մասն Բ, էջ 306։*

Զրույցներից մեկը վերջանում է այսպիսի բարոյախոսությամբ. «Հալալ ինչքն բազմանայ և շինէ զտունն, և հարամն քակէ և աւիրէ զտունն։ Ապա ուրեմն յայտնի է, թէ մարդոյ ապրանաց սարմիան հալալ լինի, ո՛չ պակասի բարին, և երբ հարամ լինի՝ նուազի և ի չիք դառնայ, որպէս պաղ և ձիւն»[1]։

Մի ուրիշ բարոյախոս նույն միտքն արտահայտում է հետևյալ կերպ. «Ապա ա՛յն է բարի, որ մարդ դատի և զիւր հալալ դատումն ուտէ, և իւր հալալ [ապ]րանացն ողորմութիւն տայ աղքատաց»[2]։

Ողորմածություն քարոզելու առիթով հայտնվում է և այն միտքը, թե նախ ինքդ պետք է հոգաս քո մասին (նույնիսկ հանդերձյալի) և ոչ ուրիշները, անգամ զավակները[3]։

Աշխատանքով ապրողների շարքում զրույցները համակրանքով են խոսում նաև ազնիվ ու շնորհալի արհեստավորների մասին, որոնք միշտ չէ, որ արժանանում են ճիշտ մոտեցման ու գնահատման. «Թագաւորն փէշէքէրի հարկինք չի գիտէ», դժգոհում է նրանցից մեկը, մինչդեռ լավ արհեստավորի աշխատանքը համազոր է արվեստի գործի։ Հյուսնը «երեք տարի աշխատեցաւ և ի ամրաւի կտէն սեղան մի զուգեաց գեղեցիկ յօրինուածովք, որ ո՛չ է տեսեալ ակն մարդոյ»։ Նա մեծ վարպետ է, գիտե այնպես նուրբ աշխատել, որ իր աշխատանքային գործիքով կարող է երես սափրել վարսավիրից ավելի բարձր արվեստով. Նրա ճարտարությունն ու գործի նրբությունը պետք է ճիշտ գնահատվի և ըստ արժանվույն վարձատրվի[4]։ Աշխատանքով ապրողը, թեկուզ ամենահասարակ գործով զբաղվողը՝ ձկնորս, իշապան, լծվար, թե հովիվ, միևնույն է, արժանի է հարգանքի. Նա խելոք է, բանիմաց և հարստացած կյանքի փորձով, որ հաճախ ավելի գիտուն ու խորամիտ է դարձնում նրան, քան գիտնական համարվողներն են։ Ոմանք սխալ են դատում հասարակ մարդու մտավոր կարողությունների մասին և ժողովրդի մե՛ջ են միայն հիմարներ փնտրում, մինչդեռ, աշխատավորի ճիշտ հայեցողությամբ, հիմարներ պետք է ա՛յլ տեղ որոնել։ Երբ ասում են, թե մարդկանց մեջ ամենաանգետն ու հիմարը հովիվն է, վերջինս ծիծաղում է ու պատասխանում. «Յիմար և անգէտ այն խելօքն են, որ զայդ ընտրողութիւնդ են արել», այսինքն, որ այդպես են դա-

---

1 «էջեր», էջ 22 (№ 27), ձեռ. № 2226, էջ 191բ (տարբերակ)։

2 Ձեռ. № 1357, ԺԶ դար, էջ 265բ։

3 Տե՛ս «էջեր», էջ 21 (№ 26)։

4 Տե՛ս նույն գրքում, էջ 306 (№ 71), Մառ, Ժողովածու, մաս Բ, էջ 239։

տում։ Ապա գործով ցույց է տալիս, թե կյանքի մեծ փորձն ինչպիսի իմացություն է հասցնում մարդուն։

Հիմար են և նրանք, որ օրն անց են կացնում ծուլությամբ, դատարկ ու անաշխատ, կամ դռնեդուռ շրջելով և ուրիշի ունեցվածքից բաժին հայցելով, և կամ հարստի գործին, կայքին ու գանձին աչք ունենալով[1]։

«Դուք ի մարդոյ կերպարանը նայիք»,—եզրակացնում է նրանցից մեկը,— ըստ ա՛յնմ դատեք և ոչ ըստ ներքին հատկությունների, ըստ բնավորության ու հոգեբանության[2]։

Ժողովուրդը, հասարակ մարդը, լինի կին թե տղամարդ, գերազանցապես ներկայացվում է իր խոհեմությամբ, խորը դատողականությամբ, առողջ տրամաբանությամբ, իմաստության հասնող փորձառությամբ և ընդհանրացումների մեծ կարողությամբ[3]։

* * *

Կյանքն օբյեկտիվորեն արտացոլելու զրույցների առանձնահատկությունը, ինչպես և պետք էր սպասել, երևան է հանել նաև ազնիվ, մարդասեր ու բարերար հարուստներ, իշխողներ ու թագավորներ։

Ժողովրդի իդեալն է եղել գիշատիչ, պատառող և միայն տիրակալության ու բռնության ձգտող թագավորների փոխարեն ունենալ գթառատ, ժողովրդի ցավերով ու հոգսերով ապրող և մխիթարող, խելոք ու արդարամիտ թագավորներ, իշխաններ ու հոգևոր առաջնորդներ, հասնել խաղաղության ու խաղաղ ապրելու դարավոր տենչին։ Զրույցներից մեկի մեջ այդ փափագն արտահայտվում է որպես իրականություն։ Հայրը գահը հանձնում է երեք թագաժառանգներից նրան, ով աղավնաբարո է, խաղաղասեր, ով կլինի ժողովրդի մխիթարիչը, նրա սուգը, վիշտն ու լացը ուրախության փոխարկողը, ով առաքինի է իր վարք ու բարքով[4]։

Մի ուրիշում, նույն դատողությամբ, առաջնություն է տրվում երրորդ ժառանգին. երկուսը մերժվում են, այսպիսի պատճառաբանությամբ.

«Քանզի դո՛ւ, ասէ ցմեծ եղբայրն, ունելով հակումն առ կանայս, համարձակութեան առիթ լինելոց ես նոցա, զի ուր համար-

[1] Տե՛ս սույն գրքում, էջ 308 (№ 72), Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 254։

[2] Ձեռ. № 2939, էջ 488։

[3] Տե՛ս ձեռ. № 791, էջ 116բ, Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 254։

[4] Տե՛ս սույն գրքում, էջ 285 (№ 55), ձեռ. № 2226, էջ 17բ, Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 277։

ձակութիւն է կանանց, անդ և խանգարումն հպատակաց և տէրու-
թեան է։

Եւ դու, սաէ ցերկրորդն, գոլով ազահ և ընչասէր, միշտ կո-
ղոպտելով և զրկելով, ի ներքոյ ծանր հարկապահանջութեան ար-
կանելով զհպատակս քոյ՝ աղաւաղես զխաղաղութիւն և զվայելչու-
թիւն նոցա և տէրութիւն»[1]։

Այդպիսին է եղել նախորդ թագավորը, որի հպատակության-
տակ «հանապազ հառաչէին յերկինս ի զրկանաց, զորս կրեն ի թա-
գաւորէ իւրեանց»[2]։

Սակայն ժողովրդի երազն է ունենալ այնպիսի տիրակալ, որ
«արդար դատաստան առնէր»[3]։

Ուրեմն ինչպե՞ս պետք է ընտրվի, ինչպիսի՞ անձնավորություն
պետք է լինի թագավորը, ըստ ժողովրդի պատկերացումների և
օրինականության.

«Օրէն սահմանեալ էք ընտրել ի թագազնէից զա՛յն, որ մա-
քուր է ի սոյն արատից, այսինքն՝ ի կնամոլութենէ և ի յագահու-
թենէ, որք են մայր ամենայն չարութեանց և անկարգութեանց»։

Թագավորը երբեք չպետք է շեղվի ճիշտ ուղուց, գթությունից
ու բարերարությունից։ Որպես ժողովրդի հայր, նա պարտավոր է
ունենալ լավ վարք ու բարք։ Այս գաղափարն է մեկ անգամ և
ընդգծում զրույցի բարոյախոսությունը.

«Սոյն առակ ուսուցանէ մեզ ընտրել զանձն, զոր տէր և իշխան
կարգելոց են ժողովուրդք ի վերայ ինքեանց ի մարմնաւոր և թէ
հոգևոր գործս, զի մի անպարկեշտ և սնափառ բարուք և վարուք
իւրեանց խանգարեսցեն զբարի կրօնն՝ մարմնաւոր և հոգևոր իշ-
խանք»[4]։

Ահա դրանցից մեկը, որը իշխանավորի ցանկալի կերպար է.

«Թագաւոր ոմն, խրատոյ եպիսկոպոսին իւրոյ, զախքատս,
զօտարս և զկարօտեալս միշտ ընդունէր և պատուէր, և առ նոսա
զինքն խոնարհ, քաղցր, մարդասէր, բարերար ցուցանէր։
Վասն որոյ, և շնորհիւ աստուծոյ, զթագաւորութիւն իւր առաւել,
քան զնախնիսն, ընդարձակեաց և զբազում ազգս մեծամեծս հնա-
զանդեցոյց ընդ իշխանութեամբ իւրով» և այլն[5]։

---

[1] Ձեռ. № 8825, էջ 13ա—13բ։

[2] Անդ, էջ 13բ։

[3] Ձեռ. № 2226, էջ 226բ, տե՛ս նաև սույն գրքի № 55 զրույցը, էջ 285։

[4] Տե՛ս ձեռ. № 8825, էջ 14ա։

[5] Ձեռ. № 7993, էջ 331ա։

Ինչպես հետևում է, զրույցի նպատակն է եղել դաստիարակել բերված օրինակով և որպես խրախուսանք հրապուրել մեծամեծ ազգեր նվաճելու և թագավորությունն ընդարձակելու հեռանկարներով։

Ուրեմն, դրական օրինակ հանդիսացող թագավորի համար անգամ բնութագրական, անկապտելի հատկանիշ է մնում ուրիշ ժողովուրդների հնազանդեցնելն ու նվաճելը, որպես թագավորությունը պահպանելու անխուսափելի գրավական։

Իր բոլոր արարքների մեջ թագավորը պետք է լինի արքայավայել, ինչպես ժողովրդի մտապատկերներում Ալեքսանդր Մակեդոնացին է, որը աղքատի հայցած մեկ հացի փոխարեն ողորմություն է տալիս 100.000 դեկան և հետևյալ կերպ պատասխանում զարմացած իշխանների մեղադրական խոսքերին.

«Սայ իւր աղքատութեան իլայեխ խնդրեաց, ես իմ թագաւորութեանս իլայեխ կուտամ։ Աղքատաց սովորութիւն այն է. յորտեղ հանդիպին՝ մէկ հաց խնդրեն։ Ես աշխարհակալ թագաւոր եմ,— ասաց,—ինձ ի՞նչ լայեխ է, որ մարդո ձեռն մէկ հաց դնեմ. իմ փառացս այս՝ արժանի է այն, որ հարիւրով և հազարով տամ, կամ այլ աւելի, կամ գիւղ, կամ քաղաք»[1]։

Սակայն ժողովրդի ամենամեծ երազանքն է խաղաղությունը, եթե ոչ անմահությունը։ Մարդն իր ամբողջ էությամբ, իր բնությամբ ձգտում է անմահության, ուզում և փորձում է հնարավորին չափ մոտենալ նրան։ Աշխարհը թողնելու անխուսափելիությունը, զավակի մահը ծնողի աչքերի առջև, նրա պատճառած մեծ վիշտը, ծնելու, սնելու և մահվան ժամանակ մարդու հոգեկան ու ֆիզիկական ծանր ապրումները մղում են ելք որոնելու այդ ամենից։ Մարդկային միտքը, որ դարեր առաջ սլացել է հեռուները՝ փնտրելու և գտնելու փրկության ճանապարհ, թեթևացնելու կյանքի դառնությունները, հեշտացնելու ապրելը, հնարավորին չափ քիչ կրելու կյանքի բեռը, հանգել է կարևորներից կարևորագույնին՝ խաղաղությանը։ Այն գիտակցությունը, թե կարելի է հասնել իմաստությունների իմաստությանը, կարելի է հասնել ամեն մեծության, նույնիսկ աշխարհակալության, բայց ոչ աշխարհային անմահության, թե հնարավոր է պատճառել բազում մահեր, բայց և ոչ մեկ անմահություն, ծնում և էլ ավելի ստիպողական է դարձնում խաղաղության անհրաժեշտությունը, թելադրում դառնալ ավելի առողջ, հաղթել

[1] Ձեռ. № 2226, էջ 155ա, Մառ, Ժողովածու, մաս Բ, էջ 284 (հեռավոր տարբերակ)։

բանականությամբ և հնարավորին չափ երկար պահպանել կյանքն ու նրա ամենակարևոր նախապայմանը՝ խաղաղությունը. սա՛ է անմահության մոտենալու հնարավոր, վերջին հանգրվանը, վերջին միջոցը։ Այս միտքն է գեղեցիկ կերպով արտահայտել զրույցներից մեկը, որ դարձյալ կապված է Ալեքսանդր Մակեդոնացու անվան հետ։

Գոհանալով իր հարցերին իմաստունների տված բոլոր պատասխաններից, որ մարդու, կյանքի ու աշխարհի ճանաչման հետ կապված խորն ընդհանրացումներ, փիլիսոփայական ու մարդասիրական եզրահանգումներ են, զորավարը դիմում է նրանց՝ խնդրելու ինչ որ կամենան։ Եվ բոլորը միաբերան ասում են.

— Տո՛ւր մեզ անմահությիւն։

Այս պահանջը մի մեղադրական էր, թագավորի աշխարհակալական, ամբարտավան, վարքագիծը քննող խուզարկու, խորամանկ ու չարաճճի մի հարցադրում, որ իր մեջ արդեն իսկ ունէր պատասխանը, աշխարհում ամենակարող երկրային աստծուն անկարող վիճակի մեջ դնելով.

— Ես մահկանացու մարդ եմ, որպէ՞ս կարեմ տալ ձեզ անմահութիւն։

Այդպես էլ գիտեին։ Այդ մի չարախնդություն էր, որ պետք էր իմաստուններին, հիշեցնելու արքային իր մահկանացու լինելը, ստիպելու մեկ անգամ ևս ծանրամտորեն անդրադառնալ իր նվաճումներին, ավերին ու զոհերին.

— Եւ գիտե՞ս, որ մահկանացու ես,— շարունակում են նրանք և դրական պատասխան ստանալով, ավելացնում.

— Ապա ընդէ՞ր ոչ խաղաղիս և խաղաղութիւնն առնես աշխարհի։ Այլ մի՛ շրջիր, ասեն, այլ ե՛րթ, նիստ հաստատ յաթոռն քո և խաղաղութի՛ւնն արա աշխարհիս[1]։

Ուրիշ նրբերանգներով, երկախոսությամբ նույն միտքն է արտահայտված նաև մեկ այլ զրույցում։ Ալեքսանդրը դիմում է իմաստունին.

— Խնդրեա՛ յինէն և տաց քեզ զպիտոյս քո։

Ասէ իմաստունն.

— Ո՛չ կարես տալ դու ինձ զպիտոյս իմ։

Ասէ արքայ.

---

[1] «Քէշիր», էջ 122 (№ 88), ծանոթ., էջ 254, տե՛ս նաև ձեռ. № 2226, էջ 183բ—184ա (տարբերակ)։

— Ես թագաւոր եմ ամենայն երկրի և զսիտոյս քո ո՞չ կարեմ տալ։

Ասէ իմաստունն.

— Տո՛ւր ինձ անմահութիւն։

Ասէ արքայ.

— Անմահութեանց տուող աստուած միայն է։

Ասէ իմաստունն.

— Ապա զոր դու տալ կարես, այն ինձ ո՛չ են ի պէտս[1]։

Զրույցի մի հեռավոր տարբերակում վերջին բարոյախոսության բնույթը բոլորովին փոխված է։ Մակեդոնացու արշավանքներն այստեղ ներկայացվում են որպես աստծու կողմից աշխարհն իր շեղված ճանապարհից ուղղելու, խրատելու միջոց։ Իսկ չնայած դրան ենթաբնագրում, այնուամենայնիվ, իմաստը մնում է նույնը. ոչ ոք չի կարող տալ անմահություն, և նա՛, ով վրդովում է խաղաղությունը, ավերում աշխարհը, նրանից ավելի վատն ու չարը չկա։ Մակեդոնացին այստեղ հանդես է բերվում որպես այդ չարի խտացրած մարմնացում[2]։ Նույնիսկ բավական է միայն, որ նա մտածի չարիք գործել, և բարությունն իսկույն խափանվում է[3]։

Ժողովրդի խաղաղասիրությունը, խաղաղության, այլև անմահության ձգտումն արտահայտված է և մի ա՛յլ, մարդասիրական մեծ գաղափարներ դավանող զրույցում.

«Յաւուր միում ասացին փոքուն Թէոդոսի կայսեր, թէ ընդէ՞ր ոչ սպանանէր զմահապարտսն ի մահ, կամ զայնոսիկ, որք չարախօսէին զինքենէ։ Պատասխանեաց թէ՝ «Յանկամ մանաւանդ յարուցանել զմեռեալսն, քան դատապարտել զկենդանիս ի մահ»[4]։

Այս ամենից բխում են միջնադարի և այսօրվա համար այնքան բնութագրական և համամարդկային ընդհանուր ճանաչում գտած մի շարք բարոյական սկզբունքներ. խաղաղասիրություն, միաբանություն, մարդասիրություն, իմաստություն, ներողամտություն, արդարադատություն, անկաշառություն, առաքինություն, ընկերասիրություն, հեզություն, խոնարհություն, համբերություն և այլն և այլն, որոնցով շաղախված են գրեթե բոլոր զրույցները՝ շատ կամ քիչ չափով, ի հակադրություն հպարտության, պարծեն-

---

[1] «Էջեր», էջ 123 (№ 89), ծանոթ., էջ 254։

[2] Տե՛ս ձեռ. № 6974, էջ 109ա—109բ, Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 206։

[3] Տե՛ս զրույցը սույն գրքում, էջ 321 (№ 84)։

[4] Տե՛ս սույն գրքում, էջ 323 (№ 88)։

կոտության, բարձրամտության, արհամարհանքի, ոխակալության, վրեժխնդրության և այլն[1]:

Զրուցագիրներից մեկը գտնում է, որ աշխարհում չկա ավելի թեթև, ավելի լավ բան, քան խոնարհությունն ու հնազանդությունը[2]: Մի ուրիշը, դարձյալ խրատելով լինել խոնարհ, հեզ ու համբերող, եզրակացնում է. եթե այդ անհնար է, ապա առնվազն չպետք է լինել բռնադատող ու հարկանող. չզսպվել գոնե այդքա՛ն, նշանակում է համասարվել հիվանդի, որ պետք ունի բուժման[3]: Պետք է հաղթել ո՛չ թե ոխով ու վրեժխնդրությամբ, ուրիշներին վարկաբեկելով, արհամարհելով ու փոքրացնելով, այլ երկայնամտությամբ[4]:

Հպարտությունն ու մեծամտությունը կործանիչ են և կարող են հասցնել ծանր հանցագործության, նույնիսկ ոճրագործության[5]:

Զրույցներում առանձնապես շեշտվու՝ է ընկերասիրության ու միաբանության բարերար մեծ ուժը. այն համարվում է աշխարհի ամենաքաղցր բանը, «առավել քաղցր... քան զմեղր և շէքէրն», իսկ նախանձն ու ատելությունը «քան զամենայն իրք դառն ... առաւել դառն... քան զապառն և զլեղին»[6]: Վատ մարդիկ ավելի վնասում են սեփական անձին, քան ուրիշին[7]:

Դրվատելով ընկերասիրությունը և ցույց տալով չար ու նախանձ լինելու վնասակարությունը, զրույցներից մեկն ուղղակի եզրակացնում է.

«Տես զընկեր ատելն, որ այնչափ չար է, որ ինքն ելաւ ի մէկ աչացն և զընկերն հանեց ի երկու աչացն...: Մարդ որ զընկերն կամ զիւր եղբայրն ատէ՝ օրինազանց է և մարդասպան...», իսկ տարբերակում միայն հետևյալը. «Ապա ուրեմն յայտ է, թէ նախանձոտն իւր անձինն առաւել թշնամի է, քան այլոց...»[8]: Ուստի պետք է ազնիվ ու կատարյալ սեր ունենալ միմյանց նկատմամբ և շահել այդ սիրուց.

---

1 Տե՛ս «էջեր», էջ 43, 72, 90, 106 (№ 43, 53, 62, 75):

2 Տե՛ս ձեռ. № 2226, էջ 183բ, «էջեր», էջ 121 (№ 88), ծանոթ., էջ 254:

3 Տե՛ս ձեռ. № 791, էջ 148ա—բ:

4 Տե՛ս նույն գրքում, էջ 322 (№ 85), ձեռ. № № 8356, էջ 33բ, 691, էջ 162ա, 7993, էջ 322բ, 791, էջ 109բ:

5 Տե՛ս «էջեր», էջ 106 (№ 75):

6 Անդ, էջ 122 (№ 88), ծանոթ., էջ 254, տե՛ս նաև ձեռ. № 2226, էջ 183բ: (տարբերակ):

7 Տե՛ս «էջեր», էջ 47 (№ 44):

8 Անդ, էջ 47—48 (№ 44), ծանոթ., էջ 245:

«Որք զընկերս իւրեանց առաջի օտարաց չարաբանեն՝ ինքեանք ընդ նմին պարսաւին և ի պատուոյ և ի գլխոյն եւս ելանեն, ըստ այնմ, թէ՝ որ արհամարհէ՝ զիրօք արհամարհեսցի և ինքն ի նմանէ, և որ զընկերն առաջի օտարաց բարեբանէ՝ ինքն գտանէ զշահն և զօգտութիւնն և ապա ընկերն»[1]։

«Զի որ դատէ և բամբասէ և կարծէ ինչ զեղբօրէ՝ իւրում անձին ունի բարձեալ վնասակար զախտն զայն» և ինքն է դրա համար պատասխանատու[2]։ Բարկացող մարդը չունի ոչ բարեկամ և ոչ սիրելի. նա իր բարկությամբ «ամենեցուն ատելի լինի»[3]։

Ուրիշ մի զրույց, այնուամենայնիվ, որոշ սահմաններ է դնում ընկերասիրության ու բարեկամության մեջ. բոլորը չեն, որ կարող են ազնիվ ու հավատարիմ լինել և եթե ունես այդպիսին, պետք է գիտենաս արժեքը. «Դժուարին գործ է գտանել զայր հաւատարիմ, և անհնարին է ունել բազմութիւն բարեկամաց»[4]։ Բազում փորձառությամբ միայն մարդ կարող է ունենալ հարազատ և ճշմարիտ բարեկամ, որ իր անձը մատնի վտանգի և մահու, քաջությամբ տանի տանջանքները, բայց չդավաճանի իր հավատարմությանը։ Շատ կարող են լինել միայն սեղանի ի իրենց օգուտը փնտրող բարեկամներ, որ նենգավոր են, «սուտ ու սեղանակապուտ». այդպիսիներից պետք է խույս տալ, իսկ հանուն հավատարիմ ընկերոջ ու բարեկամի, գնալ անձնազոհության, չզլանալ կյանքն անգամ[5]։ Իսկական ընկերասիրությունն անշահախնդիր է, անփոխարինելի[6]։ Այս գաղափարով կառուցված գեղեցիկ, նովելատիպ զրույցներից մեկը, փոքր ինչ շինծու վախճան ունենալով հանդերձ, միջին մասերում հուզական է ու հոգեբանական։ Երիտասարդ մի կին սիրահարվում է ամուսնու սիրելի ու հավատարիմ ընկերոջը և, չկարողանալով հաղթահարել զգացումները, հիվանդանում է։ Ամուսինը, ազնիվ, միամիտ ու բարի մի անձնավորություն, չգտնելով բուժման ճանապարհ, հեկեկանքով ու աղաչանքով փորձում է իմանալ կնոջ վիշտը։ Վերջինս ամաչելով հայտնում է.

— Գիտե՞ս, տէ՛ր իմ, զի դու՝ վասն անբծութեան սրտի քո, ժողովես միշտ սատ զերիտասարդս գեղեցիկս. և ես կին եմ, տկար բնութեամբ և մանուկ հասակով, և վնասիմ ի կերպարանաց նո-

1 Ձեռ. № 6616, ԺԶ. դար, էջ 11բ, «էջեր», էջ 43 (№ 43), ծանոթ., էջ 245։
2 Ձեռ. № 791, էջ 124բ։
3 Ձեռ. № 2226, էջ 202բ, Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 153։
4 Տե՛ս զրույցը նույն գրքում, էջ 293 (№ 65)։
5 Անդ։
6 Տե՛ս զրույցը նույն գրքում, էջ 291 (№ 62)։

ցա։ Եւ ահա վասն իշխանին այն՝ մտին խորհուրդք չար ի սիրտ իմ, որով կիզեալ հիւանդացայ և կամ ի մահիճս թմրեալ։

Իշխանն իմանալով այդ, հանուն սիրելի բարեկամի ընտանեկան խաղաղության, անձնազոհաբար ագելացած է ներկայանում նրանց և այլևս չի այցելում ընկերոջը[1]։

Մի ուրիշն ավելի մեծ զոհողության է գնում, համաձայնելով մնալ մահվան դատապարտված ընկերոջ փոխարեն՝ ի երաշխավորություն նրա վերադարձի։ Եթե ուշանար հարազատներին վերջին տեսակցության գնացած ընկերը, պետք է մեռներ ինքը՝ «ի տեղի նորա»։ Սակայն մահապարտը «սակաւ մի յապաղեաց, քան զպայմանն։ Եւ բարկացեալ թագաւորն հրամայեաց սպանանել զերաշխաւորն»։ Այդ րոպեին հասնում է մեղապարտը։ Երկու բարեկամ սկսում են վիճել. յուրաքանչյուրը պնդում է, թե ի՛նքն է արժանի մահվան։ Թագավորը զարմանում է «ընդ կատարեալ սէր նոցա» և ազատում «զերկոսեանն ի մահուանէ»[2]։

Մարդկային ազնիվ վարքի ու առաքինությունների մեջ հատկապես ընդգծվում է ողորմածությունը, որ հանգեցնում է աղքատասիրության, բարության ու մեծության և որը կարող է փոխել մարդու ճակատագիրը, կյանքի ընթացքը, նույնիսկ փրկել կյանքը[3]։ Հատկապես գրվում են զրույցներ ողորմածություն սերմանելու նպատակով և համոզում, թե մեծ բարիքների է արժանանում ո՛չ միայն ողորմություն ստացողը, այլև (գուցե և ավելի) տվողը։ Սրա վրա զարգացվում է և ա՛յն հայեցողությունը, թե զուրկ և կարոտ մարդկանց բաժին հանելը կորուստ չէ. «Զաղքատաց տվածն կորած մի՛ համարիր, այլ զայն համարէ կորած, որ ագահութեամբ պահես», որովհետև աղքատին տալով՝ ինքդ էլ շահում ես քո բարությամբ և վարձահատույց լինում[4]։ Այս ոգով կան կառուցված մի շարք զրույցներ, հիմնված «Որ ողորմի աղքատին՝ փոխ տայ աստուծոյ» գաղափարախոսության վրա[5]։ Ըստ այդ զրույցների, աղքատասիրությունը և ողորմածությունն ազնվացնում, մաքրում են մարդուն և ավելի մոտեցնում կատարելության[6]։

---

[1] Տե՛ս զրույցը սույն գրքում, էջ 276 (№ 44), ձեռ. №№ 7993, էջ 54բ, 791, էջ 348ա (տարբերակ)։

[2] Տե՛ս զրույցը սույն գրքում, էջ 291 (№ 62), ձեռ. № 8076, էջ 213բ—214ա, Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 327։

[3] Տե՛ս ձեռ. № 691, էջ 98ա, «Էջեր», էջ 62 (№ 49)։

[4] Տե՛ս ձեռ. № 2226, էջ 206ա։

[5] Տե՛ս ձեռ. №№ 2226, էջ 155ա, 791, էջ 257ա (691, էջ 96բ, 3246, էջ 68ա, 3366, 1486 թ., էջ 239բ և այլ տարբերակներ)։

[6] Տե՛ս, «Էջեր», էջ 62 (№ 49)։

Միջնադարյան գրույցները մղում են բարեգործության։ Բարի անուն ունենալը բավական չէ, պետք է գործով հաստատել այն[1], ասենք՝ օգնել աղքատներին, մերկերին ու քաղցածներին, ազատել գերիներին, շինել ու շենացնել երկիրը[2]։ Թե՛ բարին, թե չարը որոշվում են գործով։ Միայն մտածելը դրա մասին քիչ է, եթե իրականում որևէ բան չի արված։ Մտքում դրած, բայց չկատարած չար խորհուրդները հանցագործություն չեն։ Անշուշտ, մարդը ձաղկվում է չար մտածելու համար, բայց չի պատժվում։ Եթե այգու մոտով անցնողն ուզենա մտնել, քաղել խաղող կամ միրգ, ուտել, բայց իր մտադրությունը չկատարի, պարզ է, չի՛ մեղադրվի գողության մեջ, չի պատժվի. նա կզղջա կամ ուրիշներից կնախատվի, որ մտածել է գողանալ[3]։ Ինչպես չգործած չարությունը չարիք չէ, այնպես էլ չգործած բարին բարություն չէ։

«Ամենայն չար, զոր ոչ կատարեսցէ մարդ գործովք, ո՛չ է չար, նոյնպէս և ամենայն արդարութիւն, զոր ոչ կատարեսցէ ոք դնա գործովք, ո՛չ ևս է արդարութիւն»[4]։

Բարի գործն անհրաժեշտություն է. յուրաքանչյուր մարդ պետք է ունենա բարի մտքեր ու խորհուրդներ, ազնիվ գաղափարներ և ձգտի իրականացնել դրանք, գործի վերածել. արդյունքի հասնել։ Ավելի լավ է այդ ճանապարհին և որոշ սխալներ թույլ տալ, քան դրանից խույս տալով՝ ոչինչ չանել։

Իրավ է, թե մարդ չի կարող լինել բացարձակ լավ, կամ բացարձակ վատ. և կատարելությունը դրա մեջ չպետք է փնտրել, որ չի՛ էլ կարող լինել։ Մարդն իր էությամբ ընդունակ է երկուսին էլ. պետք է աշխատել, որ հաղթի բարին, ազնիվ գաղափարն ու ազնիվ գործը, որ դատարկ, անտարբեր և անպտուղ չլինի միտքն ու հոգին, այլ գործի՝ կյանքով ու եռանդով լեցուն։

Այս միտքը զարգացվում է հետաքրքիր փիլիսոփայությամբ, համեմատության դրվելով իրական երևույթների հետ.

«Քանզի մարդ, որ ո՛չ ունիցի խորհուրդ չար և բարի. նման իցէ նա յերկրին Սոդոմայ և Գոմորայ, որ աղի իցէ և ոչինչ բուսանի ի նմա. իսկ բարի երկիրն կարաւղ է բերել ցորեան և ընդ նմին զաւտար բոյսս էս և տատասկ ևս»[5]։

---

1 Տե՛ս, ձեռ. № 84, էջ 237բ։

2 Տե՛ս «էջեր», էջ 21 (№ 26), ձեռ. № 723, 1734 թ., էջ 346բ։

3 Տե՛ս ձեռ. № 7993, էջ 12բ։

4 Ձեռ. № 791, էջ 217բ։

5 Անդ։

* *
*

*Զրույցների ուշադիր քննությունն ի ցույց է հանում նրանց մեջ պարփակված այն ճշմարտությունը, ըստ որի ամեն բան ունի իր ժամանակը. մարդն իր ժամանակի ծնունդն է, կրում է նրա շունչն ու ազդեցությունը, չի կարող լինել ժամանակից ու միջավայրից, իր շրջապատից դուրս. սակայն նա բանական էակ է, ուրեմն և ո՛չ սոսկ կրավորական, այլ նաև միջամտող, ներգործող։ Զրույցներից մեկն ուղղակի վերնագրված է «Ճառ ազդեցութեան ժամանակի», այսպիսի մուտքով. «Ամենայնի ժամ է և ժամանակ, ըստ իմաստնոյն Սողոմոնի։ Եւ այլ ումն իմաստասէր ասէր. Ժամանակ է՛ իբրու ղեկ բարուց և վարուց մարդկան»։ Ապա սկսվում է բուն զրույցը, որը ցույց է տալիս, թե ինչպես մարդն իր ամբողջ էությամբ՝ վարք ու բարքով, մտածողությամբ, հայացքներով, աշխատանքով ու գործով խստորեն արտահայտում է իր ժամանակի ու միջավայրի ոգին, պահանջներն ու տրամադրությունները, ազդում ու ազդվում նրանից, կազմում այդ ժամանակաշրջանի գաղափարական ու բարոյական բնութագիրն ամբողջացնող, նրանով սերտորեն պայմանավորված և նույն շաղախով խմորված մի մասնիկ։ Եվ որքան ճիշտ է բնութագրված ժամանակը, բացահայտված հին ու միջին դարերի շունչը, երբ դեռ, ի հակադրություն ներկա ժամանակների, իշխում էր բնությունն ու տարերքը, երբ դեռ մարդը երկնքից էր հայցում իր օգնությունը, անգիտակցորեն ենթարկվում նրա օրենքներին ու ուժին, ինքն իրենը չթելադրելով և չիշխելով։ Եթե մարդիկ աղվեսաբարո են, կեղծում են, խարդախում ու խաբում միմյանց, ապա այդ լինում է «վասն այլայլութեան ժամանակի»։ Եվ որքան ավելի մռայլ են ու մրրկահույզ ժամանակները, այնքան ավելի նենգ, դավաճան, ագահ, կողոպտիչ ու զրկող են մարդիկ, նույնիսկ գազանաբարո՝ արյունարբու և միմյանց պատառող։ Մարդը ժամանակի ծնունդն է և չի կարող լինել նրանից դուրս, այլ բան*[1]*։*

*Հետաքրքիր է սակայն, որ կա նաև այն առողջ, առաջադեմ բարոյա-փիլիսոփայական իմացությունը, թե մարդը, լինելով բանական էակ, պետք է ինքը տեր լինի ժամանակին, ազդի նրա վրա, տարերայնորեն չենթարկվի բնությանը, ժամանակի ոգուն, այլ բանականությամբ, գիտակցորեն ու տրամաբանորեն իշխի նրան։*

[1] *Տե՛ս զրույցը նույն գրքում, էջ 312 (№ 74), Մառ,* Ժողովածու, *մասն Բ, էջ 224։*

Ըստ այսմ էլ, գրույցի նպատակն է «տալ դաստիարակութիւն մարդկային սեռի, զի գիտասցեն, որ այլայլիլ ժամանակի՝ այլայլին և ինքեանք զբարս իւրեանց և կորուսեալ զշնորհ բանականութեան՝ նմանին անասնոց և գազանաց անբանից և հաւասարին նոցա։ Քանզի լոյսն բանականութեան... պահանջէ ի նոցունց, զի բանականութեամբ վարեալ՝ լիցին տէր ժամանակի և ազդեցութեան նորին... և իշխեսցեն ամենայն արարածոց, և ո՛չ թէ ծառայք տարերց, ստեղաց և ժամանակի եղիցին»[1]։

Խորացնելով այս գաղափարը, գրուցագիրը բերում է և մի ուրիշ պատմություն, դարձյալ հանգեցնելով այն եզրակացությանը, թե երևույթը պետք է դիտել իր ժամանակի մեջ, իր տեղում, որպեսզի ճիշտ ընկալվի այն. իր ժամանակից դուրս նա կունենա բոլորովին ուրիշ նշանակություն և ուրիշ արժեք[2]։

Ժամանակը բնութագրվում է և նեղ առումով, արժեքավորվում փիլիսոփայորեն, դրվում նրա արդյունավետ, նպատակային և բանականորեն օգտագործելու խնդիրը, ըստ այն իմաստության, թե, եթե «որ կորուսանէ ոսկի և արծաթ, փոխանակ նորա գտցէ այլ, իսկ որ կորուսանէ զժամանակ իւր, այլ ո՛չ գտցէ զնա»[3]։ Աշխարհն ոչինչ ավելի թանկ չէ, քան ժամանակը. այն չպետք է վատնել զուր, նրա կորուստն անփոխարինելի ու անվերադարձ է։ Հարստություն, գանձ, ոսկի ու արծաթ կորցնելը ոչինչ է ժամանակի համեմատությամբ, դրանք փոխարինելի են, գտանելի, մինչդեռ ժամանակն՝ անգտանելի։ Սա ավելին է, քան ժողովրդական մյուս հանրահայտ ասացվածքը. «Ժամանակը ոսկի է»։ Ժամանակը անգին է, կորուստն անվերադարձնելի, ո՛չ մի գնով, ոչ ոսկով և ոչ էլ ավելի թանկարժեք նյութով հետ չբերվող։

Ժամանակն անսահման չէ, նա կարճ է ու անցողիկ. պետք է կարողանալ ճիշտ կողմնորոշվել, ընտրել ու կատարել անհրաժեշտը, այդ ժամանակի, այդ միջոցի համար կարևորը, ա՛յն, որ հետաձգել, հետո անել հնարավոր չէ[4]։ Այս գաղափարը հետամտող գրույցների մեջ հետաքրքիր է նշել հետևյալը.

«Աղեքսանդր պատահեցաւ բազում զօրօք ի տեղի մի. և եղև ձիւն մեծ։ Եւ սկսեալ զաւրքն ի սովուն կոտորիլ։ Եւ ասաց թագաւորն, թէ՝ «Հիմի զայսեաղիս պարտ է հօգալ, և յորժամ ի

---

[1] Տե՛ս նույն գրքում, էջ 315 (№ 74)։

[2] Տե՛ս գրույցը նույն գրքում, էջ 367 (№ 74-ի ծանոթ. մեջ)։ Ձեռ. № 3825, էջ 24բ։

[3] Տե՛ս ձեռ. № 4196, էջ 9ա։

[4] Տե՛ս «էջեր», էջ 15 (№ 20), ծանոթ., էջ 239։

յաստից ազատիմք, յայնժամ զայլեաղին հոգանք. չարդեցէ՞ք զձիանդ և կերէք»[1]։

Գործել ժամանակի պահանջին համեմատ, տվյալ կոնկրետ պայմաններից ու անհրաժեշտությունից ելնելով, արագորեն գտնելով այդ րոպեի անելիքը. ա՛յդ է կյանքի ճանաչման, արգելքների հաղթահարման ճիշտ ուղին, իմաստությունը, հետևում է զրույցից։

Գաղափարական, դաստիարակչական առողջ մտքեր են արտահայտվում ո՛չ միայն տվյալ ժամանակի, այլև ապագայի, սերունդների հետագա կյանքի հետ կապված։ Մարդ միայն այսօրվա մասին չպե՛տք է հոգա։ Ինչպես ամեն մի սերունդ վայելում է նախորդների ստեղծածը, այնպես էլ ինքը պետք է ստեղծի եկողների համար։ Գալիք սերունդների համար բարիքներ ստեղծողը ինքը ևս վայելում է իր աշխատանքի պտուղները, վարձահատուցվում. մտածելով ապագայի մասին, նա վայելում է և ներկան.

Թագավորը հարցնում է մի ծերունու, որ արմավենի էր տընկում.

— Ո՞վ ծեր, զայդ ընդէ՞ր տնկես, զի ի քառասուն տարին ապա պտղաբերի, և դու այսաւր և վաղին մեռանիս։

Եւ նա ասէ.

— Թագաւո՛ր, մին մարդ տնկեալ էր, ես վայելեցի. ես տնկեմ, գայ մին մարդ այլ վայելէ։

Ասէ թագաւորն.

— Տո՛ւք նմա հազար դեկանս, զի բարի և խէր անդէճ մարդ է։

Եւ նորա առաւել գոհացաւ զԱստուծոյ։

Ասէ թագաւորն.—Ընդէ՞ր գոհանաս։

Ասէ.— Գոհանամ, որ ամէն մարդ ի քառասուն տարին վայելէ, ես այսաւր վայելեցի։

Ասէ թագաւորն.— Դարձեա՛լ տուք նմա հազար դահեկան։

Դարձեալ գոհացաւ։

Ասէ թագաւորն.—Դարձեալ ընդէ՞ր գոհացար։

Ասէ.—Գոհանամ զԱստուծոյ, որ ամէն տունկ ի տարին մին հետ տայ պտուղ, իմ ծառս այսաւր երկու անգամ ետ պտուղ։

Եւ հաճոյ թուեցաւ թագաւորին[2]։

Զրույցներում արծարծվում են նաև ուսման ու դաստիարակության հարցեր։ Երևույթները խելացիորեն ըմբռնելու և իմաստնանալու համար պետք է լինել ուշիմ, լսող, շրջահայաց ու կենտրո-

[1] Ձեռ. № 6974, էջ 110ա, Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 215։

[2] Ձեռ. № 2226, էջ 59ա, Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 331։

նացած, ուսման հետևել փոքր հասակից, քանի դեռ այդպիսի երևույթները չեն արմատացել, սովորույթ դարձել, քանի դեռ հոգին մաքուր է ու անբիծ։ Երեխայի մատաղ տարիքը, անաղարտ միտքն ու հոգին խիստ դյուրաթեք են և՛ չարի և բարու առջև, ուստի պետք է հենց սկզբից խրատել, դաստիարակել ու բարեկրթել։ Հետո, երբ կարող է չարիքը բուն դնել, ավելի դժվար, նույնիսկ անլուծելի կարող են դառնալ ժամանակին բարձիթողի արված հարցերը։ Արատը կարող է կրկնվել, արմատանալ, դառնալ սովորույթ, իսկ սովորույթը վերացնել շատ ավելի դժվար է, մանավանդ մեծ հասակում, երբ նա նորանոր ու ավելի մեծ չարիքներ է ծնում։ Եթե երեխան նույնիսկ ստիպողաբար է վարժվել գողության, դարձյա՛լ դժվար է հրաժարվել՝ անգամ ա՛յն ժամանակ, երբ դրա կարիքը բոլորովին չունի։ Ահա մեկը, որ գողանում էր ինչ պատահի, արդեն ինքն էլ չուզենալով ու չիմանալով թե ինչո՞ւ, և «յայլ տեղիս թաքուցանէր. Եւ յորժամ ո՛չ գիտէր, թէ զի՞նչ արասցէ զայն, առաջի իշոյ և այլոց անասնոց դնէր զայն»։

Բարոյագիրն ավելացնում է. «Տեսէ՛ք, եղբայրք, թէ որպիսի թշուառութիւն է զախտ ինչ սովորեալ ունել, զի թէ ոք զկնի ախտ ինչ ի սկզբան երթիցէ, հուպ-ընդհուպ գերի մեղաց եղիցի»[1]։

Ժողովրդի մեջ վաղուց ի վեր շատ տարածված դարձվածք է մնացել՝ «Ձու գողացողը՝ ձի կգողանա»։ Հարցի ճիշտ այս դրվածքից ելնելով էլ կառուցված են զրույցները՝ իրենց տարատեսակներով։ Տղան գողանում է միրգ և բանջար «և մայրն ուրախութեամբ ճաշակէր և ո՛չ խրատէր զտղայն»։ Հետագայում նա «աճեցուց զգողութիւնն. բերէր անասուն և անութս։ Եւ այր եղեալ՝ եղև աւազակապետ ի լերինս և բազում չարիս առնէր»[2]։

Մի ուրիշը գողանում էր հավկիթ։ Եվ հայրն «առնոյր և ասէր, թէ՝ Գնա ա՛յլ բեր։ Եւ մեծացեալ տղայն՝ եղև ձիագող և անուանի աւազակ»։ Երբ նրան ձերբակալում, տանում են կախելու, խնդրում է թույլ տալ վերջին անգամ հորը համբուրել և ատամներով կտրում է նրա քիթը։

«Եւ հարցին զպատճառ։ Եւ նա ասաց, թէ՝ Դա ուսուց ինձ գողութիւն, զի փոքրուստ ո՛չ խրատեաց զիս և եկի յայս դառն մահուս արժանացայ։ Կալեալ զհայրն կախեցին, երբ նա էր եղեալ որդոյն գողութեան պատճառ» (Նախորդ զրույցում կախում են մորը)[3]։

---

[1] «Էջեր», էջ 104 (№ 71) ծանոթ., էջ 251։

[2] Ձեռ. № 2226, էջ 14բ։ Տարբերակները տե՛ս սույն գրքում, էջ 289 (№ 57, 58)։ Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 14։

[3] Տե՛ս զրույցը սույն գրքում, էջ 289 (№ 58)։

Եվ այսպես, զրուցագիրը եզրակացնում է. «Ամենայն ծնաւղք, որ ո՛չ խրատեն զորդիս իւրեանց ի կամս աստուծոյ, նա մեղք որ-գոցն ի գլուխ ծնաւղացն է յաւրն դատաստանի»[1]։

Ուրեմն արժանավայել մարդ դաստիարակելու պատասխանա-տվությունը նախ կրում են ծնողները, որոնք հաշվետու են ո՛չ միայն իրենց զավակների, այլև հասարակության առջև։ Սրանով երեխայի դաստիարակության առաջին դպրոցը դառնում է ընտա-նիքը, ծնողների ճիշտ վերաբերմունքը։ Մանկան մեջ անած ու ամ-րացած վատ արարքների պատասխանատվությունն ընկնում է նրանց՝ հոր և մոր վրա։ Այդ գիտակցությանն է գալիս և զավակն ինքը՝ ավելի մեծ հասակում։

Մարդու բարոյական նկարագիրը զարդարող ամենագեղեցիկ ու նվիրական հատկանիշներից են որդեսիրությունն ու ծնողասի-րությունը, սրբազան զգացումներ, որ ծառայում են կյանքը դարձ-նելու ավելի նպատակային, լիարժեք ու արդարացված։ Որդեսի-րության ուժն ու անըրևակայելի չափերը հոգեբանական մեծ ընդ-հանրացումների հանգեցնող խորիմաստ զրույց է հետևյալը. Հայրը գիտե որդու գործած հանցանքը, սակայն որքան էլ տանջում են, չի խոստովանում, մինչդեռ երբ զավակին են աչքի առաջ չարչարում՝ չդիմանալով ասում է ճշմարտությունը և պատճառաբանում. «Զի իմ մարմինս ո՛չ է իմ, այլ հաւրն իմ, և մարմին որդոյ իմոյ՝ մար-մին ի՛մ է, վասն այնորիկ ի տանջել զորա ո՛չ կարացի համբերել, զի դայ խանէ (ինձանէ—Ա. Ա.) է ծնեալ»[2]։

Այստեղից բխում է և հարցի մյուս կողմը. լինել ծնողասեր, լսել ու հնազանդվել նրանց. դա մի գրավական է չշեղվելու ուղիղ ճանապարհից, դառնալու արժանավոր մարդ, ապրելու պղնիլ կյանքով։ Անհնազանդ զավակը կարող է ընկնել մեծ թշվառու-թյունների ու չարիքի մեջ, հասնել գողության ու ավազակության, մինչև իսկ զրկվել կյանքից մանուկ հասակում, չվայելելով ո՛չ երի-տասարդությունը և ոչ էլ ծերությունը[3]։

Զրույցներից մեկն ունի այսպիսի բարոյախոսություն.

— Լսեցէ՛ք և մի՛տ առէք, որ մի անգամ մայրն անիծելով զայսպիսի սքանչելագործ ճգնաւորն խայտառակ և խաղք եղև, ապա հազա՞ր վայ այնպիսի զաւակացն, որ ամէն օր զծնօղքն բրբրեն, կամ ի դուրս հանեն, կամ նախատեն և անարգեն և ծնո-ղաց անեծքն ժառանգեն, ճիշտ զԱստուծոյ անէծքն կու ժառանգեն.

[1] Ձեռ. № 2226, էջ 15ա։ Սաո, ժողովածու, մասն Բ, էջ 14 (տարբերակ)։

[2] Տե՛ս զրույցը նույն գրքում, էջ 289 (№ 57)։ Տարբերակը տե՛ս Սաո, ժո-ղովածու, մասն Բ, էջ 216։

[3] Տե՛ս ձեռ. № 681, էջ 77ա։

և թէ աստուածասէր և իմաստուն որդի լինի, որ ըզծնօղսն պատուէ և հարկիս առնէ, և նոցա սրտին կամքն կատարէ և զօրհնէքն առնու, ճի՛շտ զԱստուծոյ օրհնէքն կառնու. այս յայտնի է իմաստնոց[1]։

Միջնադարի աշխարհայացքային բնութագրական գծերից է իմաստություն, գիտություն, լուսավորություն և ուսման գովքը, որ խորն ու ծավալուն տեղ է գրավում թե՛ չափածո և թե՛ արձակ խոսքի մեջ և սերտորեն առնչվում դրան հարող ու լրացնող գաղափարական ա՛յլ հարցերի։ Որոշ զրույցներ դեռևս պահպանում են նաև գոյություն ունեցող և կյանքից բխող երկընտրանք՝ ո՞րն է ավելի լավ ու անհրաժեշտ, ուժեղ և հաղթող՝ խե՞լքը, իմաստությո՞ւնը, թե՞ բախտը, ճակատագիրը։ Հարցը դրվում է փիլիսոփայորեն, շատ խորիմաստ. մերթ թվում է անլուծելի, մերթ իմաստության հաղթանակն է ենթադրվում, մերթ՝ բախտի։ Զրույցներից մեկում բախտը, նախախնամությունը, կամ ճակատագիրը, ավելի կարևոր դեր են խաղում կյանքում։ Եթե դեռ չի վիճակված այն, ինչ պետք է լինի, ապա բոլոր ջանքերն իզուր են, իսկ եթե վիճակված է, կլինի առանց մեծ ճիգի։ Սրտացավ հարստի մեկը, կամենալով, որ է՛լ ավելի վարպետանա պարանահյուսն իր արհեստում, երկու անգամ նրան է նվիրում 200-ական ոսկի, որ կորչում են անօգուտ. մինչդեռ երրորդ անգամ տված արճիճը, այդ ցածրարժեք մետաղը, պատճառ է դառնում գտնելու կորցրած ոսկիները և մի մեծ թանկարժեք գոհար։ Զրույցն ավարտվում է հետևյալ բարոյախոսությամբ.

«Ահա բախտ. կոտոր մի արճըճոյ հարստացոյց զայր մի պարանահիւս և չքաւոր»[2]։

Մի ուրիշ զրույց հարցը թողնում է վիճելի.

Ալեքսանդր Մակեդոնացին հանդիպելով ումն իմաստունի, իր մեծարանքն է հայտնում.

— Ո՛վ կարաս՝ լի իմաստութեամբ։

Եւ նա ասաց.

— Պիտէր ինձ կաթ մի ի բախտից և ոչ կարաս մի իմաստութեան։

Ասէ արքայ.

— Ինձ պիտէր կաթ մի ի խելաց և ոչ կարաս մի լի բախտով։

Ասէ իմաստունն.

---

[1] «Էջեր», էջ 78 (№ 56)։ Տե՛ս Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 294 (տարբերակ)։

[2] Տե՛ս նույն գրքում, էջ 317 (№ 76), ձեռ. № № 8825, էջ 46բ, 8727, էջ 277բ (տարբերակ)։

— Տեսանեմ զիմաստունս, որ շրջին ի դրունս բախտաւորաց[1]:

Երկու մեծություն, մեկը բախտով չի, մյուսը՝ խելքով. ո՞րն է հաղթող, ուժեղ...

Զրույցի մի տարբերակը որոշակի է դարձնում խելքի գերադանցությունը: Թեև իմաստունը գտնում է, որ առանց բախտի խելքն էլ է դառնում վատաբախտ, բայց զրույցն ավարտվում է Լորդի միջամտությամբ, վեճը եզրափակելով այսպես.

— Կաթ մի խե՛լք ինձ մանուանդ, և ոչ ծովակս բախտից[2]:

Իմաստությունն ու խելքը շատ ավելի հաճախ հակադրվում են տգիտությանը, անխելքությանն ու անմտությանը, դրվատվում որպես կյանքում ուղի հարթելու, պիտանի և արժանավոր մարդ դառնալու, խոհական մեծության ու բարձրության հասնելու ճիշտ, թերևս միակ ճանապարհը: Ուսում ու գիտություն քարոզող զրուցագիրներից մեկը, հետաքրքիր համեմատություն ու զասակարգում կատարելով մարդկանց միջև, խարազանում է նրանց, ովքեր իրերը դիտում են իմիջիայլոց, թեթև՝ ոչինչ չվերցնելով կյանքի փորձից, կամ սուացածը ոչ մի բանի չծառայեցնելով՝ բաց թողնելով առանց արժեք տալու, մինչդեռ իմաստությունն ու խելքը անգնահատելի, անփոխարինելի են[3]:

Միջնադարի աշխարհայացքային այս գծերի մեջ արտահայտվում է մարդուն հնարավոր կատարելության հասցնելու նվիրական ձգտումը, որ խտացված կերպով իր դրսևորումն է գտել այդ ամենն իր մեջ ընդհանրացնող և միջին դարերի համար ավելի բնութագրական մի այլ հայեցողությամբ.

«Արարիչն աստուած զմարդն կամի, որ ի բարի գործէ և այպ մեռանի, որ իւրն արժանի լիցի. ողորմած է աստուած յամենայն ժամ»[4]:

Ներման ու փրկության արժանանալու հնարավորության, լավի հասնելու անմար հույսը թեթևացնում է սիրտն ու հոգին, ամրապնդում հոգով ու մարմնով, դառնությունները հաղթահարելու մեծ ուժ, կամք, կորով ու կարողություն տալիս, ավելի առողջ ու լավատեսական դարձնում աշխարհայեցությունը, հեշտացնում

---

[1] «Էջեր», էջ 123 (№ 89), ծանոթ., էջ 254: Այս փիլիսոփայությունը վերջին դարերում արտահայտվել է տաղանդի ու կապիտալի հարաբերակցությամբ:

[2] Անդ, էջ 124 (№ 90), ծանոթ., անդ:

[3] Տե՛ս զրույցը նույն գրքում, էջ 289 (№ 59), Մատ. ժողովածու, մաս Բ, էջ 217:

[4] Ձեռ. № 691, էջ 146բ:

տանց այն էլ հոգսերով ու նեղություններով լեցուն, հավիտենական համեմատությամբ իրոք ակնթարթային, կարճատև կյանքը։

«էր անդ աղքատ մի, որ ունէր քուրձ ինչ. զկէս նորա ի ներքոյ իւր արկանէր և կիսովն ծածկէր զինքն։ Եւ էին սառնամանիք յոյժ։ Եւ տեսի զնա, զի վհատեալ էր ի ցրտոյ անտի և մխիթարէր զանձն իւր և ասէր. «Գոհանամ զքէն տէր Աստուած իմ, և թագաւոր իմ, և զանչափ ողորմութենէ քումմէ. որքա՜ն մեծատունք կան կապեալք ի բանդի շղթայիւք, իսկ այլք ի կոճեղս ընդեալք, որ ո՛չ են կարող և ջուր հեղուլ։ Իսկ ես՝ մեղաւոր գոլով, իբր զթագաւոր հանգչիմ. մեկնեմ զոտս իմ և զձեռս, որպէս և կամիմ, և յառնեմ, և նստիմ՝ յորժամ ախորժեմ, և գնամ՝ ուր և կամիմ... այսպէս արխանայր ի նոյն»[1]։

Որքան այս դատողության հաղթանակը հասցված է ծայրահեղ չափերի, այնքան էլ շեշտված է լավատեսության անհրաժեշտությունը. մարդ ո՛չ մի պայմանում և երբեք չպետք է կորցնի հույսը, լավ լինելու հավատը, միշտ գտնի մխիթարվելու անմար շող, մինչև վերջ պահի արդարին ու գեղեցիկին հասնելու իր երազանքը[2]։

Իսկ այդ երազանքի մեջ պահվում են նաև մարդու իղձերը, մարդու ապագան։ Թեև կյանքը լի է դժվարություններով, բայց այդ չի հուսահատեցնում, չի խաթարում ժողովրդի առողջ մտածողությունը, ճշմարտության հասնելու հույսը, որ բխում է լավի ու արդարի հաղթանակի հավատից։ Նա վստահ է, որ ի վերջո բացվում, երևան է գալիս ճշմարտությունը, թեկուզ նախախնամության ուժով, և հաղթանակում[3]։ Չարը, կամ հանցավորը, որոգայթ նյութողը, անիրավը, բռնավորը, խեղճերին ու աղքատներին կողոպտողն ի վերջո ստանում է իր արժանի հատուցումը, ըստ ժողովրդական իմաստուն առածի, թե «Ով որ մարդոյ հոր փորէ, ինքն կու անկանի, անհնարին գործ է»[4]։ Հաղթում է բարին՝ արդարությունը[5], ազնվությունն ու առաքինությունը, որին միշտ ձգտում է ժողովուրդը և որին պետք է հասնի նա[6]։ Ա՛յդ է նա համարում բնական ու օրինաչափ։

---

1 Ձեռ. № 737, էջ 117բ։

2 Տե՛ս ձեռ. № № 8076, էջ 192բ, 8825, էջ 1ա, 4ա, 5ա, 6ա։

3 Տե՛ս «էջեր», էջ 54 (№ 46), էջ 57 (№ 47), ծանոթ. էջ 246։

4 Ձեռ. № 3963, էջ 174բ, «էջեր», էջ 36 (№ 39, տարբերակ), ծանոթ., էջ 244։ «Գուբն զոր փորեաց և պեղեաց, ի նոյն անկցի» ձեռ. № 4630, էջ 7բ։

5 Տե՛ս ձեռ. № № 2004, 1623 թ., էջ 83բ, 5623, էջ 284բ։

6 Տե՛ս ձեռ. № 7993, էջ 328ա, «էջեր», էջ 54 (№ 46), էջ 57 (№ 47)։

Ազնիվ, անկեղծ, միամիտ մարդուն փրկում են իր բարի հատկությունները. նենգ, խարդախ, չարամիտ մարդիկ պատժվում են իրենց իսկ չարությունից, արագացնում հատուցման ժամը[1]: «Չարն չարով կորեաւ և խէրն բարիոք ապրեցաւ». այդպես է դատում և այդպես է ամփոփում ու ընդհանրացնում իր միտքը զրուցագիրը[2]:

Ի հաստատումն գաղափարի բերվում են զրույցներ զանազան սյուժեներով, որոնց մեջ տարբեր ճանապարհներով հաղթանակում է այս լավատեսական աշխարհայեցությունը[3]: Սակայն միշտ չէ, որ հաղթանակում է չարը չարով պատժվելու, կամ հանդերձյալում արժանի հատուցումն ստանալու այս մտայնությունը: Հաճախ ժողովրդի լավատեսական ոգին շատ ավելի առաջ է անցնում, չսպասելով այն աշխարհում հասանելիք արդարությանը:

* *

*

Միջնադարի մի կողմից ողորմածություն, մյուս կողմից հեզություն ու հնազանդություն քարոզող աշխարհայացքային այս գծերը, երկսայրի սրի նման, որքան էլ իրենց նպատակադրումով ազնիվ, տրամաբանական, ճիշտ, ընդունելի և օգտակար, կյանքի ու փորձի վրա հիմնված, մարմնավորում են ժամանակի իշխող գաղափարախոսությունը, ծառայում նրան և, ի վերջո, հանգեցնում նա՛և պայմանների հետ հաշտվելու, չդժգոհելու, չըմբոստանալու, չպայքարելու հայեցակետին, օգտագործվում որպես հակասությունները մեղմելու, հասարակությանը հավասարակշիռ վիճակում պահելու քաղաքականության հաստատուն միջոց:

«Աստուած վասն այն հարուստ և աղքատ արար, զի աղքատն հարստովն լինի և հարուստն աղքատով արդարանայ»[4], ասում է զրույցը, որից այնուամենայնիվ հետևում է, թե հարուստ լինել, նշանակում է մեղավոր լինել, ինչպես որ այլ տեղում ասվում է ուղղակի. հարստացավ ոչ առանց մեղքի, կողոպտելով ու թալանելով[5]: Սակայն միաժամանակ խրատվում են և հարուստները, կոչվում բարեգործության, աղքատասիրության ու ողորմածության.

---

[1] Ձեռ. № 691, էջ 145ա, «Էջեր», էջ 54 (№ 46), էջ 57, (№ 47), էջ 62 (№ 49):

[2] «Էջեր», էջ 36 (№ 39), ծանոթ., էջ 244:

[3] Տե՛ս «Էջեր», № № 36, 38, 39, 40, 41, 45, 46, 47 զրույցները, համապատասխան ծանոթագրություններով:

[4] Ձեռ. № 2939, էջ 604:

[5] Տե՛ս զրույցները «Էջեր», էջ 11 (№ 11), ձեռ. № 791, էջ 257ա:

*այն համաստումով, թե «յորդառատ գետքն թէպէտ շատ ամանով ջուր վեր կալնուս, ոչինչ պակասի»*[1]*։*

*Աստծու ողորմածությանն արժանանալու ամենաարբաղան և փրկարար իղձը ստիպողաբար թելադրում է մխիթարվել երանավետ մահվան, երջանիկ հանդերձյալ կյանքի հասնելու հույսով և այն հավատով, թե չարը, բռնավորն ու զրկողը կդատապարտվեն արժանի պատիժ կստանան այն աշխարհում*[2]*։ Սակայն, ի հակադրություն լայն տարածում գտած կրոնական բարոյախոսությունների, արդեն միշտ չէ, որ ժողովուրդը գոհանում է չարին, անիրավներին ու բռնակալներին աստծո ձեռքով հանդերձյալում հասանելիք պատիժներով։ Երբ լցվում է բաժակը, երբ դանակը հասնում է ոսկորին, նա այլևս չի՛ սպասում հանդերձյալին, չի՛ խնայում վրեժ լուծելու ո՛չ մի միջոց։ Պատիժը նյութվում է և նույնիսկ իրագործվում հենց այս կյանքում, մարդկանց ձեռքով՝ ի ցույց և ի սաստումն մեղավորների։ Ճնշվող ու հարստահարվող մարդու սրտում կուտակված մեծ ոխն ու ատելությունը անընկրկելի հետևողականությամբ ու կրքով դուրս է ժայթքում՝ փոխհատուցելու կրած անհաշիվ զրկանքները, թեթևացնելու ծանրացած վիշտն ու թշնամությունը, լուծելու վրեժը.*

*— Ցիշեա՛ զօրն այն, ո՛վ դատաւոր, զի ես դատարկացեալ էի յամենայն ընչից հօր իմոյ և էր մնացեալ միայն մոզին այն, և ես էի խումար։ Ո՛յժ էր հասեալ օր մահուան իմոյ՝ վասն չգոյութեանն։ Դու ո՛չ արարեր ընդ յիս ուղիղ դատաստան, վասն այնորիկ ես եղէ քեզ դարան մահու։*

*Եւ զանեաց զինքն սատիկ զանիւք տատասկաւն և ընկեց զինքն ի խորս ծովուն, եւ ասէ.*

*— Այսուհետև, թէ դատաւո՛ր լինիս, ուղի՛ղ դատեա*[3]*։*

*Սրան հետևում է գրույցից ուղղակիորեն բխող առանձին բարոյախոսություն.*

*«Ով ոք վասն կաշառի և կամ վասն ազահութեան զաստուծոյ արդար դատաստանն թիւրէ և ոչ խօսի ուղիղ, նա այնպիսին յայս կեանս դատապարտի, նման այս առակի պատմութեանս, և անդ ևս քան ևս առաւել դատապարտի ի Քրիստոսէ յաստուծոյ մերոյ և ո՛չ գտցէ հանգիստ անձին իւրոյ և թողութիւն մեղաց իւրոց, որպէս ոք*

---

1 *Ձեռ. № 1357, էջ 254բ։*

2 *Տե՛ս ձեռ. № 740, 1696 թ., էջ 109բ։*

3 *Տե՛ս նույն գրքում, էջ 303 (№ 68)։*

սա՛ ոչ եգիտ սատ փրկութիւն ի ձեռանէ մանկանն և ընկղմեցաւ ի յատակս ծովուն...»[1]։

Մեղքը, հանցանքը, չարագործությունը չպետք է թողնել անպատիժ, եթե խոսքը վերաբերում է նույնիսկ հարազատին. այդպե՛ս է պահանջում արդարությունը[2]։ Սա լավատեսություն է, որ երևան է գալիս նաև զրույցների ցանկալի, բարեհաջող վախճանում։ Հասարակությանը չարիք պատճառող զանազան անձինք՝ գողեր, հափշտակողներ, զրպարտիչներ, ստախոսներ և այլն, եթե նույնիսկ մեծավորներ են ու անվանի, ի վերջո ստանում են արժանի պատիժ. մեղավորը պետք է պատժվի. սա՛ է ճիշտ, օրինական ու արդար ելքը, այդպես պետք է լինի իրականում, այդպես է ուզում առժողը... այդպես էլ վերջանում է զրույցը։ Եվ ժողովուրդն իր լիաթոք ուրախությունն ու գոհունակությունն է հայտնում, երբ հնարավոր է դառնում վրեժ լուծել կեղեքիչներից, անարդար ու անիրավ դատողներից։ Այսպիսի դեպքերում հանդես է բերվում մեծ հետևողականություն՝ ամեն գնով նվաճելու հաղթանակը[3]։

Զրույցներն, առհասարակ, մեծ կամք, հավատ ու արիություն են ներշնչում, հոգեբանական ճիշտ մոտեցմամբ դաստիարակելով երբեք չհուսահատվել։ Այդ համարվում է կյանքի փորձությունները հաղթահարելու ամենակարևոր և առաջնային նախապայմանը, «զի միայն չար յուսահատութիւնն իցէ»[4], զի «յուսահատութիւն կորուստ իցէ անզտանելի»[5]։

Ամենաչար և նույնիսկ միակ չար բանը հուսահատությունը համարելու փիլիսոփայական այս լայնախոհությունը հետապնդում է շատ ընդհանուր հոգեբանական, մարդասիրական ու կրոնական նպատակներ, ծանր հանցագործի, մահապարտի հույսն անգամ չկտրելով, դարձի ճանապարհ թողնելով[6]։ Սակայն այն հանգեցնում է նաև լավի հաղթանակի հավատին. ամեն մարդ կարող է փոխվել, բարի գործել, ներվել, ապրել։ Անգամ այնպիսի դեպքերում, երբ զրուցագիրը չի՛ կամենում հակադրվել աստրծո անսահման ներողամիտ լինելու գաղափարին, զրույցին տալիս է ռեալիստական վախճան։ Հարուցված գաղափարական

---

1 Տե՛ս նույն գրքում, էջ 303 (№ 68)։

2 Տե՛ս «էջեր», էջ 72 (№ 53), ծանոթ., էջ 248։

3 Տե՛ս զրույցը նույն գրքում, էջ 297 (№ 68)։

4 Տե՛ս ձեռ. № 791, էջ 117ա։

5 Անդ, էջ 123բ։

6 Տե՛ս ձեռ. № 3963, էջ 187բ («Աղջիկ ոմն չար խորհրդով հօր իւրոյ սկսվածքով)։

*հարցերին տեսականորեն ճիշտ ընթացք տալով հանդերձ, նա զգում է, թե իրականում չպետք է այդպես լինի և չի կարող լինել։ Որքան էլ աստված ամենագութ ու ողորմած և ոչ մի չարություն ավելի մեծ՝ քան նրա գթասրտությունն ու ողորմածությունը («անէզրապէս և անսահմանաբար մեծ է ողորմութիւն իմ, քան զամենայն անօրէնութիւնս բովանդակ աշխարհի»), այնուամենայնիվ ոչ բոլոր հանցանքներն են ներելի։ Եվ նա մեղմում է հանցավորին՝ սակայն բնական ճանապարհով, աստծո ողորմածությունը ժխտած չլինելու համար։ Մեղապարտը պղծալով ու ներվելով հանդերձ, չի՛ կարող տանել գործած ոճրի ծանրությունը։ Այս հայեցակետով կառուցված են մի շարք զրույցներ*[1]*։*

*Այսպիսով զրույցները, թե՛ բովանդակությամբ և թե նյութակազմությամբ արտացոլում են միջնադարյան կյանքն ու աշխարհայեցողությունը, ներկայացնում հասարակության տարբեր շերտեր՝ նրանց անջրպետումը, խորթացումն ու հեռացումը, օրըստօրե խորացող սոցիալական հակամարտությունները, դասային սուր տարբերություններն ու հակասությունները, որ հարուցում են նաև զգուշավորության անհրաժեշտություն.*

*«Զգո՛յշ լեր, ո՛վ թագաւոր, զի մի դարան գործեսցեն անձին քո և չարիս հասուսցեն վասն կենաց ձերոց մեծութեան։ Լե՛ր նաև հոգածու վասն ամբոխին, զի մի՛ սպանանիցեն զմիմեանս, կամ աղմուկ հարուսցեն ի տերութեան քում»*[2]*։*

*Այս նշանակում է, թե զրույցները որոշակիորեն դրսևորում են նաև ժողովրդի ըմբոստության առկայությունն ընդդեմ թագավորների, տերերի, իշխողների ու առաջնորդների։*

*Ձեռագրերում արտահայտվում է արդեն հասունացած այն գիտակցությունը, թե արտադրողը, բարիքներ ստեղծողը և վայելողը նույն անձինք, կամ հասարակության նույն շերտերը չեն. առաջինը ո՛չ միայն իր ստեղծածի տերը չէ, չի վայելում այն, այլև գեթ շնորհակալության չի արժանանում, մինչդեռ երկրորդը՝ ուրիշի վաստակածը սեփականողն ու տիրողը, և՛ վայելում է և՛ երախտիքի արժանանում։ Այս գաղափարն արտահայտող զրույցներից մեկը («Մեծատունք և մշակք») պահպանվել է մի քանի տարբերակով, որոնք բաժանվում են երկու խմբի. մեկում աշխատողներն ու դատողները մարդիկ են, մյուսում՝ կենդանիներ և թռչուններ, սակայն բոլորն էլ վերջանում են նույն զգաստացնող բարոյախոսու-*

---

[1] *Տե՛ս ձեռ. №№ 7993, էջ 323բ, 3963, էջ 187բ և այլն։*

[2] *Տե՛ս նույն գրքում, էջ 314 (№ 74)։*

թյամբ՝ տարբեր ձևերով բացահայտված։ Բերենք միայն մի տարբերակ.

«Տեսանէք աչօք ձերովք, զի մեծատունք ի ձեռն մշակաց գործեն զայգի և զդրախտ և դառն փշօք պատեալ պահեն, բայց ի ժամ ճաշակման ողկուզին և մրգոյն ոչ զմշակսն յիշեն և ոչ զփուշն, այլ տանուտեառն լինին շնորհակալ և հայցեն զաստուծոյ նմա՝ թողութիւն մեղաց և կեանք երկար և խաղաղական»[1]։

Սրանով զրույցները բացում են նաև հակասությունը իրականության և խոսքի՝ քարոզների, գաղափարախոսության միջև. ա՛յլ բան ասվում է և այլ բան կատարվում։ Խոստումները՝ «Զքաղցեալս կերակրեցից, մերկս զգեցուցից», կամ «Շինեցից պանդոկ և աղատեցից զգերեալս»[2] և այլն, կեղծ են, իրականում չկա ոչ արդարություն ու հավասարմություն, ոչ ընկերասիրություն ու բարեկամություն։ Զրուցագիրներից մեկն այդ հակասությունը՝ հավատի ու հուսախաբության ողբերգականությունը, բացահայտում է հոգեբանորեն, նուրբ ու խորն հնարանքների միջոցով, պարզ, միամիտ ու դյուրահավատ մարդու մտածելակերպի, ըմբռնումների, խոհերի ու զգացողությունների նկարագրությամբ, օգտվում քարոզների փոխաբերական իմաստից՝ գեղագետի վարպետությամբ ու հմտությամբ։ Նախ, սուրբ գրքերից կարդացածը, որքան էլ ջերմեռանդ ու աղոթասեր է գեղջուկը, չի՛ հասկանում, կամ հասկանում է ուղղակի իմաստով, այնպես՝ ինչպես գրված է, չհասնելով փիլիսոփայական խորությանը՝ գանձի ու հարստության մտավոր ու վերացական, բարոյական առումին։ Ընդունելով ամեն ինչ անմիջականորեն, որպես բացարձակ, իրական ճշմարտություն, նա ձգտում է սրբակյաց, առաքինի վարքով արժանանալ քարոզներում խոստացված գանձին ու հարստությանը՝ նյութական առումով.

«... Կարծէր, ըստ նկարագրին, թէ գանձարանք աստուծոյ լի են ոսկովք և արծաթովք և ակամբ պատուականօք, զանազան կերպասիւք և այլն. ունի նաև այնքան անչափ և անհամար բազմութեամբ, որ քաղաք մի ևս պատրաստեալ է իջուցանել երկնից՝ վասն ընտրելոց իւրոց... վասն որոյ և ցանկար մարմնոյ աչօք զայն ամենայն գանձարանս աստուծոյ և զպայծառափայլ կերպասս, յորոց զգեցուցանելոց էր սիրելեաց և որդւոց իւրոց, որք դիմէին առ նա»։ Սակայն բացվում է քարոզների երկիմաստությունը, կամ խակությունը և նա հասնում է զարմանքի ու հիասթափության՝ իրեն

---

[1] «Էջեր», էջ 10 (№ 9, «Մեծատունք և մշակք», b տարբերակ), ծանոթ., էջ 237։

[2] Անդ, էջ 21 (№ 26), ծանոթ., էջ 240։

խաբված զգալով։ Նա հոգեպես ցնցվում է՝ իմանալով ճշմարտությունը՝ իրապես գանձի հասնելու անհնարինությունը և մեծ վիշտ ու ցավ ապրում, դատապարտված լինելով հաշտվել իրականության հետ և ընդմիշտ կորցնել սուրբ գրքերից ծնված գեղեցիկ երազանքը[1]։

Այսպիսով միջնադարյան զրույցներն ստանում են երկու հիմնական արժեք. նրանք իրականության ու աշխարհայեցողության միայն սառն ու օբյեկտիվ արտացոլումը չեն, այլև դրանց կազմավորման գործուն մասնակիցը։ Նրանք դաստիարակում են գաղափարներ, միջամուխ լինում կյանքի վերակառուցման ու բարեփոխման գործին և ցույց տալիս լավին հասնելու հնարավոր ճանապարհները, երբեմն առաջ անցնելով ժամանակի աշխարհըմբռնումներից։

* * *

Միջնադարյան կյանքն ու աշխարհայեցողությունը դրսևորելու գործում նշանակալից դեր է խաղացել զրուցագիրների (զրուցասացների, գրիչների) ստեղծագործական մեթոդը՝ օգտագործած միջոցներն ու եղանակները, խոսքի գեղարվեստականությունը, ինչպես նաև նրանց ցուցաբերած անհատական, անձնական մոտեցումը հարցին, մասնավորապես հասարակության տարբեր սոցիալական շերտերի ու նրանց գաղափարախոսության միջև եղած հակադրություններին։ Հաճախ, նույնիսկ միևնույն զրույցի տարբերակներում, դրված է տարբեր վերաբերմունք, ցուցաբերած աշխարհայացքային տարբեր մոտեցում, որ գուցե և բխում է նա՛և հեղինակների սոցիալական տարբեր ծագումից։ Վերը բերած («Մեծատունը և մշակը») զրույցի և նրա մեզ հայտնի տարբերակների ընդօրինակողները որոշակիորեն դատապարտում են տերերին, մեծատուններին ու իշխաններին, բացառությամբ մեկից, որին դուր չի գալիս այդ։ Մտցնելով իր հատուկ վերաբերմունքը, նա փորձում է զրույցն օգտագործել ըստ իր հայեցողության՝ մեղադրելով ծառաներին ու մշակներին։ Ճիշտ է, նա ավելացնում է միայն երկո՛ւ բառ, երկու որոշիչ, որ թեև չինծու են ու չեն մերժում զրույցի բուն գաղափարական բովանդակությունը, սակայն որոշակիորեն ի ցույց են հանում նրա ու նախորդ զրուցասացների միջև եղած աշխարհայացքային տարբերությունը.

[1] Տե՛ս նույն գրքում, էջ 310 (№ 73)։

«Տեսանէք՝ մեծատունք ի ձեռն չարամիտ ծառայից և ննջա-
ւոր մշակաց փշօք պատեն զայգին և զդրախտն և նոքօք պահեն զմիրգն, բայց ի ժամ ճաշակման մրգին և ողկոյզացն ո՛չ յիշեն զմշակսն և զծառայսն, որք պահեցին, և ոչ զփուշն, այլ միայն զտանուտէրն գովեն և լինին շնորհակալ աղօթիւք»[1]։

Նշենք մի այլ զրույց ևս, իր երեք տարբերակներով, որոնց մեջ, հենց առաջին տողերում հեղինակներն շտապել են արտահայտել իրենց վերաբերմունքը և, դրանով իսկ, դրսևորել տարբեր աշխարհայեցողություն։ Առաջինն առանց որակումների ներկայացնում է մեծատան հարստությունը[2], երկրորդը նրան համարում է անիրավ, վաշխով ու ստությամբ հարստացած[3], իսկ երրորդը, ոչ մի խոսք չասելով ունեցվածքի մասին, մեծատանը դարձնում է մի «յոյժ աղօթասէր» տանուտեր[4]։

Երեքն էլ կառուցված են «Որ ողորմի աղքատին փոխ տա աստուծոյ» Սողոմոն իմաստունին վերագրվող խրատի վրա և երեքն էլ կրում են անհատական մոտեցման կնիք։ Յուրաքանչյուրը շեշտել, ակնառու է դարձրել ի՛ր կարծիքը հարստի մասին, յուրաքանչյուրը զարդարել ու խոսուն է դարձրել, ուժեղացրել կամ թուլացրել զրույցի միտքն ըստ իր գաղափարի ու գեղագիտական կարողությունների[5]։

Այս նշանակում է, թե զրույցի հեղինակը չի՛ դոհանում իրականության սոսկ նկարագրով, փաստերի սառն ու անտարբեր շարադրանքով, այլ դատում է, միջամուխ լինում, քննում, լուծում, ընդունում կամ մերժում, կշտամբանքի ու պարսավանքի ենթարկում։ Այս է պատճառը, որ նրա անհատական մոտեցումը, դատողություններն ու տեսակետները հաճախ հնչում են որպես ստեղծագործական յուրահատուկ մեթոդ, որպես անմիջականության, ակտիվ միջամտության արդյունք, հնարանք, արվեստ, մտքերի խտացման ու խորացման միջոց՝ դուցե և չգիտակցված որպես այդպիսին։ Բուն սյուժեի ընդհատումով զրուցագիրը միջարկում է իր հայացքներն ու մոտեցումը, դատողություններ անում, ապա կրկին շարունակում պատմությունը։ Դրանով նա ոչ միայն հաստատում

---

[1] «Էջեր», էջ 10 (№ 9, ա տարբերակ, ծանոթ., էջ 237։ Ընդգծումները մերն են—Ա. Ս.)։

[2] Ձեռ. № 8727, էջ 29ա։

[3] Ձեռ. № 791, էջ 257ա։

[4] Ձեռ. № 8076, էջ 71բ։

[5] Զրույցի տարբերակների սկզբնատողերը տե՛ս սույն գրքում, էջ 42։

է տվյալ՝ եզակի փաստը կամ դրույթը, այլև ընդհանրացնում այն, խնդրին տալիս ավելի լայն բնույթ ու խորություն։ Այսպես, օրինակ, որկրամոլությունը, գինեմոլությունն ու անբարոյությունը խարազանող իր պատմությունը զրուցագիրն ընդհատում է մի քանի անգամ, հայտնում սեփական մտքերն ու կարծիքը և ապա շարունակում խոսքը։ Հասարակաց տուն գնացած և հիասթափություն ապրած մարդուն նկարագրելուց ու ներկայացնելուց հետո, զրուցագիրներից մեկն անում է իր առանձին եզրակացությունը.

«Ճշմարիտ, պոռընկի տունն դժոխք է և նիգք և նորա տան ճանապարհքն՝ դժոխոց ճանապարհն է, որպէս ասէ Սողոմոն. Ճանապարհ դժոխոց տուն նորա» և այլն։ Ապա շարունակում է զրույցը, նկարագրում թե ի՞նչ եղավ գինետուն մտնելուց հետո և վերջացնում նրանով, որ գինեխումը ամենամեծ մեղապարտն է, և ընդունակ ամեն կարգի այլ մեղքերի։

Սրան դարձյալ հետևում է հեղինակի սեփական դատողությունը. «Գինին է ամենայն մեղաց պատճառ և զամենայն մեղք գինին տայ գործել. քանի որ մարդն փորովն սոված է՝ կերակրի ցանկանայ, և յերբ կշտանայ՝ պոռնկութեան սէրն և փափագ ընկնի...» և այլն[1]։

Շատ անգամ հայեցակետերը բացվում են կամ ընդհանրացումը կատարվում է սեղմ, կարճ ու համառոտ խոսքով, նույնիսկ մեկ կամ երկու բառով։ Ճիշտ հարմար տեղում զրուցագիրն ընդհատում է պատմությունը և անկեղծորեն ու անմիջաբար միջարկում իր լրացուցիչ խոսքը՝ իմաստական մի նոր բան ավելացնելով, խտացնելով ու խորացնելով, կամ ճշգրտելով գաղափարը, գունավորելով երկը։ Եթե պատմվում է այն մասին, թե ինչպես «վաճառականն վճարեաց զպարտս իւր և զաւելորդն գրաւեաց ի առ և ի տուր և եղև փարթամ՝ խաբելով», այստեղ հեղինակը կարճ ու դիպուկ խոսքով ու վերաբերմունքով կատարում է մեծ ընդհանրացում. «ըստ սովորութեան վաճառականաց»[2]։ Կամ ագահ մեծատան մասին խոսելիս, փոխանակ մեռավ-ի, ասում է «սատակեցաւ»[3]։

Նույն այդ վերաբերմունքն արտահայտելիս, մի ուրիշն ավելի ղեղուն է, զգացումնային։ Ագահությունն ու ագահի խարդախությունները բացելիս, բովանդակության կիսում նա ընդհատում է սյուժեն ու տեղ տալիս իր հույզերին. «Աւա՞ղ անիծեալ ագահու-

---

[1] Ձեռ. № 3526, էջ 63ա։

[2] Տե՛ս սույն գրքում, էջ 313 (№ 74)։

[3] «Էջեր», էջ 14 (№ 17), ծանոթ., էջ 239։

թեանն, թէ՝ որպէս զմարդիք կուրացուցանէ և ի խաւար ընկղմէ. բայց զի կարճ ի կարճոյ ասացից...», և շարունակում ընդհատված պատմությունը[1]։

Կենցաղային, բարոյական հարցերում, նույնիսկ երբ խոսքը վերաբերում է Արիստոտելի նման մի մեծության, զրույցն ընդօրինակողը չի անում ո՛չ մի զիջում ընդդեմ իր հայացքների և նրա բարքը որակում է որպես շնություն, մի բառ միայն ավելացնելով անվանը՝ «շնծերն Արիստոտել»[2]։

Երբեմն հեղինակը (զրուցասացը, զրուցագիրը կամ ընդօրինակողը), նկատի ունենալով տվյալ պատմության գաղափարական բովանդակությունը, նրան կցում է իր իմացած զրույցներից մեկ ուրիշը ևս՝ նույն բարոյախոսությամբ, դարձյալ խորացնելով ու ընդգծելով նախորդում արտահայտված աշխարհայացքային, իմաստական կողմը (բովանդակությունը), այդ մասին հատուկ նշելով. «Պատշաճ համարեցաք կցել սմա և զայս հետևեալ համառօտ ճառ, որ յարմար գտանի վերոյգրեցելոյս»[3]։

Ակնառու է, որ հեղինակների գաղափարական հայացքները բացահայտող ընդմիջարկումները բխում են ո՛չ թե զրույցի հիմնական բովանդակությունը փոխելու մտադրությունից, այլ այն բառ իրենց լրացնելու ու խորացնելու, գիպուկ ու նպատակասլաց դարձնելու ներքին մղումից՝ չթաքցված, ուղղակի ու բացահայտ մեկնությամբ, չեշտված վերաբերմունքով։

Պատահում են և լուռ, չասված դատողություններ ու վերաբերմունք, որոնք թաքնված են ենթաբնագրում.

**Թ**ագավորն ու թագուհին ունեն մի ժառանգ, որը ոչ քայլում է, ոչ լսում և ոչ խոսում։ Ինչո՞ւ. որովհետև պալատում, այդ լիիրավ իշխանության, հարստության, շքեղության ու փարթամ կյանքի մեջ իշխում է սուտ, կեղծիքը, ագահությունն ու անկշտությունը, անբարոյությունն ու ղավաղրությունը. ա՛յս է չասված եզրակացությունը, որ հետևում է զրույցից։ Հեղինակի հանդարտ, թվում է սառը կամ անտարբեր շարադրանքում լրիվ կարդացվում է այդ խորն ու ընդհանրացնող ենթաբնագիրը։ Զրույցից արվում է երկու հետևություն. նախ՝ որքա՛ն արատավորված են բարքերը. թագավորն ագահ, այդքան ունեցվածքը մեջ ուրիշի ձեռք նայող, թագուհին՝ ու՛ առաքինի, անաղնիվ, չարամիտ, դավաճան, իշխանները՝

---

[1] Տե՛ս նույն գրքում, էջ 281 (№ 48)։

[2] «Էջեր․, էջ 118 (№ 83), ծանոթ., էջ 253։

[3] Տե՛ս նույն գրքում, էջ 367 (№ 74, ծանոթ.,)։

ոխակալ, ղավադիր ու նենգ, աչքները դաՀին, թագուՀուն ու Հարըստությանը։ Երկրորդ՝ մաքուր բարքեր և ուղիղ ընթացք կարող է լինել միայն այդ արատները վերացնելու միջոցով. այդ դեպքում միայն մարդ կարող է ճիշտ տեսնել, լսել ու խոսել։ Եվ այս ամենը՝ առանց Հեղինակի ուղղակի կամ անմիջական միջնորդության[1]։ Պալատական ներքին կյանքի ու ներքին էության այս անկողմնակալ մերկացումը ևս պարզում է Հեղինակի դիրքն ու վերաբերմունքը ժամանակի սոցիալական Հարցերում։

Վերաբերմունք և Հայեցակետ արտաՀայտելու ստեղծագործական միջոցներից մեկն էլ ծաղրի ու ծիծաղի ենթարկելու շատ նուրբ ու բազմազան ձևերն են, սկսած ակնարկներից, երկդիմի, սրամիտ կատակներից, ծիծաղաշարժ խոսքերից, մինչև բացարձակորեն արտաՀայտված զավեշտը, երգիծանքն ու մերկացումը, որոնք վարպետորեն բացում են ճշմարտությունը։ Այն, ինչ միշտ չէ, որ ասվում է լրջորեն, առերես՝ Հասկանալ է տրվում ծածկաբար, խուսափուկ պատասխաններով ու ակնարկներով։

Մի մեծատուն, որ Հույժ ժլատ էր, պատրաստել է տալիս իր մարմարե արձանը և բարեկամին Հարցնում, թե նմա՞ն է իրեն։ Վերջինս պատասխանում է. «Յոյժ բարւոք և կատարեալ ունի զընմանութիւն քո՝ ըստ Հոգւոյ և ըստ մարմնոյ»[2]։

Տխուր ծիծաղ ու ցավ Հարուցող երգիծանք կա և Հետևյալ զրույցում։ Վարժապետը Համոզված է, թե իր աշակերտներին «ազնուական քաղաքավարութիւն» է ուսուցանում և շատ մեծ ու բարի գործ կատարում, մինչդեռ իրականում նրա սովորեցրածն ավելի նման է մանկական պարզամիտ խաղի, որ էապես ո՛չ մի կապ չունի իսկական կիրթ վարվեցողության, վարք ու բարքի Հետ[3]։

Կատակի ու սրամտության ճանապարՀով դրսևորվում են նույնիսկ Հասարակության մեջ գոյություն ունեցող Հավատի խախտման, խարխլման երևույթներ ու արտաՀայտություններ, որ երբեմն երկդիմի են, ոչ բացարձակ, տատանողական, բայց բոլոր դեպքերում ընթեռնելի։

Տերը բարկացած անիծում է, որ էշը սատկի, սակայն սատկում է կովը։ Երևույթի անմիջական ճնշման տակ, անկեղծորեն բացվում է մարդու ներքինը, մտածելակերպը, աշխարՀայեցությունը, որին Հաջորդում է սառը դատողությունը, սթափումն ու

---

1 Տե՛ս «էջեր», էջ 69 (№ 50), ծանոթ., էջ 247։

2 Տե՛ս նույն գրքում, էջ 328 (№ 104)։

3 Տե՛ս, ձեռ. № 8825, էջ 29բ։

զգուշավորությունը՝ ըմբոստությունն ու ընկրկումը միաժամանակ.

— Ո՛վ արարիչ տէր ամենեցուն, կինն իմ և բեռնակիրքս այսուքիկ գիտեն ճանաչեալ և զանազանեալ զէշն և զկովն, որ ինքեանք ո՛չ են արարեալ, իսկ դո՛ւ, որ ստեղծիչ և արարիչն ես սոցա, ո՛չ կարացեր ճանաչել և զանազանել զգործս ձեռաց քոց։ Կամ թէ դո՛ւ, որ տաս բան և լեզու ամենեցուն, ո՛չ գիտացեր զանուանս սոցա։ Ո՞ւր գտանէի ես այնպիսի բառարան մի, որով կարիցէի զեկուցանել քեզ զանուն իշոյն և կովուն, որ ո՛չ սխալիցէիր[1]։

Ապա, կարծես վախենալով ասածից, ներումն է հայցում՝ մեղադրելով իրեն. «Զարաշար խնդրեցի» և պատժվեցի և ո՛չ թե դու «ոչ զանազանիցեր, կամ թէ սխալեցար»[2]։

Ավելի որոշակի է վերաբերմունքը հաջորդ զրույցում.

Ավազակը, որ արդեն զղջացել էր, ներումն հայցել և ուղղվել, հետաքրքիր ու սրամիտ պատասխան է տալիս հրեշտակին, երբ վերջինս զգուշացնում է՝ իրեն չհավատալու դեպքում լեզուն կապել.

— Մինչ գործէի զամենայն չարիս և խաւէի՝ ո՛չ կապեցեր զլեզու իմ, և արդ, զի փառաւորեմ զտէրն և զաստուած Քրիստոս, կապես զլեզո՞ւ իմ[3]։

Ենթաբնագրում կարդացվում է նույբ հեգնանք, քմծիծաղ ու թերահավատություն, նույնիսկ նախատինք[4]։

Զավեշտով գրված շատ նույբ ծաղր է թաքցնում իր մեջ և մի ուրիշ զրույց, ակնարկելով կրոնական պաշտամունքները ծայրահեղության հասցնելու անհեթեթությունը.

«Ջհուտ մի հորն էր ընկեր. և էր աւրն շաբաթ։ Եկեալ տեսեալ քրիստոնեայ մի, ասաց թէ՝ Բերեմ պարան և հանեմ զքեզ ի հորոյս։ Եւ նա ասաց թէ՝ Ջեմ կամիլ, զի օրս շաբաթ է։

Եկաւ մեկալ աւրն քրիստոնեայն ի հորն։ Եւ ասէր ջհուտն.— Հա՛ն զիս։

Եւ ասէ քրիստոնեայն.— Աւրս կիրակի է, չե՛մ կամիլ»[5]։

Դատողություն ու վերաբերմունք բացահայտող հնարանքներից են մարդկանց ու կենդանիների վարքագծի միջև անցկացվող զուգահեռները՝ երբեմն անշեշտ, նկարագրական, պատմողական

[1] Տե՛ս նույն գրքում, էջ 270 (№ 35)։

[2] Անդ։

[3] Ձեռ. № 848, էջ 188բ։

[4] Տե՛ս նաև նույն գրքի № 110-ը զրույցը, էջ 329։

[5] Տե՛ս նույն գրքում, էջ 268 (№ 33), Մառ, ժողովածու, մասն Բ, էջ 310։

ոճով, երբեմն շեշտված, նպատակին ուղղակիորեն ասված: Երկու դեպքում էլ հանգույցը լուծվում է հօգուտ կենդանիների: Մարդն ավելի նենգ, դավաճան, երախտամոռ, անգութ, անխիղճ ու անհագ է, քան կենդանին, քան շունը, կապիկը, վագրը: Նյութը, թվում է նույնիսկ շարված համեմատություններով անգամ, հուզիչ ու սրտառուչ պատկերների հարադրումով, երբ զրուցագրի նյութակը կարծես միայն կենդանու վարքագծի բացահայտումն է (զգացումների և արարքների չափը, մեծությունն ու խորությունը դրսևորելը), երևան է գալիս և հակադիր կողմը՝ մարդն իր անողորմ, անգութ ու դաժան գծերով[1]: Ուրիշ զրույցում նույն այդ զուգադրումը կատարվում է ավելի որոշակի նպատակադրումով, կարծես ցույց է տրվում, թե շունն ավելի «մարդկային» է, քան ինքը՝ մարդը, որ ագահ է, ժլատ ու անխիղճ[2]: Կենդանու մեջ պահպանվում է հավատարմության խորն ու ազնիվ զգացողությունը, մինչդեռ մարդկանց մեջ՝ միայն շահը:

Մի այլ զրույց հաստատում է այդ հայեցողությունն ուրիշ համեմատություններով. ոսկերիչը մատնությամբ է հատուցում իր կյանքը փրկողի լավությունը, մինչդեռ կապիկը, նույնիսկ վագրն ու օձը ամենադժվարին միջոցներով երախտահատույց են լինում և փրկում իրենց ազատարարին: Գազանները գիտեն լավությունը չմոռանալ, մինչդեռ մարդը... «Յամենայն իրաց վստահ լեր, պատ ի մարդոյ», խրատում է իմաստասերը, նա «բարեացն չար կու հատուցանէ»[3]: Այստեղ արտահայտվում է նաև ավելի լայն, փիլիսոփայական աշխարհըմբռնում, իր մեջ ունենալով ժխտումն կրոնա-բարոյականի, ըստ որի բարեգործությունը, լավությունն ու ողորմածությունը չե՛ն կորչում[4]: Այս աշխարհընկալմամբ կան կառուցված և շատ այլ զրույցներ:

Երբեմն հոգեբանական նուրբ գծեր են բացվում՝ անկախ զրույցի բուն բովանդակությունից ու նպատակադրումից, հեղինակի ստեղծագործական հնարանքների ու արվեստի շնորհիվ, որ այնուամենայնիվ ծառայեցվում են առաջադրված գաղափարի մարմնավորմանը: Ջանալով ապացուցել կրոնական որևէ դրույթի ճշմարտությունը, զրուցագիրը հնարամտորեն, արվեստագետի խոր դիտողականությամբ ու նրբանկատությամբ, գտնում է հար-

1 «Էջեր», էջ 17 (№ 23), ծանոթ., էջ 239:
2 Տե՛ս ձեռ. № 4618, էջ 56բ:
3 «Էջեր», էջ 32 (№ 38, a և b տարբերակներ), ծանոթ., էջ 243:
4 Տե՛ս ձեռ. № 4196, էջ 13բ, «Էջեր», էջ 28 (№ 36), ծանոթ., էջ 242:

մար միջոց և կերտում հոգեբանական համոզչականությամբ հագեցված գեղեցիկ պատկերներ։ Այդպես երևան են եկել մանկան հոգու պարզությունը, միամտությունն ու անմիջականությունը դրսևորող գեղեցիկ մանրանկարներ, ի հաստատումն այն մտքի, թե սատծո հաճելի է «անմեղաց խնդրուածքը» և նա կատարում է.

«Ոմն մանուկ՝ փոքր հասակաւ, առեալ հաց ի մօրէ իւրմէ, ել արտաքս, և ուտելով՝ այսր և անդր շրջէր, որպէս սովորութիւն է այնպիսի փոքր տղայոց։ Դէպ եղև, զի մանուկն այն եկն ի տեղի, ուր էր պատկեր Աստուածամօր կուսին Մարիամու՝ ունելով ի գիրկս զմանուկն Քրիստոս աստուած»։ Չհասկանալով, թե այն նկար է, և տղայաբար ու քաղցրությամբ նայելով կարծեցյալ երեխային, փոքրիկը ձեռքի հացը մեկնում է նրան, խնդրում վերցնել։ «Իսկ պատկերն այն, թէպէտ գեղեցիկ էր նկարեալ, սակայն զի անզգայ էր, կայր անշարժ՝ ո՛չ հաց առնոյր և ո՛չ պատասխանի տայր։ Իսկ մանուկն այն ոչ դադարէր աղաչելոյ, զի հաց կերիցէ ընդ նմա»։ Եվ այդպես «բազում ժամանակ էանց և նա ստէպ-ստէպ աղաչէր...»[1]։

Նույն այդ «Յաղագս անմեղութեան տղայոց» գլխում, քարոզների մեջ գծագրվում է և մի այլ նկար, այս անգամ երեխայի ծովափնյա խաղը պատկերող.

Մանուկ «մի գեղեցիկ և վայելուչ, առ եզրն ծովու նստեալ... արարեալ յերկրի փոս մի փոքր, որպէս սովոր են մանկտի խաղալով առնել, և արծաթի տրգալով զջուր ի ծովէն առնլով ի փոսն այն հեղոյր...»[2]։

Մի այլ զրույց մեծ զգուշությամբ բացում է հոգու ամենախոր ծալքերում պահված, գրեթե երբեք չխոստովանված, բայց և գրեթե միշտ ի հայտ եկած գաղտնի զգացողություն.

«Ասէ սատանայ ընդ սատանան.—Եւ ի՞նչ գործես այտով։

Եւ ասէ.—Առնում տարգալովս մեղս ի գչէն և դնեմ ի մարդուն բերանն, որ քաղցրանա ու մեղս գործէ, պոռնկի և շնայ. Եւ յորժամ գործէ զմեղքն, ես մազեղինովս ծածկեմ, որ ասեն, թէ զմեր չարս մենք մէ՛ն գիտեմք, այլ ով չգիտէ։ Եւ բազում ժամանակս խաբեմ զմարդիկ։ Եւ յորժամ կամենամ ես՝ առնում զսավարաս և ելանեմ ի տանիսն, և փչեմ, և հրապարակեմ չզար գործսն և խայտառակեմ»[3]։

Այսինքն, մեղքը նախ քաղցր է (քանի դեռ ծածուկ է) և հետո

[1] Ձեռ. № 681, էջ 77ա։

[2] Անդ. էջ 77բ։

[3] Ձեռ. № 3179, էջ 126բ։

*միայն դառն ու լեղի (երբ բացվում է), ինչպես առհասարակ ընդունված է ասել միջնադարում:*

*Ուրիշ զրույց նույն ընդհանրացումն է կատարում, հետևյալ կերպ.*

*«Բանսարկուն սատանայ ուստ մի էր բարձեալ և մեծ կարպետով մի ծածկեալ։ Հողմն յետ տարաւ, տեսին զանազան անօթս գարշութեան, բանալիք և բժուժ ի վերայ նորա։ Ասէ Հայր մի.*

*— Զի՞նչ է այդ։*

*Ասէ չարն.—Այդ այն է. զմեղքն յառաջն ծածկեմ, որ գործողն հեշտանայ և յետոյ բանամ, որ խայտառակի»*[1]*:*

*Երրորդ զրուցագիրը դատում է այսպես.*

*«Ի ժամ մեղացն գործելոյն զամաւթն և զվախն կու տանի...»*[2]*: և այլն:*

*Եզրակացությունն այն է, որ միշտ պետք է նկատի ունենալ գործի վախճանը, չհրապուրվել միայն սկզբով (եթե նույնիսկ այն գեղեցիկ է), այլ մտովին քննել և հետագան, տեսնել շարունակությունը, հեռուները, վերջը*[3]*:*

*Հոգեբանություն բնութագրող հետաքրքիր բացահայտություններ են կատարվում և համեմատությունների միջոցով, նույնիմաստ գաղափարների միջև զուգահեռներ անցկացնելու ճանապարհով: Այդպիսի առիթով միայն, զրույցներից մեկում բացվում է կանանց յուրահատուկ մի գիծ: Խոսակիցների մեջ հարց է առաջանում, «Թէ ո՞ր ի յանդամոց մարդոյն բազում խարմս խնդրէ»: Ամեն մեկն անում է իր ենթադրությունը, իսկ նա, որ կարծում է, թե աչքն է, իր միտքը զարդարուն ու ավելի արտահայտիչ ներկայացնելով, հետևյալ զուգադրությանն է դիմում.*

*«Զամենայն անդամսն աչքն առաւել պակասութիւն ածէ մարդոյն, զի թէ ումն ի ծնէ կոյր լինի, ամէն ցեղ կերակրոյ և հանդերձի հաւանի, այլ որ աչք ունի, ամէն ցեղ իրաց ո՛չ հաւանի, այլ զազնիւսն խնդրէ, որպէս և կանայք, որ պայծառ զարդարուն տեսանեն և զնոյն խնդրեն»*[4]*:*

*Կյանքի գեղարվեստական ճանաչման շնորհիվ զրույցները կատարում են իրականությունից բխող բազում փաստերի խորն ու փիլիսոփայական ընդհանրացում, բաց անում մարդու հոգեբանության շատ նրբերանգները, երբեմն նույնիսկ մեկ բառի մեջ խտաց-*

---

1 «Էջեր», էջ 115 (№ 78):

2 Ձեռ. № 6974, էջ 104բ, № 5623, էջ 291բ (տարբերակ):

3 Տե՛ս ձեռ. № 4618, էջ 102ա, Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 330 (№ 34Բ):

4 Ձեռ. № 2226, էջ 19ա:

նում հասարակության մի ամբողջ շերտի հատուկ, հիմնական, բնորոշ գիծ։ Ըստ մի զրույցի, հպարտությունն անքակտելիորեն տրված է ստրկամտությանը, ագահությունը՝ մեծամեծներին, նախանձը՝ արվեստագործներին, կեղծավորությունը՝ կրոնավորներին, սնափառությունը՝ կանանց. արատներ, որոնք բոլորը ծնված են անիրավությունից[1]։

Ճշտորեն նկատվում է, թե կյանքի փիլիսոփայական ըմբռնումն ու ճանաչումը իմաստնացնում է մարդուն, մաքրում նրա էությունը, ազնվացնում, բարի, լայնախոհ ու ներողամիտ դարձնում։ «Ի բազում անմեղութենէն բնաւ մոռացաւ զչարութիւն», ասվում է մեկի մասին[2], որ առհասարակ բնութագրական է իմաստության հասած մարդու համար։

Հաճախ բնութագրումները կատարվում են առածների միջոցով, որ ավելի խոսուն, խորիմաստ, պատկերավոր ու անվախճան են դարձնում միտքը։ Առհասարակ ամենասուր խոսքերով, պատկերավոր արտահայտություններով, ժողովրդական առած-ասացվածքների համեմատմամբ է խարազանվում գանձասիրությունն ու շահամոլությունը, ագահությունն ու վաշխառությունը, փառասիրությունը, զրկանքի, կաշառքի ու գողության դիմելը, արդարությունը, իրավունքն ու ճշմարտությունը թյուրելը[3]։

Մի զրույցում ագահի անկշտությունը չափանշվում է այսպես. «Ագահութիւնն աղի ջուր նման է, որչափ մարդ խմէ, այլ առաւել կու ծարաւի»[4]։ Մի ուրիշը չգոհանալով մեկով, ագահի անհագությունը բնութագրում է հաջորդաբար ավելացնելով իրար լրացնող ու խորացնող նոր առածներ. «Գետք ո՛չ կարեն լնուլ զծովն», փոքր ինչ անց՝ «Տզրուկն ո՛չ յագի արեամբ» և վերջում՝ «Հուր ո՛չ յագի փայտիւ»[5]։ Երբ կամենում է համոզիչ դարձնել, թե «ոչինչ է ի ծածուկ, որ ոչ յայտնեսցի», բերում է առածը՝ «Ո՛չ կարէ քաղաք թաքչել, որ ի վերայ լերինն կայցէ»[6]։ Երբ խոսում է ընկերասիրության, ազնիվ, անձնազոհ բարեկամների ու ընկերների մասին, չի մոռանում հիշել և արդեն վաղուց ի վեր ժողովրդի դարավոր կենսափորձով իմաստավորված առածը՝ «Բարեկամն յաւուր նեղութեան փորձի»[7] և այլն։

---

1 Տե՛ս «էջեր», էջ 97 (№ 66), ծանոթ., էջ 250։

2 Ձեռ. № 791, էջ 176ա։

3 Տե՛ս ձեռ. № 7993, էջ 141ա և բ։

4 «էջեր», էջ 120 (№ 85), ծանոթ., էջ 253։

5 Ձեռ. № 7993, էջ 141բ։

6 Ձեռ. № 3179, էջ 126բ։

7 Ձեռ. № 8825, էջ 35բ։

Որոշ զրույցներ ուղղակի կառուցվում են ժողովրդական իմաստությունների, փիլիսոփայական ընդհանրացումների, դարավոր կենսափորձից հանված ասույթների ու ասացվածքների հիման վրա։ Նկատի ունենալով առածը՝ «Ձարն չարով կորաւ», կամ «Ով ուրիշի հոր փորի, ինքը կընկնի մեջը» և կամ «Ո՛չ հագեցի ակն տեսանելով և ոչ լցցի ունկն՝ լսելով», զրուցագիրը բերում է այն համատառող իր պատմությունը, մի նոր օրինակով ևս վավերացնելով դրանց ճշմարտությունը[1]։ Մարդու և մանավորապես իշխանավորի հոգեբանությունը բնութագրող շատ խորիմաստ զրույցներ են կառուցված մանավանդ վերջին առածի ոգով[2]։

Առհասարակ զրույցներում հանդես է բերվում պատմողական արվեստի վարպետություն, մեծ մասամբ առանց ձգձգումների, սեղմ, կարճ ու ամփոփ, երբեմն նույնիսկ համառոտ խոսքով ասած, նպատակամետ ու ընդհանրացված։

Երբեմն զրույցներն ունենում են արվեստավոր՝ կարճ ու հետաքրքիր վերջավորություն, ամփոփ միտք, կամ ուղղակի պարզ, միամիտ ու անմիջականորեն ասված մի բառ՝ «վերջացավ»[3]։

* *
*

Զրույցների կատարած դերի, նպատակասլացության ու գեղարվեստականության գործում կարևոր տեղ է գրավում և լեզուն, որի մեջ ևս արտահայտվում է նրանց բազմազանությունն ու բազմատեսակությունը։

Զրույցների լեզուն միատեսակ չէ. և այդ բնական է։ Տարբեր դարեր ու տարբեր հեղինակներ իրենց հետ բերել են լեզվական, ոճական տարբեր առանձնահատկություններ՝ անհատականություն, պարզություն, սեղմություն, նրբություն, ճկունություն, պատկերավորություն, հարստություն, տեղայնություն և այլն։ Անշուշտ նշանակություն ունի նաև զրույցի ոգին՝ աշխարհիկ կամ հոգևոր բնույթը, պատմողական, հռետորական կամ դրամատիկ ոճը, կենցաղային կամ գաղափարական թեման և այլն, որոնք միջին հայերենի մեջ գերակշռություն են տալիս կամ գրաբարին և կամ խոսակցականին, բարբառներին։ Զրույցի զարգացման ընթացքի համե-

---

1 Տե՛ս «էջեր», էջ 32, 36, 37, 120 (№ 38, 39, 40, 86) և այլն, համապատասխան ծանոթագրություններով։

2 «էջեր», էջ 119, 120 (№ 85, 86), ծանոթ. էջ 253։

3 Ձեռ. № 8825, էջ 5բ։

մատ՝ որքան դեպի աշխարհիկ թեմա, այնքան լեզուն աշխարհաբար։ Իհարկե, վերջինս ավելի ծավալվում և սկսում է գերիշխել ուշ դարերում։ Սակայն խոսակցական լեզվի՝ աշխարհաբարի, այլև բարբառայինի որոշ տարրեր երևան են գալիս նաև ավելի վաղ շրջանում՝ XIV—XV դարերում։ 1303—1350, ինչպես և 1450 թվականներին ընդօրինակված ձեռագրերում հանդիպում են այսպիսի բայաձևեր. «Ումն արծաթասէր աղօթեց»[1], «զոսկին է պաշտել և որչափ ագահութք է արեր, միտքն մօտ ոսկին է եղեր»[2] և այլն։ Հետագայում այդ տարրերն ավելի ևս զգալի են դառնում։ Բերենք նույն զրույցի միևնույն հատվածը՝ տարբեր դարերում ընդօրինակված ձեռագրերից.

«Էր ումն թագաւոր, որոյ աւուրք և ամք կենացն անցեալ էին. և ոչ ունէր որդի և ժառանգ իւրոյ թագաւորութեանն՝ զկնի իւր։ Վասն որոյ բազում պաղատանօք խնդրեաց յԱստուծոյ վասն որդեծնութեան, տալով աղքատաց և կարօտելոցն տուրս առատս և ինչս բազումս, որ և ողորմած տէրն՝ լսօղն աղօթից, ոչ անտես արարեալ զաղօթս նորա, ետ նմա որդի՝ ժառանգ աթոռոյ թագաւորութեանն իւրոյ...»[3]։

«Թագաւոր մի որդի չունէր. խնդրեաց յԱստուծոյ, և Աստուած ետ նմա որդի։ Եւ թագաւորն երեք բազում աստղագէտք, հարցաւ ի նոսա, թէ՝ «Իմ որդոյն զի՞նչ լինի»։

Եւ նոքա ասեն, թէ՝ «Քո որդուն մահն օձէն պիտի լինի»։

«Թագաւորն հնարք արաւ և շինեաց բարձր աշտարակ մի և եդ զորդին իւր ի մէջն, որ օձն չիսայթէ» և այլն[4]։

XVI—XVII դարում արդեն, միջին հայերենի մեջ որոշակիորեն իշխում է աշխարհաբարի շունչը։ Նշենք մի փոքր հատված, որտեղ գրեթե լիովին ներդաշնակում են լեզուն և բովանդակությունը, նկարագրվում առօրյա, կենցաղային փոխհարաբերություններ.

«Մեծ հարուստ մարդ մի շատ ոսկի և արծաթ ունէր և ողորմութիւն չանէր։ Ունէր երեք որդի, երեք հարսն։ Ինքն պազրի կերակուր կերած չէր։ Օր մի անցաւ պազրին միջովն, դառ մի տեսաւ խորոված, խիստ մտացն ասաց... Գնաց ի տուն, ձենեց զերեք որդին.

---

[1] Ձեռ. № 714, 1303—1350 թթ., էջ 63ա, Տե՛ս «Էջեր», էջ 14 (№ 17 b տարբերակ)։

[2] Ձեռ. № 2226, էջ 206ա (ընդգծումները մերն են—Ա. Ս.)։

[3] «Էջեր», էջ 62 (№ 49, d տարբերակ)։

[4] Ձեռ. № 5631, 1620 թ., էջ 159բ. Տե՛ս «Էջեր», էջ 67 (№ 49, e տարբերակ)։

ըստակ տվեց, թէ՝ «Գնացէք գառ մի խորովու եփեցէք ի պազարն, բերէք, որ ուտենք» և այլն[1]։

Սողոմոնի անվան հետ կապված զրույցներից մեկը պահպանված է միջին հայերենի և՛ գրաբարախառն, և՛ աշխարհաբարին մոտ տարբերակներով։ XVII դարի ընդօրինակություն հանդիսացող ձեռագրերում այն վերապատմվում է գրեթե ժողովրդի խոսակցական լեզվով.

«Ծառայնին թողին զՍողոմոն և եկին աղքատին ի հնազանդութիւն, զի գիտէին, թէ թագաւոր է։ Վլացին, առօք և փառօք հանին և զթագաւորին ոսկիակազմն պատմուճանն բերին, ագուցին, և զթագն դրին ի գլուխն, և առեալ գնացին։ Եւ մնաց Սողոմոն ի բաղնիքն։ Կանչեց, թէ՝ «Բաղնապան, յո՞ւր են ճորտերս»։ Ասէ բաղնապանն. «Շատ մի՛ հաչեր. Դու քե՛զ ես Սողոմոն. շո՛ւտ արա ե՛լ ի բաղնեացդ, զզուռն կու փակեմ» և այլն[2]։

Զրույցների մեջ, առհասարակ, գերիշխում է միջին հայերենը։ Սակայն, ցույց տված լինելու համար ստիճանական անցումը գրաբարից միջին հայերենի, կիսա-աշխարհաբարի և բացարձակապես աշխարհաբարի, ավելացնենք XVIII դարից հետո վերջինիս հաղթանակը յիովին դրսևորող մի քաղվածք ևս.

«Վանայ երկիր, մօտիկ իրարու երկու գեղ կայր։ Մէկի անունը..., մէկելը՝ ...։ Էս էրկու գէղին էլ քահանայ ունէին ընտիր։ ... քահանէն խրատով ու ահ տալով չըկարաց ժողովրդին կիրակի պահել տալ։ Գնաց... քահանին ըսաց.

— Ես մէ հնարով իմ ժողովուրդս կիրակի պահել չեմ կարայ տալ։

... քահանէն ըսաց.

— Դու արի մէ տարի իմ գեղս ու տունս կեցի, ես քուկըդ։

Էսպէս փոխուան։ Օր եկաւ, գարուն էր։ Էս քահանեն կիրակի օրը իր ցանքը էնել տուեց գեղացուց։ Էս հեսապին ջրելը, քաղելը, ծեծելը կիրակի օր էնել տուեց գեղացուց։ Էլ կիրակի չպահեցին. քահանի էլ, իրենց էլ հողագործութիւնը էրին մինչ կալի վերջին...»[3]։

---

[1] Ձեռ. № № 1357, էջ 263ա, 8727, ժէ դար, էջ 31ա. Տե՛ս «էջեր», էջ 20 a, b (տարբերակներ)։

[2] Ձեռ. № 3569, ժէ դար, էջ 136ա (տարբերակ). Տե՛ս նաև այլ տարբերակներ՝ «էջեր», էջ 110 (№ 76)։

[3] Ձեռ. № 6891, 1855—1858 թթ. էջ 119բ։ Հեղինակն է Սիմեոն Կարնեցին, որ ինչպես նշում է ինքը, ժողովել և այս զրույցն ընդօրինակել է Տոնապատճառ գըրքից, Շիրակի գավառի Բողազքեսեն գյուղում։ Բազմակետերով նշված են գյուղերի անունները, որ ձեռագրում բաց է թողված։

*Լեզվական զանազան առանձնահատկություններ, բարբառային ու օտար բառեր և այլն, երանգավորում են զրույցը, ստեղծում հատուկ մթնոլորտ, միջավայրը բնութագրող իրադրություն, տեղը, ժամանակը և մարդուն ավելի ճշգրիտ զգալու հնարավորություն*[1]. *«Գրեն թէ սոյն հոռային դատաւոր կարգեցին գիւղաքաղաքի։ Որոյ, ի մտանելն ի դուռն քաղաքին, ետես գրեալ ի ճակատ դրանն, ի վերայ միոյ քարի՝ Ուզուն ատամ՝ գայայ սագալ ախմախ օլուր»*[2]։

*Ընթերցողի մեջ ընկալումը կատարվում է հստակ, պատկերավոր, կոնկրետ և ավելի անմիջական։ Լեզվի միջոցով՝ հայկական (նույնիսկ օտար) հատուկ բառերի օգտագործմամբ, աշխատել են զրույցը մատչելի դարձնել ժողովրդի լայն շերտերին և լիովին ծառայեցնել իր նպատակին։*

*Այս ամենին ավելանում է նաև որոշ հեղինակների անմիջականությունը, երբեմն նաև խոսքի լիրիկական շունչն ու հուզականությունը՝ արտահայտված հատուկ դարձվածքներով ու ընդմիջարկություններով։ Սրանք, ի վերջո, ծառայում են զրույցների գեղարվեստականությանը, աշխույժ ու կենդանի են դարձնում և՛ լեզուն, և՛ բովանդակությունը, հեշտացնում կարդալ մարդու ներքինը, տրամադրությունները, հույզերը, խոհերն ու աշխարհըմբռնումը և մոտեցնում վիպականության։*

---

[1] *Այսպիսով, եթե գծելու լինենք զրույցների լեզվի զարգացման ընդհանուր պատկերը, կստանանք մոտավորապես հետևյալը.*

*Հնուց եկած զրույցների մեջ, որոնք հիմնականում բխում են եկեղեցական գրքերից, Հարանց վարքերից ու վարքաբանական գրականությունից կամ պատմագրությունից, գերիշխում է գրաբարը։*

*Միջնադարում ստեղծված կամ ըստ հների վերապատմված զրույցների մեջ լեզուն խառնուրդ է գրաբարի ու միջին հայերենի։*

*Բուն ժողովրդական աղբյուրներից ծագածների մեջ գերակշռում է ժողովրդական, խոսակցական լեզուն։*

*XV—XVI դարերից հետո կազմվածներն ունեն ժամանակի նոր գրական լեզվի ատաղձը՝ տեղ տեղ միախառնված բարբառի։*

*Ըստ քերականական առանձնահատկությունների, որպես օրինակ, կարելի է նշել հետևյալ անցումները.*

Հայցական հոլով—*զ-յով, առանց զ-ի, խառը։*

Բայական վերջավորություններ—*եաց, եց, խառը։*

Նախդիրներ—*վերացում, կամ հետադաս գործածություն (գնայր ի քաղաք—գնաց քաղաք։ Ի վերայ դնել—վրան դնել, դնել վրան)։*

Հոգնակի թիվ—*ք, ներ, խառը։*

Դիմորոշ հոդ—*դ, տ, խառը և այլն։*

[2] *Ձեռ. № 8825, էջ 28բ։*

Առանձին անհատների վարքագծի այսպիսի արտացոլումն, ըստ էության, բացում է ո՛չ թե սոսկ մեկի, այլ իր մեջ խտացրած ու ամբողջացման ենթարկած տիպական կերպարների, ուրեմն և հասարակության որևէ խավի բարքերի բնութագիրը, հանգեցնելով լայն ընդհանրացումների։



Բազմազանությունը, ընդգրկման լայնությունն ու խորությունը և գեղարվեստականությունը զրույցներին տալիս են պատմական, ճանաչողական մեծ արժեք։ Նրանց միջոցով, շատ կամ քիչ չափով, բացվում է միջնադարը՝ կրոնավորների, կրոնական միաբանությունների, վանական կյանքի ու միակեցության պատկերը. պալատի ու պալատականության, մեծատունների ու աղքատների, վաճառականների, արհեստավորների ու շինականների միջնադարյան նկարագիրը. գիտության, մշակույթի, արվեստի, օրենքների ու կարգերի, ըմբռնումների, հասկացությունների, հայացքների ու ձգտումների տեսակը, վիճակն ու մակարդակը. մարդը՝ և՛ կրոնավորի և աշխարհականի, ներքին ու արտաքին աշխարհը՝ հոգեբանությունը, աշխարհայեցությունը, բարքերը, կենցաղը, սովորությունները, զբաղմունքները, սոցիալական վիճակն ու փոխհարաբերությունները. վեր հանվում աշխարհիկ ոգու հաղթանակը թե՛ մտայնության մեջ և թե՛ իրականության, լրացնելով ու հարստացնելով միջնադարի մասին արդի՝ ժամանակակից մարդու աշխարհըմբռնումը։

Այդ պատճառով է, որ զրույցները միաժամանակ գիտական, պատմական, գրականագիտական, լեզվաբանական ուսումնասիրությունների ու գեղարվեստական ստեղծագործությունների առատ նյութ տվող հարուստ գանձարան են։ Ժողովրդի դարավոր իմաստությունն իր մեջ ամփոփող այդ անսպառ ժառանգությունը՝ միջնադարյան զրույցներն ու նրանց թեմաները, օգտագործել են բոլոր դարերում ու երկրներում, աշխարհի խոշոր գրողներից շատերը, կերտելով բազմաթիվ մանր ու մեծ կտավներ, արձակ ու չափածո երկեր՝ բարձրարժեք վեպեր, պատմվածքներ ու բանաստեղծություններ, որոնցից ծնվել են և գլուխ-գործոցներ։

Միջնադարյան կյանքն ու աշխարհայեցողությունը բացահայտող այնպիսի զրույցներ, որոնք նշանակալից դեր են խաղացել համաշխարհային գրականության պատմության մեջ և ստեղծագոր-

ծության մշտաբուխ ակունք հանդիսացել բազում ազգերի ու բազում գրողների համար, պահպանվել են նա՛և հայկական ձեռագրերում։ Պետք կլինի հատուկ ստվարածավալ ուսումնասիրություն, մեկ առ մեկ անդրադառնալու և քննելու ներշնչանքի աղբյուր հանդիսացած ու գրական մշակման ենթարկված բոլոր զրույցներն ու նրանց հեղինակներին[1]։

Եվ մեր ձեռագրերում և ուրիշ ժողովուրդների մոտ պահպանված ու գրական մշակումների նյութ ծառայած բազում զրույցներից են Հայ լողորդ, Փիլիսոփա մահու դատապարտեալ և սիրելին, Թագաւոր և քուերրորդի և իշխան, Երեք թագաւորի որդիք և պատուական ակն, Աղօթք արծաթասիրի, Երկու արդարք ի խալաթայ, Սատանա և եօթն դստերք իւր, Այր հոգեվաճառ, Բանսարկու աբեղայ, որ կանձն մատնեաց սատանայի, Հպարտ թագաւոր, Պատիւ հանդերձի, Միակեաց, զոր կիզեաց զմատունս իւր, Երեք թագաժառանգ և պատուական ակն և այլն[2], որոնցից մի քանիսը մեծ կտավների նյութ են դարձել։ Վերջին զրույցը, որ կույր, կաղ և ատամները թափած ուղտի մասին շատ ժողովուրդների մոտ զանազան տարբերակներով պահպանված հանրածանոթ պատմություն է, օգտագործել է Վոլտերը իր «Զատիկ կամ նախասահմանութիւն» հայտնի երկում[3]։ Մահվան դատապարտված փիլիսոփայի ու ընկերոջ և երկաթաձուլարան ուղարկվող հավատարիմ պալատականի մասին զրույցների սյուժեներով բալլադներ է գրել Շիլլերը[4]։ Հայ լողորդի հեռավոր տարբերակներն են նրա «Հերո և

---

[1] Նշենք միայն, որ վերջիններիս թվում են այնպիսի հանճարներ ու ականավոր դեմքեր, ինչպես Դանտեն, Բոկաչչիոն, Ռաբլեն, Սերվանտեսը, Շեքսպիրը, Մոլիերը, Վոլտերը, Դիդրոն, Լեսսինգը, Գյոթեն, Շիլլերը, Բալզակը, Ժորժ Սանդը, Անդերսենը, Դիկկենսը, Մարկ Տվենը, Գոգեն, Անատոլ Ֆրանսը, Հաուպտմանը, Կիպլինգը, Վասիլի Մայկովը, Խեմնիցերը, Կռիլովը, Ժուկովսկին, Պուշկինը, Տոլստոյը, Լեսկովը, Վսեվոլոդ Գարշինը, Աբովյանը, Աղայանը, Խնկոյանը, Թումանյանը, Իսահակյանը և շատ ուրիշներ։

[2] Տե՛ս «էջեր». № № 17, 37, 46, 47, 66, 68, 69, 76, 92։ «Հարանց վարք», Ջուղա, 1641 թ., էջ 166 (ձեռ. № № 791, էջ 126բ, 7993, էջ 10բ), Ն. Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 142, 199, 286, 338, (ձեռ. № № 6974, էջ 105ա, 6616, էջ 7ա), սույն գիրքը, № № 1, 56, 60 62։

[3] Տե՛ս ձեռ. № № 6974, էջ 105ա, 6616, էջ 7ա, Ն. Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 199, Վոլտեր, Զատիկ կամ նախասահմանութիւն, Կ. Պոլիս, 1867, էջ 15 և հտո.։ Հեղինակի այս երկում ընդհանուր առմամբ օգտագործված են զանազան արևելյան զրույցներ։

[4] Տե՛ս սույն գրքում, № 62, Ն. Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 327, 142։ «էջեր», էջ 54—60, Ֆրիդրիխ Շիլլեր, Բալլադներ, Երևան, 1957, էջ 46, 76։

Լեանդր» բալլադն ու Հ. Թումանյանի «Ախթամարը»[1]։ Շիլլերի բալլադների ծանոթագրություններից երևում է, որ դրանց սյուժեները մինչ ինքը մշակել են և ուրիշները՝ հռոմեացի գրող Հիգինը, ֆրանսիացի վիպասան Ռետիֆ դը լա Բրետոնը, հույն բանաստեղծ Մեգենոսը[2], որ ապրել է 5-րդ դարում և որով մեկ անգամ ևս վկայվում է զրույցների սյուժեների հնությունը։ Երեք թագավորի որդիք և պատուական ակն զրույցը, փոխված բարոյախոսությամբ, օգտագործել են Բոկաչիոն և Լեսսինգը[3]։ Զրույցը հայտնի է եղել և XI դարում, հրեական միջավայրում։ Այստեղ ոչ մի տարբերություն չի դրվում հրեական և քրիստոնեական հավատի միջև։ Մինչդեռ «Gesta Romanorum»-ում և հին ֆրանսիական մի առակի մեջ համեմատության են դրվում երեք կրոն՝ հրեական, մահմեդական և քրիստոնեական. վեճը լուծվում է հօգուտ վերջինիս։ Զրույցի տարբերակները կան լատիներեն և իտալերեն՝ XIII դարում և այլ ժողովուրդների մոտ[4]։ Հայկական ժողովածուներում պահպանվել է զրույցի երկրորդ խմբագրությունը, ուր առավելություն է տրվում քրիստոնեությանը[5]։

Մատները մոմի բոցով այրող միակեցի մասին զրույցի սյուժեն մշակել է Տոլստոյը («Հայր Սերգի»)[6], «Երկու արդարք ի խալաթայ» զրույցինը՝ Թումանյանը («Ոսկու կարասը»)[7], «Սատանայ և եօթն դստերք իւր» զրույցինը՝ Իսահակյանը («Սատանան ու իր աղջիկները» չափածո)[8]։ «Հպարտ թագավոր» շատ տարածված զրույցի բարոյա-գաղափարական բովանդակությունը հրապուրել է և՛ Տոլստոյին, և՛ Մարկ Տվենին և՛ Գարշինին։ Զրույցներից եկող զանազան ազդակներ է ունեցել Շեքսպիրը, իր դրամաներում ցրած ժողովրդական իմաստություններից շատերի հիմքում և այլն։

Ազնիվը, չքեղը, հարուստը, լավն ու բարին ո՛չ թե արտաքին

---

1 Տե՛ս սույն գրքում, № 1, Ն. Մառ, ժողովածու, մասն Բ, էջ 338, Շիլլեր, էջ 29, Հ. Թումանյան, Երկերի ժողովածու, հատ. Ա., Երևան, 1950, էջ 275։

2 Տե՛ս Շիլլեր, էջ 99, 100, 102։

3 Տե՛ս Ջ. Բոկաչիո, Դեկամերոն, Երևան, 1953, էջ 46։ Լեսսինգ, Նաթան իմաստուն, Թիֆլիս, 1878, էջ 104։

4 **Веселовский Александр,** Боккаччьо, его среда и сверстники, էջ 487 և հտտ.

5 Տե՛ս Մառ, ժողովածու, մասն Բ, էջ 286։

6 Տե՛ս «Վարք սրբոց հարանց և քաղաքավարութիւնք նոցին», հատ. առաջին, էջ 691, Լ. Տոլստոյ, Երկերի ժողովածու, հատ. 10, Երևան, 1950, էջ 145, ձեռ. № 566, էջ 111ա։

7 Հ. Թումանյան, Երկերի ժողովածու, հատ. Գ, Երևան, 1949, էջ 149։

8 Ավ. Իսահակյան, Առակներ, Երևան, 1946, էջ 5։

շլացուցիչ գեղեցկության ու փայլի, այլ մարդու ներքինի՝ էության մեջ փնտրելու լայն ընդգրկում ստացած միջնադարյան հայեցողությունը արտահայտություն է գտել «Վենետիկի վաճառականը» երկում, տուփերի պատմությամբ, տուփեր, որոնց արտաքին շուքը կամ անշքությունը չե՛ն համապատասխանում նրանց բովանդակությանը[1]։ Այդպես է և մարդը, որի տեսքն ու ներքինը միշտ չէ՛, որ նույնն են։Ցուցադրական արտաքինը քողարկում է ներքինը։ Հաճախակի նկատվող այս հակասության մասին միջին դարերում գրավոր և բանավոր տարածված տարբեր պատմություններից մեկն է մեր ձեռագրերում պահպանված «Պատիւ հանդերձի» զրույցը[2], որ մի տարբերակ է հնուց եկող և այլ ժողովուրդների մոտ ևս գոյություն ունեցող սյուժեի[3]։ Ըստ զրույցի, իշխանները տրտնջում են, թե թագավորը «մեծամեծաց իւրոց ո՛չ առնէ պատիւ, այլ զչընչին մարդիկս մեծարէ»։ Ի պատասխան՝ թագավորը պատրաստել է տալիս չորս սնդուկ, «երկու արտաքուստ գեղեցիկ և քանդակած և ի ներքուստ լի աղբով և աւազով, և երկու այլ՝ արտաքուստ աղտեղի, կպրով ծեփեալ և ի մէջն լի ոսկով և մարգարտով»։ Իշխաններն ընտրում են գեղատեսիլը։ Թագավորը նկատում է, թե նրանք այդպես են դատում և մարդկանց մասին՝ նայում են երեսին ու պայծառ հանդերձին և ո՛չ ներքինին։

Միջնադարյան զրույցների թեմաներով ստեղծված երկերի մեջ առ այսօր խոշորագույն գործ է մնում «Ֆաուստը», որի սյուժեն, մինչև Գյոթեն, մշակել են շատերը։

Դեռևս միջնադարում, ինչպես իմացվում է զրույցներից, երկբայել են հոգու և հանդերձյալ կյանքի գոյության մասին կրոնի ու եկեղեցու դրույթների ճշմարտության մեջ, նույնիսկ ասել, թե դա կրոնավորների սարքած խաղ է, ծաղր՝ ժողովրդի, աշխարհականների հանդեպ.

«Վայրապար քահանայք ի խաղ առնեն զմեզ, որք ասեն, թէ հոգիք զկնի աստի կենացս կենդանի են»[4]։

Այսպես դատող մարդիկ են, որ համարվել են հոգին սատանային վաճառածներ, մարդիկ, որ փիլիսոփայել են կյանքի ու աշխարհի մասին, գերադասել վայելել այն, նույնիսկ հոգին ծախելու

---

1 Վիլյամ Շեքսպիր, Ընտիր երկեր, երկու հատորով, հատ. 1, Երևան, 1964. էջ 807։

2 «Էջեր», էջ 125 (№ 92)։

3 Տե՛ս Նկարագրութիւնք հոգևոր վարուց Յովասափու որդւոյ թագաւորին Հնդկաց, Վաղարշապատ, 1897, էջ 19։

4 «Էջեր», էջ 100 (№ 68)։

և հավիտենականը կորցնելու գնով ու այն համոզումով, թե իրականը, գոյություն ունեցողը ներկան է, անցողիկը՝ աշխարհն ու երկիրը: Այս կյանքը ձեռքից չհանելու, զուր չկորցնելու մասին են առավել մտահոգվել, քան ենթադրյալ անդրշիրիմյանը կորցնելուց վախեցել: Հետաքրքիր է, սակայն, որ հոգին սատանային են «վաճառել» ոչ միայն աշխարհականները, այլև կրոնավորները՝ աբեղաներ, քահանաներ ու եպիսկոպոսներ: Նրանց մեջ ևս եղել է հավատի խախտում, երկմտանք հանդերձյալի և հոգու գոյության մասին գեթ այնչափ, որ գերադասել են վայելել աշխարհը մինչև վերջին րոպեն, մինչև վերջին շունչը՝ չզղջալով և խոստովանության ու ապաշխարության իսկ ժամանակ չթողնելով[1]:

Հոգեվաճառության մասին տարբեր ժողովուրդների մոտ գոյություն ունեցող և համաշխարհային գրականության մեջ լայն տարածում գտած զրույցների առաջին գրական մշակումն է համարվել ֆրանսիական գրականության մեջ Ռյուտբեֆի անունով հայտնի՝ Թեոֆիլի մասին հրաշքը («Miracle de Théopile»)[2]: Սրա տարբերակներից մեկը պահպանվել է նաև հայկական ձեռագրերում: Խորամանկ, հնարագետ և հմտորեն աշխարհականների մեջ խռովություն սերմանող մի աբեղա, երբ «զփոփոխել զհարս վանից և ի խռովութիւնս ձգել ի մէջ եղբարց ո՛չ հագեցաւ, զանձն իւր մատնեաց ձեռն սատանայի, միայն թէ զոր ինչ [կամիցի] կատարեսցէ»[3]: Եվ երկար ժամանակ գործակից դարձավ սատանայի: Այդպիսին էր և Թեոֆիլը, որ նույն ճանապարհներով՝ հոգևորականության մեջ խռովություն ձգելով, վանահայրերին զրպարտելով ու փոփոխելով՝ ձգտում էր աթոռակալության:

Նման մի զրույց է և հետևյալը, որ սկսվում է այսպես.

«Ասի յառակաց, թէ միակեաց մի սատանայի ուխտ եդիր, որ ի տարի մի սատանայի ի պահք կենայր, թէ զնա ի մեծութիւն հասուցանէ: Եւ սատանայ յանձն առ կատարել զխնդրուածս նորա»[4]:

Այստեղ ևս ուխտը նույն նպատակներն է հետապնդում: Միակեցը հասնում է իր ցանկացած մեծությանը, դառնում եպիսկոպոս, սակայն վերջում խստորեն պատժվում: Այս զրույցի վախճանը բավականաչափ մոտ է եվրոպական գրականության մեջ եղած որոշ մինչ-Ֆաուստյան մշակումների, ուր փշուր-փշուր է ար-

[1] Տե՛ս «Էջեր», էջ 101 (№ 69):

[2] Տե՛ս „История французской литературы», т. I, стр. 164.

[3] Տե՛ս «Էջեր», էջ 101 (№ 69):

[4] Ձեռ. № 6616, էջ 12բ: Ն. Մառ, Ժողովածու, մասն Բ, էջ 252:

վում Հոգեվաճառի կանգը: Մեր զրույցն ավարտվում է այսպես.

Եպիսկոպոսութեան հասած միակեցը «ի չարչարանս արկեալ, խոստովան եղև զուրացութիւնն և զդաշինսն, որ եդեալ էր ընդ սատանայի: Յայնժամ կապեալ զնա ի յագի ամեհի ձիոյ և թողեալ ի դաշտի, մանրամասնաբար կոտորեալ եղև մարմին նորա և այնպէս աւանդեաց զդառնացեալ հոգին ի ձեռն սատանայի»[1]:

Սակայն, իր բուն էությամբ «Ֆաուստի» իմաստությանն ավելի մոտ գաղափարներ է արտահայտում մեր մի այլ զրույցը, որտեղ Հոգեվաճառի կերպարը անհամեմատ մոտ է Ֆաուստի նախատիպերից մեկը համարվելու: Ի հակադրություն Թեոֆիլի և մեր զրույցների, այստեղ կենտրոնական դեմքը կրոնավոր չէ, այլ աշխարհական և իր չար նպատակներն ի կատար ածելու համար չէ՛, որ համաձայնում է հոգին վաճառել, այլ ղվարճության, կյանքը հաճելիորեն զգալու և վայելելու: Նա փիլիսոփայող, խորհող կերպար է, իր ժամանակի համար անսովոր ու հետաքրքիր բնավորությամբ, աշխույժ, շարժուն, կենդանի խառնվածքով ու անմիջականությամբ, տիպականացման հասած նկարագրով: Սիրում է կեր ու խում, ուրախություն, ընկերական սեղան, առատաձեռն է, փիլիսոփայում է կենաց ու մահու, հոգու և մարմնի մասին, ո՛չ միայն գերադասում աշխարհն ու իրական կյանքը հանդերձյալից, այլև չի հավատում հոգու անմահությանը: Նա ուզում է ազատ ու անհոգ լինել և հանուն այդ ամենի է, որ համաձայնում է հոգին վաճառել, համարելով այն մի կատակ կամ խաղ:

«Եթէ ոք զհոգի իմ գնել կամիցի, դիւրագին վաճառէի զնա, և զոր ինչ առնում ամենեցունց գինույ գին յօժարութեամբ տաց»,— ասում է նա պանդոկում հավաքված և անհոգությամբ ծիծաղող սեղանակից երիտասարդներին: Հայտնվում է սատանան «ի կերպարան մարդոյ», միանում նրանց, մասնակցում սեղանին ու զրույցին և տրամադրում ցանկացած գումարը՝ վայելքը շարունակելու: Նա նս հրամայում է գինի բերել ու ըմպել լի բաժակները[2]: Սա «Ֆաուստի» երկրորդ հիմնական հերոսի՝ Մեֆիստոֆելի նախատիպն է, որ Թեոֆիլի մասին պատմվող զրույցում ու նրա տարբերակներում չի կերպարանվում՝ երևան չի՛ գալիս որպես անձնավորություն, այլ միայն հիշվում է: Այս զրույցում նա հանդես է գալիս մարդու կերպարանքով, բայց պահպանում իր էությունը, աննկատելի ու անսպասելի հայտնվում այնտեղ, ուր նրան սպասում են՝

1 Ձեռ. № 6616, էջ 13ա:

2 «Էջեր», էջ 100 (№ 68):

բավական է մի խոսք միայն։ Նա «ուժեղ և մեծահասակ» է, ամենակարող, նույնպես փիլիսոփայող, հարցերը տրամաբանող, պատճառաբանող, վճռող, դիվանագետ, բայց և զվարճասեր, կյանքը հրահրող ու բորբոքող։

Այս զրույցները՝ միջնադարյան աշխարհայեցողության անցման վիճակը բացահայտող բնորոշ օրինակները, նախատիպար են հանդիսացել ստեղծելու աշխարհահռչակ «Ֆաուստի» բազում տարբերակները, ծնունդ տալով կատարյալին՝ Գյոթեի հանճարեղ քերթվածին, որ անսահման մեծությամբ ու բարձրությամբ արտահայտեց կյանքի, բնության ու տիեզերքի իմաստությանը հասնելու և ճանաչելու մարդու դարավոր ձգտումը։

Միջին դարերի զրույցներն առհասարակ հետապնդել են ամբողջ աշխարհի գրականության համար այսօ՛ր էլ կենսականորեն ամենաառաջնային ու անհրաժեշտ նպատակներ. լայնորեն ծառայել մարդու կատարելության, գաղափարական, բարոյական կերպարի մաքրման՝ հասարակության բարեկրթման ու բարեփոխման գործին։ Այդ է պատճառը, որ նրանցից շատերն ա՛յժմ էլ, զանազան տարբերակներով կամ մշակումներով, տեղ են գտնում նորագույն հայ և օտար հրատարակություններում, որպես օրինակելի ստեղծագործություններ, որ ծառայում են նաև ժամանակակից սերնդի ուսուցման ու դաստիարակության գործին։

Կյանքը, նրա մեջ շատ տարածված, նույնիսկ կանոնգրքերում արձանագրված, եկեղեցական ժողովներում արծարծված, ընդհանրացման արժեք ստացած բարքերն ու աշխարհըմբռնումներն են ճշմարտացի վերարտադրել զրույցները, դառնալով իրականության, ժամանակի, հասարակական ու սոցիալական բազմաթիվ երևույթների գեղարվեստական արտացոլումը։ Այս հանգամանքն իր հերթին նպաստել է նրանց՝ վերակենդանանալով հարատևել և ստանալ ո՛չ միայն ճանաչողական մեծ արժեք, այլև կենսունակություն՝ դարեր հետո անհատնելի աղբյուր հանդիսանալու մեր ժամանակների հասարակությանը ևս հոգևոր սնունդ տվող գեղարվեստական մեծ ու փոքր կտավների։

## Ամփոփում

Հայկական միջնադարյան զրույցները, որպես մեր սոցիալտնտեսական կյանքում տեղի ունեցած հեղաշրջումների գեղարվեստական արտահայտություն, իրենց մեջ պարունակում են հայ հասարակության միջնադարյան մտածողության ու կենսաըմբռնման

հետ անմիջականորեն կապվող բազմաթիվ հարցեր, որոնցից յուրաքանչյուրը կարող է առանձին ուսումնասիրության նյութ դառնալ։

Սույն աշխատության մեջ առաջին անգամ և առաջին հերթին փորձել ենք ուսումնասիրել ու բնութագրել զրույցը որպես ժանր՝ հայ միջնադարին բնորոշ մյուս գրական տեսակների և աշխարհի գրականության համակարգ ժանրերի զուգադրության միջոցով։

Առանձին քննության ենք առել հայ միջնադարյան զրույցի առաջացման ակունքները, ազգային, փոխադրական կամ թարգմանական ծագումը, պատմական զարգացման ընթացքն ու առանձնահատկությունները, կրոնական, աշխարհիկ կամ պատմական բնույթը։

Ցույց ենք տվել կիսակրոնական, կիսաառասպելական զրույցների դերը, որպես բեկումն առաջացնող երևույթ՝ հին դարերի, կամ կղերական մտածողության բնագավառում, գրականության աշխարհականացման ու վերածնման ճանապարհին։ Նկատել ենք նաև, թե կրոնական-պատմական և աշխարհիկ-պատմական որոշ զրույցներ ի վերջո հանգում են այն վիպական ստեղծագործություններին, որոնք կերտված են եղել ժողովրդի մեջ, բայց որոնց բեկորներն են միայն պահպանվել։

Հատուկ ուսումնասիրության ենք ենթարկել զրույցների գաղափարական բովանդակությունը, ցույց տվել այն մեծ դերը, որ ունեցել են նրանք մարդու և հասարակության մտավոր աշխարհը, բարքերն ու հասարակական-քաղաքական կյանքը կազմավորելու, այլև բարեփոխելու ուղղությամբ։

Մեծ տեղ ենք հատկացրել զրույցների ճանաչողական արժեքին, դրսևորել կյանքն ու աշխարհայեցությունը նրանց մեջ։

Աշխատության երկրորդ մասում տվել ենք հայ միջնադարյան զրույցների միայն հատընտիրը։ Նրանց գիտական, համեմատական բնագրերը հնարավոր կլինի պատրաստել հետագայում, երբ երևան կբերվի մեր Մատենադարանի մյուս ձեռագրերի հարստությունը, երբ կհրապարակվեն մյուս մատենադարաններում պահպանված նյութերը։ Հուսանք, որ մեր նախաձեռնությունը խթան կհանդիսանա կատարելու այդ աշխատանքը, որով բանասերների համար լիակատար հնարավորություն կստեղծվի խորամուխ լինելու միջնադարյան գեղարվեստական արձակի հետազոտության մեջ։



## 1. ՀԱՅ ԼՈՂՆՈՐԴ*

Ասաց Յակոբ վարդապետն, թէ՝ Զմին հայ տղայ լողնորդ գովեցին առ ի Հռոմոց թագաւորին ի Տրապիզոն։ Ասաց թագաւորն — Թէ դա մինչ յԸստամբօլ լողա՝ զիմ զուստ[ր]ն տամ։ — Յանձն էառ և լողաց հազար միլ, քառասուն աւուր ճանապարհ։ Գիշերն հետ ֆանարի լուսոյն գնայր։ Գնաց լողալով մինչ ի յԸստնբօլ և դարձաւ։ Նենգաւոր թագաւորն պատուէր տուեալ էր՝ Թէ դառնա, նա զնաւն ի բալաղօզն տուք, որ մոլորի և մեռանի։ Եւ այսպէս արարեալ կորուսին զնա։ Եւ նաւորդքն երգս ի բերան առեալ ողբան զնա, արմէն, արմէն գոչեն, վա՜յ և եղո՛ւկ ասեն։

## 2. ԹՌՉՈՒՆ ՀՆԴԿԱՑ ԵՒ ՁԻ ՅՈՒՆԱՑ

Թագաւորին հնդկաց էր թռչուն ինչ, որ արկանէր մարգարիտ և ականս իբրև զձու։ Եւ լուեալ արքային յունաց՝ այնմ ցանկացաւ, և առաքեաց հրեշտակ և խնդրեաց և նա ետ։ Սակայն և նա հայցեաց զձի նորա, որ երագութեամբ անցանէր ընդ թռչունս։ Եւ թէպէտ ծանր էին միմեանց խնդիրքն, անյապաղ իւրաքանչիւրքն կատարէին։ Եւ ի գալ հաւոյն ի յոյնս, ըստ օրինակի այլոց հաւուց ածէ ձու։ Եւ ձիոյն երթեալ ի հնդիկս՝ կաղայր և ո՛չ ընաւ արշաւէր։ Դարձուցանէ թագաւորն հնդկաց զերիվարն՝ մեղադրելով յոյժ։ Եւ նա նմանապէս՝ ամբաստանելով զթռչունն։ Եւ իւրաքանչիւրքն յիւրեանցն երթեալ տեղիս լինէին ըստ առաջին օրինակին։

Ո՛չ այլ ինչ առակս նկարագրէ, բայց զայս, զի իւրաքանչիւր թագաւորութեան ճոխութիւն յաստուծոյ տուեալ է, և թէպէտ հնարին ի միմեանս դարձուցանել՝ ո՛չ կարեն։

---

* Զրույցների բնագրերը գիտա-համեմատական սկզբունքներով չենք հրատարակում, ուստի և հիմնականում պահպանում ենք ձեռագրերի ուղղագրությունը, որ արտացոլում է տվյալ ժամանակահատվածի լեզվա-ոճական առանձնահատկություններն ու անցումները։



15—124

### 3. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԿԱՂԶՎԱՆՑԻ ՍԱՐԳՍԻՆ, ՈՐ ԿՈՏՈՐԵԱՑ ԶԱԶԳՍ ՀՌՈՄՈՑ ԵՒ ԶԱՅԼՍ ԳԵՐԻ ՎԱՐԵԱԼ ԾԱԽԷՐ ԶՎԱԹՍՈՒՆ ՄԷԿ ՍՈԽ

*Ի ժամանակի թագաւորութեանն Յունաց եկեալ բազմութիւնք թշնամեաց ասպատակեցին զկայսերական քաղաքն Ըստամպօլ, որք էին աւելի քան զքառասուն հազար ոգի։ Իսկ թագաւորն Յունաց չունէր այնչափ հեծելազօր մարդիկ, որ կարէր յաղթել զայլազգիսն, և ի մեծ տրտմութեան լեալ։ Ապա խորհեցաւ ազերս աղաչանաց առաքել առ թագաւորն Հայոց, որում անունն էր Յոհանէս, զի ուղարկեսցէ նմա յաւգնութիւն քառասուն հազար ոգի, որպէսզի կարասցէ ընդդէմ կալ այլազգեաց, զի, ասէ, եթէ այժմ զմեզ յաղթահարեսցեն, ապա յետո ձեզ ձեռնարկեսցեն։*

*Յայնժամ արքայն Հայոց, ըստ խնդրոյ նորին, ժողովեաց զընտիրս և քաջս ի զաւրաց իւրոց ուժեղս և ազնաւոր հսկայս և եղիտ քառասուն ոգի պահատուր, որ ամէն ոգի կարող էր ընդդէմ կալ հազար ոգոց։ Եւ ոչ եթէ չունէր քառասուն հազար զաւր, այլ զնոսա վասն ա՛յն առաքեաց, զի փութով հասցեն յաւգնութիւն, զի մի՛ առցեն զքաղաքն։ Եւ էր այս քառասնից գլուխն և առաջնորդ Սարգիս անուն, և անուն երկրորդի՝ Վարդ Պատրիկ։ Եւ նոքա երթեալ փութով, զինեալ և հեծեալք ի ձիս իւրեանց՝ ըստ սովորութեանց, գնացեալ հասին յերկիրն Հոռոմոց՝ ի յԸստամպօլ, բայց ոչ երևեցան արքային։ Իսկ թագաւորն Յունաց պատրաստէր զզաւրս ընդդէմ թշնամեաց։ Իսկ զաւրքն Յունաց, իբրև լուան՝ թէ արքայն Հայոց փոխանակ քառասուն հազար ոգո, քառասուն ոգի առաքեաց, գնացեալ չարախօսեցին արքային, թէ՝ Զքեզ թագաւորն Հայոց ծաղր և այպն արար, զի առաքեաց քեզ քառասուն ոգի. և ա՛յս է պատճառն, զի նա կամի զկորուստն մեր։*

*Եւ զայս իմացեալ քառասուն քաջքն, սկսան յորդորել միմեանս մի ըստ միոջէ և ասեն. Ո՛վ եղբայրք, եկեայք ի միասին միաբանութեամբ մարտիցուք ընդ թշնամիսն Յունաց՝ խնդրելով զաստուած յաւգնութիւն,—քանզի թագաւորն բարկացեալ՝ հրամայեաց զնոսա յառաջ ձգել։ Եւ գնացեալ՝ յուսովն աստուծոյ, ինքեանք միայն՝ առանց զաւրաց Հոռոմայ, քառասունքն զքառասուն հազարսն կոտորեցին և դարձան մեծաւ յաղթութեամբ առ թագաւորն Հոռոմոց և ասեն, թէ՝ Մեք կոտորեցաք զզաւրս թշնամեաց, առանց զաւրաց քոց։ Եւ նա ոչ հաւատայր։ Իբրև ստուգեցին և ծանեան զյաղթումն նոցա, ոխացան ի սիրտս իւրեանց և տրտմեցան յոյժ, որպէս թէ ոք եթուք յերեսս նոցա։ Ապա խորհուրդ արարեալ թագաւորն ընդ իշխանսն և ընդ մեծամեծսն, ընդ քաղաքացիս և ընդ*

սամիկս, թէ որպէս կորուսցեն զնոսա։ Փոխանակ երախտեաց և մեծ բարեացն, զա՛յս հատուցին։ Նոքա զթշնամիս նոցա սատակեցին և ի նոցանէ ինքեանք սպանան։ Եւ այսպէս կազմեցան և պատրաստեցան նենգիւ գլխատել և կորուսանել զքառասունսն՝ ըստ նախկի[ն] ատելութեանց իւրեանց, շուն ազգն Հոռմի։ Ապա զօրագլուխն պատուիրեաց իշխանաց զօրագլխաց և հազարապետացն. Գիտե՛ք զի՞նչ առնեմք Հայոց որոգայթ և նենգութիւն. առցու՛ք զնոսա մի մի ի տունս մեր՝ ի ճաշ և կորուսցուք զնոսա։ Եւ ընտրեցին ի մէջ իւրեանց քսան իշխան, զոր երկու երկու տարան ի ճաշ զնոսա ի տունս իւրեանց։ Եւ յորժամ հրաւիրեցանն, գնացին առ նոսա։ Եւ իբրև սկսան ուտել և ըմպել, և խրախանալ՝ և զինին էառ զնոսա։ Ապա սկսան, անաւրէն և անողորմ ազգն Հոռոմոց, գլխատել զանմեղ և զանպարտ պահատուրսն։ Եւ այսպէս խողխողեցին զամենեսեան, բայց միայն մնացին երկու գլխաւորքն՝ Սարգիս և Վարդ Պատրիկն, և ոչինչ գիտացին յայսցանէ եղելոց իրացս։ Զի ունէր զօրագլուխն այն դուստր մի գեղեցիկ յոյժ. և ցանկեալ էր Սարգսի և սիրէր զնա, զի էր գեղեցիկ անձամբ և վայելուչ հասակաւ, վասն ա՛յն խնայեաց ի նա, և գնացեալ ականջն ասէ ցնա ծածկաբար.

—Ո՛վ մանուկ, տեսանեմ զքեզ այր բարի և հաւատարիմ, այլև ազնիւ զգազմք, վասն այն խնայեմ զքեզ։ Արդ փութացիք և ելեալ փախերուք աստի, զի այսմ գիշերի գլխատէ զձեզ հայրն իմ, վասն որոյ գտէ՛ք փրկանս անձանց ձերոց և մի՛ ըմբէք գինի, քանզի ապա կորընչիք՝ որպէս երեսունութ ընկերքն ձեր։

Բայց այս աստուծոյ կամացն էր, որ աղջկամբն այն ապրեցան երկու քաջքն։ Եւ նոքա լուեալ զայս յաղջկանէն՝ հիացեալ զարմացան և ելեալ փութապէս ի սեղանոյն, կապեցին զսուրն ընդ մէջ, զնետս և զկապարճս և զայլ զէնս ի ձեռս առեալ՝ հեծան ի ձիս. և առին զաղջիկն ընդ գաւակ ձիոյն, քանզի սէր կապեալ էր ընդ նմա, այլև խօսք տուեալ էին երդմամբ միմեանց։ Եւ ելեալք ի քաղաքէն գիշերայնով եկին ի դուռն։ Եւ դռնապահքն սկսան փաղչել՝ փակելով զդուրսն։ Ասեն՝ Բացէք մեզ զդուրսն, ապա թէ ոչ սպանանեմք զձեզ։

Նոքա պատասխանի ետուն և ասեն. Ո՛չ բանամք առանց հրամանի Թագաւորին, թէև մա՛հ հասանի մեզ։

Իսկ քաջքն յարեալ՝ զդռնապանսն սպանին և զամբրոցս և զկողպակս դրանցն խորտակեցին և գնացին ի ծովեզերն։ Եւ գտեալ զնաւս և նաւավարս, ասեն ցնոսա. Անցուցէ՛ք զմեզ յայնկոյս և թէ ո՛չ սպանցիք ի ձեռաց մերոց։

Իսկ նոքա ասեն. Ո՛չ կարեմք առնել զայդ, զի երկնչիմք ի Թագաւորէն։ Ո՞վ էք դուք, կամ որպիսի մարդիք, զի գիշերով փախչիք, որպէս մահապարտք և վնասակարք։

Իսկ նոքա զնոսա սպանեալ և նստեալ ի նաւակն՝ անցին յայն կոյս ծովուն։ Բայց այլ պատմագիրքն ասեն, թէ ձիովք անցին լօղալով, գնացին յաշխարհն իւրեանց ի Հայք, պատմեցին Թագաւորին իւրեանց զամենայն անցս աղետից և թէ որպէս կոտորեցին զԹշնամիսն։ Իսկ ապերախտ ազգն Յունաց՝ վասն երախտեաց և բարեաց սպանին զնոսա չարաչար։ Զայն լուեալ արքայն Հայոց, բարկացաւ յոյժ և ասէ.

— Ա՞յս էր փոխարէն իմ։ Ես ետու զքաջ աղնաւուրս իմ օգ[ն]ել նոցա ըստ խնդրուածոց նոցա, և նոքա ըստ չար սովորութեանց, կորուսին զընտիր ընտիր զաւրականս իմ։ Ահա ես տա՛մ բազում զօրս ի ձեռս ձեր երկուցդ և երթեալ՝ կոտորելով կոտորեցէ՛ք զնոսա սրով և մի՛ խնայէք, և մի՛ ողորմիք ծերոյն և երիտասարդին, տղաոց և կուսից, արանց և կանանց, այլ և զքահանայս նոցա կոտորեսջիք, արարէ՛ք զնոսա ծաղր և այպն կատականաց ազգաց և ազանց աւտարաց։

Եւ նոքա ելեալք աշխարհէն Հայոց և մտեալ յերկիրն Յունաց. ըստ հրամանի Թագաւորին[1], բարկութեամբ և մեծաւ սր[տ]մտութեամբ մինչև Ստամպօլ։ Եւ շրջապատեալ զքաղաքն բազմաժողով՝ չկարացին առնուլ զնա և դարձեալ շուրջ զքաղաքն և գաւառաւորին՝ բազում յօճիրս գործեցին, վնաս և կոտորած առնելով՝ դարձան անթիւ գերութեամբ, ո՛չ միայն աշխարհականօք, այլև եպիսկոպոսօք, քահանայիւք, կրօնաւորօք և խառնիճաղանճ ժողովուրդովք։ Եւ զայլս գերի վարեալ տանէին ընդ ինքեան, և զայլս ի ճանապարհին վաճառէին զվաթսուն խաղանն ընդ մի սողան. և ո՛չ թէ վասն սովի էր, այլ վասն նախատանաց և վասն ամօթոյ։ Եւ զայլ բազմութիւնս գերեացն տարան առ Թագաւորն Հայոց՝ աղգի ազգի լկտանօք և խայրդաւանութեամբք։

Եւ արար Թագաւորն մեծ ուրախութիւն և ցնծութիւն աշխարհն իւր և զայն ապրեցուցիչ աղջիկն ետ Սարգսի՝ ի կնութիւն, և արար հարսանիս մեծ՝ եօթ օր և եօթ գիշեր։ Եւ յետ ժամանակաց արար զնա վաղիր։ Եւ այսպէս հատուցաւ չարեացն՝ չար, աստ այսմ աշխարհի առհաւատչեայ և ետ աստեացս առնելոց են արդար դատաւորէն զպատիժն և զպատուհասն ամենայն մեղաւորք և չարագործք, որմէ փրկէ զամենայն հաւատացեալս իւր, ես տառեբ զստացողս սուրբ գրքիս, կարդացողաց և լսողաց, ամէն։

[1] Այսուհետև շարունակվում է ըստ № 3366 ձեռագրի, էջ 4ա—5բ։

## 4. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՍՆ ԹԷՈԴՈՐՈՍԻ ՌՇՏՈՒՆԵԱՑ ԻՇԽԱՆԻՆ ԵՒ ՎԱՍՆ ՈՐԴԻՈՅ ԻՒՐՈՅ ՎԱՐԴ ՊԱՏՐԿԻ

*Եւ գիտելի է, զի Թէոդորոս ըմբշտամի կալաւ զաշխարս Հայոց ամս քառասունհինգ և առաքեաց զորդի իւր զՎարդ առ Կոստանդին արքայն Հոռոմոց։ Եւ արարեալ զՎարդիկն պատրիկ Կոստանդին արքայ և մեծարեալ զՎարդն առաւել քան զամենայն իմաստունս Յունաց։ Իսկ Թէոդորոս եբարձ զհարկատրութիւնն ի տանէ տաճկաց և տայր ի տունս Յունաց։ Իսկ թագաւորն Պարսից ել ի վերա աշխարհին Վասպուրականի զօրօք բազմօք և հրձիգք արար առհասարակ, և զամուրսն առեալ գերեաց և դարձաւ։ Իսկ Թէոդորոս զհետ մտեալ եհաս նոցա ի գետն Երասխ և զբազումս սպանեալ, և զայլն փախստական արարեալ, և թափեաց զաւարն և գերադարձ արարեալ։ Եւ դարձեալ, ի միւսում ամին, եկն ի վերա աշխարհին Հայոց, և զօրացան ազգն Պարսից և ո՛չ տային հանգիստ աշխարհին Հայոց։ Եւ ի տարակուսանս մտեալ իշխանն Թէոդորոս, և եհաս նմա ախտ հիւանդութեան։ Կոչեաց զորդի իւր՝ Վարդ Պատրիկ և ասէ ցնա.*

*—Ես երթամ զճանապարհս հարց իմոց, այլ դո՛ւ, որդեակ իմ Վարդ, լո՛ւր զոր ասեմ քեզ. լո՛յծ զուխտ քո ընդ Հոռոմոց և դիր ուխտ ընդ արքային Պարսից, զի դրացի քո է և զօրացաւ յոյժ։ Արդ, զոր տաս ի տունն Հոռոմոց, տո՛ւր արքային Պարսից։—Եւ զայս ասացեալ ննջեաց։*

*Եւ ապա՝ յետ այսորիկ եղև պատերազմ ընդ Պարսից արքայի և ընդ Հոռոմոց։ Եւ առաքեաց Վարդ Պատրիկ առ արքայ Պարսից և եդ ուխտ ընդ նմա։ Եւ ապա գումարեաց զօրս բազումս Սահակ որդին Որմզդնայ Պարսից արքային և եկն եհաս յաշխարհն Յունաց։ Եւ ապա ա՛ռ աւարի զԿարնոյ, և զԴերջան, և զԵկեղեաց և եկն եհաս ի Կողոնիայ, և բանակեցան առ ափն Գայլ գետոյ։ Եւ Վարդն Պատրիկ առաքեաց առ արքայն Պարսից և ասէ.*

*—Ահաւասիկ դու պատրաստ լե՛ր, և զարքայն Հոռոմոց տամ ի ձեռս քո զօրովք իւրովք, որպէս և կամիս։*

*Եւ ապա գնացեալ Վարդն առ արքայն Հոռոմոց և ասէ այսպէս.*

*—Արքա՛ քաջ, այս ջուրն է Գայլ գետոյ. արդ՝ կապեա կամուրջս և տուր ելանել ամենայն զօրաց պատերազմողաց յայնկոյս, և այր ընտիր թողցես ի խելս կամրջիս պահել, զի երթիցեն յաղ-*

թիցեն պարսից խապառ, և թէ յաղթիցին՝ պատրաստ է կամուրջն անցուցանել զնոսա։

Եւ արար արքայն Հոռոմոց զամենայն, զոր դաւաճանեաց զնա Վարդն Պատրիկ, և հանեալ յայսկոյս առս՝ իբրև երիս բիւրս։ Եւ Վարդն Պատրիկ առեալ ի պահեստի զխելս կամրջացն, իսկ յառաջագոյն զարանամուտ եղեն զօրքն Պարսից՝ ի բազում տեղիս, զոր խրատ տուեալ էր Վարդն Պատրիկ։ Իսկ իբրև խմբեցաւ պատերազմըն, խոյս տուեալ զօրացն Պարսից, և դարձեալ դարձան և յաղթեցին զօրացն Յունաց, և խապառ կոտորեցին զնոսա, զի Վարդն քարշեաց զկամուրջն և միաբանեաց ընդ զօրացն Պարսից, և դարձան մեծաւ յաղթութեամբ։ Իսկ Վարդն եկն յաշխարհն Վասպուրական, հաս ի ծովն Ըռուշտունեաց, ուր էր արքունիսն իւր։ Եւ ահա տեսանէր տեսիլ ահաւոր և սոսկալի, զի լինէր ինքն իբրև ի մէջ ծովու արեան, և կախեալ կայ է նորա զոտից իւրովք, և այլք զի քարշէին զնա յանդունդս՝ մերձ ի յընկղմել։ Եւ ի զարհուրանացն զարթուցեալ՝ ձայն եբարձ մինչև ամենայն ապարանքն զարհուրեցան։ Եւ իբրև առաւօտ եղև՝ կոչեաց զեպիսկոպոսն, որում անուն էր Գրիգոր, և անկաւ առաջի նորա, ի վերա մոխրոյ, և ասէ.

—Մեղա՛ տեառն աստուծոյ և արդ, տէ՛ր, տեսի զկործանումն իմ։ Ես գիտեմ զանօրէնութիւնս իմ, և արդ տեսի աչօք իմովք չարաչար զգժոխս իմ։

Եւ ասէ ցնա եպիսկոպոսն։

—Ո՛վ դու պատերազմող և բարի անուն. ահեղ անօրէնութիւն գործեցաւ ի ձեռս քո։

—Արդարև, տէ՛ր, ծանեա՛ զանօրէնութիւնս իմ և ահա զարհուրեալ եմ և դողամ։ Եւ արդ՝ զի՞նչ հրամայես զդեղ վշտաց իմոց։

Եւ ասէ եպիսկոպոսն.

—Յղեա՛ և կոչեա՛ զայր արդար, որ է ի լերինն Արտօսր, որոյ անունն Սիմէոն կոչի։

Եւ յղեաց, և կոչեաց զնա, և անկեալ յայր առաջին նորա։ Եւ նա ասէ.

—Մի՛ լար, որդեա՛կ, կարող է աստուած փրկել զքեզ ի հեղլոյ արեանցն յայնցանէ։ Եւ ահա յայտնապէս եցոյց քեզ զվնասս քո, մինչդեռ ի մարմնի ես, և արկեալ բևեռեաց զքեզ ընդ յերկիւղ իւր։ Եւ արդ փութա՛ և մի՛ հեղգար, զի ո՛չ է հնար փրկել քեզ յարենէդ յայդմանէ, և թէ ոչ արևամբն Քրիստոսի ուղղոյն աստուծոյ. թերևս նա՛ ազատեսցէ զքեզ յանհնարին աղէտիցդ։ Եւ ահա շէ՛ն է աշխարհս Վասպուրական, որպէս տեսանես, ով Պատրիկ դու, և ունիս

դանձս բազումս։ Եւ արդ, շինեա՛ եկեղեցիս և մատչի պատարագս յանուն քո։

Եւ ասէ Պատրիկն.

—Եթէ այդու ազատիմ՝ բազում եկեղեցիս շինեմ։ Եւ արդ՝ զի՞նչ հրամայես, յո՞յր անուն շինեցից զեկեղեցիսն։

Եւ ասէ միայնակեացն.

—Լո՛ւր Պատրիկ դու։ Առաջինն Քրիստոսի փրկագործ արիւնն հեղաւ, և զկնի՝ վասն նորա արիւն սրբոյն Ստեփաննոսի Նախավկային, որով և անուն քո Ստեփաննոս Թարգմանի։

Յայնժամ Վարդն Պատրիկ համարեալ գեւղս հազարս և ապանաշէնս և ի փափարադունս, և սկիզբն արարեալ հիմնարկութեան եկեղեցեաց հազարաց ի տեղիս՝ յորում անխափան լիցի յիշատակ պատարագաց։ Եւ ասէ Վարդն ցերանելի այրն աստուծոյ.

—Երանի թէ ունէի մասն ի նշխարաց սրբոյն Ստեփաննոսի, զի նովաւ աւրհնէի զեկեղեցիսն, որ յանուն նորա։

Եւ ասէ միայնակեացն.

—Ո՛վ Պատրիկ, դու սկսիր շինել զեկեղեցիսն և ես երթամ յԵրուսաղէմ, և յաջողեսցէ աստուած ըստ կամաց քոց։—Եւ նոյնժամայն յուղի անկեալ գնաց յԵրուսաղէմ և անցեալ ի վկայարան սրբոյն Ստեփաննոսի, և յաղօթս յամեալ սպասաւորեաց ամս երիս, և ապա ի տեսչութենէն աստուծոյ յայտնեցաւ Նախավկայն Ստեփաննոս ի տեսլեանն. ասէ ցեկեղեցպանն. «Տեսանե՞ս զաշխատութիւն առնդ, որ կայ և ճգնի։ Եւ արդ՝ տո՛ւր նմա մասն և արձակեա՛ զնա, զի գնասցէ, զի բազում եկեղեցիք շինեցաւ յանուն իմ յաշխարհին Հայոց»։ Եւ նա զարթուցեալ ի տեսլենէն, կոչեաց զերանելի այրն և ասէ ցնա.

—Ասա՛ ինձ, եղբայր, ուստի՞ ես դու և յէ՞ր աղագաւ ճգնիսվասն քո՞, և թէ վասն այլոյ ուրուք։

Եւ պատասխանի երանելին և ասէ.

—Յաշխարհէն Հայոց եկեալ եմ վասն իմոյ յանցանաց և ո՛չ վասն այլոց։

Եւ ասէ եկեղեցպանն.

—Մի՛ ստեր, եղբա՛յր, քանզի յայտնեաց ինձ յայսմ գիշերի Նախավկայն սուրբն Ստեփաննոս և ասաց ինձ՝ տա՛լ քեզ մասն ինչ ի նշխարաց իւրոց և ասաց թէ՝ յաղագս եկեղեցեացն, որ շինեսցին յաշխարհին Հայոց։

Եւ յարտասուս եղեալ միայնակեցին և ասէ.

—Արդա՛ր ես, յաղագս այդր աշխատիմ։—Իսկ նորա տուեալ

մասն ինչ ի նշխարաց սրբոյ վկային, և գրեաց առ Պատրիկն զիրս տեսլեանն և արձակեաց զնա։

Եւ եկեալ աւրհնեաց զհամօրէն եկեղեցիսն՝ կացեալ ի պահս աւուրս քառասուն, և ապա յերեկօրեա հսկումն արարեալ եպիսկոպոսք և քահանայք բազումք։ Իսկ մինչդեռ հսկմանն էին, տեսանէր Պատրիկն զնոյն տեսիլն, զոր յառաջն եւտես, զի լինէր ի մէջ արեան ծովուն նովին կապանօքն։ Եւ գային քահանայք թուով հազար, ըստ թուոյ եկեղեցեացն և բուռն հարկանէին զերկու ձեռաց նորա. և Սիմէոն հանէր ըղշղթայս յոտից նորա և զկապարանն ընկենոյր ի ծովն. և իբրև զձագս արծուոյ՝ թռուցեալ բերէին յարքունիսն իւր և նստուցանէին առ աղբերն, որ ի դրանն իւրում։ Եւ առեալ լուացին զարիւնն ի մարմնոյ նորա և բերեալ զգեցուցին նմա հանդերձս սպիտակս և եդին ի գլուխս նորա թագս։ Եւ յետ այսորիկ Վարդն Պատրիկ բաշխեաց զամենայն զգանձս իւր աղքատաց և զգեցաւ ի ներքոյ մազեղէն փաքր, մինչև յարմունկսն, և ապաշխարէր. և ո՛չ ումէք յայտնեցաւ, մինչև յօր մահուան իւրոյ։

Իսկ ի սորա յաւուրս յայտնեցաւ սուրբ Խաչն, որ ի Վարագ, և էր թուականն հայոց ՃԲ (653)։ Եւ Քրիստոսի աստուծոյ Փառք։

## 5. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՍՆ ԳԵՐԵԶՄԱՆԻՆ ԵՒ ՈՍԿԵՐԱՑՆ ՎԱՐԴ ՊԱՏՐԿԱՅ

Որպէս գրեալ է ի պատմութիւնս Վարդ պատրկայ, որ նենգութեամբ և հնարիւք ետ կոտորել զազգն Հոռոմոց՝ Պարսից ազգին. և զայս նախանձս և ոխս տակաւին ունին ի մտի ազգն Հոռոմոց. և մինչև ցայսօր հնարեն վրէժխնդիր լինիլ նախանձուն այնմիկ։ Եւ ամաց յամս գան մարդիկք ի Հոռոմոց ազգէն առ ի գողանալ զնշխարս ոսկերաց Վարդ Պատրակայ, զի տարեալ ի մէջ իւրեանց կատարեսցեն ի վերայ նորա զչար կամս իւրեանց որպէս և յօժարի միրտք [sic] իւրեանց։

Եւ եղև զի յամս և ի ժամանակս յետինս՝ ի թուականիս Հայոց ՌԺԳ (1564), դարձեալ եկին յազգէն Հոռոմոց արք երկու գողանալ զոսկերս Վարդ Պատրկայ, որ թաղեալ կայ ի մէջ եկեղեցւոյն ի գիւղն Խորգոմ ի Հայու ձոր կոչեցեալ գաւառին՝ ի Վասպուրական աշխարհին։ Արդ՝ զոսկերսն Վարդ Պատրկայ թաղեալ է ի մէջ եկեղեցւոյն որ նախկի շինեալ է ի վերայ երեսաց երկրի ի վերայ բնական գետնոյ, և ապա հողով ծածկեալ են զայն եկեղեցին և կու-

տեալ են բազում հող ի վերայ նորա, որ եղեալ է մեծ բլուր. ուր կարծի ի տեսողացն, թէ ի սկզբանէ յաւիտենից աստուածաստեղծ բլուր է և ոչ շինովի. և հողն ծածկեալ է զեկեղեցին և առաւել ևս բարձրացեալ, և ապա յետոյ ի գլուխ բլրին միւսանգամ նոր եկեղեցի են շինեալ ի վերայ գագաթան ներքին եկեղեցւոյն. և յայսմ եկեղեցւոջ կատարեն քահանայքն զժամակարգութիւնն և զեօթն խորհուրդս եկեղեցւոյ. նաև գիւղականքն անդ դան և աղօթեն: Եւ գիւղն ոչ է շուրջ բոլոր զեկեղեցեաւն՝ այլ յարևելից կողմն եկեղեցւոյն ի սիրտ բլրին և յարևմտից կուսէ եկեղեցւոյն և բլրին ծովն է՝ զոր Վանայ ծով կոչեն, իբրև քսան կանգուն հեռի եկեղեցւոյն: Այլ և գետ ջրոյ ի յարևելից կողմանէ գեղջն և եկեղեցւոյն գայ. և ի հարաւային կողմանէ նոցին անցանէ և խառնի ի ծովն: Եւ եկեալ երկրքին Հոռոմքն նախ՝ ձևացուցեալ են զինքեանս իբր զայր առաքինի և հաւատարիմ և հրաժարեալք յաշխարհական իրաց. այնքան՝ մինչ որ քահանայք և ժողովուրդք հաւատացեալ են նոցա և զբանալին եկեղեցւոյն ի նոսա տուեալ և զնոսա լուսարար եկեղեցւոյն և ժամկոչ են կարգեալ: Եւ նոքա թէ յետ յոլովից և թէ յետ սակաւուց ժամանակաց, ի դիպող ժամանակի յարևմտից կուսէ յեկեղեցւոյն իբրև տասն և հինգ կանգնաւ հեռի յեկեղեցւոյն ծակեալ են զգետինն, փորեալ են նաղմ, և այնպէս նաղմն փորելով յառաջ գնացեալ են, զի թերևս մտցեն ի ներքին եկեղեցին, յորում ոսկերքն Վարդ Պատրկայ թաղեալ կան. և զփորեալ հողն նաղմին բերեալ են ի ծովն թափեալ ի գլխոյ փլին. քանզի եզր ծովուն փուլ է՝ զոր ալիք ծովուն արարեալ է: Եւ որովհետև գիւղն ի յարևելից կողմն բլրին էր՝ և յարևմտից կողմն անբնակ էր, յայսմ պատճառէ անքոյթ էր ի մարդկանէ տեղին. վասն այսորիկ արքն վստահացեալ զայս գործէին: Արդ՝ ի թափեալ հողոյն և ի հարելոյ ալեաց ծովուն՝ պղտորեալ են ջուրքն և պղտորութիւն ջուրցն խառնեալ է ընդ ջուրց գետոյն և զառ ի վեր ընդ գետն գնացեալ, քանզի ջուրք գետոյն ուռկան տուեալ կանգնեալ կան յեզր ծովուն: Իսկ գեղականքն տեսանէին զի ջուրն, որ հանապազօր պարզ և յստակ էր, այժմ պղտոր է, ասէին, «Անձրև ո՞չ է եկեալ և հեղեղ ոչ է եղեալ՝ և վասն է՞ր են ջուրքս պղտոր»,—ասէին ընդ միմեանս և հիանային և խնդրէին զպատճառն: Եւ շրջելով և որոնելով պատահեալ են թափած հողոյն, և ապա գտեալ են զծակն և զնաղմն. ապա կալեալ են զարսն զայնոսիկ և ի ծածուկ և ի ներսագոյն տան արգելեալ, և այնքան հնարեալ են գեղականքն մինչ արքն այնոքիկ զստոյգն ասացեալ են. թէ՝ «Եկեալ եմք, զի զոսկերսն Վարդ Պատրկայ հան-

ցուք և տարցուք»։ Ապա ի գեղականացն, որք խորհրդականքն էին լեալ Թաքուն ի խառնիճաղանճ արանց ի գիշերի միում զերկուսին զարսն զայնոսիկ եղեալ են ի վերայ տիոյ և հանեալ ի վերայ ծովուն և յառաջ խաղացուցեալ տարեալ ի մէջ ծովուն և կապեալ են քար ի պարանոցս նոցա, և այնպիսի թողեալ են ի խորս ջուրց ծովուն։

Արդ՝ կատարումն գործոյս այսպէս եղեալ է, զոր ծերք և վաղեմի մարդիկք պատմեցին, իսկ գեղականքն այնուհետև առաւել զգուշութեամբ պահեն զեկեղեցին զայն ի հանապազորդեան ժամանակի, իբր զաւանդութիւն ստացեալ յորդիս ի հարց, ի փառս Աստուծոյ։ Եւ այս ևս այսպէս։

## 6. ԹՈՐՈՍ ԻՇԽԱՆ ՀԱՅՈՑ ԵՒ ՈՐԴԻՔ ՄԱՆԴԱԼԷԻ

Յայսմ ամի [1111—1112] եղեւ վրէժխնդրութիւն Աստուծոյ անմեղ արեան Գագկայ Շահնշահի՝ որդւոյ Աշոտոյ Բագրատունւոյ, ի ձեռն առն հզօրի և մեծ իշխանին Հայոց Թորոսի՝ որդւոյ Կոստանդեայ՝ որդւոյ Ռուբենայ։ Արդ, ի յաւուրս Թորոսի էին սպանողքն Գագկայ արքային Հայոց ի բերդն, որ անուանեալ կոչի Կնդռոսկաւիս, ահաւոր ամրութեամբ բարձրացեալ՝ անպարտելի յամենայն կողմանց։ Եվ որդիքն Մանդալէի դեռ եւս կենդանի էին երեք եղբարք։ Եւ մի ի նոցանէ ունէր ընդ Թորոսի միաբանութիւն վասն խնամութեան, և յաղագս այսորիկ խոստացեալ էին տալ զբերդն՝ Թորոսի, վասն զի սահմանակից էր գաւառի նորա, մերձ ի յերկիրն, որ կոչի Ջկնջուր, լեռնահայեաց Գամրաց աշխարհին։ Յայսմ ամի յարուցեալ իշխանն Հայոց, և սակաւ ինչ զօրօք գնաց առ նոսա սիրոյ աղագաւ, և իջեալ ի սահմանսն այն և յուղարկեաց զնոսա ծանուցումն [առնել] զգալն իւր։ Յայնժամ մի ոմն ի սպանողացն առեալ ընծայս եւ գայր առ Թորոս։ Եւ նա մեծարեաց զնա։ Եւ նա հանեալ դանակ մի ծանրագին և հանդերձ մի դնէր առաջի Թորոսի։ Կերան եւ արբին։ Յայնժամ ասէր ցնա Թորոս, եթէ՝ «Առ իս խոստումն կայ ձեր՝ վասն բերդին, տուք ի յիս, և յամենայն գաւառս իմ առէք ձեզ տեղի, զոր կամիք»։ Եւ նորա ստեալ զյառաջասացեալսն, և ասէր ցիշխանն Հայոց, եթէ՝ «Ոչ կարեմք տալ զբերդն վասն զի մեր հայրենիք է և ազգի տեղիք»։ Եւ իբրեւ գիտաց Թորոս, եթէ խաբեցաւ ի նոցանէ, տայր զբերեալ նուէրս յինքն և սրտմտեալ ասէր. «Արի և գնա ի տուն քո, և յայսմ հետէ պատրաստ եղերուք

յինէն»: Եւ յարուցեալ աստուածասպանին դարձաւ ի տուն իւր:
Դարձաւ և Թորոս դիմօք ի տուն առաջի աչաց նորա: Եւ իբրեւ գնաց սպանողն եղեւ աներեւոյթ, դարձաւ Թորոս զօրօքն և ի գիշերին հասանէր ի վերայ բերդին, և դարանակալ առնէր զհետեւակ զօրսն, և ձիաւորովն հեռանայր յագարակսն. կամեցաւ ապատակ առնել զերկիրն: Իսկ ի լուսանալ առաւօտուն, ելանէին ի բերդէ բերդացիքն, և հանդիպեցան ի վերայ քմնին, յորժամ տեսին՝ եղեն փախստական: Եւ յարուցեալ զօրացն Թորոսի, ընթանային ընդ զառ ի վեր բերդին: Եւ յորժամ տեսին բերդացիքն, փակեցաւ դուռն, և նոքա արտաքոյ կալան զդուռն, և սկսան պատերազմել, և կրակ հարկանէին ընդ ցուեաց բերդին, և նա յոյժ բորբոքեցաւ: Եւ յորժամ տեսին բնակիչքն՝ բացեալ ի յայլ կողմանէ դուռն, և ելեալ փախեան: Եւ զօրքն Թորոսի առին զբերդն և կալան զփախստականսն, և հասեալ պատմեցին Թորոսի: Եւ նա յոյժ հիանայր, և գայր մեծաւ ուրախութեամբ ի բերդն ի Կոնդոսկափ: Եւ յորժամ մտաւ ի բերդն, սկսաւ քննութիւն առնել գանձատան նոցա, վասն զի ամենայն գաւառին գանձ ոսկի և արծաթ անդ ի պահեստի էր ժողովեալ: Եւ ասէր Թորոս ցՄանդալէի որդիքն, եթէ՝ «Բերէք առ իս զԳագկայ թուրն, և զհանդերձն Հայոց թագաւորին»: Եւ նոքա բերին: Եւ տեսեալ Թորոսի ելաց դառնապէս, և ամենայն զօրքն լային: Եւ յայնժամ հրամայեաց Թորոս ցուցանել զգանձս իւրեանց: Եւ նոքա պնդեալ ոչ գային ի խոստ: Եւ սկսան ի խոշտանգանս արկանել զնոսա: Յայնժամ միւս եղբայրն աղաչէր զզօրականսն, զի տարցեն զնա ի քարակտուրն, զի ջուր հեղցէ: Եւ յորժամ տարան, ձգէր զինքն ի բարձրութենէ քարին ի վայր, և անկեալ սատակեցաւ չարաչար: Իսկ զմիւս եղբայրն սկսաւ ի վտանգ արկանել Թորոս, և նա լրբենի երեսօք ասէր ցԹորոս, եթէ՝ «Դու Հայ մարդ ես, և մեք Հոռոմք իշխանք, զի՞նչ կամիս պատասխանիս տալ Հոռոմոց թագաւորին, որ դատես զմեզ»: Յայնժամ սրտմտեալ Թորոս, և գոյն երեսաց այլագունեցաւ: Եւ առեալ ի ձեռին իւրում բիր մի կռանի, և գազանաբար յարձակեցաւ ի վերայ նորա և ասէր, եթէ՝ «Ո՞վ էիք դուք, որ զայր հզօր և զօծեալ թագաւորն Հայոց սպանիք, և կամ զի՞նչ պատասխանի ետուք ազգին Հայոց»: Եւ յալախառն սկսաւ չարաչար հարկանել զնա՝ մինչեւ սատակեցաւ դառնահառաչ մահուամբ: Եւ յայնժամ գոհանայր զԱստուծոյ, որ էառ զվրէժ արեան Գագկայ Հայոց արքային, վասն զի հայր հօր նորա Ռուբէն ի զաւակացն Գագկայ էր: Եւ միաբարձ արարեալ զամենայն տունս նոցա, բազում գանձս և դիպակս և խաչս յոյժ

մեծամեծս արծաթիս, և պատկեր ոսկեձոյլ և արծաթ առեալ գնաց ի Վահկայն, և զմիւս եղբայրն կինի տանէր, և դնէր զզօրսն ի բերդն պահապանս։

## 7. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՔԱՋԻՆ ՀԱՅՈՑ ԹՈՌՆԿԱՅ

Յայսմ ժամանակի յայտնեցաւ ոմն ամենաչար և որդին սատանայի Փիլարտոս, որ ի յանցանելն Տիօժէնին բռնակալեցաւ ի վերայ երկրի։ Այրն չարաշունչ, որ էր իսկ սա կարապետ նեռին պղծոյ և դիւայրնակի, նա ըսկսաւ պատերազմ տալ ընդ հաւատացելսն Քրիստոսի, վասն զի էր նա անհաւատ և հրետիկոս, ոչ հայ և ոչ հոռոմ, ոչ այլ քրիստոնեայ. վարք և կրօնք հոռոմոց ունէր, իսկ հայրենեօք և մայրենեօք հայ էր։ Եւ ի տղայութեանն իւրում կացեալ էր առ հօրեխպօր իւրում՝ ի վանս, որ կոչի Ջօրվրի Կողեռն ի հարսն Մըսրայ գաւառին։ Սա ելեալ յանապատէն եղև քակտիչ և ապականիչ աշխարհի։ Սա տիրեալ բազում գաւառաց և քաղաքաց, և բազում մեծամեծ զիշխանսն կոտորեաց անողորմ, դաւանաբար և նենգեալ բնակեցաւ ի Մշրան. և յղեալ կոչեաց զքաջն Թոռնիկ, զտէրն Սասնայ գալ նմայ երկրպագութիւնն և ի հնազանդութիւնն։ Եւ զայն լուեալ Թոռնկայ՝ որդին Մուշեղի, և ծիծաղեալ զանմիտ հրամանս նորա, և ասացեալ թէ՝ Ահա ես ո՛չ տեսանեմ զերեսս նորա բնաւ։

Եւ ասեն կոչնականքն զԹոռնիկն, թէ՝ Ահա գա՛յ նա ի վերայ քո բազում զօրօք և տապալեալ աւիրէ զամենայն գաւառս։

Ասէ Թոռնիկ.

—Եվ քանի՞ են զօրքն Փիլարտոսի։

Եւ նոքա ասեն. Քսան հազար։

Ասէ Թոռնիկ.

—Են իմ քսան ձիաւորք, որ հանապազ հաղորդին ի մարմնոյ և յարենէ տեառն, բայց զայս այսպէս գիտեմ, զի Փիլարտոս և յամենայն զօրքն իւր թափուր և յունայն են յայնմ յամենայնէ, այլ և ի հաւատոց և կան լցեալ ամենայն մեղօք և չարութեամբ։

Եւ նոքա գնացեալ պատմեցին զայն Փիլարտոսին։ Յայնժամ կոչէ զտէր Գրիգորիսն Փիլարտոս և ասէ ցնա, եթէ՝ Քո փեսայն Թոռնիկ է, գնա՛ և ասա նմա, որ գայ ինձ հնազանդութիւնն։ Իսկ տէր Գրիգորիսն, որ է Վահրամ, վասն չար բարուցն Փիլարտոսի, ո՛չ ի կամաց այլ ակամա, գնաց առ Թոռնիկն և այլ ոչ տեսաւ

զերեսն պիղծ Փիլարտոսի, և պատմեաց Թոռնկայ զպատճառ գալոյն։ Եւ նա հիացեալ ասէր.

—Զիա՞րդ ոչ պատկառեցան երեսք անօրինին ի սաստիկ լրբութեանցն՝ յղարկել զքեզ առ իս իբրև զդեսպան հանդերձ սուտ երդմամբ։

Եւ գիտացեալ Փիլարտոսի, թէ ոչ գայ Թոռնիկ ի կոչ նորա, զօրայժողով արարեալ գնաց ի վերա նորա։ Եւ Թոռնիկ ո՛չ գիտացեալ զգալն, իբրև լուաւ, ձայնեաց զօրաց իւրոց և արար ժողով ի Սասուն՝ հինգ հազար հետևակաց, վեց հազար ձիաւորաց, և գայր ի Ճապաղ ջուրն և ոչ հաւատայր ի գալն Փիլարտոսի. դարձոյց զամենայն հետևակ զօրսն և ինքն քսան հազար ձիաւորօք գնայր ի Աշմուշատ քաղաքն Հայոց։ Եւ Աւեխտայ դաշտին հանդիպեցան զօրքն Փիլարտոսի։ Եւ էր ֆռանկաց կոմս ընդ նըմայ՝ ութ հարիւր արամբք։ Եւ տրտմեցաւ Թոռնիկ, որ դարձոյց զհետևակ զօրսն իւր։ Եւ այնժամ ըսկսաւ կարգել զզօրսն իւր դաս դաս՝ այս կոյս և այն կոյս, և առաջոյ. և թիկնապահ իւր եդեալ զԿապոս զայրն քաջ՝ երեք հարիւր արամբք, բայց ակնածէր ի ֆռանկէն, քան զայլ զօրացն, և ասէր.

—Տեսէ՛ք, զի մեր գունդն երթիցէ ընդդէմ ֆռանկաց։—Եւ ահա գայր բազում զօրօք Ումբաղտն ֆռանկ և զօրքն իւր։ Եւ ի դիմի հարան Թոռնկայ գնդին և պատառեալ զզօրսն էանց ընդ մէջ։ Յայնժամ ձայն տուեալ զօրաց իւրոց Թոռնիկ և եկեալ զօրքն միաբան՝ առին ի մէջ զնոսա և զամենայն իշխանս ձերբակալ արարին, և զօրըս փախուցին և կալան հազար հինգհարիւր այր։ Եւ յաւուրն այնորիկ եղև մեծ կոտորած ֆռանկաց և այլ քրիստոնէից։ Եւ դարձաւ Թոռնիկ և յամենայն զօրքն Հայոց ի մեծ պատերազմէն բազում աւարաւ։ Եվ Փիլարտոս փախեաւ և լի յամօթով գնացեալ եմուտ ի Խարբերթ քաղաք։ Զայս աւուրս գայր Թոռնիկ սակաւ զօրօք ի մտանել ի բերդն իւր Աշմուշատ։ Եւ յանկարծակի գայր ամիրայն ոմն բազում զօրօք, յորում անուն էր Քաբրամիչ։ Եւ լուաւ եթէ Թոռնիկ առանց զօրաց է։ Յայնժամ հրամանաւ Փիլարտոսին* [գայր] ի վերա նորա. և խաբէութեամբ և սուտ երդմամբ ըսկսաւ միաբանութիւնն կարգել ընդ նմա, մինչև ի ձեռն տրոց և ընծայից հաւանեցուցանէր զծառայսն Թոռնկայ։ Եւ այսու պատրեալ զնա հանէր ի սուտ միաբանութեանն վեց արամբ միայն։ Եւ մինչդեռ կային ի գինարբուսն, վաղեաց ամիրայն զգօնաբար ի վերա Թոռնկայ և կամէր բաղանանել զնա. և զի չունէր զէն Թոռնիկ ընդ իւր, բայց փոքր դանակ մի, զորով հարեալ զամիրայն՝ ի վայր հեղոյր զամենայն փոր

* Ձեռ. Թոռնկայ։

նորա։ Եւ զայլ ամիրայս կալեալ՝ զպատիւ ընդ իրար յարեալ և ծեծելով սատակէր զնոսա և ինքն նլեալ անվնաս՝ երթայր ի տուն իւր, վասն զի մօտ էր։ Եւ ամենայն թուրքն փախստական լինէին առաջի նորա։ Եւ յորժամ գնաց նա մօտ ի բերդն, մի ոմն այլազգացն թագրատի կայր. եհար զԹոռնիկ ռմպովն ի սիրտն ի վայր՝ հեղոյր զամենայն փոր նորա զաղտաղար, յորմէ մեռաւ քաջն Թոռնիկ։ Եւ առեալ զգլուխ նորա տարան առ Փիլարտոս։ Եւ անօրէնն հանէր զոզաւատակըն գլխոյն, շինեաց գաւաթ և նովաւ խմէր գինի։ Եւ զմնացեալ ի գլխոյն առաքէր ամիրային Մուֆարղնայ։ Եւ զամենայն մարմինն այրեցին հրով, զորս յետոյ ժողովեցին զայրեցած ոսկերքն զառն քաջի և աստուածապաշտի՝ և տարան թաղեցին ի դուռն սուրբ Կարապետին։ Եւ մնաց իւրն երկու որդի՝ Զորտուաննէսն և Վասակ՝ ի տղայական հասակս։ Ապա յղեալ կոչեաց Փիլարտոս զտէր Գրիգորիս՝ յաթոռ հայրապետութեան։ Եւ նա ոչ եկն ի կոչ նորա, վասն զի զարհուրեալ էր ի չար գաղանէն։ Դարձեալ գրէ առ սուրբ հայրապետն և ասէ.

—Չէ՛ օրէն աթոռ հայրապետի [թափուր] կալ։ —Եւ նա ոչ համարձակեցաւ գնալ, այլ ասէ.

—Դի՛ր իմ հրամանաւ աթոռ հայրապետութեանն տէր Սարգիս՝ զքեռորդին տէր Պետրոսի,—ուղարկեաց առա զքօղն և զգաւազանն և զնշան տէրունական տէր Պետրոսի՝ առ տէր Սարգիս։ Եւ տեսեալ Փիլարտոսի՝ ծանեաւ զամենայն, թէ այլ ո՛չ է գալոց յաթոռն իւր, հրամայեաց Փիլարտոս ժողով լինել եպիսկոպոսաց, և հարանց վանականաց, և կրօնաւորաց՝ և ձեռնադրեացն զտէր Սարգիս յաթոռ կաթուղիկոսութեանն յամենայն Հայոց ի քաղաքն, որ կոչի Հոնի, ի Ջահան գաւառի, վասն զի էր այր սուրբ և հրաշափառ, տեսլեամբ գեղեցիկ և առաքինի, զարդարեալ ամենայն առաքինութեամբ, աստուածապաշտութեամբ ամենայն կողմանց և ճշմարիտ խոստովանութեամբ, որ ի Քրիստոս Յիսուս, և էր կարգեալ հովիւ հօտին Քրիստոսի։

## 8. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՔԱՋ ԼԻՊԱՐԻՏԻՆ ԵՒ ՔԵՌ ՆՈՐԻՆ

Քաջ Լիպարիտ էր ի Սասնոյ գաւառէն, որ եկեալ բնակէր ի Կիլիկէ, ի ժամանակս վերջին թագաւորացն Հայոց, որ ի յազգէն Ռուբինանց Հեթմոյ և Թորոսի, և ի նոցին թոռանցն։ Եւ էր նա քաջ՝ նման Տրդատայ, նման Մուշեղայ։ Զոր դային տաճկաց ազգն ի Մսրայ բազում զօրօք ի վերայ Տարսոնի և Կիլիկեայ գաւառին, և

ինքն քաջ Լիպարիտն միայն ելանէր ի դէմ և կոտորէր զամենեսին, և դիզէր զլաշն որպէս բլուր բլուր։

Եւ գայր յեզր կարմնջին՝ առ զօրսն Թագաւորին. և նստեալ հանգչէին ինքն և ձին։ Եւ կրկին մտանէր ի պատերազմ, և կոտորէր զնոսա, և փախուցանէր, և բազում ժամանակս անհասան և անվրէպ պահեաց զԹագաւորութիւնս Հայոց. զօրսն, զԹագաւորն ձերբակալ առնէր և զզօրսն կոտորէր, և զօրսն փախուցանէր և հալածէր։ Եւ ի յահէ նորա ոչ իշխէր գալ հեծել ասպատակել զՀայս։

Եւ Թագաւորն Հայոց երկեաւ ի քաջ Լիպարիտէն, զի մի գուցէ և զինքն սպանանէ և Թագաւորէ։ Այլ քաջն հոգով և մարմնով Լիպարիտ ո՛չ ունէր այնպէս վատ խորհուրդ, այլ միամիտ ի սէրն Քրիստոսի և սուրբ հաւատոյ Լուսաւորչին, և սուրբ եկեղեցեացն՝ քաջութեամբ կայր արիաբար ընդդէմ զօրացն տաճկաց։ Բայց յետոյ Մանճակ անուն ումն ի Մարայ, հեծեալազօր հսկայաձև և քաջ, եկաւ խնդրել ի սուլթանէն, զի եկեալ սպանցէ զքաջ Լիպարիտն։ Եւ եկալ հիսուն հազար հեծելով և բանակ էարկ ի դէմ Սըսու։ Եւ Թագաւորն Հայոց յայնմ ժամանակին ձենեց զքաջ Լիպարիտն և ասէ.

—Քեզի համար եկեր է հեծելս։

Եւ նա ի լաց և ասէ.

—Իմ ջանս վասն եկեղեցեաց է և քրիստոնէից, և ո՛չ վասն Թագաւորութեան. է՞ր պատճառես զիս, որ զքո թշնամիքն հալածել և խորտակել եմ։ Բայց յուսամ ի Քրիստոս, որ նոյն ինքն տայ կարողութիւն ծառային իւրոյ՝ որպէս ընդդէմ կալ և վանել զթշնամին խաչի նորա։

Եւ նոյնժամայն եմուտ յեկեղեցին, և լալով համբուրեաց զսուրբ խորանն, և ասէ.

—Բարո՛վ կացէք, զի թշնամեաց ո՛չ վախենամ, ապա յիմո՛ցս թշնամութեամբ խորհուրդ խորհէին ինձ. բայց ես միամտութեամբ դնեմ զանձն իմ ի վերայ քրիստոնէից։—Եւ համբուրեաց զեղբայրն իւր՝ զՎասիլ և զորդին իւր՝ զՅովհաննէս, և զկինն իւր՝ զԱննայ, և բազում ողբով գովեց, և ասէ.—Ո՛չ գիտացին զջանս իմ և զքաջութիւնս, այլ որժամ հեռանայ ոտս ի դրանէ արքունի, պատին գազանք վայրենիք և արեան ծարաւիք, և անէրք ածեն եկեղեցեաց և դարպասաց, և այնչափ արիւնս հեղուն անպարտ քրիստոնէիցն։

Եւ երեր զձին, Թամբեց և հեծաւ քաջն Լիպարիտ, և բռամբն ի ձեռին խաղայր առաջի զօրացն Հայոց Թագաւորին, և օրհնէր զաստուած։ Եւ ի ձայնէ գոչմանէ նորա՝ ահաբեկ լինէին թշնամիք և սրտակոտոր, որպէս զգոչիւն առիւծոյ։ Եւ սովորութիւն էր նմա՝

երկու—երեք քաջ ձի թամբօք պահէին զհետ նորա. և յորժամ հոգնէր ձին ի վազելոյ և ի գնացմանէ, դառնայր առ հեծելն և իջնայր ի ձիուն, և հեծնայր ի միւսն և դառնայր ի պատերազմն: Եւ բազում անգամ ի մէջ պատերազմին անկաւ ձին, և ինքն հետևակ կռուելով ի հետ ձիաւոր և բռումբաւոր և զրահաւորացն, և կոտորելով ելանէր ի միջոյ ամբոխին, և երթայր առ զօրսն, և հեծնայր զմիւս ձին, և դառնայր գոչելով՝ որպէս պառիւծ: Եւ մնամ թէ շա՛տք ի յահէ նորայ մեռանէին ի վերայ ձիոց: Եւ նա, ըզկռուղոն կոտորէր, որպէս զհուր յեղեգն: Եւ որք հարկանէին զնա սրով և նիզակաւ և նետով, ոչ նայէր յետս, զի ոչինչ համարէր զնոսա և զհարուածս նոցա այնպէս թուէր, թէ տաճկինակով հարկանէին զինք: Այլ և բազում անգամ հետևակ մտնէր ի կռիւ, ի մէջ ձիանց՝ և միայն քարաձգութեամբ դարձուցանէր զթշնամիսն, և ինքն դառնայր ուրախութեամբ օրհնելով զաստուածն:

Եւ մի ոմն քաջ, Մանճակ անուն, որ եկեալ էր ի կռիւ հիսուն հազարով: Եւ ել քաջն Լիպարիտ գոչելով և օրհնելով զահեղ անունն աստուծոյ, և գնայր խաղալով ի դէմ զօրացն: Եւ նոքա սասանեցան, երբ տեսին զյաղթող վկայն: Եւ մտեալ ի կռիւ և հարեալ՝ վանեց և կոտորեց զնոսա և սպան զՄանճակն, և դարձաւ յետս, և կուտեց զլաշն դիզան դիզան: Եւ ի խոնճել երիվարին դարձաւ յետսն՝ առ զօրսն Հայոց: Յայնժամ թագաւորն չարացաւ, էառ զՀայոց հեծելս և յետս դարձաւ, էանց զկարմունճն ի փլցոյց զնա կապանաւն: Եւ եկեալ քաջն Լիպարիտ և ետես զչարութիւն, որ վասն իւր: Եւ ինքն զմահն յանձն էառ՝ վասն Քրիստոսի, և դարձաւ յետս, և էջ յերիվարէն և ընկեց զսուրն իւր ի բաց, և նստաւ ի մէջ ասպարիզին: Յայնժամ բոլորեցին զնա, և ո՛չ ոք իշխէր, որ մերձենայր առ նա: Եւ այնչափ նետեցին ի հեռաստանէ բուռք և նիզակս և ղեղարդս ի վերայ նորա, մինչև թաղեցաւ, և ապա սուր հանեալ՝ և խոցոտեցին զնա, և սպանին: Եւ սկսան կոտորել զաշխարհն, և քակել զեկեղեցիքն, և սպանին զթագաւորն, և զերիցն և բայաննեւոցն արանց և ի կանանց, որ զթիւն միայն աստուած գիտէ, և զգլուխն քաջ նահատակին տարան ի Մըսըր:

Եւ սուլտանն յոյժ ապաշաւեցաւ, եթէ՝ «Ընդէ՞ր ոչ բերէիք զնա կենդանի առ իս, զի կին տայի նմա, որ աճէր, և թագաւոր անէի, ընդդէմ թշնամեաց իմոց կացուցանէի զնա՝ որպէս պարիսպ»:

Եւ այնպէս նահատակեցին զքաջն Լիպարիտ, և աւերեցին զքրիստոնեայք, զաշխարհն Հայոց, և տիրեցին ազգն տաճկաց և թագաւորեցին:

*Եւ կայր քոյր մի Լիպարիտին, փախուցեալ ի գիւղ մի, առնայ-կին, եկեալ իբրև հիսուն ամաց։ Եւ յայն ժամանակին ելեալ փէհ-լէվան մի իսմայէլացի և ասէր պարոնին Սըսայ, թէ՝ «Բե՛ր ի գաւա-ռէ քումմէ, կամ ի զօրաց քոց, ինձ նման, զի զօտէմարտիցուք. թէ ո՛չ, տո՛ւր ինձ հարիւր դեկան կարմիր ի յաշխարհաց քոց»։*

*Եւ նա ո՛չ եգիտ այր բռնամարտիկ, որ զգօտին բռներ էր տաճ-կին։ Եւ եկն քոյրն քաջ Լիպարիտին և ասէ.*

*—Ի՞նչ տայք ինձ, որ ես կոխեմ զփահլաւանն։*

*Եւ ասէ պարոնն.*

*—Զինչ խնդիրք ունիս նէ՝ տա՛մ, եթէ կոխես զնա։*

*Ասէ կինն.*

*—Որչափ բամպակ որ շալկեմ, այն իմ լիցի։*

*Եւ առին յանձն։ Եւ եկեալ փահլաւանն և ետես զկինն հսկայաձև, և երկեաւ, բայց վասն կին լինելոյն՝ արհամարհեաց զնա։ Եւ մեր-կացաւ փահլաւանն, և զգեցաւ զգեստն իւր, և սկսաւ խաղալ՝ իբր-թէ, ա՛յդ առնէր և խնդրէր այր մարդ, զի մարտիցէ ընդ նա։ Եւ եկն յառաջ կինն, իւր կանացի զգեստիւն, և բռնեալ զերկու լծակացն փահլաւանին երկու բռամբն, և վերացուցեալ զնա, և տարաւ առաջի պարոնին, եդիր զերեսս փահլաւանին ի գետինն, և զմէկ ականջն քարշեալ՝ ի բաց նետեաց։ Եւ ամենեքեան զահի հարեալ հարցանէին, թէ՝ «Ուստի՞ է սա, կամ յո՞ր յազգէ»։ Եւ հրամայեաց թագաւորն տա՛լ նմա բամպակ որպէս ոչ կարէ շալկել։ Եւ բարձան զկինն այնչափ, մինչև հարիւր լիտր։ Եւ նա առեալ ուրախութեամբ և գը-նաց ի տուն իւր։ Եւ իբրև եբաց զբամպակն, նա ետես, որ եդեալ էր ի մէջ բամպակին քարս, որ կայր քառասուն լիտր։ Եւ ամենեքեան ապուշ մնացին զօժանդակութիւն ցնա կնոջն։*

## 9. ԵՕԹ ԵՂԲԱՅՐՔ ՀՍԿԱՅՔ ԵՒ ՔՈՅՐ ՆՈՅԻՆ

*Սուլթանն Եգիպտոսի յղեաց զօրս բազումս ի վերա Կիլիկիոյ. Սըսոյ։ Եւ լուեալ թագաւորն նստաւ ի ձի և գնաց առ քաջքն իւր։*

*Էին եօթ եղբայրք, էին հսկայք նոքա. կային ի բերդ մի, Փերի Ղալայի ասի։ Եւ անուն տեղոյն՝ Տէփրէնտ ասին։ Եւ նոցա լուեալ զգալ թագաւորին, ելեալք ընդ առաջ, քանզի նստէին եղբարքն ի սեղան և ուրախանային գինով։ Եւ պատմեաց թագաւորն զիրն։ Եւ նոքա ասեն. «Արքա՛յ, յաւիտեան կաց, և մի՛ հոգար զայդ։ Եկ ուրախացուք այս գիշեր ի սեղանս և յղեսցուք-տեսցուք, թէ ըս-տո՞ւգ է, թէ ոչ»։*



16—124

Եւ կոչեցին զփոքր եղբայրն, յղեցին սակաւ զօրք՝ ի տեսանել զիրն, զի տեսցէ և իմացուսցէ, և ի միասին երթիցեն զօրօք բազմօք ի վերա նոցա։ Եւ գնաց կրսեր եղբայր, ետես՝ եկեալ բնակեալ էին առ ափն Ճիհան գետոյն, և ո՛չ կարաց հանդուրժել քաջն։ Սակաւ պրամբք մարտեաւ նոցա. զոմանս ջրահեղձ արար, զոմանս փախստական, և բազումս սուր սուսեր մաշեաց՝ և առաւ զբանակ նոցա զառ և զաւար։ Եւ վասն զիրսն ճշմարտեցուցանէ, ե՛տ կոտորել զքիթն և զականջսն, և եբեր, մինչ որ լուսացաւ։

Եւ թագաւորն և եղբայրքն ուրախանային այն գիշերն, և մնային գալստեան նորա։ Եւ տեսին, զի գայր աւարաւ և կառօք, և լուան և ականջօք, տեսին զքիթսն և զականջսն, զի բարձեալ էր կառաց. և զգործ քաջութեան նորա զարմացան։

Եւ մեծարեալ թագաւորն զեօթանեքին եղբայրքն միաբան, և բերեալ ի պալատն իւր, և պատուեաց զնոսա քառասուն օր՝ ուտելօք, ըմպելօք և պէս պէս հարկիւ։ Եւ ի լման քառասուն աւուրն կամեցաւ խլայաթիւ ուղարկեսցէ՝ և շնորհակալութիւն եցոյց նոցա։ Եւ նախանձեալ իշխանացն արքային, ասեն ցթագաւորն. «Այտոնց փոքր եղբայրն այդպէս քա՛ջ է, և մեծամեծքն զի՞նչ լինիցի։ Սպանանէ զնոսա, և թէ ոչ՝ զթագաւորութիւնդ ափշտակեն»։ Եւ գողացան զմիտ թագավորին։

—Զի՞նչ արարից, ո՛չ կարեմք զդէմ ունել դոցա։

Ասեն ցթագաւորն. «Դու մի՛ հոգար, մենք գիտե՛մք զի՞նչ արարից»։

Եւ ետ քառասուն աւուրն պատուեալ խլայեթեց թագաւորն զնոսա և գրեց ի հանդերձիցն գիրս երկոտասան, և ուղաւորեցին զնոսա։ Եւ նոքա ոչ զայն գիտցան։ Գնացեալ իջան աղբիւր, քանզի ծարաւ էին, և ընդ խմել նոցա եօթն այլ մեռան։ Եւ լուեալ մայր նոցա՝ փետեաց զհերս իւր և ճիչ բարձեալ եկ՝ անիծելով զթագաւորն։

Եւ ասեն ցիկինն. «Ո՛չ մեղք ունի թագաւորն, և ոչ մեղաւ սոցա. այլ սոքա՝ եօթ որդիքդ այս տեղս եկան, նստան և ջուր խմեցին, և մեռան»։

Եւ անէծ մայրն զաղբիւրն. «Սևակ լիցիս»։ Մինչև ցայսօր տաճիկ ասեն «Ղարայ պուզայ»։ Մայրն՝ և նա՛ ի նմին ժամու մեռաւ և թաղեցին զնոսա։ Եւ շինեաց թագաւորն ի վերա նոցա եկեղեցի՝ մօտ ի Սևակն.

Եօթեանքս եղբարք էին՝
Բնակէին իւրեանց բերդին.

Կոսեռն ջարդեաց զօր սուլթանին,
Որ ի վերա Սըսոյ գային։

Եւ երբ որ լսեց Սուլթանն Մսրայ զիրն և զմահն քաջ նոցա, ամենեցուն, յղեաց առ Թագաւորն փորձելով՝ քառասուն ըմպիշ, տեսանեն թէ իցե՞ն այլ քաջք ի Սիս քաղաքի. քանզի խորհէր ի սրտի գի գայցէ ի վերա Սըսոյ։ Եւ եկեալ ըմպիշքն առ Թագաւորն և ասեն. «Սուլթանն Եգիպտոսի առաքեաց զմեզ առ քեզ, զի զօրէմարտեսցուք հետ քո քաջացդ»։

Եւ ասէ Թագաւորն. «Թող լինի՛»։ Եւ նա քարոզ կարդալ ընդ ամենայն տեղեաս իշխանութեան իւրում, և ո՛չ գտանէին քաջունք, քանզի ո՛չ կային։ Եւ յիշեաց ի մտի իւրում զեօթ եղբարքն, զոր անմեղ մեռան։

Եւ եստոյ՝ եա մեռանելոյ եօթ եղբարցն, էր քո՛յր մի նոցա։ Քանզի մնաց մէն, փախա՛ւ վասն ահուն և գնաց ի յայր մի մտաւ՝ ժամանակ մի։ Եւ օր մի ելեալ գնաց ի ջաղացքն, քանզի դրաձինք օրեցին, և բարձեալ ի վերա գլխոյ քէլ մի գարի։ Եւ ո՛չ էր ջաղցպանն ի ջրաղացքն։ Ելից զի ալեսցի։ Եւ եկեալ երիտասարդ մի, տեսաւ և ցանկացաւ աղջկանն։ Եւ առեալ աղջիկ զտուտ հանդերձի նորա՝ կալայց մէկ ձեռօքն զերդիք տանն, եդ ի ներքեն զտուտ հանդերձին, և եթող ի բաց, որ կախեցաւ գլուխ ի վայր ի հանդերձէն, մինչ որ աղաց զայնքան ալուրն։ Եւ նա մեղայ կոչէր, և աղաղակէր։ Եւ եթող ի վայր, և պատուիրեաց, թէ՝ Այտ քեզ խրատ թող լինի։

Եւ այնժամ, որ քաջք խնդրէին ընդ ամենայն տեղիս, և ի հրապարակս քարոզ կարդային՝ «Այսքան օժիտ այնմ որ քաջ գիտիցէ», և երիտասարդն հարցանէ ցծեր մի, և ասէ թէ. «Ով գիտիցէ և ասէ՛, թէ մեղք ունիցի՝ թողցէ՞ Թագաւորն»։

Ասէ ծերն. «Ո՛չ թէ միայն զմեղքն, այլ շատ պարգեւս տացէ»։

Ասէ երիտասարդն զիրն ջրաղացին և զքաջութիւն աղջկանն։ Եւ առեալ ծերուն զկարիճն՝ գնաց առ Թագաւորն, և աւետեցին։ Եւ ետ նոցա պարգեւս մեծ բազումս՝ արքայն։ Եւ գտան զաղջիկն և բերին։ Ելին քառասուն ըմպիշքն և զօրէմարտեցաւ ընդ նոսա աղջիկն։ Եւ նախքան զզօրէմարտիլն ասէ աղջիկն ցմեծապես ըմպիշն.

— Ես կի՛ն եմ և դու այր. ո՛չ է պարտ զօրէմարտիլ, այլ երեք հեղ դու եկ ուժով ի վերաս, ու երեք հեղ ե՛ս գամ»։— Ասաց աղջիկն.— Նախ դու եկ՝ զի այր ես։

Եւ ե՛կ մեծ ըմպիշն. եկ ի վերա աղջկանն երեք հեղ, և ո՛չ կարաց յաղթել։ Յետոյ գնաց աղջիկն ի վերա մեծ ըմպիշպետին և վերա-

ցոյց մէկ ձեռօքն՝ և յաղթեաց, և յղարկեաց մարդ առ Թագաւորն թէ՝ «Սպանանե՞մ, թէ ի վա՛յր կոխեմ»։ Եւ պատասխան արար Թագաւորն, թէ՝ «Կանայ նէ՛ զհոգին թող հանէ»։ Եւ մինչ գնաց ու եկաւ պատգամն՝ և ըմպիշն ի վերա բաղկին էր աղջկանն։ Եւ լուեալ զպատասխան Թագաւորին՝ էզարկ ի գետին և սպանեաց զնա։ Եւ զարմացան ամենեքեան և այլ ըմպիշքն ո՛չ եկին երեսունինք, քանզի վախեցան և ամօթով դարձան առ սուլթանն, և պատմեցին զեղեալսն։

Եւ Թագաւորն և իշխանքն եառուն պարգևս մեծամեծս աղջկան։

Այսպէս քաջ կային ի Սիս քաղաքի և ի աշխարհս կիլիկեցոց. Հիմի ունայն եմք թէ Թագաւորէ և թէ իշխանաց։ Այս եղև թվին ՊԼԶ (=1387)։

## 10. ԹԱԳԱՒՈՐ ՀԱՅՈՑ ԵՒ ՍՆՆԴԱԿԻՑՔ ԻՒՐ

Կայր Թագաւոր մի ի Հայաստան և ունէր իմաստուն սնընդակիցք. և կամեցաւ փորձել զիւր սնընդակիցքն և զիշխանքն։ Աւր մի հրամայեաց Թագաւորն, թէ՝ Գնացէք զենեցէք ոչխար մի և զոր ի յինքն վատ զօղվածք կա, առ իս բերէք։ Գնացին զենեցին ոչխար մի և էառ մէկ մի զըղուղն և եբբեր առ Թագաւորն։ Եւ ասէ Թագաւորն.

—Ի՞նչ պեղծ կայ ի յղուղն։

Ասեն սնընդակիցքն.

—Է՜, Թագաւոր, զայս ոչխարի զօղվածքս ի վերա մարդոյ զօղուածին օրինակ բերեմք քեզ։ Ըղուղն գլխաւոր է ամենայն զօղուածին, և ինքն հիմն է՝ զերդ զծառին մազմզուկն. և վասն այնոր է պիղծ, որ խիստ նազուք է և վատուժ, որ ոչինչ իրք մի յինքն դպնի, նա զմարդն հիւանդացնէ, և թէ յինքն իրք կաթէ, նա զմարդն խեւացնէ, վասն այնոր պիղծ է։

Հիմն գէմ ամուր պիտի, որ իւր շէնքն շատ դիմանայ,
Եւ հաստատութիւն ունենայ, որ վըլշիլն իսկի չգիտենայ,
Նա հիմնը ըղուղս եղաւ՝ խիստ կակուղ ու միսն ի վերայ,
՚Ի ամէն զօղուածին մարդոյ՝ յիր վերայ շուկայ ու գայ։

Գնաց մէկն այլ զծեծրակն եբեր։ Ասէ Թագաւորն.

—Ի՞նչ պեղծ կայ ի դա։

Ասեն.

—Յիշողական ի յինքն կա, որ զինչ մարդ որ ոխ ի հետ մարդոյ ունի, նա զամէնն ի յինքն յիշէ, և թշնամութիւնն անտի ծնանի։

Ծեծրակն է յիշողական, որ պահէ զիւր ոխն ու հանէ,
Զտարեաց չարն ի միտ ձգէ, 'ւ ոսոխին նա խիստ կանգնէ.
Վասն այնոր իւր պեղծ աացի, զոր զչարն առ ինքն կու պահէ,
Զարին տեղ առ ինքն կուտայ ու զբարին ի բաց կու հանէ։

Գնաց մէկ այլ զաչքն եբեր։ Ասէ թագաւորն.
—Ի՞նչ պեղծ կայ ի յաչքն։
Ասեն.
—Աչքն է, որ կուտեսանէ և ցանկա, զմարդ զերթ արբած առնէ, զբանականութիւնն տանի։ Աչքն է, որ կու տեսնու և մատնէ, երբ իրք մի տեսնու և ցանկա զամէնն, զգայութիւնն ի հետ իւրն կու քարշէ և զմարդ յիմարեցուցանէ։

Աչւին յորժամ իրք տեսնու, զգայութիւնն ի հետ կու տանի,
Շարժէ զցանկութիւն մարդոյն 'ւ ի մեղաց տունն կու տանի.
Վանց տեսանելոյն շատ մեղք ի վերա մարմնոյն կու բանի,
Պատճառ է նա շատ մեղաց, թէ լինիս դու իւրըն գերի։

Գնաց մէկ այլ զականջն եբեր։ Ասէ թագաւոր.
—Ի՞նչ պեղծ կայ յականջն։
Ասեն.
—Ականջն է, որ զչար խօսքերն հասկանա և պիղծ բանից ճանապարհ կու տա։ Եւ զչարութիւն ընդ ականջն կուսնի, լսէ ու մատնէ, լսէ ու բամբասէ։

Պարտական կընջիթ կապէ ու չարին մտիկ մի դընել,
Ի տեղի ուր պեղծ խօսին, դու զաղտիկ ունկը մի դընել.
Խըրատ է այս հոգևոր, հանապազ մեզ պարտ է պահել,
Ջանա զչարն ի բաց ձգել ու զբարին ունկամբ ուսանել։

Գնաց մէկ այլ զքիթն եբեր։ Ասէ թագաւոր.
—Ի՞նչ պեղծ կայ ի քիթն։
Ասեն.
—Քիթն է, որ զմեղաց հոտն առնու և հաւանի, քիթն է որ զբարին շնչալովն հանէ և ի տեղին զմեղաց հոտն տանի։

Քիթն էլ շատ վնաս կածէ, որ զբարին ի դուրս կու բերէ,
Փոխանակ նորա զչարն ընդ ըռունկն ի վեր կու քարշէ,
Նովաւ թուլանա մարմին ու յերակ զչարն որոնէ,
Վասն այն վատանուն [ասեն], որ զայսքան չարըս կու գործէ։

Գնաց մէկն զլեզուն երեր: Ասէ Թագաւորն.

—Ի՞նչ պեղծ կայ ի լեզուն:

Ասեն.

—Լեզուն շատ վնաս առնէ. լեզուն է, որ ֆիշունց կու տայ ու զաստուած բարկացուցանէ, լեզուն է որ բամբասէ, լեզուն է, որ երդնու, լեզուն է, որ անիծանէ, լեզուն է, որ սուտ ասէ:

Զբերանդ ամուր պահէ, որ հանգիստ յաշխարհ դու կենաս,
Զխօսքդ խաղ ի խաղ ձգէ, որ չբերէ յետեւ քեզ վնաս,
Զքո չարկամն ի յետ ունիս, մի՛ չիւր կամքըն զինքն ունենաս.
Թէ զինքն իւր կամօք տանիս, ի դլուխդ դու մաղ մի չուն-
[ենաս]:

Գնաց մէկն զձեռքն երեր: Ասէ Թագաւորն.

—Ի՞նչ պեղծ կայ ի ձեռքն:

Ասեն.

—Ձեռքն է, որ գողանայ, ձեռքն է, որ հարկանէ ու սպանէ ու յափշտակէ. շատ վնաս է ձեռքն. Եվ ասէ.

Մի՛ ձեռքըդ մեկնել ի տեղ, որ չբերէ ինքըդ քեզ [վնաս],
[Առ]նուլըն շատ մի՛ սիրեր, այլ [զտալն բարի] գիտենաս.
Մարդու անիրաւ հարկանել նենգով չի փութաս,
Որ չընդնիս ի մեծ դժոխք՝ ի յանշէջ հուրըն դու մնաս:

Գնաց մէկ այլն զսիրտն երեր: Ասէ Թագաւորն.

—Ի՞նչ պեղծ կայ ի սիրտն:

Ասեն.

—Սիրտն է, որ կուտայ սպանանել ու կուտայ ատել, ու զմարմինն ի պիղծ սեղի կու տանի. ապա գիտացիք, որ պարտ է մարդ ի յիւր կամքն չկենայ՝ ի սրտին, զի ով որ որ ի յիւր սրտի հրամանքն կենայ, կորուսանէ զիւր հոգին և զմարմինն, այլ պարտ է զսիրտն հնազանդել:

Մի՛ բղպտի կամքն անել, որ չընկնիս ի հօշք՝ ի յեղու,
Ով սրտին ծառայ կենայ, ըլկեցաւ ի շատ մի բարու,
Զսիրտըդ քեզ ծառայ արա, որ առնուս շնորհք ի լուսոյ,
Զաստէնս և զանդէն շահիս ու լինիս անանց խնդալոյ:

Գընաց մէկ զթոգն երեր: Ասէ Թագաւորն.

—Ի՞նչ պեղծ կայ ի թոգն:

Ասեն.

—Թոգն է տուն բլղամի ու մաղասի, զի ի յինքն կու ժողովի։ Եւ ծերութիւնն ամէն ի բլղամէն է, և թէ բլղամն չէր, նա չէր ծերանայր։ Եւ ասէ.

Թոգն բլղամին տուն է ու մաղասն առ ինքն ժողովի,
՚Ի այլ իրք չուզենա առ ինք, բայց միայն նա հողմ ու քամի,
Ձերդ փուք դարբնի է նա, որ քամոյն առ ինքն տա տեղի,
Շուտ ծերացընէ զմարմինն, երբ բլղամն առ ինքըն ժողվի։

Գընաց մէկ զլերդն եբեր։ Ասէ թագաւորն.
—Ի՞նչ պեղծն կայ ի լերդն։
Ասեն.
—Լերդն է տուն փափուկ ցանկութեան և յամենայն իրք, որ մարդ ցանկանայ՝ ի փափկութիւն աշխարհիս և ի վայելչութիւն կենցաղոյս, ի նմանէ է։ Եւ ասէ.

Լերդն է մարդու մարմին, կայ ի յինքն փափուկ ցանկութիւն,
Արիւնն երբ շատանա առ ինքն, նա բերէ մարդու տաքութիւն,
Ոչինչ իրք մի ի յինքն հասնու, նա ընկնի ի մեծ նեղութիւն,
Եւ պատրաստ պիտի կենալ, որ չբերէ մարդու չարութիւն։

Գնաց մէկ զփածեղն եբեր։ Ասէ թագաւորն.
—Ի՞նչ պեղծ կայ ի փածեղն։
Ասեն.
—Փածեղն նման է ի յախոռ, որ ամէն աղջաղջ աղբ ի յինքն ժողվի և զինչ որ այրած արիւն կայ ի լերդն, նա ի յինքն երթա։

Փածեղն է գունովըն սև ու շինած յախոռի նըման,
Զինչ այրած արիւն կենայ, յինքն առնու զամէն ի լման,
Երբ առաւելու առ ինքն, երակներն իւր խիստ ուռենա,
Ղաթի ու սաւդայ բերէ, ՚ւ առնէ զմարդ խումրի նըման։

Գնաց մէկն զերիկամն եբեր։ Ասէ թագաւորն.
—Ի՞նչ պեղծ կայ ի յերիկամն։
Ասեն.
—Երիկամն է, որ զինչ արտաքին սէր և ցանկութիւն կայ, նա ամէն ի յիւրմէն է, և զինչ մերձաւորութիւն [ի] սորայ կայ։

Զինչ որ արտաքին սէր կայ, երիկամունք ծնօղ է նորա,
Զմարդն ի ցանկութիւն վարէ ՚ւ ուր բանիւ ի մեղքը գընա,
Առնէ զմարդըն ըղերդ խումար, երբ իւր դեղն ի հետ չի կենա,
Ցերեկն անհանգիստ պահէ և գիշերն ի քուն չլինենա։

Գնաց մէկն զլեռին եբեր։ Ասէ թագաւորն.
—Ի՞նչ պեղծ կայ ի լեռին։
Ասեն.
—Լեռին տուն մաղձի է և սաֆրայի. և սաֆրայն և մաղձն ի յիւրմէն լինի։

Լեռին զայրելի համով ու լի է նա մաղձ ու մաղաս,
Յորժամ ինքն մաղձով [լինի], վերացնէ զինչ որ կայ հաւաս,
Տրտմութիւն, շատ ցաւ բերէ, կու ածէ նա մարդու վնաս,
Զօր կարես ուրախ կացիր, ի խնդման ի զատ չի կենաս։

Գնաց մէկն զբուշտն եբեր և զձուն։ Ասէ թագաւորն.
—Ի՞նչ պեղծ կայ ի դա։
Ասեն.
—Բուշտ է մութատիլ, մզէ ճառ մանրը, որ դիւրեաւ իւր գողն ելանէ. ապա թէ հով ու զէճ լինի, նա զգողն արգիլէ և չկարէ գողել. և թէ քամի ընգնի, նա կաթ կաթ գողէ. և այս է զանձակացաւն։

Բուշտն խիստ նազուք իրք է, որ կայ ինքն ի տեղ վնասու,
Թէ յինքն ոչինչ իրք դիպի, նա տանի ի զուռն ի մահու,
Ունի զցանկութիւն անձին, պատճառ է որդեց լինելու,
Եւ այն մարդն որ պայդ չունի, նա չկոչեն անուն իւր որձու։

Գնաց մէկն զոտքն եբեր։ Ասէ թագաւորն.
—Ի՞նչ պեղծ կայ ի յոտքն։
Ասեն.
—Ոտքն է, որ տանի ի գողութիւն, տանի ի չար տեղ և զամենայն չար ոտով կատարեմք։ Եվ ասէ.

Ոտն է, որ քարշէ ըզմարդն 'ւ ի մեղաց տունն կու տանի,
Ոտքն է, որ տարաւ զԿայէն ի սպանումն եղբօրն Աբելի,
Ի շատ գողութեան տեղիք 'ւ ի թալան ոտքն կու տանի,
Ծառայ է սրտին ոտնիկն, յուր կերթա ի հետ կու տանի։

Երբ թագաւորն հասկացաւ զիւր ոնրնդակցեաց պատասխանին, որ իմաստութիւն էր, նա յաւ թրւեաց իւր և զաստուծոյ արարչէն մեծապէս գոհացաւ, որ աստուած ի յիւր հրամանքն հանցեղ մարդիկք էր տվել և ուրախացաւ ուրախութեամբ։

## 11. ՏԵՍԻԼ ՍՈՒՐԲ ԵՒ ՃԳՆԱԶԳԵՍՏ ԿՐԱՒՆԱՒՈՐԻՆ ԵՒ ԵՐՋԱՆԻԿ ՄԻԱՅՆԱՒՈՐԻՆ ՅՈՎԱՆԷՍԻ ԳԱՌՆԵՑԻՈՅՆ

Պատմեաց մեզ բարէհոգի ճգնաւորն, մինչ հանդերձեալ էր ի նոյն ամի վախճանել, մինչ էր յանապատ դղեակն Հոռոմկլայ: Ասէ. Յորժամ ես ի խցին իմում կայի, ի ձորն, որ կոչի Աշորինս, անկաւ ի խորհուրդ իմ, թէ ո՞րք են յազգաց ընդունելի աստուծոյ. և տարակուսէի զբազում աւուրս: Եւ մինչ էի յայս տարակուսանս, եկն ի վերայ իմ զարմացումն. ոչ էի՛ ի թանձրութիւն քնոյ և ոչ յարթնութեան: Տեսի ես տեսիլ զարմաց[մ]ան: Տեսանէի զիս ի սուրբ քաղաքն Երուսաղէմ, և առաջի իմ դաշտ հարթայատակ, որ ոչ բաւէի տեսանել ծագէ ի ծագ: Եւ կայր ի մէջ դաշտին բլուր մի՝ զարմանալի ընդարձակ ունելով գագաթն: Եւ ձգեցաւ ի վերայ բլրին ամբ լուսաւոր՝ իբրև զխորանարդ: Հայցէի նշմարել, թէ ո՞ւմ է բնակութիւնս այս, և տեսանէի բեմ, ի մէջ նորայ, և քառադիմի աթոռ, զորո ոչ բովեաց բիբք իմ նկատել ի վայելչութեան լուսոյն, զորոյ և ոչ կարեմ բովանդակել կամ օրինակ բերել նմանութեան, այլ լռութեամբ պատուեսցի: Եւ մինչ հիացեալ և զարմացեալ էի ընդ տեսիլ իրին, նա լուսաւորեցաւ երկինքն և լցաւ լուսով ամենայն: Եւ անթիւ բազմութիւն թեւազգեցիկ հրեշտակաց, որք աղաղակէին և ասէին. «Սո՛ւրբ, սո՛ւրբ, սո՛ւրբ տէր զաւրութեանց»: Եւ յապուշ մնացի ի քաղցրութենէ եղանակացն: Եւ անկայ ի վերայ երեսաց իմոց ի յերկիր, իբրև կիսակենդան, և ո՛չ մնաց յիս կենդանութիւն: Եւ եկեալ ոմն ի բարէտեսիլ արանցն, կարդաց զանուն իմ, յարոյց զիս և ասէ. «Զաւրացի՛ր և ի մի՛տ առ զոր տեսեր, զի վասն ք՛ո է տեսիլդ»: Եւ յարուցեալ յոտն կացի և ասեմ. «Ո՛վ տէր, զողացաւ սիրտ իմ ի փորի իմում և ոչ կարեմ նկատել. արա՛ զիս խելամուտ, զի այր տառապեալ եմ և կամ հիացեալ»: Եւ ասէ. «Ցուցաւ քեզ ի տեսանէ որպէսութիւն հանդերձեալ դատաստանին: Եւ ահա երրորդական աստուածութիւն նստեալ է յաթոռ փառաց իւրոց, առնէ հատուցումն արդարոց և մեղաւորաց. և սուրբք ամենայն առ նա ժողովին, զոր հանդերձեալ ես տեսանել»: Եւ անկեալ երկրպագեցի հանդէպ սուրբ աթոռոյն աստուծոյ, և ո՛չ զաւրեցի՛ն աչք իմ տեսանել, բայց միայն զճաճանչ լուսոյն: Եւ եղև յանկարծակի հնչիւն ահաւոր փողոյ, և դողաց առհասարակ երկիր և ծով՝ չորիւք անկեան աշխարհիս: Եւ տեսանէի ամբաւք եկեալ յարևելից և յարևմտից, ի հիւսիսոյ և ի ծովէ՝ զամենայն սուրբս, գունդս գունդս եկեալ յայն հարթայատակ դաշտին: Նկատէի և ի բլուրն զարմանալի և տեսանէի ներքո վարագուրին, առաջի փառաց աթոռոյն,

զմայր տեառն աստուծոյ՝ յաղաչանս բաղկատարած։ Եւ եղան երկոտասան աթոռ առաքելոցն և նստան ի դատաստան փառաւորեալքն։ Եւ անդ էր տեսանել հոյլք արեգականց, թագագլուխ սրբոցն պարք, առաքելոցն և մարգարէիցն, հայրապետացն և մարտիրոսացն։ Եւ ամենեքեան ի մի բերան փառաւորեցին զաստուած ի ձայն մեծ և ասէին. «Ահայ ժամանակ այցելութեան առնուլ բարի մշակացն զվարձս բարեաց»։ Եւ ես ջանայի ամփոփել զայնքան տեսութիւնն ի սգայութիւնս իմ, և ո՛չ զաւրէի, զի ի վեր էր, քան զհասումն մտաց, բայց վասն որոյ փափագէի տեսանել, զայն էցոյց ինձ բարձրեալն։ Տեսանէի զլուսաւորիչն մեր և զկենաց առիթն՝ զսուրբն Գրիգոր բիւրաւորաւք լուսեղինաւք, հրաշազարման թագիւ եկեալ։ Եւ մինչ մտանէր ի հանդէսն, երանէին զնա հրեշտակք և երկնային զաւրքն, այլև եկեղեցիք անդրանկաց փառաւորէին զնա և ասէին. «Ե՛կ ի մարմնի անմարմին, որ նորաւրէն ժուժկալութեամբ յաղթեցեր ամենայն կարեաց և գերագոյն գտար, քան զամենայն սուրբս, մո՛տ յառաջատոն կենաց և ժառանգեա բղլանազանեալ փառսն, զոր դու ինքնին քեզ հիւսեցեր»։ Եւ եղաւ աթոռ նորա գերապատիւ առաքելոցն, ընդ ինքեան ունելով զանթուելի լուսաւոր գունդն իւր։ Եւ մերձ լեալ աթոռոյ աստուածութեանն, զուարթ և համարձակ դիմաւք ասէր. «Տէ՛ր իմ և աստուած, ահաւասիկ ես և մանկունք իմ, զոր ետուր ցիս. և ո՛չ կորուսի ի սոցանէ և ոչ զոք, բայց որ խոտորեցան ի խրատուէն իմէ և մնացին ի կորուստն։ Ներեա՛ տէր, քաւեա՛ տէր, զի քո՛ է փրկելն և կեցուցանելն»։ Եւ եկն առ նա ձայն ահաւոր, իբր զթընդիւնս որոտման, և զկնի ձայնին սի՜գ քաղցրալիր, և ասէ. «Ե՛կ մշակ իմ խոնջեալ և քրտնեալ, ե՛կ բարի վկայ աստուածութեան իմոյ, եկ բազմավիշտ նահատակ, զի ե՛ս եմ, որ ջնջեմ զամենայն քիրտն յամենայն երեսաց. և հանգուցանեմ զամենայն աշխատեալսն՝ վասն իմ, զի ահա ժամանակ վշտին էանց և կա և մնա քեզ արդարութեան պսակն, զի ուր ե՛ս եմ, անդ և պաշտաւնեայն իմ եղիցի»։ Եւ տեսանէի իբրև դաջ ձեռին, զի առեալ նստուցանէր զնա բարձրագոյն, քան զամենայն սուրբս, նոյնպէս և զժողովուրդն իւր։ Եւ անդ տեսի ժողովեալ զամենայն ազգս և զազինս։ Եւ հրեշտակքն զատեալ մեկնէին զնոսա ի միմեանց, և զատեալ զանթուելի գունդս մեղաւորացն, և տանէին յայրումն հրոյ և յազգի ազգի տանջանս։ Եւ մինչև հայէի տեսանել, և տեսանէի գունդս գունդս, զի ծփէին իբրև զալիս ծովու և ջանային խառնել ի ժողովն հայոց։ Եւ հրեշտակքն վարէին զնոսա հրեղէն գաւազանաւք. և ընթանային ի ժողովն Հոռոմոց։ Եւ հրեշտակքն անտի վարէին զնոսա. և ընթանային ի ժողովն Փռանգաց։

Եւ հրեշտակքն և անտի՛ վարէին զնոսա։ Եւ ծփէին իբրև զալիս ծովու և ոչ կարէին խառնել ի յայլս։ Եւ ես ասացի ցմատաւոր հրեշտակն, որ ցուցանէր ինձ զտեսիլն։ «Տէ՛ր իմ, ընդէ՞ր ողորմելի շրջի ժողովն այն և ոչ թողուն խառնել ի ժողովս. մի՞թէ առանց մկրտութեան են այնոքիկ»։ Եւ ասէ ցիս. «Գիտեա՛ եղբայր, զի աստուած կամեցաւ ցուցանել քեզ ըստուգութիւն իրիդ։ Այնոքիկ են, որ կամեցան ազգէ յազգս փոխել, և արհամարհեցին զմի մկրտութիւնն և եղեն Հոռոմ, կամ Փռանգ, կամ ասորի։ Եւ ահա, ոչ ընդունին զնոսա իբրև զժողովուրդ աստուծոյ, այլ իբրև զարհամարհողս, և տանջելոց են ընդ մեղաւորս»։ Եւ իբրև տեսի զայս հրաշալի տեսիլս, զարթեայ։ Եւ եկեալ յիս զգաստութիւն իմ, փառաւորեցի զբարեգործն աստուած, որ ոչ անտես արար զաղաչանս իմ, և երանեցի զազգն հայոց, որք կացին ի կանոնս խրատու սրբոյն Գրիգորի։ Եւ ոչ յայտնեցի զսա մինչև ցայժմ, զի հանդերձեալ եմ վախճանել. և վասն այնորիկ յայտնեմ ձեզ ընթերցողս, զի և դո՛ւք ի միամիտ սրտէ փառաւորեսջիք զՔրիստոս աստուածն մեր, որ է աւրհնեալ յաւիտեանս յաւիտեան։

## 12. ՅՈՎՀԱՆՆԷՍ ԳԱՌՆԵՑԻ ԵՒ ՄՈՒՂՐԻ

Այսմ վկայ պատմեմ քեզ, զոր լուայ ի Գառնեցի միակեցէն, ի Յովանէսէն, թէ՝ Ի թուականութեանն ի ՈՀԱ (=1222) կայի ես, ասէ, ի սուրբն Երուսաղէմ, և գնացեալ էաք ի Յորդանան, ի տաւն յայտնութեան տեառն։ Եւ մինչ կայի ես մեկուսի յաղաւթս, եկն առ իս մուղրի մի, երկու որդաւք և խնդրէր յինէն մկրտութիւն, թարգմանաւ միով ընդ իւր։ Եւ ասեմ ցնա. «Ո՞վ ես դու և յինչ պատճառս մկրտիս և լինիս քրիստոնեայ»։ Եւ ասէ. «Այո, լինիմ քրիստոնեայ. և թէ ուզես և զպատճառն կամիս իմանալ՝ նիստ և լուր»։ Եւ մինչ նստաք ասէ. «Ես ի Պարսից եմ գաւառաւ և ազգաւ, և ի քաղաքէն, որ կոչի Զանկիան։ Եւ ունէի գեղ արտաքոյ քաղաքին և շատ մուլք, նոյնպէս և ի քաղաքն։ Եւ շինեցի մնարամ մի՝ բարձր յոյժ, և ի վճարման գործոյն արարի կոչումն մեծ ժողովոյ, և արարի խրախութիւնս։ Եւ նախքան զհացկերոյթն, հանին զիս ի մնարայն՝ տալ զառաջին ժամն մեր։ Եւ մինչ գնացի և շրջէի ի մնարայն ի գլուխն, և հայեցայ ի կողմ արևելից, տեսի բացեալ զերկինս և իջանէր թագաւոր մի անճառելի կերպիւ և անհուն զաւրաւք հրեշտակաւք։ Եւ եկեալ ի զաւրացն հանդէպ իմ, կազմեցին աթոռ ի վերայ աւդոյն։ Եւ եկեալ թագաւորն նստաւ և

հնչէին փող յամենայն կողմանց։ Եւ սկսան գալ ազգ ամենայն քրիստոնէից՝ առաջնորդեաւն իւրեանց և երկիր պագանէին նմա։ Եւ Թագաւորն ընդունէր զամենեսեան գլխովն և անցեալ նստէին ամենեքեան։ Ապա գայր ազգ մի աւտար, պայծառ և փառաւորեալ զարմանալի առաջնորդաւ։ Եւ յարեաւ Թագաւորն յաթոռոյն և գնաց ընդ առաջ նորայ և գիրկս արկեալ՝ համբուրեաց զնա, և սկսաւ զովել և գոհանալ ղնմանէ, ասելով. «Իմ քա՛ջ նահատակ, իմ զուարթ և քաջ ժիր մշակ, իմ մե՛ծ և յաղթող սպառազէն»։ Եւ տարաւ նստոյց զնա առ ինքն, և զազգն նորա համբուրեաց և ողջագուրէր։ Եւ եկն ոմն առ իս և տեղեակ առնէր զիս, թէ այն սուրբ Գրիգոր է ու իւր ժողովուրդն։ Եւ ես այսպէս սպառեալ և հիացեալ կայի։ Իսկ որ ի վայրն կային, զարմացեալ կային ընդ յամելն իմ։ Եւ առաքեցին առ իս զաւագ որդիս իմ։ Եւ սա եկեալ, զնոյն տեսեալ և յիմարեալ եկաց։ Եւ նոքա ա՛յլ նեղասրտեալ, առաքեցին զկրսեր որդիս,ստիպել զմեզ գնալ առ նոսա։ Եւ յորժամ եկն տղայս, նա էանց տեսիլն, սակայն մեք պատմեցաք սմայ զտեսիլն։ Եւ ասացին ցիս որդիքս իմ. «Զի՞նչ կամիս առնել»։ Եւ ես ասացի. «Զայնել կամիմ, թէ Քրիստոս է աստուած Թագաւոր փառաց և պարծանք քրիստոնէից»։ Եւ աւագ որդիս ասաց. «Այո՛, հայր, զայդ արա, զի սպանցեն զմեզ, որ երթանք խառնիմք ի զաւրս Թագաւորին Քրիստոսի»։ Իսկ կրսեր որդիս զայս ասաց. «Ոչ է արժան զայդ առնել, զի մի՛ զմեզ և զազգն մեր զամենայնն ջնջեսցեն։ Եւ դուք իսկ ասէք, թէ ամենայն ազգն չէր միապատիւ, այլ երթամք գտանեմք զսիրելի ազգն զայն և զառաջնորդն սուրբ և խառնիմք յազգն յայն՝ մկրտելով ի նոցանէ»։ Եւ մեք հաւանեալ իջաք ի վայր և տուաք հաց ամբոխին։ Եւ երթեալ ի գեղն մեր, առաք հինգհարիւր կարմիր և երեք գրաստ, և ելաք ի գիշերի, և աստուծով եկեալ եմք աստ. և տեսաք նշան ինչ ի քեզ, եթէ յազգէն հայոց ես, և էք դուք ծառայք Քրիստոսի. և մեք կամիմք լինել իբրև զձեզ»։ Եւ ելից առաջի իմ զոսկին, և ես ոչ առի անտի։ Եւ ես առեալ մկրտեցի զերեսինն և բերի յԵրուսաղէմ և առին հաղորդ, և ասացին գնալ յայնկոյս ծովուն մեծի, ի պատճառս աղաւթից։

## 13. ՊԱԻՂՈՍ ՎԱՐԴԱՊԵՏ ԵՒ ՏԵՍԻԼ ԱՇԱԿԵՐՏԻ ՆՈՐԻՆ

Ի թուականին հայոց ՈՀԲ (=1223), ասէ, էաք մեք ի սուրբ քաղաքն Երուսաղէմ. և կայր փակեալ սուրբ եկեղեցին Յակոբայ։ Կայր վարդապետ մի Պաւղոս անուն և էր աշակերտ մի նորա յոյժ առա-

քինի։ Եւ ի ժամ առաւաւտուն աղաւթէր նա։ Եւ ետես տեսիլ և լուաւ հրաշս, և եկեալ պատմեաց վարդապետին, թէ՝ «Զինչ պատկեր կայր յեկեղեցին, ամէն խաւսեցան ընդ պատկերն Մարիամու աստուածածնին։ Եւ էր այսպէս։ Գաբրիէլի պատկերն պայծառացաւ յանկարծակի և խաւսել սկսաւ. և ասէր ընդ պատկերն Մարիամու.

—Ուրախ լե՛ր բերկրեալ, տէր ընդ քեզ։

Եւ նա ասէ.

—Զիա՞րդ լինիցի ինձ այդ։

Եւ նա ասաց.

—Հոգին սուրբ եկեսցէ ի քեզ և զաւրութիւն բարձրելոյն հովանասցուսցի։

Եւ ասաց Մարիամու պատկերն.

—Եղիցի ինձ ըստ բանի քում։

Եւ ապա զինչ որ պատկեր կայր յեկեղեցին, սկսան աղաղակել.

—Ուրախ լեր բերկրեալդ, տէր ընդ քեզ. և աւրհնեալ ես դու ի կանայս և աւրհնեալ է պտուղ որովայնի քո»։

Եւ վարդապետն կոչեաց զիս և ասէ.

—Լսե՞ս զինչ ասէ եղբայրս,—և պատմեաց ինձ զնոյնն։ Եւ ես սկսայ քննել տումարական արուեստիւ զաւրն, և էր ճշմարտապէս յապրիէլի ամսոյ ի վեցն և գիտացաք, եթէ ճշմարիտ է կրաւնքս մեր։

Եւ ես յորժամ լուա ի սուրբ հաւրէն՝ ի Յովանիսէն, հաճեցա թէ տաւնելն պատեհ է յապրիէլի ի վեցն աւետացն, զի սուրբ Գրիգոր ի դնելն վասն անահտական պատկերին տաւնին խափանելոյ էր, և այն լռեալ է։ Եւ զոր ասեմքս բանիւ, գործովք արժան է առնել։

## 14. ՎԱՍՆ ԼՈՒՍՈՅ ԿԱՆԹԵՂԱՆՆ, ՈՐ ՎԱՌԵՑԱՒ ՅԵՐՈՒՍԱՂԷՄ Ի ՄԵԾԻ ՇԱԲԱԹՈՒՆ

Եպիսկոպոս և վարդապետ, անուն նորա Յովաննէս ի Տուող գաւառէն, այր մթին վարուք և ճգնաւոր, որ զերեք յիսնակն ի տարոջն անհաց և անջուր կայր, և զամէն սպաք ալր։ Զոգաւ նա յԵրուսաղէմ և զամէն աղուհացան ճգնութեամբ յոտն եկաց յանդիման սուրբ գերեզմանին, և պատմեաց ինձ զպատճառն, թէ. «Խնդրեցի նշան ինչ վասն վկայութեան ազգիս, որ յամէն ազգէ կտրենք (կրսեր եմք. ձեռ. 3179) և նախատինս կրենք։ Տեսանէր զիս, ասէ, ֆռանգ մի, որ զկուպայ գերեզմանին կու ծառայէր, զի կաի այնպէս, և ոչ խաւսեցայ ամենևին։ Եւ նա սիրէր զիս և հարկէր խաւսել, կամ ուտել ինչ և ոչ լուա նմայ։ Ապա ի մեծի շաբաթին խաւսեցայ աղաչելով զկուսարարն և ետու նմայ երկու կարմիր և մտեալ

ի գերեզմանն դրի երեք կանթեղս, զորս ընծայ էի յանուն ազգաց. զմէկն ի մեր ազգիս անունն, և զմէկն ի Ֆռանգաց, ու զմէկն ի Հոռոմին. զի այս են գլխաւոր ազգ։ Եւ ասացի.

—Տէ՛ր աստուած իմ, Յիսուս Քրիստոս, տարակոյս է իմ յերկու ազգ միայն, որ կու ասեն ոմանք, թէ չէ ի վառել լոյս։ Եւ դայս միայն յայտնեայ ինձ, որ կամիմ գիտել, թէ յայս երեք ազգացս ո՞վ է առաւել ըստ կամաց քոց, դաւանութեամբ և կրաւնիւք։ Եւ դայս ցոյց ինձ վառմամբ լուսոյ քո ի կանթեղ ազգի, յոր հաճեալ ես։

Եւ դայս արարի և առի զբանալին և զմատնեհարն զկնի փակելոյն և մատնեհարին իմոյ, և այնպէս պաղատելով և յուսով մնայի։ Իսկ յորժամ աղղումն ինչ եղև և իմացան, թէ վառեցաւ լոյսն, և ես իսկ լուա հանդարտ հնչումն որոտման և սոսկումն եղև ի մարմինս իմ։ Եւ եկն առ իս փակապահն և ասաց ինձ բանալ. և չոգա բացի։ Եւ մտա ես մէն զառաջինն. և գտի զմեր ազգիս նշանեալ կանթեղն միայն վառեալ»։

Զայս լուեալ իմ յեպիսկոպոսէն, և ունէի առ ինքն համարձակութիւն և առաւել քննէի. և նա երդուաւ յոյժ և ասէ.

—Քե՛զ միայն յայտնեցի, և զի մի թուիմ ես թերի յայս իրք և կամ ախմար մանաւանդ, կամ թէ վասն այլոց արարի։

## 15. ԱԲԵՂԱՅ ՄԻ ԲՋՆԵՑԻ

Աբեղա մի ծեր բջնեցի, անունն Յովանէս, պատմեաց ինձ և ասէ, թէ՝ «Եօթ հոգի յԵրուսաղէմ գնացաք և գնացաք ի Սինէականն։ Եւ կայր անդ հոռոմ վանք մի, որ յոյժ սիրով ընկալան զմեզ և ասացին մեզ զրոյց, թէ՝ Յառաջ, քան զերեսուն ամ, եկին առ մեզ քառասուն աղաւթաւոր ի ձեր ազգէդ, և մեք զիրենք չտեսաք աղէկ թէ հայե՞ր են։ Եւ կամեցան դէպ յերեկուն ի վեր ելանել և աղաւթել անդ։ Եւ մեք ասացաք, թէ.—Ով յայս լեառնդ ելել է աղաւթել, նա ամէնն ղիւահար և հաշմանդամ է եկել ի վայր. մի՛ երթայք։ Եւ նոքա ոչ լուան մեզ և ուղեցին առաջնորդ, և մեք ոչ տուաք։ Եւ գնացին նոքա և երեք աւր յամեցին ի լեառն։ Եւ մեք կորուսեալ համարեցաք զնոսա։ Եւ զկնի երեք աւուրն ոմն եկն և ասաց, թէ.

—Կուգան հայերն և ամէնն հրեղէն են փոխեալ։ Եւ մեք ելաք ընդառաջ խաչիւ և աւետարանաւ, և տեսաք զնոսա, զի լուսով վառեալ էին։ Եւ անկաւ ահ ի վերայ մեր, և ոչ կարացաք այլ երթալ, մինչև եկին առ մեզ, և ծածկեցաւ լոյսն։ Եւ եդաք առաջի նոցա սեղան։

Եւ ծեր եպիսկոպոս մի կայր մեզ, այն այլ յոտն եկաց և սպասաւորէր նոցա. և յետոյ ինքն նստաւ։ Եւ աղաչեցին աղաւթաւորքն, թէ նստուցէք զայն փառաւոր այրն, որ մեզ գինի կուտայր։ Եւ ասաց եպիսկոպոսն, թէ.—Ե՛ս տուի զգինին։ Եւ նոքա ասեն.

—Ո՛չ, այլ այր մի չքնաղակերպ առնոյր ի քէն և տայր մեզ։

Եւ մեք զամէն վանքս ցուցաք նոցա, և ասացին.

—Ո՛չ ի դոսա կա նման նորայ։

Եւ բերաք զպատկերսն Մովսէսի և Եղիայի, և ասացին, թէ նման էր պատկերին Մովսէսի։

Եւ տարի մի այլ եկին վեց արք հայեր, և ելին ի լեառն։ Եւ երբ եկին ի վայր, նա ութ էին։ Եւ զարմացաք, մինչև սկսաք ճանաչել, թէ Մովսէս և Եղիայ են, և աներևոյթ եղեն։ Եւ զերկուսինս գրով ունիմք, և յայնմհետէ սիրեմք ըզձեզ, իբրև զհաճոյս աստուծոյ, և խնդրեմք աղաւթս»։ Եւ աղաչեցին զմեզ, թէ արարէք պատարագ և հաղորդիմք։ Եւ մեք չառաք յանձն։

## 16. ՔԱՀԱՆԱՅ ԵՒ ԳԻՐՔՆ ՅԱՃԱԽԱՊԱՏՈՒՄ

Եղև ինձ երբեմն գնալ յԵրուսաղէմ։ Եւ յորժամ հասաք յաշխարհն պաղեստինացոց ի գեւղ մի, և աւթևանս կալայ ի տուն պարկեշտ քահանայի միոյ, և հայեցեալ տեսի կանթեղս լուցեալ և խաչակալս կազմեալս և ծածկեալ սուրբ կտաւով, և իմ գիտելով, եթէ նշխարք է սրբոց, հարցի ցքահանայն, թէ՝ Որո՞յ ի սրբոց է, որոյ սպասաւորես։

Եւ ասէ.

—Ո՛չ է ի նշխարաց սրբոց, այլ սուրբն Գրիգոր է, և ի մանկութենէ իմմէ սպասաւորեմ սմա։

Եւ իմ բացեալ տեսի, զի սուրբ գիրքն էր, որ կոչի Յաճախապատում։ Եւ ասացի ցմեծահաւատ քահանայն.

—Զի՞նչ տեսեր, պատմեա՛ ինձ զսքանչելիս սուրբ հայրապետիս մերում։

Եւ նա ձայնեաց զորդին իւր, որոյ Սարգիս կոչիւր, և ասէ.

—Վասն մեղաց մերոց գերեալ եղև երկիրս մեր յանաւրէն յազգէն նետողաց. տարան և զորդեակս իմ ի խուժաստան։ Եւ մեք փախաք և գնացեալ թաղաք։ Եւ իբրև դարձաք՝ ես և մայր սորա, լացաք զորդեակս մեր։ Եւ յաւուր տաւնի սուրբ Հայրապետիս,

եկեալ առաջի սուրբ գրոցս և ողբալով ասացի. «Ամենահնար սուրբ, եթէ կայր որդեակն իմ, նա յուցանէր զկոյս քո»։ Եւ մինչ ես յայս լալիս էի, նա եկ եմուտ որդեակս իմ ի տունս, ունելով ի ձեռն դաստառակ և բաժակով գինի, և ասէ.

—Ես յայսմ ժամու կայի ի սպասու ամիրապետին։ Եւ եկն լուսաւոր այր մի, ունելով հանդերձ քահանայապետի, և կալեալ զձեռանէս իմ և եբեր մինչև ի դուռնս, և ինքն եկեալ եմուտ ի սուրբ գիրքս յայս։

Եւ զայս լուեալ գոհացաք զաստուծոյ։ Եւ յամենայն գիրս ըզսայ պատուէր և գեր ի վերոյ համարէր, և հրամայէր ըզսա առաւել ստանալ, քան զայլ գիրս։

## 17. ՏԵՍԻԼ ԽԱՉԻԿ ՎԱՐԴԱՊԵՏԻՆ.

Սա էր յաշակերտաց սրբոց Թարգմանչացն Սահակայ և Մեսրոպայ, որ շրջեալ քարոզէր սուրբ վարդապետն Խաչիկ զբանս աստուածային գրոց վարդապետութեամբ՝ ի յսելիս հաւատացելոց։ Եւ ի տանէ աստուածային յայտնութեանն հանդիպեցաւ նա ի գեաւղն Ակոռի, որ ստուգաբանի Արկ ուռի, յոտն աւագ Մասեաց, վասնզի յելանելն Նոյի ի տապանէն և յիջանելն ի լեռնէն՝ անդ տնկեաց այգի և անուանեաց զտեղին Արկուռի։ Եւ յայսմ աւուր, յորում հանդիպեցաւ անդ սուրբ վարդապետն Խաչատուր, ետես տեսիլ երազոյ՝ ի քուն գիշերոյ. բազում ժողովս մեռելոց կենդանացեալք, արք փառաւորք և պատուականք, բազմեալ ի մեծ և ի վայելուչ դարպաս մի։ Եւ կայր առաջի ամենեցուն սեղան բարելի յամենայն ազնիւ կերակրոց և ըմպելեաց։ Եւ ամենքեան ուտէին և ըմպէին մեծաւ ուրախութեամբ, և վայելչանային մեծամեծք և փոքունք, յորոց և զբազումս ի նոցանէ ճանաչէր սուրբ վարդապետն Խաչիկ և գիտէր, որ մեռեալ էին։ Ետես և արտաքոյ դարպասին զայր ումն Ղազար անուն, ի նոյն գեղջէն Ակոռոյ, դեգերեալ և ձեռն ի ծնօտի եդեալ, տխուր և տրտում դիմաւք։ Եւ հարցեալ ցնա վարդապետն Խաչատուր և ասաց.

—Ա՛յր դու, ընդէ՞ր ոչ ուտես և ըմպես և վայելչանաս ընդ նոսա, այլ կեաս արտաքոյ տրտում։

Եւ նա ասաց.

—Վասն զի ո՛չ ունիմ յիշատակի բարի, որպէս և նոքա, որք վայելեն ի բարիս յիշատակաց իւրոց, և հանգչին ի տուրս նոցա, և

աւրհնեն զյետնամնացս իւրեանց։ Եվ ես անիծանեմ յիշատակաց իմոց, զի ես տանուտեր էի գեղջիս Ակոռոյ և է անուն իմ Ղազար։ Ունիմ և որդի մի Դաւիթ անուն, որոյ, ի մեռանելն իմում, թողեալ եմ նմա տուն ի շէն, լի ամենայն բարեաւք և արծաթ վեց հազար դե-կան։ Եւ նա բնաւ ոչ հիշեաց զիս ողորմութեամբ ի տուրս աղքա-տաց և քահանայից, վասն այնորիկ կամ տխուր և տարակուսեալ և ո՛չ խառնիմ ընդ նոսա, որք վայելեն ի տուրս յիշատակաց իւ-րեանց և աւրհնեն զնոսա. և ես անիծանեմ զորդոյ իմոյ։

Զայս ետես սուրբ վարդապետն Խաչիկ ի մեռելոցն գիշերին։ Եւ յարձակեալ ժամու առաւօտուն արգելեաց զժողովուրդն և պատ-մեաց նոցա զտեսիլն։ Եւ ամենքն լսեալ փառս տային աստուծոյ մերոյ։ Յայնժամ Դաւիթն այն ի մէջ հրապարակին աղաղակեաց ասելով, թէ՝ «Արդարև այդ այդպէս է և ճշմարիտ, զոր ասաց վար-դապետդ»։

Եւ յայնմ աւուր արար ժողով բազում քահանայից և ժողովըր-դոց, կրաւնաւորաց և աղքատաց. և արար բազում դենմունս խոյոց և զուարակաց՝ պաշտամամբ և արտասուօք։ Եւ կերակրեաց զամե-նեսեանն զանազան և համեղ խորտկաւք և անոյշ ըմպելեաւք։

Եւ դարձեալ ետես նոյն վարդապետն Խաչիկ զնոյն տեսիլն և զՂազար ի մէջ նոցա՝ ուրախ դիմաւք, զի գոհանայր զաստուծոյ, և աւրհնէր զԴաւիթ զորդին իւր, եւ հայցէր նմա աւգնութիւն և ողոր-մութիւն յաստուծոյ, որ եցոյց նմա զսքանչելի տեսիլս զայս։

## 18. ՀԵՐՁՈՒԱԾՈՂ ԵՒ ԷՇ ՆՈՐԻՆ

Հերձուածող ումն նախատէր զուղղափառս և ասէր.

—Հաց ուտէք և մարմին Քրիստոսի ասէք. իմ էշն ամէն օր լիտր մի հաց կուտէ։

Ասեն ուղղափառքն.—Ո՛վ թշուառական, զհացն ամենայն կենդանի ուտէ, բայց այն հացն որ մարմին է Քրիստոսի, մա՛րդս միայն կարող է ուտել, արժանաւորացն՝ ի մաքրութիւն և անար-ժանիցն՝ ի դատապարտութիւն։

Ասաց հերձուածողն.

—Ո՛չ այդպէս, այլ ամենայն հաց միապէս է։

Ասեն ուղղափառքն.—Բե՛ր զէշն քո եկեղեցին, թէ ուտէ ի հացէն՝ հաւատամք քո բանին, ապա թէ ոչ՝ հաւատաս և լինիս ուղղափառ։



17—124

Եւ նա յանձն չառ։ Եւ պահեալ զէշն իւր երեք օր անսուաղ և յետ երեք աւուրց ասաց.

—Բերէք զմասն ձեր։

Եւ նոքա եդին զսուրբ հացն ի մէջ արծաթէ սկուտեղի մի և եդին ի մէջ եկեղեցւոյն։ Եւ նա յորժամ եբեր զէշն ի դուռն եկեղեցւոյն, խոնարհեցոյց զգլուխն և երկիր եպագ, և յետոյ մուծին յեկեղեցին. անկաւ ի վերա ծնգաց իւրոց և եդ զգլուխն ի գետինն, և յորժամ կամեցաւ զսկուտեղն բերել առաջի, ի վեր վաղեաց էշն և խածեաց զերես հերձուածողին, և փախեալ ե՛լ յեկեղեցւոյն։ Եւ կըղջացեալ արհանոսն այն՝ հաւատաց և մկրտեցաւ ամենայն տամբ իւրով և եմուտ ի լուծ ապաշխարութեան։

## 19. ՇԱՀԱԲԱՍ ԵՒ ՍՐՈՒԱԿ ՄԻ ԳԻՆԻ ԵՒ ՄԻՋՆՈՐԴ

Յաւանդութենէ պատմի, թէ յանցանելն Շահաբասայ՝ հայ ոմն արբեալ ընթանայ և կալնու զսանձս երիվարի նորա և ասէ.

—Քանի՞ վաճառես զայս երիվար՝ զոր ես գնել կամիմ։

Շահաբաս հրամայէ տանել զնա ի տուն իւր և ի վաղիւն դարձուցանել առ ինքն։ Ծառայքն տանեն զնա ի տուն, մինչև սթափեալ յարբեցութենէն՝ երաղեկ անցիցն լինի և յահէ սրտին՝ մնա վարանեալ։ Խրատ տայ նմա կինն իւր՝ զսրուակ մի գինի տանել ընդ ինքեան առ Շահաբաս և պատուիրէ զինչ խօսել անդ։ Տանեն զնա ծառայքն առ արքայ. և Շահաբաս հարցանէ նմա.

—Քանի՞ կամիս գնել զերիվար իմ։

Նա հանէ զսրուակն գինւոյ և դնէ առաջի թագաւորին և ասէ.

—Տէ՛ր իմ, սա՛ գնօղ երիվարին է, և վեհափառութիւնն ձեր՝ վաճառօղ այնր, իսկ ես միջնորդ մի եմ յայդմ տուր և առութեան. վերջացուցէք զգին երիվարին և եթէ միջնորդիս շնորհեսջիք ինչ՝ այն ձե՛ր է բարեշնորհութիւն։

Հաճեալ Շահաբասայ ընդ բանս պատասխանւոյ նորին՝ խիլայէ զնա և արձակէ։

## 20. ՀԱՅՆ ՈՉ ԽՕՍԻ ՍՈՒՏ

Միւս ևս աւանդութեամբ պատմութիւն յայտնի առնէ, թէ հայ ոմն սպանեալ էր զայլազգի ոք, զոր կալեալ տարեալ էին յատեան Շահաբասայ։ Հարցեալ էր նմա Շահաբաս.

—Դու՞ ես սպանեալ պայլապգին՝ թէ ոչ (թէ ոչն ասելով՝ կամեցեալ էր ազդել նմա՝ ասել ոչ)։

Խոստովանեալ էր հայն թէ՝ այո, ինքն է սպանողն։

Հրամայեալ էր արձակել զնա այն օր, ասելով թէ՝ Արբեալ է։ Ի հետևեալ աւուրն կրկին հարցաքննեալ էր նոյին բանիւ, և նա դարձեալ չէր յուրաստ լեալ։ Արձակեալ էր զնա ասելով թէ՝ Ունի զթմրութիւն արբեցութեան։ Եւ մինչ յերրորդում աւուր ի հարցաքննութեան խնդրում զնոյն խոստովանութիւն լուեալ էր ի հայոյ անտի, առաջարկեալ էր բողոքարկու այլազգւոյն թէ՝ Ես սակս միոյ հայոյ ծախսեալ եմ զհազար թուման մինչև հասուցեալ եմ զնոսա աստ. տո՛ւր ինձ զհազար թումանն՝ և ես տաց քեզ զմահապարտ հայն՝ զի սպանցես։

Խորշեալ ստախին յառաջարկութենէ արքային, հայն արձակեալ էր անդատապարտ։ Ի ճշմարիտ խոստովանութենէ անտի մահապարտ հայոյ, մինչև ցայս ժամանակ իսկ աւանդութիւն կայ յազգ պարսից, թէ «Հայն ոչ խօսի սուտ»։

## 21. ՇԱՀԱԲԱՍ ԵՒ ՀԱՅՔ, ՈՐՔ ՀԱՆԷԻՆ ԶԲԱՐՈՒՆԱԿՍՆ

Շահաբաս արքայ գոլով քաղաքաշէն, արկանէր ո՛չ միայն զբաղում շինութիւնս, այլ և տնկէր զայգիս և զպարտէզս։ Ըստ աւանդութեամբ պատմելոյ ծերոցն, հայք գաղտ հանէին զնորատունկ ծառսն, զորս տնկէր Շահաբաս։ Իբրև գիտեաց Շահաբաս, պատուէր ետ առանձնապէս դիտել և իմանալ, թէ զի՞նչ առնեն հայք զհանեալ բարունակսն, և մինչ տեղեկացաւ, թէ տնկեն զայնոսիկ ի մէջ տանց և այգեաց իւրեանց՝ ուրախ լեալ հրամայեաց այգեպանաց առատօրէն տնկել զծառինս և իբրև չտեսօղ՝ թոյլտուութիւն առնել հայոց՝ տանել ի նոցանէ որչափ և կամիցին։

## 22. ՎԱՍՆ ԳԱԼՈՅ ԵՐԻՎԱՐԻՆ

Օսմանցիքն մինչդեռ կային խաղաղութեամբ, և աւար առնէին զերկիրն, աւար առին և զգիւղն Արծնի։ Թէպէտ մարդիկքն զաղթեցան, սակայն անասունքն ամենայն աւար առին, և ոչ մնաց ուլ մի։ Եւ էր ի գիւղն այր մի՝ Դաւիթ անուն՝ որ էր տանուտէր գեղջն, և ունէր նա այնիւ ձի մի՝ կապոյտ գունով, բարձր հասակաւ, լայնամբակ, երկայնապարանոց, փոքրագլուխ և արագաքայլ։ Ու-

սուցեալ էր և լեզու, և անուն եդեալ էր նմա Ղռաբ։ Եվ զոր ինչ Դաւիթն ասէր, ձին իմանայր։ Այս ձիս ես տարին, և անկաւ ի ձեռն Ղարսեցւոյ միոյ. և էր տուն նորա արտաքոյ բերդին։ Եվ յամենայն օր հեծնոյր այրն զձին, և գնայր ի զննելն, և ուրախանայր վասն արագընթացութեանն։ Եւ յաւուր միում ըստ սովորութեանն հեծաւ զձին, և ելեալ ի զբօսանս, և դարձաւ ի տուն, և եմուտ ի բակն իւրեանց։ Իջեալ ի ձիոյն էարկ ի զերասանակն ընդ թամբօքն, և մտեալ ի տուն ասէ ցծառայն. «Երթ առ զթամբ ձիոյն»։ Եւ ելեալ ծառայն ետես՝ զի ձին ելեալ ի բակէն՝ և գնայր խաղաղիկ։ Իսկ ծառայն ընթացաւ, զի կալցէ. և ձին փախս առեալ դէպ յարևելս։ Եվ ծառայն երթեալ պատմեաց տեառն։ Եւ այրն հեծաւ յայլ ձի և գնաց զկնի նորա։ Իսկ ձին արագացոյց զընթացն՝ և ոչ կարաց հասանել նմա. դարձաւ յետս։ Եվ իմաստուն ձին յայնմ գիշերի գնացեալ վեց աւուր ճանապարհ, եհաս ի գիւղն Արծնի, և եմուտ ի բակն իւրեանց։ Եւ մայրն Դաւթի ելեալ ի գիշերին՝ զի երթիցէ յեկեղեցին առ ի յաղօթել, և տեսեալ զնա ձին՝ վրնջէր՝ և զոտսն հարկանէր յերկիր։ Եվ կինն դարձաւ ի տուն՝ և պատմեաց որդւոյն։ Եւ Դաւիթ ել արտաքս, և ձին որպէս բանական արկեալ զպարանոցն ընդ ուսով Դաւթին՝ անդադար վրնջմամբ աղաղակէր։ Եւ ի լուսանալ առաւօտուն ժողովեցան ամենայն գեղականքն, և ասեն ցԴաւիթն. «Տա՛ր զձիդ առ խանն և պատմեա նմա»։ Եւ առեալ զձին՝ տարեալ եցոյց խանին, և ասաց պատճառն։ Իսկ խանն ասաց. «Քո արդար վաստակն եկն ի ձեռս քո, առեալ գնասցես»։

Եւ մի ոք ծաղր արասցէ զմեզ. զի վասն այն գրեցաք, զի անասունք սիրեն զտածիչս և զտէրս իւրեանց, և մարդիկ ոչ իմանան զերախտաւորս իւրեանց, որպէս ի մերում ժամանակի եղեալ աբեղայքն։ Քանզի յետ երկուց ամսոցն յիւրում գերութեան փախեաւ ձին՝ և եկն առ տէր իւր. իսկ մեք երկու օր ոչ պահեմք ի մտի զերախտիս տէրանց մերոց։ Իսկ տաճիկն՝ որ զձին տարեալ էր, յետ աւուրց ինչ եկն յԱրծնի. ետես զձին, և տեղեկացաւ՝ զի ի նոյն գիշերն, որ փախեաւ՝ եկն ի գիւղն Արծնի։ Այնուհետև եղեն սիրելիք միմեանց Դաւիթն և տաճիկն։

## 23. ՎԱՍՆ ՍՐՏԱՊԱՏԱՌ ԱՌՆ

Գնացի ես ի Խնկելոյ ձոր՝ որ այժմ ասի Զորագեղ, ի տեսութիւն քեռն իմոյ։ Եւ մինչդեռ խօսէաք, և ահա եկն երիտասարդ այր մի՝ և նստաւ մերձ առ մեզ. և քոյրն իմ ասաց ինձ ի ծածուկ. «Հայեա՛ց

յերեսս առնդ»։ Եւ տեսի՝ զի սեւացաւ որպէս հնդի, և եկաց սակաւ մի, և տեսի՝ զի սպիտակացաւ որպէս ձիւն, և յետ սակաւու միոյ կարմրացաւ որպէս բոց, և ի միում ժամու տասը գոյնս փոխեաց։ Եւ ես հիացեալ զարմացայ. և ասացի ցայրն. «Եղբա՛յր, ուստի՞ ես դու»։ Ասէ այրն. «Ի յերկրէն Սինեաց»։ Եւ ես հարցի, թէ՝ «Այդ ի՞նչ է, զի գոյնզգոյն փոխի երես քո»։ Ասէ այրն. «Աստուած գիտէ զիս»։ Եւ ասացի. «Աղէ, պատմեա՛»։ Ասէ այրն անուն գեղջին իւրոյ, բայց ի մտաց իմոց անկեալ է։

—Զի էր ի գեղի մերում կոյս մի գեղեցիկ և ազնիւ, և սիրեցաք զմիմեանս ես և աղջիկն. և ասացաք ծնօղաց մերոց՝ զուգակցել զմեզ. և ոչ կամեցան, քանզի թշնամութիւն էր ի մէջ նոցա։ Եւ մեք իբրև տեսաք՝ թէ ոչ լինի կամք մեր, և ապա միաբանեալ առեանգ եղեալ փախեաք՝ բարձեալ ընդ մեզ հաց՝ և սփռեյի՝ և վերարկու, և գնացեալ հեռացաք ի գեղէն, և մտաք ի ձոր մի, և էր այր մի՝ և մտաք անդ, և գործեցաք զչար գործն մեր. և մնացաք անդ զգիշերն։ Եւ կամեցաք՝ զի ցերեկն ևս անդ կացցուք, և զմիւս գիշերն ելեալ գնամք յՕրևանն։ Եվ վաստակեալ էաք՝ ննջեցաք զգիշերն, զի մերձ էր լուսոյն՝ և զցերեկն մինչև կէս օրն։ Եվ էի ես ի մէջ ծանր քնոյ, և աղջիկն ելեալ զարթոյց զիս լալով։ Եվ զարթեայ ես և տեսի՝ զի վիշապ մի ահագին կալեալ երկու ոտք աղջկանն՝ և ի բերան իւր առեալ կլանէր։ Ասէ աղջիկն. «Հա՛ր նաճախաւդ զգլուխ դորա՝ և սպան»։ Եւ ես յամառեցեալ ոչ կարացի յառնել։ Եւ ասէ աղջիկն. «Տո՛ւր ինձ զնաճախդ՝ և ես հարից զդա, զի դու անկար յարիւն իմ, և հաներ զիս ի ծնօղաց իմոց. արդ, զիա՞րդ թողուս զիս այսպիսի մահուամբ մեռանել»։ Նա այսպիսի ողորմելի դիմօք լայր և աղաչէր, և ես յամառեալ և յապուշ կայի, և ոչ կարէի շարժել։ Եվ վիշապն եկուլ զաղջիկն մինչև ցան[ութ]սն։ Իսկ աղջիկն պարզեաց զբազուկսն, թերևս ոչ կարիցէ կլանել։ Եւ վիշապն ժողովեաց ըզտուտըն և կծկեալ՝ սաստիկ բացեալ զբերանն՝ և քարշեաց զաղջիկն առ ինքն, և ջարդեաց զթևսն աղջկանն, և եկուլ զաղջիկն. և գնաց և եմուտ յորջ իւր։ Եւ ես մնացի որպէս մեռեալ անշարժ։ Եւ յետ պահու միոյ դարձեալ եկն արտաքս վիշապն՝ և հայէր յիս. և պատառեցաւ սիրտ իմ, և ի բերանոյս ել բազում արիւն, և ամենայն զգայարանք խափանեցան, և միայն զաչս մնաց ի բաց. և տեսի՝ զի եմուտ վիշապն ի յորջ իւր. և ապա յուշաբերեցայ։ Եվ զի չգոյր կարողութիւն ոտից իմոց ելանել արտաքս, և սողալով ելի մինչ ի լոյս առաւօտուն ի դուռն այրին. մնացի ի դրան այրին. և ի լուսանալն հազիւ կարացի կանգնել և գնալ։ Եւ ոչ գնացի ի գիւղն մեր

յաՀէ Հօր ազգականն, այլ գտի ծանօթ մի յայլում գեղջէ, և պատմեցի նմա զամենայն. և ես եկի առ Փիլիպպոս Հոգևոր տէրն, և խոստովանեցայ նմա։ Եվ աՀա այս է պատճառն, զի գոյնզգոյն փոխի զերեսս իմ։

Եւ մեք լուաք ի նմանէ և փառս մատուցաք Աստուծոյ։

## 24. ՎԱՍՆ ՕՁԱՀԱՐ ԱՌՆ

Երկիրն Արարատեան պարարտ է և առատ յամենայն իրաց՝ և թեթևագին։ Վասն որոյ յամենայն կողմանց գան յԵրևան, և գնեն զոր ինչ և կամին, և դառնան ի տեղիս իւրեանց։ Նոյնպէս եկին և ի Թաւրիզոյ բազում կարաւան, և գնեցին բրինձ, բամբակ, իւղ, պանիր, ճրագու, ձէթ, կաշի, մորթ, և այլ զոր ինչ կամեցան՝ առին։ Եվ ի գիշերի գնային զճանապարհն վասն Հովոյն. և ի ցերեկն իջանէին վասն շողոյն։ Եվ գնացին մինչ ի դաշտն Վէթւոյ, և իջին ի տեղի ինչ՝ զօրն ողջոյն, և յերեկոյն կամէին բառնալ։ Եւ ոմն ի նոցանէ գնաց առ ջուրն, և մերկացոյց զոտս իւր՝ զի լուասցէ։ Եվ աՀա պատաՀեալ օձ մի՝ և եխած զոտն։ Եւ այրն աղաղակեաց առ ընկերսն. և եկեալ տեսին զնա, և գտին զօձն՝ և սպանին։ Եւ զի բառնային կարաւանն՝ զի գնասցեն, իսկ այրն օձաՀար լայր և աղաղակէր, զի ոչ կարէր Հետեակ գնալ, և դատարկ գրաստ ոչ գոյր՝ զի Հեծուսցեն զնա։ Եվ ասացին ընկերքն. «Կա՛ց մնա՛ դու աստ՝ մինչև մեք գնացեալ թափեսցուք զբեռինս, և բերցուք քեզ գրաստ, և տարցուք զքեզ ի գիւղ, թերևս բուժումն արասցեն քեզ»։ Եւ ի ներքոյ ծնկանն կապեցին պարանաւ, և եդին քար ի ներքոյ ոտին, և պարզեալ ոտն ի վերայ՝ զի շշուկն գնասցէ ի յոտըն՝ և մի՛ անկցի ընդ մարմնովն։ Եվ ի վերայ քամակին անկեալ, և արկեալ երեսօքն դաստառակ՝ և ննջեաց։ Եւ աՀա պիծակք թափեցան ի վերայ ոտին, և կծեցին այնքան՝ մինչ զի քարշեցին զթոյն օձին և զուռոյցն. և բժշկեցաւ այրն։ Եւ պիծակքն որք կծեցին՝ սատակեցան։ Եվ նա ժողովեալ ի դաստառակ՝ որպէս թէ ի կուց, և զգեցաւ զպնդակօշիկն, յարեաւ և վազէր զկնի կարաւանին՝ որպէս թէ բնաւ չիցէ վնասեալ։ Եւ իբրև գնաց զկէս ճանապարհն, և աՀա մի ոմն յընկերաց նորա Հեծեալ ի ձի՝ և գայր. և պատաՀին միմեանց։ Եվ օձաՀարն պատմէ նմա զքանչելիսն. և գնացեալ առ կարաւանն՝ ցուցանէ նոցա զպիծակսն փակեղամբ։ Եւ լուեալ նոցա՝ փառս ետուն Աստուծոյ, զի յանարգ իրաց բժշկութիւն եղև ցաւոց։ Որպէս

թրի աղն ի յօձէ և դեղ օձահարի է, և գլեղի արճճոյ՝ բժշկութիւն ձիոց. և իրան աղուիսոյ՝ ցաւագնեալ ականջաց։ Ամօթ յայնոցիկ՝ որք ասեն. «Ընդէ՞ր ստեղծան այսպիսի անարգ կենդանիք»։

## 25. ՎԱՍՆ ԴԻԻՆ ԿԵՐՊԱՐԱՆԵԱԼ ԿԻՆ

Գրեալ է (գուցէ ի մէջ) պատմութեանց, թէ յետ ջրհեղեղին ծնաւ Նոյ որդի մի Մանիտոն անուն, և դուստր մի Աստղիկ անուն։ Սա՝ ասեն՝ խառնակեալ ընդ դիւաց և ծնանի՝ զոր ասեն Յաւերժահարսունք։ Ոմանք յառասպելս համարին զսա և սուտ։ Բայց ինձ ճշմարիտ թուի և իրաւ, զի ի բազում տեղիս գրեալ է խառնակումն նոցա ընդ մարդկանց։ Քանզի ի Վարս հարանց գրեալ է, թէ դևք ի կերպարանս միայնակեցի եղեալ՝ իջեալ ի լեռնէ գնային ի քաղաքն, շնային ընդ կանայս՝ և դառնային ի լեառն։ Եւ ի պատմութիւնս Կիրակոս վարդապետի գրեալ է, թէ ի Գողթան գաւառ դևն եղեալ ի կերպարանս կնոջ և խառնակիւր ընդ այր մի։ Սոյնպէս և յաւուրս մեր եղև. զի տաճիկ մի՝ ազգաւ Բայաթ՝ ի ցեղէն որ ասի Էլիղամարլու, և անուն նորա Ապաղ, ո՛չ որպէս միւս տաճիկս լիրբ և հայհոյիչ, այլ ամբարերան և լաւ։ Սա յաւուր միում գնայր երիվարաւ ի դաշտէն Վաղարշապատու. և հասեալ յափունս Մեծամօր գետոյ՝ որ այժմ ասի Սեաւ-ջուր, և տեսանէ նստեալ կին մի ի վերայ աղբերն՝ զարդարեալ ազնիւ զգեստիւք և զարդուք։ Եվ ոչ խօսեցաւ Ապաղն. և անցեալ գնաց։ Եւ իբրև հեռացաւ սակաւ մի, և տեսանէ նստեալ ումն զկնի իւր ի վերայ ձիոյն։ Ասէ Ապաղն. «Ո՞վ ես դու»։ Ասէ դևն. «Ես այն կինն եմ՝ որ նստէի ի վերայ աղբերն, և դու տեսեր զիս և ոչ խօսեցար ընդ իս»։ Ասէ Ապաղն. «Արդ զի՞նչ խնդրես յինէն»։ Ասէ դևն. «Ես կամիմ լինել քեզ կին»։ Ասէ Ապաղն. «Ես ունիմ կին. եթէ տեսանէ զքեզ կին իմ, զքեզ և զիս սպանանէ»։ Ասէ դևն. «Ես ո՛չ երևիմ կնոջ քո, և ոչ այլ ումեք՝ բայց միայն քեզ։ Եւ ձայնն իմ լուիցեն, և զիս ոչ տեսանեն։ Ուր և կամիս դու առաքել զիս, երթամ և բերեմ քեզ պատգամ։ Պահեմ անվնաս զհօտս քո, և անդեայս և զերամակս մատակ ձիոց քոց, որ ոչ գող և ոչ գազան կարիցեն մերձենալ, և ոչ անկանիլ ի տեղի վնասու։ Ազդ առնեմ քեզ՝ զինչ որ լինիցի ի վերայ երկրի»։ Զայս ամենայն և այլ այսպիսի բանիւք մոլորեցոյց զայրն։ Եվ հաւանեալ նմա, և առեալ գնաց ի տուն։ Եւ էր ընդ նմա միշտ, և շնայր ընդ նմա հանապազ. և պահէր զերամակս ձիոցն։ Եւ յաւուր միում մա-

տակքն արածէին, և մինն որոշեցաւ ի հօտէն։ Եւ ահա գայլք երկու յարեան ի վերայ նորա և կամէին պատառել։ Եւ վրնջաց մատակն՝ և եկեալ դեքն կալան զգայլսն, և տարին ի մէջ երամակացն. և յարեան ի վերայ գայլոցն երամակքն, և ոտամբ և ատամամբ կոծելով և աքացելով սպանին զգայլսն։ Դարձեալ յայլում աւուր գնացեալ էր Ապաղն այլուր. և գողք երամակաց ձիոցն մասն ինչ գողացան. և ծանուցին կնոջ Ապաղին։ Եվ նա ասէ. «Ո՛չ կարեն վատնել նոքա զձիսն մեր. զի թէ իմանայ կին Ապաղին՝ երթեալ բերէ զնոսա»։ Եւ յետ երկուց աւուրց եկին ամենայն ձիքն՝ և ընդ նոսա խրոխտ երիվար մի։ Եւ այսպէս կայր բարեկամացեալ ընդ դիփին։ Եւ եղև՝ զի ի կալանս արարին Ապաղն, և կապանօք առաքեցին յաշխարհն Պարսից։ Եվ մինչդեռ անդ էր, երթայր գևն առ նա, և տայր գրոյց նմա ի տանէ նորա. և ի նմանէ բերէր պատգամս ի տուն նորա։ Եւ եղև դառնալ նորա յաշխարհէն Պարսից, և գալ ի տուն իւր։ Եւ տկարացաւ կին նորա. և բերին ի սուրբ ուխտն Յօհանավանք։ Եւ շնորհօքն Աստուծոյ բժշկեցաւ. և գնացեալ պատմեաց առն իւրում զսքանչելիս սուրբ Կարապետին. և վասն այնորիկ ծանօթացաւ Ապաղն վանքին. և արար բարեկամութիւն երթևեկութեամբ։ Եւ մեք ի նմանէ ուսաք՝ հարցանելով. իսկ նա պատմեաց մեզ զամենայն ստուգութեամբ։

## 26. ՈՒԽՏ ՄԻԱԿԵՑԻ ԸՆԴ ՍԱՏԱՆԱՅԻ

Ասի յառակաց, թէ Միակեաց մի սատանայի ուխտ եդիր, որ ի տարի մի սատանայի ի պահք կենայր, թէ զնա ի մեծութիւն հասուցանէ։ Եւ սատանայ յանձն առ կատարել զխնդրուածս նորա։ Եւ յորժամ վճարեաց զպահքն, շարժեաց զեպիսկոպոս քաղաքին, որ եդ զնա եկեղեցապան։ Եւ ի միւս տարւոյն շարժեաց, որ օրհնեաց զնա աբեղայ։ Եւ ի միւսում տարոյն եղև մեռանել եպիսկոպոսին, և շարժեաց զթագաւորն և զքաղաքացիսն, և առնել տուին եպիսկոպոս։ Եւ յորժամ կամեցաւ զգեստաւորել, զի ժամ արասցէ, եկն սատանայ, ետ առ նա փոքրիկ չորեքաղի մի և ասէ.

—Իմ ամէն լաւին փոխարէն, որ զքեզ ի յայտ մեծագոյն աստիճանդ հասուցի, զայդ արա, որ զայդ փոքրիկ չորեքաղիդ ի ծոցդ դիր և զգեստդ ի վերա հագիր. և յորժամ ի բեմն ելանես, նա մէկ մատամբդ ի վերա մէկ լարին զարկ. և այնպէս արարեալ, պատրեալ եպիսկոպոսին։ Յանկարծակի հաղարք-հաղարաց և բիւրք

բիւրոց տասնաղի, և թմբկի, և սուռնայի, և չանկի, և չորեքաղոյ ձայն հնչեաց ի մէջ եկեղեցոյն։ Եւ զարհուրեցան թագաւորն և ժողովուրդքն, և ո՛չ զոք տեսանէին հարկանող նուագարանացն։ Եւ հրամայեաց թագաւորն բռնել զդուռն եկեղեցոյն, և զիւրաքանչիւր ոք մերկացնել և փնտռել։ Եւ այնպէս արարեալ, ոչ զոք գտին պատճառ։ Եւ մնաց թագաւորն և եպիսկոպոսն միայն։ Եւ թագաւորն ևս մերկացաւ. և ո՛չ գտաւ առ նա ինչ։ Եւ յորժամ մերկացուցին զեպիսկոպոսն, գտին ի ծոցն զչորեքաղին զայն։ Եւ ի չարչարանս արկեալ խոստովան եղև կուրացութիւնն և զդաշինսն, որ եդեալ էր ընդ սատանայի։ Յայնժամ կապեալ զնա ի յագի ամեհի ձիոյ և թողեալ ի դաշտի, մանրամասնաբար կոտորեալ եղև մարմին նորա, և այնպէս աւանդեաց զդառնացեալ հոգին ի ձեռն սատանայի։

Յուցանէ առակս, թէ ով ոք սատանայի բարոյն և ուխտին հաւատայ, բաժին նորա և վերջքն այնպէս է լինելոց։

## 27. ՀՆԱՐՔ ՍԱՏԱՆԱՅԻ

Սատանայ մի գնաց առ միւս սատանայ և ասէ.

—Ի՞նչ կու յառնես դու։

Եւ ասէ.

—Ունիմ զուշ մի մեղր, և սև մազեղէն մի, և դգալ և սաւարա մի։

Եւ ասէ սատանայն ընդ սատանան.

—Եւ ի՞նչ գործես այտով։

Եւ ասէ.

—Առնում տարգալովս մեղս ի գչէն և դնեմ ի մարդուն բերանն, որ քաղցրանա ու մեղս գործէ, պոռնկի և շնայ։ Եւ յորժամ գործէ զմեղքն, ես մազեղինովս ծածկեմ, որ ասեն, թէ զմեր չարս մենք մէն գիտեմք, այլ ով չգիտէ։ Եւ բազում ժամանակս խաբեմ զմարդիկ։ Եւ յորժամ կամենամ ես՝ առնում զսաւարաս և ելանեմ ի տանիսն, և փչեմ, և հրապարակեմ զչար գործսն և խայտառակեմ։

Ցուցանէ, թէ ոչինչ է ի ծածուկ, որ ոչ յայտնեսցի. և ոչ կարէ քաղաք թաքչել, որ ի վերա լերինն կայցէ։

## 28. ՄԵԾԱՏՈՒՆ ԽԱՉԵՆԱՑԻ ԵՒ ՈՐԴԻՆ ՔԱՀԱՆԱՅ ՔՐԻՍՏՈՍԱՏԵՍ

Էր այր մի փառաւոր ի վերին Խաչէնք, և որդի նորա ուսեալ եղև քահանայ։ Եւ աւուր միում ասէ ցհայրն իւր.

—Ո՜վ ծե՛ր, գիտացի՛ր, զի ես յամենայն պատարագի տեսանեմ զՔրիստոս և զսուրբ Հոգին։

Ասէ հայրն.

—Ողորմեա՛ ինձ, որդեա՛կ իմ, զի և ես տեսանեմ։

Եւ տարեալ զհայրն կացոյց ի բեմն, ընդ աջմէ իւր, և եդ նշան, թէ այս ժամս տեսցես զՀոգին սուրբ, և կատարեաց զպատարագն։ Եւ ելեալ ի պատարագէն, զի երթիցեն ի տունս իւրեանց, զի եկեղեցին արտաքոյ գեղջին էր, և ասէ հայրն.

—Ո՜վ որդե՛ակ իմ, ընդէ՞ր ոչ ցուցեր ինձ զՀոգին սուրբ։

Եւ նա ասաց, թէ՝ Յորժամ մխեցի ի կողսն քո, եկն Հոգին սուրբ. քանզի զայն նշան տվեալ էր։

Եւ ասէ հայրն.

—Ո՜վ որդի, յայն ժամն ես ո՞ւր էի՞, զի միտքս ա՛յլ տեղ էր։

Եւ ասէ որդին.

—Ո՞ւր էր, հայր, խելքդ։

Ասէ հայրն.

—Իբր թէ ի պազարն էր գնացեր ի վաճառ և քո մօրն ծիրանի էպրշմէ գլխադիր գնել կամէի, և ասէի, թէ՝ սուլթանին մեծ ուղտն, զոր Պօղտի կոչեն, պաշարի աման՝ ակճոր քարշել կամի տալ զմորթն նորա։ Նա և գիտել պարտ էր ինձ, թէ քանի՞ լիտր գինի տանէր նա։

Եւ ասէ որդին.

—Ո՜վ հայր, զարմացա և զարմացումն կալաւ զիս, զի հուրն ո՛չ կիզեաց զմեզ, վասն քո անպէտ խորհրդոյդ։

Յուցանէ, թէ զսուրբ հոգոյն շնորհքն ոչ ոք կարէ տեսանել ցուցանելով, այլ բարի գործով։ Դարձեալ ցուցանէ, թէ ուխտն անսուրբ է, և ակճորն՝ յարբեցութիւն, և գլխադիրն՝ ցանկութիւն. շնութիւն, և պազարն՝ բռզատուն։ Եւ գիտացիք, զի այսպէս միտք մեր, զոր խորհին և աղտեղացուցանեն զհոգիս մեր շնութեամբ, արբեցութեամբ և պղծութեամբ, վասն այն փախչի հոգին սուրբ ի մէնջ։

## 29. ՏԻՐԱՑՈՒԻՐ ՎԱՐԴԱՊԵՏ Ի ՔԱՌԱՍՈՒՆ ՏԱՐՈՅ

ԶՏիրատուր վարդապետն ի պաշտօն տարան և այն օրն հաց մոռացան տալ ուտելոյ։ Յերեկոյին ժամուն տարան ի տուն։ Ասէ պարոնն.

—Վարդապե՛տ, քանի՞ տարոյ ես։

Ասէ.—Քառասուն տարոյ՝ պակաս մի օր։

Ասէ.—Մէկն է՞ր է պակաս։

Ասէ.—Օրս այս, որ քաղցած պահեցեր, ժամանակի կարգ ո՛չ է։

## 30. ՈՐՍՈՐԴ ԵՎ ՀԱՅՐ ԱՆՏՈՆ

Որսորդ ոմն տեսեալ զԱնտոն, զի ուրախանայր ընդ եղբայրս, և տկարացաւ։ Եւ իմացեալ Անտոնի՝ ասէ ցնա.

—Քարշեա՛ զաղեղդ։—Եւ քարշեաց։—Եւ ասէ.—Ե՛ւս ձգեսցես։ Եւ նա ասէ.

—Հա՛յր, եթէ աւելի քարշեմ, կորի աղեղն իմ։

Եւ ասէ Անտոն.

—Այդպէ՛ս է, որդեակ, և մե՛զ պարտ է երբեմն զիջանել ըստ մարմնոյ, զի մի՛ սպանցուք զմարմին տկար։

## 31. ՀԱՅՐ ԱԳԱԹՈՆ ԵՒ ԽՐԱՏՔ ԻՒՐ

Հարցեալ եղև հայրն Ագաթոն, եթէ՝ Ո՞ր է մեծ, աշխատել զմարմինն, թէ՞ պահել զմիտս անշփոթ։ Եւ նա ասէ.

—Մարդն նման է ծառոյ, և վաստակք մարմնոյ ոստք են նորա, և պահել զմիտս՝ պտուղ է, և ամենայն ծառ, որ ոչ առնէ պտուղ՝ հատանի. այլ պիտո՛յ են ոստքն ի պահուստ պտղոյն։

## 32. ՄԵԾԱՏՈՒՆ ԵՒ ՔԵՌՈՐԴԻՆ

Եւ արդ ահա էր ոմն փարթամ և յոյժ մեծատուն՝ ամենայն բարութեամբ լցեալ։ Եւ ունէր ժառանգ կենաց իւրոց զորդի քւերն իւրոյ։ Եւ ահա եղև նմա հիւանդանալ, և կոչեաց զժառանգ, զի խրատեսցէ զնա։ Եւ նա եկեալ՝ նստաւ առաջի նորա, և զգլուխն իւր էած ի ծոցին իւրում։ Եւ մեծատունն սկսաւ խրատել զնա, և ասէ այսպէս. թէ՝ Ո՛վ որդեակ, հայեա՛ց և տես, զի ահա մերձ երթամ յաշխարհէս, զի սնոտի և անցաւոր է փառք և հեշտութիւն աշխարհիս նման երազոյ. վասն որոյ աղաչեմ զքեզ, որդեա՛կ, մի՛ մոռանար զսէր մահուն և զդժոխքն, և հեռացիր յամենայն մեղաց, և սիրէ զգործս բարիս՝ մեծ յուսով և զղջմամբ։ Եւ այլ այսպիսի բանիւք յորդորէր զնա։ Եւ ձանձրացեալ ասեց.

—Ահա՛, որդեակ, լսեցե՞ր կամ աւգտեցա՞ր ի բանից իմոց։

Եւ նա հանեալ զգլուխն ի ծոցէն և ասէ.

—Յէ՛, քեռի, ի՞նչ կու հրամես և կամ ի՞նչ ասեցեր. բնաւ ո՛չ գիտեմ, թէ դու զի՞նչ խաւսեցար, քեռի՛։ Ապա դու ինձ լսէ՛, որ ես պատմեմ քեզ գործ մի հրաշալի։ Քանզի այժմն ի թիւ և ի համարկի, և ահա տասն և երկու երակս կայ ի փորիս իմում, և ամենայն ի պորտս կու գնա, և յերանքս իջեալ ժողովի։

Եւ ասէ քեռին.

—Վա՜յ ինձ, որդեա՛կ, զի ես քեզ զչար տանջանս դժոխոցն քարոզեմ, և դու զերակս փորոյդ ի թիւ և ի համար բերես։ Ահա, որդեա՛կ, յայսմ հետէ աւտար ես դու յինէն, և ելցես ի ժառանգութենէ իմէ՝ վասն անմտութեան քո։

## 33. ՀՐԵԱՅ ԵՒ ՔՐԻՍՏՈՆԵԱՅ

Ջհուտ մի հորն էր ընկեր. և էր աւրն շաբաթ։ Եկեալ տեսեալ քրիստոնեայ մի, ասաց թէ՝ Բերեմ պարան և հանեմ զքեզ ի հորուտ։ Եւ նա ասաց թէ՝ Ձե՛մ կամիլ, զի օրս շաբաթ է։ Եկաւ մեկալ աւրն քրիստոնեայն ի հորն։ Եւ ասէր ջհուտն.

—Հա՛ն զիս.

Եւ ասէ քրիստոնեայն.

—Աւրս կիրակի է, չե՛մ կամիլ։



## 34. ԲԱՐԻ ՄԱՐԴ ԵՒ ԷՇ ԻՒՐ

Բարի մարդ մի զամենայն ինչս իւր ետ աղքատաց, բայց միայն պահեաց էշ մի, որով երթայր ուր և կամէր։ Եւ երթեալ յեկեղեցի մի զի աղաւթեսցէ, և զէշն կապեաց ի դուռն։ Եւ յորժամ սկսաւ ասել «Հայր մեր, որ յերկինս», ի միտն անկաւ, թէ էշն միայն է ի դուռն։ Եւ յորժամ ասաց, թէ՝ «Սուրբ եղիցի անուն», անկաւ ի միտն, թէ գողանայ ոք զէշն։ Եւ յորժամ ասաց. «Եկեսցէ արքայութիւն», ասաց ի միտն, թէ՝ Նեղիմ հետեւակ երթալ։ Եւ յորժամ ասաց. «Եղիցին կամք քո», ասաց ի միտն՝ Քաղցած է էշն։ Եւ եկեալ ի դուրս, ասաց իշուն.

—Է՜, իմ պարոն էշ, դու աւելի բաժին առէր յիմ աղաւթիցն, քան զաստուած. գնա ի խաւարն, զի որ է՛շ ունի, ծառայ է իշուն։

Եւ ետ զէշն հիւանդ աղքատաց և ինքն ազատեցաւ ի հոգոց։

# 35. ՃԱՌ ԿՈՎՈՒ ՄԵՌԵԼՈՅ՝ ՓՈԽԱՆԱԿ ԻՇՈՅՆ

*Խնդրէք և ոչ առնուք, վասն զի չարաչար խնդրէք։*

*Ասի, թէ մօնլայ Նասրադդինն ունէր էշ մի սնուցեալ ի տան իւրում, որոյ հեծեալ գնայր յայգի իւր և անդ բառնայր յերկոսին կողմս զհասուն թուզս, խաղողս և դեղձս և բերեալ ի քաղաքն՝ վաճառէր և զթոշակս տան իւրոյ պատրաստէր։ Բայց էշն, գոլով բարուք բուծեալ և ուժեղ, խաղայր ի ճանապարհին և նեղութիւն տայր մօնլային. այնպէս որ, եթէ լցուցանելոյ զկողովս թզովք և խաղողովք, ինքն և՛ս հեծանիցէր, յոյժ ծանրութիւն լինէր իշոյն, որոյ խղճալով ո՛չ հեծանէր։ Բայց եթէ յետուստ լինէր, մերթ զկոշիկն կոխեալ պատառէր, մերթ պայտիւ հարեալ զկրունկն վիրաւորէր։ Իսկ եթէ թողոյր իշոյն ընդառաջ իւր ընթանայր, զնոսա ճմլէր և ոչինչ շահ լինէր ի պտղից, և ոչ կարէր վաճառել զնոսա։ Յոյժ վշտացեալ էր հօճայն և ո՛չ կամէր վաճառել և զայլն գնել, ըստ որում՝ ի տան ծնեալ և սնեալ էր։*

*Յաւուր միում բարձեալ թուզք և խաղողք տանէր, չարութիւն արարեալ բաւականին վշտացոյց հօճային, և ոչ կարաց պահպանել. փախեաւ ի տուն՝ նախքան զինքն և ոչնչացոյց զթուզն և զխաղողն։*

*Հօճայն գնացեալ ի տուն, գանգատեաց կնոջն և խնդրեաց յաստուծոյ, զի էշն սատակեսցի։ Յառաւօտու ելեալ ասաց կնոջն.*

*—Գնա՛ գոմն և տե՛ս, զի էշն՝ ըստ խնդրանաց իմոց, անպատճառ սատակեալ է. և կոչեցից զմշակս, զի տարցեն։*

*Կինն գնացեալ ետես՝ փոխանակ իշոյն կովն սատակեալ։ Եւ դարձեալ կինն, ասէ.*

*—Ո՛վ այր, զի՞նչ արարիր դու. ահա էշն առողջ և կենդանի է և կաթնատու կովն անկեալ մեռեալ է ի գետնի։*

*Պատասխանեաց հօճայն.*

*—Այդ անկարելի է, զի ես վասն իշո՛յն խնդրեցի յաստուծոյ մահ և ոչ կովուն։*

*Այսպէս մաքառումն եղև։ Հօճայն գնաց և ետես։ Ասէ.*

*—Կի՛ն, դու գիժ ես և խելացնոր. ահա կովն կենդանի է և էշն է սատակեալ։*

*Դարձեալ մաքառումն։ Կոչեցին ի փողոցէն անձինք ութն և նոքա հաստատեցին, զի կովն է անկեալ և ոչ էշն։ Վերստին ընդ նոսա վիճէր։ Անճարացեալ յայնժամ հօճայն, ամբարձեալ զաչս և զձեռս յերկինս, և ասէ.*

—Ո՞վ արարիչ տէր ամենեցուն, կինն իմ և բնակիչքս այսոքիկ գիտեն ճանաչել և զանազանել զէշն և զկովն, որ ինքեանք ո՛չ են արարեալ, իսկ դո՛ւ, որ ստեղծիչ և արարիչն ես սոցա, ո՛չ կարացեր ճանաչել և զանազանել զգործս ձեռաց քոց։ Կամ թէ դո՛ւ, որ տաս բան և լեզու ամենեցուն, ո՛չ գիտացեր զանուանս սոցա։ Ո՞ւր գտանէի ես այնպիսի բարապան մի, որով կարիցէի զեկուցանել քեզ զանուն իշոյն և կովուն, որ ոչ սխալիցէիր։ Բայց քա՛ւ լիցի, տէ՛ր, որ ասիցեմ, թէ ո՛չ զանազանիցես, կամ թէ սխալեցար, այլ ե՛ս չարաչար խնդրեցի, վասն որոյ և, ի պատիժ իմ, փոխանակ իշոյն զկովն, որ առաւել օգտակար էր ինձ, կորուսի։ Մեղա՜յ և կրկին մեղա՜յ։ Ներեա՛ ինձ, և եղիցին կամք քո օրհնեալ։

Ասաց և ետ բառնալ շալակաւորաց զդի կովուն, և ի խրատ յետագայից՝ եթող զճառս։

## 36. ՔԱՀԱՆԱՅ ԸՆՉԱՒԷՏ ԵՒ ՄԵԾԱՏՈՒՆ ԵՒ ԱՅՐԻ ԱՂՔԱՏ՝ ՀԻՒԱՆԴԱՑԵԱԼՔ

Այր ոմն քահանայ ընչաւէտ և անուանի՝ այնչափ մեղօք և չարագործովք լցեալ, որչափ մեծութեամբ և ստացուածովք փարթամ։ Ի սորա վիճակի էին ոմն մեծատուն և կին մի այրի՝ աղքատ, որք երկոքին հիւանդացեալ և տեսեալ զինքեանս մերձ ի մահ, առաքեցին առ քահանայն, զի եկեսցէ առ նոսա։ Եւ յառաջ ի տանէն մեծատանն կոչեցին զնա, զի եկեալ խոստովանեցուսցէ զնա, և հաղորդեսցուսցէ մարմնոյ և արեան որդւոյն աստուծոյ և զհոգի նորա ելեալ ի մարմնոյ՝ ուղարկեսցէ առ աստուած։ Իսկ քահանայ առաւել հոգալով վասն ընչից, քան թէ փրկութեան հոգւոյն, առժամայն յարուցեալ փութանակի գնաց առ մեծատունն և եմուտ յապարանս յոյժ մեծածախ և գեղեցկապէս զարդարեալ, ուր հիւանդն անկեալ դնիւր։ Եւ անդ եգիտ զբազումս շուրջ զմահճօք՝ սուտակասպաս և շողոքորթս, զորս արտաքսահանեալ զինչ և իցէ կերպիւ, հարևանցի խոստովանեցոյց զնա։ Ապա նստեալ մերձ առ նմա՝ կեղծաւորէր զգութ սիրոյ առ նա, ցուցանելով զարամութիւն սրտի իւրոյ, հարցանէր թէ՝ Զի՞նչ ախորժես, զի՞նչ տեղոջ ցաւ ունիս և խի՞ք առաւել վշտանաս։ Ի մէջ երկու սուր երկայրից վստահութիւն և խաղաղութիւն խոստանայր նմա՝ ըստ նմանութեան սուտ մարգարէին ստաբանութեամբ աղպարիայն, այսինքն ըզմարմինն նորա հաստատէր, զոր տէր աստուած կործանել սպառնայր։ Մինչդեռ նա այսպիսի սնոտի բանիւք մխիթարէր զմեծատունն,

ահա ի նմին ժամու եկն ոմն ի տանէ այրւոյն ասելով, [զի] մերձ է փոխիլ աստի յաշխարհէս և կարօտ է հաղորդիլ յեկեղեցւոյ խորհրդոցն։ Բայց քահանայն յամենայն յանձնէ ջան ունելով միայն սնոտի յուսով կերակրել զմեծատունն, ո՛չ ետ պատասխանի։ Իսկ փոխանորդ քահանային մերձ գոլով՝ աղաչէ զնա վասն աղքատ կնոջն այնորիկ, ասելով.

—Մեծ է մեղք մեր և այրոյն վնաս, եթէ սակս հեղգութեան և անհոգութեան մերոյ՝ առանց խոստովանութեան և հաղորդութեան մեռանիցի կինն այն, քանզի պահանջելոց է աստուած՝ դատաւոր արդար, ի ձեռաց մերոց զարիւն ոչխարաց մերոց, զորս ի մեզ յանձն արար, զի ո՛չ միայն վասն մեծատանց, այլ և վասն աղքատաց պարտ եմք հոգալ միապէս, և հաւասարապէս համարս տալոց եմք։

Իսկ քահանայն բարկացեալ նմա, ասէ.

—Ով առողջ գլխոյն վասն տառապեալ կնոջն զայսպիսի մեծատուն թողումք։

Պատասխանի ետ փոխանորդ նորին.

—Մի՛ ինչ հոգար, եթէ հրամայես, ե՛ս գնացից ի տեսանել զնա։—Եւ հրաման առեալ գնաց ի տուն այրւոյն՝ հանդերձ հաղորդութեամբ և եգիտ զնա պահօք զօրացեալ և անկեալ ի վերայ սակաւ խոտոյ, որ թէպէտ էր չքաւոր և առանց երկրաւոր ստացուածոց, սակայն առաքինութեամբ և բարեգործութեամբ փարթամ։

Արդ, իբրև եմուտ ի ներս և համբարձ զաչս մտաց, տեսանէր զզուարթս հրեշտակաց, որք սպասաւորէին աղախնոյն Քրիստոսի և սուրբ կոյսն Մարիամ՝ հանդերձ բազմութեամբ կուսանաց մերձ գոլով առ նմա, և ի ձեռի ունելով թաշկինակ, զքրտունս յերեսաց հիւանդին սրբէր և մեծ խնամ տանէր նմա։ Զայն տեսեալ փոխանորդն քահանային, հիացեալ կայր ի հեռաստանէ։ Իսկ սուրբ կոյսն Մարիամ երկրպագեալ փառս ետ խորհրդաւոր մարմնոյ որդւոյն իւրոյ, նոյնպէս և ամենայն կուսանք, որք իբրև կանգնեցան ի վերայ ոտից իւրեանց, ապա համարձակեալ եմուտ ի նե[ր]ս, զոր քաջալերեալ սուրբ կոյս Մարիամ, յորդորեաց զնա նստիլ։ Եւ նա նստեալ ի վերայ աթոռոյ՝ խոստովանեցուց զհիւանդն և հաղորդեաց զնա, զկարգն նորա հանգստեանն կատարեաց, ապա լի ուրախութեամբ և սոխալով դարձաւ ի տուն մեծատանն։ Եւ կացեալ առ դրան, ետես կատոյս սնաղէմս՝ շրջապատեալ զմահճօք մեծատանն, զորս տեսեալ թշուառական մեծատունն, և ի նոցանէ յոյժ վշտացեալ, դոչէր-հառաչէր ասելով.

—Ի բա՛ց տարէք զկատուս զայսոսիկ, հեռացուցէ՛ք զդոսա աստի և ազնեցէք եղկելոյս։

Եւ ահա ոմն եթովպացի ահարկու, ի ձեռն ունելով զգեղարդ. եհար ի կոկորդ մեծատանն, որոյ հոգին, ոչինչ մխիթարութիւն խղճի մտաց գտանելով զամենայն աւուրս կենաց իւրոց, սկսաւ գողալ, զարհուրել, երկնչել, քանզի եթովպացին այն մեծաւ սրտմտութեամբ զգեղարդն ի կոկորդէ ճշուառականին ի դուրս եհան, և նա զահագին ձայն արձակեալ զհոգին ետ։ Յայնժամ հասեալ և այլ ընկերքն սկսան զնա հարկանել, խոցոտել, չարչարել՝ մինչև զնա ի տեղին աղջայմղջին և ի զուբ յաւիտենական ընկեցին։ Յորժամ զայս ետես փոխանորդն քահանային, ահ և դողումն անկաւ ի վերայ նորա, և անկեալ էր ի զարմացման։ Եւ ահա ի նմին ժամու երևեցաւ նմա սուրբ աստուածածինն և ասէ.

—Մի՛ երկնչիր, սիրելի, ոչի՛նչ չարութիւն գիւաց վնասեսցէ զքեզ, զի քեզ պատրաստեալ է յերկնային ուրախութիւնս։

Այսպիսի բանիւք քաջալերեալ ի կեալ, ի միտս գոհացեալ զմխիթարչէն իւրմէ, և յերկուց տեսութեանց յայսցանէ ոչ սակաւ աւգտեցաւ։

## 37. ԿՈՅՐ ԵՒ ԳԱՆՁՔ ՆՈՐԱ՝ ԳՈՂԱՑԵԱԼՔ

Պատմեաց Յակոբ վարդապետն. Կոյր մի յեզնկայն և ունէր վաթսուն հազար դեկան և հանապազ այնու ուրախանայր։ Եւ թուրք մի յաշեալ գողացաւ զայն։ Եւ նա ելեալ աղաղակէր. և բազումք գային ողորմութիւն առնել նմա։ Եւ անօրենն տեսեալ և նա՛ գնաց ողորմութիւն առնել նմա։ Եկն և եբեր նմա հաց։ Եւ առեալ զհացն եկեր և ճանաչեաց զնա։ Եւ նա բուռն եհար զնմանէ, աղաղակեաց ասելով.

—Սա՛ առեալ զդրամն իմ։

Եւ ասեն.

—Զիա՞րդ ճանաչեցիր։

Եւ ասէ.

—Հացն դառնացաւ ի կոկորդ իմ։

Եւ Թախրաթանն առեալ զքառասուն հազար՝ ե՛տ ի նմա։

## 38. ՎԱՐՁՈՒՆԵԱՑ ԱՍՏՈՒԱԾԱԾԻՆ

Կրօնաւոր մի նստեալ դրամ կու համրէր. և եկեալ աղքատ մի՝ խնդրեաց ողորմութիւն, և զձեռքն կալաւ ի յառջևն։ Եւ նա

ապտակ եղարկ ի յերեսն աղքատին։ Եւ երևեցաւ Քրիստոս և ասաց, թէ՝ Հրեայքն զայդ ո՛չ արարին։

Եւ նա նոյնժամայն գնաց մօտ վարդապետն և խոստովանեցաւ, զոր գործեաց։ Եւ ասաց վարդապետն թե՝ Բազում անգամ ասէի, թէ արծաթն կուրացուցիչ է մտաց, և դու ո՛չ լսէիր ինձ. բաշխէ՛ զինչս, զոր ունիս և զսիրտդ քարով ծեծէ, մինչև ողորմեսցի քեզ աստուած։ Եւ նա բազում ժամանակ ի շուրջ եկեալ։ Եւ օր մի երևեալ սուրբ աստուածածինն, և ճիւղ մի ի դրախտէն եբեր և ասաց.

—Տա՛ր ի Մեսրօպ վարդապետն տուր, որ խաչ կազմէ և ի մէջն դնէ, որ քեզ փրկութիւն լինի։

Այն է՝ վարձունեաց սուրբ Աստուածածինն, որ է ի Վրացտունն։

## 39. ՎԱՇԽԱՌՈՒ ՀԻՒԱՆԴԱՑԵԱԼ ԵՒ ՈՐԴԻՔ ԻՒՐ

Ոմն մարդ զարծաթ իւր ի վարձու տայր. և ունէր երկուս որդիս։ Դէպ եղև զի հիւանդացաւ մերձ ի մահ։ Խոստովանահայրն եկն առ նա, առաջի որոյ թէպէտ ո՛չ թաքոյց զմեղս իւր, սակայն որպէս ինքն քահանայն իմացաւ, ո՛չ դարձուցեալ էր զամենայն, զոր ինչ վաշխիւք ստացեալ ունէր, վասն [որոյ] ո՛չ կարաց զթողութիւն մեղաց և զփրկութիւն հոգւոյ ընդունել։ Եւ յորժամ որդիքն իւր խրատ տային նմա, զի դարձուցէ յետս՝ զոր ինչ առեալ էր, պատասխանի ետ թշուառականն[ն].

—Ես զայս ո՛չ կարեմ առնել, զի եթէ կենդանի մնայցեմ և ոչինչ ունիցեմ, հարկ ինձ եղիցի մուրանալ, և եթէ մեռանիցիմ՝ ձեզ հարկ եղիցի տալ աղքատաց, զի ոչի՛նչ ձեզ մնայցէ, քանզի զամենայն ինչք ի վաշխից են։

Եւ նոքա ասեն.

—Հա՛յր, մի՛ խնայէր ի վերա մեր, յառաջ հոգ տար փրկութեան քում։

Իսկ նա ասէ.

—Լո՛ւռ կացէք, թոյլ տուք ինձ, ես առաւել ապաւինիմ յողորմութիւն աստուծոյ, քան թէ ի շնորհս մարդկան, զի մարդիկք են անգոյթք և անողորմ, այլ ողորմութիւն աստուծոյ է՛ անբաւ.—և այնպէս անզեղջ մնալով մեռաւ։

Զայս տեսեալ ոմն յորդւոցն, ասէ ցեղբայր իւր.

—Դարձուցանիցուք զվաշխս իւրաքանչիւր մարդոյ, մի՛ գուցէ ըմբռնեսցուք ի տանջանս հօր մերում։

Եւ նա ասէ.

—Եթէ հայրն իմ վաշխս առնոյր, ես ո՛չ առի, ես կամիմ վայելել զբաժին իմ, քանի կենդանի եմ, զինչ յառաջայ լինելոց է, ես ո՛չ գիտեմ։—Եւ այնպէս մնաց ի հաւանութեան իւրոյ խորհրդոց, իսկ միւսն եղբայրն դարձուց իւրաքանչիւր ումեք, զոր ինչ իւր էր և զմնացեալսն ի ծածուկ բաշխեաց աղքատաց։ Արդ, առաջին եղբայրն անցուցանելով զաւուրս կենաց ի բարութիւնս, զորս հայրն ժողովեալ էր, ի կէտ ժամու էջ ի դժոխս, իսկ երկրորդն՝ յետս դարձուցեալ զվաշխն, եմուտ ի վանս կրօնաւորաց։ Դէպ եղև ի միում աւուր, զի կայր յաղօթս, և ահա բացաւ երկիր առաջի նորա և ետես ի յանդատաձս մեծ հուր, յորմէ ահագին բոց ելանէր. ի մէջ այլոց՝ ետես զհայրն իւր և զեղբայրն, որք զմիմեանս անիծանէին։ Հայրն ասէր ցորդին. Անիծեա՛լ լիջիր ընդ իս, զի ես վասն քեզ մեծայցուցանելոյ այսր աղագաւ եկի այսր։ Եւ որդին ասէր. Մանաւանդ դո՛ւ անիծեալ լիջիր, զի ես քո՛ պատճառաւ այսր անկայ, զի եթէ դու ո՛չ էիր ինձ թողեալ զինչս չարաչար ժողովեալ, ես դիւրաւ ազատ լինէի յայլոց մեղաց։ Եւ այնպէս անդադար զմիմեանս անիծանէին և կշտամբէին։ Զայն տեսեալ կրօնաւորն այն, գոհանայր աստուծոյ, զի հատուց զիւրն իւրաքանչիւր ումէք, ուստի և մեք զգասցուք յայնպիսի ախտէ, զի մի՛ ոք կրեսցուք նման նոցին։

## 40. ԱՐԾԱԹԱՍԷՐ ԱՅՐ ԵՒ ԿԱՂԱՊԱՐԵԱԼ ԳԱՆՁՔ ԻՒՐ

Եւ այլ ոմն արծաթասէր արար կաղապարս մեծամեծս զոսկին և զարծաթն, և տարեալ թաղեաց զնա յայգին իւր։ Եւ զայն գիտացեալ ծառայք նորա, գնացեալ առին զկաղապարսն և փախեան։ Եւ նա իմացաւ յետ աւուրց, և գնաց առ իմաստասէրն, սկսաւ լալ և պատմել զկորուստն իւր։ Եւ ի ժամն նեղասրտեալ, արկ չուան ի պարանոցն, և կամէր խեղդիլ՝ ի կսկծոյ և ի սիրոյ արծաթոյն։ Եւ իմաստասէրն թափեաց զնա ի մահուանէն, և առեալ զնա գնաց ի տեղի կաղապարացն։ Եւ նա եցոյց նմա դչափ կաղապարացն ի քարանց տեղոյն։ Եւ իմաստասէրն առ զքարինսն՝ թաղեաց անդ և ասէ առ նա, թէ՝ Ահա՛, որդեակ իմ, ա՛յս են կաղապարքն քո, զի այն աւելորդ էր և չէր քեզ ի պէտք անցանելոց։ Եւ դու զնա ի տուն քո և յանհոգս լեր, զի այսպէս անշահ և անաւգուտ էին կաղապարքն քո, որ յոսկւոյ և յարծաթոյ։ Եւ այսպէս մխիթարեցաւ արծաթասէրն։

## 41. ՄԵԾԱՏՈՒՆ ԱԳԱՀ ԵՒ ԳԱՆՁՔ ԻՒՐ Ի ԳԵՐԵԶՄԱՆԻ ԳՈՐՏՍ

Ոմն մեծատուն ի Գաղատիայ էր յոյժ ագահ և ի վաշխիս տայր հանապազ մարդկան զինչս իւր։ Եւ ի մեռանիլ իւրում խնդրէր ի կնոջէ իւրմէ, զի մի քսակ դրամ դիցէ առ նմա՝ ի գերեզմանի, զոր նա, որպէս կարաց, արար թաղնաբար։ Բայց ոչ էր թագչիլ, զի ոմանք եկեալ ծածկաբար բացին զգերեզմանն և ահա տեսին երկու գազան՝ մինն ի վերայ քսակին, և միւսն՝ ի վերայ սրտին, որոց մինն զդրամն ի քսակէն ի դուրս հանէր, իսկ միւսն ի սիրտ մեծատանն դնէր, իբր թէ ասելով.

—Մեք դրամով զսիրտ քո անյագ լցցուք։

Իսկ նոցա տեսեալ զայս՝ զարհուրեցան և հողով ծածկեալ փախեան։

Արդ, զիա՞րդ թուի քեզ, ո՛վ ընթերցող, թէ զորպիսի՞ տանջանս ընդունի հոգի նորա ի դժոխս՝ յանքուն որդանց, եթէ ի գերեզմանի, ի վերայ մարմնոյն այսքան զարհուրելի տեսիլ ցուցեալ եղև։

## 42. ԴԱՏԱՒՈՐ ԵՒ ԱՂՔԱՏՔ

Դատաւոր ոմն ի ժամանակի սովոյ, զի մի լուիցէ զձայն աղքատաց, փոխեցաւ յայլ տուն, որ էր մերձ եկեղեցւոյ, ուր աղքատաց տառապեալ և նուաղեալք ի սովոյ աղաղակէին։ Եւ նա, զի մի լուիցէ զձայն նոցա, ասէ.

—Ո՛չ կարեմ հանդուրժել ընդ շանցս այսոցիկ։—Եւ հրամայեաց զսեղան իւր յայլ օթևան տանել։

Եւ ահա, ի նմին ժամու, ոմն սպառազինեալ բախեաց զդուռն ասելով.

—Առաքեալ յատուծոյ եմ, կամիմ խօսել ընդ տեառնդ ձերում։

Եւ յորժամ սպասաւորն հրամանաւ տեառն իւրոյ ասաց, թէ՝ «Ո՛չ է ի տան», ասէ ցնա.

—Սո՛ւտ ասես. ահա փոխեցաւ այլ սենեակ, զի մի՛ լուիցէ զձայն աղքատաց։ Ահա յայժմ կոչեմ զնա յատեան յատուծոյ, զի տացէ համարս գործոց իւրոց։

Ապա առժամայն հիւանդացաւ դատաւորն. և յորժամ յարեան մերձաւորքն, խրատ տային նմա, զի խոստովանեսցի, ո՛չ կամեցաւ. վասն որոյ մեռեալ՝ մատնեցաւ ի տեղի դատապարտելոցն, զի անդ կերակրեսցի ընդ դևսն։

## 43. ԹԱԳԱՒՈՐ ՉԱՐ ԵՒ ԳԵՂԵՑԻԿ ՀԱՐՍՆ

Էր թագաւոր մի չար, և ունէր որդի մի միամաւր և գեղեցիկ։ Եւ ասաց ի միտս իւր, թէ՝ Իմ որդին գեղեցիկ է և ես գեղեցիկ կին բերեմ որդոյ իմոյ, և որ լինի գեղեցիկ որդիք և թոռունք՝ ժառանգ աթոռոյ իմոյ։ Եւ յորժամ կարգեաց զորդին իւր և արար զհարսանիքն, և եկաց յորդին ժամանակ մի՝ և մեռաւ անորդի։ Եւ նա կամեցաւ առնել զկինն որդոյ իւրոյ։ Եւ եբեր զառաջնորդսն և զգիտնականսն, և հարցանէր, թէ իցէ՞ հնար առնել զկինն որդոյ իւրոյ, թէ ոչ։ Եւ նոքա ասեն. «Ո՛չ գոյ»։ Եւ սպան զբազումսն, և յետոյ էր նորա աւիրել։

Գիտնական և իմաստուն առաջնորդ մի. ի նա եհարց։ Եւ ասաց իմաստուն յառաջնորդն, թէ՝ Այլ ոչ ոք մարդոյ ոչ կայ հնար առնել զկինն որդոյն, բայց քեզ միայն, ո՛վ թագաւոր։

Ասէ.

—Եւ ես միայն զի՞նչ եմ, որ ինձ կայ յառնել զորդոյ, և այլոց ոչ։

Եւ նա ասաց, թէ՝ Վախեմ ասել քեզ, ո՛վ թագաւոր

Եւ նա երդուաւ. «Չար չառնեմ նմա»։

Յայնժամ ասաց նմա, թէ՝ Դու անհաւատ ես և յաներկիւղ, և թերի, և օրինազանց։ Քեզ հասանէ առնել զկինն որդոյ, և յայլոց ոչ։

Եւ եկն թագաւորն զղջումն։

Ցուցանէ առակս, թէ անհաւատ մարդն զինչ կամի առնէ, և զինչ կամի՝ նա գործէ, թէ ձեռն ածէ, որպէս ասէ Դաւիթ մարգարէն, թէ՝ Ասաց յանզգամն ի սրտի իւրում. թէ ոչ գոյ աստուած։

## 44. ՄԱԳԻՍՏՐՈՍ ԵՒ ԿԻՆ ԲԱՐԵԿԱՄԻ ԻՒՐՈՅ

Պատմեաց զայս ոմն, եթէ՝ էր ոմն մագիստրոս մանուկ հասակաւ, և գեղեցիկ տեսլեամբ, որ ընթանայր ի գործ թագաւորի։ Սա ունէր ի քաղաքի ուրեմն բարեկամ հաւատարիմ, և միամիտ, և հարուստ, քանզի յերևելի արանց էր։ Եւ յորժամ գայր անդր՝ բազումս հանգուցանէր զնա ի տան իւրում. և սպասէին ինքն և կինն իւր։ Եւ եղև ազդմանէ չարին, զի տռփացաւ ի մագիստրն կին նորա. և ոչ գիտէր այր նորա։ Եւ պատկառէր կինն, վասն որոյ և ոչինչ երևեցոյց յայնմանէ, բայց ի սիրտս նորա բորբոքէր հուր տռփութեանն։ Եւ իբրև գնաց մանուկն զճանապարհն իւր, կինն ի սաստկութենէ ցանկութեանն հիւանդացեալ հաշէր և անկեալ յանկողին՝

թմրեալ։ Իսկ այր նորա կոչեալ զճարտարս բժշկաց՝ ցուցանէր։ Եւ ինքն իբրև տեսին, ասէին.

—Սա ի մարմնի ցաւս ո՛չ ունի, այլ թէ ինչ հիւանդութիւն ի ծածուկ ունի յանձին, ո՛չ գիտեմ։

Եւ մերձ նստեալ այր նորա, բազում հեկեկանաւք աղաչէր զնա ասել, թէ զի՞նչ վշտանայ։ Իսկ նա երկնչէր և ամաչէր ասել։ Բայց յետ խոստովանեցաւ և ասէ.

—Գիտես՛, տէ՛ր իմ, զի դու վասն ամբծութեան սրտի՝ ի քո՛ ժողովես միշտ աստ զերիտասարդս գեղեցիկս. և ես կին եմ, տկար բնութեամբ և մանուկ հասակաւ, և վնասիմ ի կերպարանաց նոցա։ Եւ ահա, վասն իշխանին յայն մտին խորհուրդ չար ի սիրտ իմ, որով կիզեալ հիւանդացայ և կամ ի մահիճս թմրեալ։

Իբրև լուաւ զայս այրն, լռեաց։ Իսկ զկնի աւուրց ինչ եկն դարձեալ անդ մագիստրոսն այն։ Եւ գնաց մարդն ընդդէմ նորա, և իբրև ետես, ասէ.

—Դու գիտե՛ս, տէ՛ր իմ իշխան, թէ ո՞րպէս սիրէի զքեզ և էաք հացակից քո՝ ես և կին իմ։ Եւ ահա, անկաւ խորհուրդք չար ի սիրտ կնոջ իմոյ տռփութեան քո. և ահա, անկեալ դնի։

Իսկ նա, իբրև լուաւ տրտմեցաւ յոյժ վասն այնորիկ, որպէս և էր նա անպարտ ի խորհրդոցն։ Եւ ասէ ցնա.

—Մի՛ տրտմիր, աստուած բազում ողորմէ։

Եւ գնաց մանուկն և գերծեաց մազ և զմօրուս և զյաւնս իւր, և հերձոտեալ՝ վիրաւորեաց զդէմս և զամենայն գլուխ իւր։ Եւ եղև իբրև զգողի ծերացեալ գեղեցիկ մանուկն այն, և զգեցեալ զուրց (քուրձ) ժահահոտ և աղտեղեալ, գնաց ի տունն, ուր դնէր կինն։ Եւ այրն իւր նստէր մերձ առ նմա։ Եւ բացեալ զգլուխ իւր, ցուցանէր զխոցոտեալ և զաղտեղեալ զդէմս և ասէր.

—Ահա՛ մայր, այսպէ՛ս արար զիս աստուած։

Իսկ իբրև ետես կինն զանբաւ գեղեցկութիւն մանկանն այսպէս տգեղեալ և աղտեղեալ, և սևացեալ, զարմացաւ յոյժ։ Եւ տեսեալ աստուած զգործ և զխոնարհութիւն մանկանն, էառ ի սրտէ կնոջն զպատերազմ. և ողջացաւ առժամայն։ Եւ ասէ իշխանն առանձինն ցայր նորա.

—Ահա՛, շնորհաւքն աստուծոյ ողջացաւ կին քո, և յայսմ հետէ ո՛չ ևս տեսցէ զերեսս իմ։

Ահա այս է դնել զանձն ի վերա սիրելոյն և առնել բարի փոխանակ բարու։

## 45. ԿՈՅՍ ԿՐՕՆԱՒՈՐ ԵՒ ԻՇԽԱՆ

Կոյս ոմն կրօնաւոր, վայելչագեղ և յոյժ գեղեցիկ տեսլեամբ, բնակէր ի վանս, որում ոմն իշխան փարթամ և մեծազօր, որոյ յագարակի վանքն շինեալ էր, ցանկայր։ Եւ իբրև ոչ աղաչանօք և ոչ պարգևօք ոչ կարաց ի կամս իւր դարձուցանել, առաքեաց ի ձեռն հրեշտակաց առ մայրապետն, զի զմին յերկուցն ընտրեսցէ. կամ զկոյսն առ նա առաքեսցէ, կամ ինքն և զամենայն վանս հրով մաշեսցէ։

Զայսպիսի բանս լուեալ մայրապետն՝ յոյժ զահի հարաւ, քանզի գիտէր, զի թէ զկամս նորա ոչ կատարեսցէ, չար ևս, քան զոր ըսպառնայրն, արասցէ։ Ապա, լի երկիւղի սրբոյ կուսին զսաստիկ հրամանն պատմեաց։ Եւ նա երկուցեալ, դողալով հարցանէր, թէ՝ Ո՞յր աղագաւ զիս քան զայն զայլս այսպէս սիրէ։ Եւ իբրև իմացաւ ի դեսպանացն, թէ՝ Վասն գեղեցկութեան աչաց քոց այսպիսի սիրով ի քեզ վառեալ է, ուրախացաւ, և փոքր ինչ այլոց առանձնացեալ, զերկուս աչս իւր անխնայաբար եհան, և եդեալ առ միմեանս ի վերայ նալբաքոյ, ետ ցդեսպանսն ասելով.

—Գնացէ՛ք և զայս յինէն մատուցէք տեառն ձերում, ասելով՝ Ահա նետք, որ զսիրտդ քո սաստիկ ցանկութեամբ հարին, ունիս, զոր խնդրէիր. վայելեա որպէս քեզ հաճոյ է, և զաչս սրտի իմոյ ամբողջս պահեա։

## 46. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԵՕԹՆԱԾԻՆ ՏԻԿՆԻՈՅՆ ԳԱՂՂԻՈՅ

Ի տէրութեան Գաղղիացւոց, այսինքն Ֆրանսացու, ի Փարիզ քաղաքի կայր փարթամ և նախարարի ումեք կին, որ էր դուստր միոյ ազնիւ և փարթամ նախարարի, գոլով յղի, ի գիշերին, յորում տիկինս այս ծնանելոց էր, այրն չէր ի տան։ Ի մէջ գիշերի, ի վերադառնալն ի ճանապարհին, ետես աղախին իւր։ Կոչեաց։

—Ի՞նչ է ի ձեռին քո։

Պատասխանեաց.

—Տէ՛ր, աւետիս քեզ. տիկինն ծնաւ արու զաւակ մի։ Եւ սոքա ապականեալ ձորձք են, տանեմ ի գետն լուանալ։

Կարծելով, թէ մի գուցէ գողացեալ իրք իցեն, ստիպեաց, և աղախինն զսէմբիլն ետ ի կառն։ Հայեցաւ և եգիտ վեց նորածին մանկունս։ Եհարց թէ՝ Այս ի՞նչ են։ Աղախինն խոստովան եղև, թէ՝ Տիկինն ծնաւ եօթն։ Եւ առ ամօթոյ, խորհրդով մանկաբարձին,

եռուն ինձ՝ արկանել ի գետն։ —Իսկոյն պատուիրեաց, թէ՝ Ո՛չ ումեք ասել. դարձիր ի տուն, աստ՝ արկի ի ծովն։ Եւ ինքն գնացեալ ի տուն աղքատ բարեկամի միոյ, կոչեալ զքահանայն, ետ մկրտել զնոսա։ Եւ բաժանեաց իւրաքանչիւրն աղքատ գիւղացւոց, մինչև հասին եօթն ամաց. նոյնպէս և ի տան եղեալն միակն 7 ամաց։ Ետ զնոսա եօթնեկի ուսումն։ Եւ ուսան բաւականին։ Ապա ետ ի վանքն ուսման։ Սոյն եօթեքինքն այնքան համանմանք էին, որ չէր հնար որոշել։ Կամէր զնոսա բերել ի տուն և յայտնել կնոջ իւրոյ, սակայն սպասէր յետ լրանալոյ 10 ամաց. և պատուիրեաց միատեսակ հանդերձ եօթանցն։ Յաւուր կիւրակէի սաի հայր ման-կանցն զմայր նոցին.

—Տիրուհի՛, այսքան ժամանակ է, որ որդին մեր տուեալ եմք ի նոյն վանս յընթերցումն, իսկ մեք անգամ մի ևս, ի պատիւ ուսու-ցչին նորին ո՛չ եմք գնացեալ անդ, վասն սակաւ ինչ հեռաւորու-թեան՝ ի լսել զպատարագ։ Այսօր եկն ի սիրտ իմ, զի ընդ որդւոյ մերոյ գնասցուք անդ, ի լսել զձայնաւոր պատարագի և զուսուցիչն հրաւիրեալ ի տուն ի ճաշ։ Կարծեմ թէ ո՛չ ոչինչ ընդդէմ լիցի քեզ։

Պատասխանեաց տիկինն.— Յօժար էմ։—Եւ հրամայեցին պատրաստել զճաշ զատկական։

Գնացին։ Պատարագն սկսաւ, և մանկունքն եօթնեկին, զգեցեալ զշապիկս, երգէին։ Տիկինն կորոյս զորդի իւր ի մէջ նոցա, ո՛չ ճա-նաչէր, թէ որն իցէ, բայց գալարէին աղիք իւր և լայր։ Եհարց այրն, թէ՝ Տիրուհի՛, զի՞նչ տեսանեմ ես. ո՞յք են մանկունքս այսոքիկ, որք այսպէս հասակակիցք և համանմանք են միմեանց, մինչ զի ո՛չ կարեմ ճանաչել զորդի մեր։

Պատասխանեաց տիկինն փղձկեալ սրտիւ.

—Այո՛. և ե՛ս կամ ի մէջ այդու շփոթութեանց։

Ի լրանալ պատարագին այրն կոչեաց զուսուցիչ քահանայն և սաէ.

—Հա՛յր, խնդրեմ ընդ մանկամբ այսօր շնորհ ունիցիք ի ճաշել ի տան մեր։

Գնացին և նստան ի միասին ի ճաշել։ Կինն տեսանէր զորդիսն և ո՛չ կարէր համբերել, այլ լայր և ուտէր, և ո՛չ կարէր ասել։ Կա-մեցաւ ելանել. այրն ո՛չ եթող, այլ թէ՝ Համբերեա՛, մի՛ լար, այլ ուրախ լեր, զի ո՛չ կամեցաւ աստուած, որ կատարեալ մարդասպան իցէիր և սոյն զաւակունք մեր կորնչիցէին։ Ահա՛, սոքա ե՛ն ծնունդք յորովայնի քո, զոր ոչ գիտելով զգործս բնութեան, յամօթ համա-րեցար քեզ զպարգևն աստուծոյ և բնութեան՝ ծնանել ի միասին

կեօթն, և հրամայեցեր արկանել զվեցեսինս ի գետն։ Իսկ աստուած, որ զշնորհեալ պարգևս իւր, վասն պարզամտութեան քոյ, ո՛չ կամելով բառնալ ի մէնջ, առաքեաց զիս ընդառաջել և յօգնականել և զարգացուցանել։ Արդեմն, տա՛ր զքեզ յուսահատութիւն, զի որպէս ո՛չ զրկեաց զքեզ աստ ի զաւակաց քոց, ի հանդերձելումն ևս՝ ներումն շնորհելով, ո՛չ յիշեսցէ զմեղս։ Հանդարտեցո՛ զսիրտ քո և փարեալ զսոսա՝ ուրախութեամբ վայելեա։

Իսկոյն տիկինն՝ մեղայ կոչելով անկաւ ի ծունկս, և քահանայն ես նմա զոզորմեցին, գնելով ապաշխարութիւն՝ ծառայել եօթնից աղքատ և անտէրունչ ծննդկանաց գործով և արդեամբք։ Ապա այրն կալեալ զձեռաց նորա՝ յարոյց և մատուցեալ զզաւակունս, ասէ.

—Ա՛ռ, ահա զորդիս քո, զոր կորուսեալ էիր և գտեր. մեռեալք էին և կենդանացան. ուրախ լեր ընդ իս, և երգեսցուք զօրհնութիւն և զփառս աստուծոյ։

## 47. ԱՐՈՒԵՍՏՔ ԿՆՈՋ

Այր մի ելեալ շրջէր յերկրէ յերկիր և զոր ինչ կինն ֆեղլ էր արել, զայն գրել ի թուխտն։ Եւ շինեաց մեծ բեռներ երեք, և այլ դեռ ևս երթայր և ժողովէր ֆեղլ կնկան, որ զմարդն խաբեր է։ Եւ գնաց ի քաղաք մի եմուտ, որ կայր ի դուռն կարի ֆեղլաւոր կին մի։ Եւ ասաց ցայրն.

—Բարի՛ եկիր,—և մեծարեաց ի տունն իւր, և առեալ գնաց, համարելով, թէ դումաշ և ոսկի և արծաթ շատ ունի։ Եւ իբրև երեկոյ եղև, ասաց կինն ի յայրն այն, թէ՝ Բեռներդ քո ի՞նչ է, զի գնեցից ես զպիտոյն իմ։

Եւ նա ասաց, թէ՝ Ոչինչ չունիմ ծախու։

Կինն ասաց.

—Ապա այդ զոր ունիս, ի՞նչ է։

Եւ ասաց, թէ՝ Կնկան ֆեղլ է, որ կինն զինչ ֆեղլ է արել, նա ի շուրջ եմ եկեր, և գրել, և բարձել. և եկի աստ, որ ա՛յլ գրեմ։

Եւ կամեցաւ կինն զբեռներն այրել. և հնարս իմացաւ։ Կայր ի տունն մեծ փուռ մի, որ տանէր երեք բեռն թուխտ։ Եւ կինն զայն բարկ վառեաց, և եկեալ տապակեաց ձուկն, և եդ առաջի հիւրին, և ինքն ել՝ զդռներն տանն ամրացուց, զի էր երեք դուռն, և զայն փակեալ, և կարի խիստ ամրացոյց։ Եւ եկեալ հիւրն ձուկն ուտէր։ Եւ կինն կարի խիստ բարձր ձայնիւ ճիչեաց՝ մատաթ կանչելով։

Յայնժամ դրացներ տանն եկին սուսերօք և բրովք, և բախէին զդուռն։ Ասէ կինն, թէ՝ Այրէ զթխտերդ, թէ չէ սպաննել տամ զքեզ։

Եւ նա զամէն թխտերն այրեաց ի փուռն։ Եւ կինն եկեալ՝ եբաց զդուռն և ասաց.

—Այս քանի ամ գնացեալ կայր ինձ մէկ հօրեղբօրորդի մի, և եկն, և ես ձուկն դրի նմա ուտել, և փուշն ի փողն փակաւ՝ ի մեռանելոյ ճորով ազատեցաւ։

Եւ եկեալ տեսին, զի ձուկն կայր առաջի նորա, և գնացին։

Ցուցանէ առակս, թէ մարդ հետ ֆեղլով կնոջ ի հուն ոչ կարէ ելանել, որպէս ասեն գեղջուկ բառով, թէ՝ Կնկան ֆեղլն բեռներով է և յաղթէ մարդկան. և մարդ ո՛չ կարէ դիմանալ կնկան ֆեղլին, զի ֆեղլն շաթրութիւնն ասի, որ զմարդ խաբէ։

## 48. ԿԻՆ ԿԵՂԾԱՒՈՐ ԵՒ ԱԳԱՀ

Ումն կին ի ներքոյ կեղծաւոր աստուածապաշտութեան պահէր՝ յերկար աղօթէր, անչափ հսկէր և յուխտատեղիս անդադար շրջէր։ Յորժամ այնպիսի կերպարանեալ առաքինութեամբ կայր, բազում ինչս ի մարդկանէ առնոյր և յոյով ոսկի, զոր համապաղ ժողովէր, և զոր ինչ աստուածասէր քրիստոնեայք տային վասն աղօթելոյ զգերիս, նա զայն ի քսակն դնէր, և զոր ինչ տային ի այէտս կարօտելոց, նա զայն յարկեղի պահէր, քանզի կինն այն ի մէջ սենեկի իւրոյ խորագոյն գուբ էր փորեալ և եդեալ անդ կարասի մեծ. և զոր ինչ տային, անդ պահէր և քար ի վերա դնէր։ Աւա՜ղ անիծեալ ագահութեանն, թէ որպէս զմարդիք կուրացուցանէ և ի խաւար ընկղմէ. բայց զի կարճ ի կարճոյ ասացից, յորժամ կարասն դրամով լցաւ և ժամանակ մահուան կնոջն եհաս, և որպէս մեռեալ էր աստուծոյ, մեռեալ ել ի մարմնոյ և թաղեցաւ ի դժոխս։ Զկնի կատարման կարգի թաղմանն, քահանայք հարցանէին ցաղջիկն, որ սպասաւորէր կնոջն, թէ՝ Զի՞նչ առնէր զայնչափ դրամն տիկին քո։ Եւ նա պատասխանի ետ, թէ՝ Ո՛չ երբէք տեսի, եթէ ինչ տուեալ իցէ աղքատաց, և ոչ գիտեմ, թէ ուր իցէ զդրամն, զոր առնոյր ի մարդկանէ. զայն միայն գիտեմ, թէ զոր ինչ տանէր ի սենեակն, ո՛չ ևս ի դուրս հանէր։ Զայս լուեալ քահանայիցն, զարմացան, սկսան մեծաւ յուզմամբ խնդրել, և ապա, դկնի յուզելոյն, լուան զձայն դրամին. և թաւալեցուցեալ զքարն՝ տեսին զմեծ համար դրամին և հիացեալ ընդ այնչափ խորամանկութիւն նորին, ծանուցին զամենայն ինչ որպիսութիւն եպիսկոպոսին։ Իսկ եպիսկոպոսն,

ոչ սակաւ ի բարկութիւն շարժեալ, հրամայեաց բանալ զգերեզմանն և զամենայն զրամն ի մարմին մեռելոյն թափել, առելով. Զոր ինչ ժողովեցեր՝ քեզ եղիցի, և աղքատաց Քրիստոսի ոչինչ պակասեսցի։

Յետ այսորիկ ի մէջ գիշերի ձայնք լսելի եղեն ի գերեզմանէն՝ լալիւն և կործումն մեծ։ Եւ ի մէջ այլոց ողբոց այս և լսելի պարզաբար եղև. «Վա՜յ ինձ, եղկելոյս, վա՜յ ինձ, ամենաթշուառականիս, զոր ոսկի այրէ և տոչորէ»։

Այսպիսի ձայնք զերիս գիշերս լսելի եղեն։ Եւ շրջակայ մարդիկք ոչ կարացեալ տանել զայն, գնացին առ քահանայն և հրամանաւ նորին բացեալ զտապանն, տեսին զոսկին իբրև ի մէջ հնոցի հալեալ և ի բերան կնոջն հանդերձ բոցով հրոյն հեղեալ։ Յայնժամ քահանայն աղօթս արարեալ առ աստուած, թէ որովհետև չարութիւն նորին յայտնի եղև մարդկան առ ի զգուշութիւն, տանջանք թեթևասցին ի վերա մարմնոյն։ Եւ ապա ծածկեալ զգերեզմանն գնաց. և ոչ ևս ձայնք կնոջն լսելի լինէին։

## 49. ՈՐԴԻ ԱՂՔԱՏԻ ԵՒ ՋՐՊԱՐՏԻՁ ԴՈՒՍՏՐ ՄԵԾԱՏԱՆ

Յաշխարհէն Իսպանիոյ այր մի ոմն աղքատ, ոչ ունելով զաւակ, խնդրեաց ի սուրբ Յակոբայ առաքելոյն, որ էր Զեբեթիայն, և պարգևեցաւ որդի մի գեղեցիկ տեսլեամբ, զոր իբրև զարգացաւ, առեալ հայր և մայր նորա՝ եդին օղ երկաթի ի պարանոց նորա և գնացին կատարել զուխտս իւրեանց՝ ի դրան սուրբ առաքելուն։ Եւ ի ճանապարհին իջեան եղան ի տուն մեծատան միոյ, որոյ աղջիկ մի, տեսեալ զպատանին՝ տոփացաւ ի դեղ նորա։ Եւ խնդրեաց աղջիկն ի տղայէն՝ լինիլ ընդ նմա։ Եւ նա ո՛չ էառ յանձն։ Ասէ աղջիկն ցտղայն.

—Որովհետև ո՛չ լցեր զփափակն, տես զի՛նչ ածից ի վերայ քո։

Եւ ապա գտեալ դիպող ժամ աղջիկն այն, զիւր հօր արծաթէ սկաւառակն եդ ի մաղախ պատանուն, ոչ գիտելով տղային։ Իբրև ելին ի գնալ, առին զիւրաքանչիւր զմաղախս իւրեանց, և երթային հետիոտս։ Եւ իբրև հեռացան, աղաղակեաց աղջիկն և ասէ.

—Աղքատ[ք]ն այնոքիկ տարան արծաթէ սկաւառակն։

Յայն[ժամ] մեծատունն այն ձիրնթաց արշաւմամբ հասեալ՝ ըմբռնեաց զնոսա, և որոնեալ գտին ի շալակ տղային, զոր կալեալ կապեցին և մատնեցին ի ձեռս դատաւորին։ Եւ դատաւորն հրամայեաց կախել զտղայն զփայտէ և խեղդամահ առնել։ Եւ այնպէս դատն արտասուօք, առաջի ծնողացն, զմիամօր որդին կախեցին, և

այնպէս թողին ի կախաղանին, զի փտեալ թափեսցի մարմինն: Իսկ ծնող[ք] տղային հառաչանօք գնացին ի սուրբ Առաքեալն և դարձեան անդրէն ի նոյն տեղին, ուր զորդին իւրեանց կախեցին, տեսանել գոնեայ զոսկերս նորա: Իբրև եկեալ՝ տեսին զորդին իւրեանց ի կախաղանին անապական մարմնով, և շրջափեալ զոտն՝ տեսին ի նա նշան կենդանութեանն, և գնացեալ առ իշխան քաղաքին, ասեն.

—Տո՛ր մեզ զորդեակն մեր, [զի նա?] կենդանի է ի կախաղանին:

Իսկ իշխանն ծիծաղեալ ասէ.

—Վեց ամիս է գնեալ և դալդ ձեր, զիա՞րդ լինիցի կենդանի:

Եւ էր բազմեալ ի սեղանի, և կաքաւք խորովեալ առաջի նորա: Ասէ.

—Եթէ կաքաւքս այսօրիկ կենդանասցին, ապա և ձեր որդին կենդանի է:

Եւ, ընդ ասելն իշխանին զբանն, առժաման խորովեալ կաքաւքն կենդան[աց]եալք, թռեան առաջի նորա: Ընդ որ զահի հարեալ իշխանն եկեալ, գնաց ի տղայ կախաղանին: Իջուցեալ զտղայն, տեսին կենդանի՝ շնորհօքն Քրիստոսի սուրբ առաքելոյն, ընդ որ հիացեալ փառս ետուն աստուծոյ, որ զայնքան ժամանակս զանմեղն զայն պահեաց կենդանի: Եւ ապա խոշտանգեալ զաղջիկն, խոստովան եղև զտոյգն: Եւ գիտացեալ ի պատճառն զրպարտանացն նորա, ետ կախել զաղջիկն զայն՝ ի նոյն տեղին, և ի խեղդամահ առնել: Եւ զտունն և զինչս, և զամենայն փարթամութիւնս մեծատան հօրն աղջկանն և ետ զամենայն մանկան այնմիկ, որ անմեղութեամբն իւրով մնաց կենդանի, զօրութեամբն Քրիստոսի: Եւ այսպէս փառաւորեցաւ արդարադատն աստուած, որ ո՛չ թողու առանց այցելութեանն զյուսացեալսն իւր. Ամէն:

## 50. ԿԻՆ ԿԱՄԱՊԱՇՏ ԵՒ ՀՆՁԵԱԼ ԱՐՏ

Այր ոմն ընդ կնոջ իւրում երթայր երբեմն ընդ արտորայս. և ասէ ցնա.

—Տեսանե՞ս զիարդ գեղեցկապէս և պատշաճաբար արտս հնձեալ է:

Եւ կինն ընդդէմաբար ասէ.

—Ո՛չ է հնձեալ, այլ խուզեալ,—հակառակ կալով բանիցն առն իւրոյ: Եւ յորժամ այրն ասէր, թէ հնձեալ է, և կինն ասէր, թէ խու-

զեալ է, բարկացեալ այրն ընկեց զնա ի ջուրն։ Արդ՝ իբրև այլ ո՛չ կարաց խաւսիլ, եհան զձեռն ի ջրոյն, նշան տալով մատամբ ի վերայ մկրատի, ցուցանելով մինչև ի մահ, թէ արտն խուզեալ է։

## 51. ԿԻՆ ԻՆՔՆԱՀԱՒԱՆ ԵՒ ԿԱՄԱՊԱՇՏ՝ ԳԵՏԱՏԱՐ

Դարձեալ այլ ոմն ունէր կին խիստ ինքնահաւան և կամապաշտ. և յորժամ անկաւ ՚ի գետ և խեղդեցաւ, այրն խնդրէր զնա ընդդէմ ջրոյն գնալով։ Հարցին ցնա մարդիկք, թէ՝ Վասն է՞ր ընդդէմ ջրոյդ խնդրէք։ Պատասխանի ետ.

—Կին իմ հանապազ էր ինձ հակառակ բերանով և արեամբ. արդ՝ զոր օրինակ առնէր ի կենդանութեանն, նոյնպէս, կարծեմ թէ, զկնի մահուանն արար. և այնպէս հաւատալով, զի գնացից ընդդէմ ջրոյս։

## 52. ԱՅՐ ՈՐ ՀԱՆԴԵՐՁԵԱԼ Է ԿԻՆ ԱՌՆՈՒԼ

Այլ ոմն շինէր տուն. և փորէր հիմն և դնէր աղիւս ի ներքոյ և ըզքարն ի վերայ աղիւսին։ Եկեալ ոմն ասէ.

—Զի՞նչ գործես, եղբա՛յր, զի պարտ է զքարն ի ներքոյ դնել և ապա զաղիւսն։

Եւ նորա ծիծաղեալ ասէ.

—Հանդերձեալ եմ կին առնուլ. և նա եկեալ շրջէ զտունն և ուղղեսցէ որմն։

## 53. ԻՄԱՍՏՈՒՆ ԴԱՏԱՒՈՐ

Ասեն իմաստունքն, թէ էր տանուտէր մի, որ ունէր երեք որդի և ունէր կին մի վատ։ Եւ այր մի կռուաւ ընդ առն և ասէ.

—Կարծես թէ երեք որդիքդ ի քենէ՞ են. ոչ, այլ մինն է քո և երկուսն բիճ են։

Եւ նա հարցեալ, թէ՝ Ո՞րն է իմն։

Եւ կինն ոչ ասաց, զի զերեքն սնուցէ։ Եւ եղև զի մեռաւ այրն և ասաց տալ զհայրենիսն իւր՝ ժառանգ հարազատ որդւոյն։ Եւ վիճէին եղբարքն, ասելով իւրաքանչիւր ոք. «Ե՛ս եմ ճշմարիտ որդին»։ Եւ էրթեալ առ դատաւորն։ Եւ նա ասաց հանել զհայրն իւրեանց ի գերեզմանէն և նետաձիգ առնել զնա, ասելով. «Որ հարցէ զհայրն նետիւ, նա՛ է ճշմարիտ որդին»։ Եւ արարին այնպէս։

Եւ երկու բիծ որդիքն հարին զհայրն, և հարազատ որդին ո՛չ ձգեաց նետ ի հայրն, այլ սաստէր չար որդւոցն, ունելով զբնական գութն ի հայրն, և կամէր խոցել նետիւ զեղբարսն։ Եւ դատաւորն տեսեալ՝ ետ զհայրենիսն նորա։

## 54. ԸՆՁԵՂ ԱՅՐ ԵՒ ԵՐԿՈՒ ՈՐԴԻՔՆ

Ասեն թէ այր մի ունէր երկու որդիս և ունէր գանձս երկու ցեղ. մինն յայտնի և միւսն ծածուկ։ Եւ զայտնի գանձն բաշխեաց առհասարակ որդոց իւրոց, բայց զծածուկն ոչ յայտնեաց նոցա։ Եւ ինքն գնաց յաւտար աշխարհ և աղքատացուց զինքն կամաւ։ Եւ դարձեալ եկն առ որդիսն փորձել զնոսա, խնդրեաց զգանձս։ Եւ մինն ամենևին ոչ գթացաւ ի հայրն, այլ անտես արար նախատանաւք, իսկ միւսն գթացեալ ի հայրն, և զոր ինչ ունէր՝ ետ նմա, զի հասարակաց լինի։ Եւ հայրն իմացեալ, թէ նա՛ է հարազատ որդին իւր և զանայտ գանձն ետ նմա, և զմիւսն արտաքսեաց։

## 55. ԻՂՁՔ ԵՐԻՑ ՈՐԴՒՈՑ ԹԱԳԱՒՈՐԻ

Թագաւոր մի ունեը երեք որդիս։ Եւ եկեալ որդիքն ի միասին, խաւսէին ընդ միմեանս։ Եւ հայրն ծածուկ ունկն դնէր նոցա։ Եւ նոքա ասէին. «Թէ անասուն էիք, ո՞րպիսի կամէիք լինել»։ Եւ մինն ասէր.

—Եթէ ես մարդ ոչ էի, կամէի առիւծ լինել, զի թագաւոր է ամենայնի և պատառող։

Եւ մեւսն ասէ.

—Ես կամէի արծիւ, զի և նա՛յ պատառող է և բարձր թռչի։

Իսկ մեւսն ասէ.

—Ես կամէի աղաւնի լինել, վասն զի անմեղ է և անվնաս, այլ սիրէ խաղաղութիւն և ընկերաւք թռչի։

Եւ հայրն գիտաց զնոսա, որ մինն պատառող լինէր և մեւսն բարձրամիտ, վասն որոյ խրատեաց զնոսա և կացուց զխաղաղասէրն թագաւոր։

## 56. ԵՐԵՔ ԵՂԲԱՐՔ ԵՒ ՊԱՏՈՒԱԿԱՆ ԱԿՆ

Ասի յառակաց, թէ թագաւոր ոմն երեք որդիս ունէր, և ունէր ակն մի պատուական, որ թագաւորութեանն իւրոյ զանկ էր, և թէ

մէկ որդոյն տայր զակն՝ մէկայլ երկու որդին խռովէին։ Եւ հնարեցաւ ծածուկ պահել, զի մի՛ ոք գիտասցէ։ Եւ յորժամ հիւանդացաւ և ի մահ խոնարհեցաւ թագաւորն, մինն ի յորդոցն հնարեցաւ և եգիտ զակն, և պահեաց գաղտ և ոչ յայտնեաց այլ եղբարցն։ Իսկ յորժամ մեռաւ թագաւորն, հան ապա, զի կռիւ կային և ի պատերազմն եղբարքն զմիմեանս, պարտաւորելով թէ՝ «Դու՛ն ունիս զակն»։ Յայնժամ լուան, թէ ի հեռու քաղաք մի դատաւոր մի կայ ճարտար և իմաստուն, նա՛ է կարող, որ զնոցա դատաստանն կտրէ։ Եւ յարուցեալ միաբան սկսան գնալ առ դատաւորն։ Եւ ի ճանապարհին հանդիպեցաւ նոցա ըղտապան դատաւորին այնմիկ։ Նոցա հարցեալ, թէ՝ Ի՞նչ մարդ ես և կամ ու՞ր երթաս։ Ասէ.

—Ըղտապանն եմ և ու՛ղտ եմ կորուսեալ, և ի խնդիր կու գնամ։

Ասէ մինն ի յեղբարցն.

—Քո ուղտն կա՞ղ է։

Ասէ ըղտապանն.—Այո։

Եւ ասէ ցնա.

—Գնա հետ ճանապարհիդ, զիտի գտանես։

Եւ միւսն էհարց.

—Քո ուղտն միակնի՞ է։

Ասէ.—Այո։

Ասէ ցնա.

—Գնա հետ ճանապարհիդ և գտանես։

Ասէ երրորդն.

—Քո ըղտուն մէկ ատամն խո՞ռ է։

Ասէ ըղտապանն.—Այո։

Ասէ.

—Գնա հետ ճանապարհիդ և գտանես։

Յայնժամ եհարց ըղտապանն զնոսա, թէ՝ Որպէ՞ս գիտացիք զուղտին իմոյ սխալանքն։ Ասէ առաջինն.

—Տեսի, որ զերեք ոտքն սեղմն էր դրել ի գետինն, որ հետն կու երևէր, և մէկ ոտիցն, որ կաղ էր՝ չէ՛ր երևիլ, այնու ճանաչեցի։

Եւ միւսն ասէ.

—Տեսի, զի ի գնալն այն զիհն, որ աչքն տեսել էր՝ արածէր, և կոյր աչից զեհին խոտն ի տեղն էր մնացել։ Այնով գիտացի, որ կոյր էր։

Եւ միւսն ասէ.

—Տեսի, զի խոտն, որ արածել էր, խոռ ակռային տեղն փեճրել էր զխոտն. այնու գիտացի, զի ատամն խոռ էր քո ուղտին։

Եւ զարմացաւ բդեշխն ընդ ճարտարութիւն արանցն, և երթեալ ընդ այն ճանապարհն, ըստ խրատու նոցա, էգիտ զուղտն, և դարձաւ ի տունն իւր, և պատմեաց դատաւորին, թէ՝ Երեք արք ճարտարք կուգան մօտ ի քեզ՝ ի դատաստան, որ վասն մեր բդեշխին այսպիսի նշան տվին՝ առանց տեսանելոյ. պատրաստ կացիր, որ տխմար դատաստան չառնես և ծաղր լինիս ի նոցանէ։ Եւ լուեալ զայս դատաւորին, յորժամ եկին առ նա, ասէ.

—Երիկունս առ մեզ հանգերուք, վաղն զձեր դատաստանն կարեմ։—Եւ հրամայեաց սպասաւորացն՝ տանիլ նոցա կերակուր շուկաի հաց, և խորովու, և գինի։

Իսկ տեսեալ, ասէ մինն, թէ՝ Դատաւորն ձեր խապազի որդի է։

Եւ միւսն ասէ.

—Ի խորովուէդ յայտմանէ շան հոտ կուգայ։

Եւ միւսն ասէ.

—Գինիս այս արենահամ է.—և ոչ կամեցան ուտել։

Եւ սպասաւորացն երթեալ պատմեցին դատաւորին զբանս երից եղբարցն։ Իսկ նա զայրացեալ կոչեայց զմայր իւր և եհարց, թէ՝ Ճշմարիտ պատմեա՛, թէ ես ո՞ւմ որդի եմ, թէ ո՛չ, կու սպանանեմ զքեզ։ Եւ նորա պատասխանեալ, թէ՝ Տարի մի քո հայրն ի հեծելութիւն էր գնացել, և խապազ տղա մի հանապազ կուգայր, և հաց կու բերեր ի դարպասս։ Նա սատանայ զիս ի հետ նորա խաբեց, դու յանտից ես, ի նմանէ ընծայեցար։

Եւ ցխորովուին բերողն հարցեալ։ Նա ասէ.

—Ուլին այնմիկ մայրն մեռաւ, նա՝ սև քած շուն մի կայր, այն ուլն այն ծծէր, գիտելով թէ մայրն իւր էր։

Եւ ցգինեբերն հարցեալ։ Ասէ.

—Ի ժամ կոխելոյն զհնձանն, դանակ մի կորեաւ ի մէջ խաղողին, և ո՛չ գտին՝ մինչի կոխելն զհնձանն յոտն կոխողին եղեալ. բաղում արիւն հեղեալ յոտիցն, և ապա իմացեալ՝ արգելին զարիւնն, և գտեալ դդանակն։

Եւ յորժամ հարցին, թէ որպէ՞ս գիտացեր, թէ խապազին որդի է դատաւորն։ Նա ասէ.

—Այնու՛ գիտացի, որ ամէն մէկի մէկ հաց էր դրկել։

Եւ ցմիւսն հարցեալ, թէ՝ Դու՞ որպէս գիտացիր, թէ խորովուն շան հոտ կու գա։ Ասէ.

—Թէ ուլն զիւր մօրն կաթն էր կերել, նա ի խորովելն պիտէր բրբրէր. նա երբ շան կաթն էր կերել, զերդ շան միս ժնկռել էր ի պնտել։

Եւ ցմիւսն հարցին, թէ՝ Դու՞ որպէս գիտացիր, թէ գինին արիւնախառն է։ Ասէ.

—Վասն զի զգինին յորժամ յաման լնուն՝ փրփուրն, որ ի վերա երեսին գայ, ճերմակ պիտի լինի, իսկ այս գինիս՝ ի լնուլն յամանն խմելոյն, փրփուրն կարմիր կանգնեցաւ ի վերա երեսին։

Եւ լուեալ դատաւորին զայսոսիկ, փառս ետ տվողին իմաստից մարդկան, և գիշերն հնարեցաւ ի միտս իւր՝ և շինեաց սուտ պատմութիւն մի։ Եւ յորժամ լուսացաւ, եկեալ երեք եղբարքն, սկսան ասել զգանգատս իւրեանց, վասն ակինն, որ կորեալ էր ի մէջ նոցա, և ո՛չ գիտէին, թէ որն ունի զակին։ Ասէ դատաւորն.

—Ակինդ բանն հեշտ է. այտ թող ի տեղն կենայ, ապա բան մի եղեալ է ի մեր քաղաքս, զա՛յն զրուցենք, թէ ո՞րն է ըղորդ, զի՝ էր ի քաղաքիս աղճիկ մի, որ խօսեցեալ էր առն միում, և յետոյ փոշիմանեալ, այլ ումեմն մարդոյ տուին։ Եւ յորժամ գնաց աղճիկն ի տուն առն և պատմեաց առն իւրում, թէ՝ Յառաջն զիս այլ ումեմն մարդոյ էր խօսեցեալ, և ծնօղքն իմ փոշիմանեցան և քեզ տվին, յայնժամ այրն այն՝ զարդարեալ զկինն և յուղարկեաց միջնորդօք յառաջին խօսեցեալ այրն, թէ՝ Յորժամ յառաջն քեզ էր խօսեցեալ՝ քո՛ է կինդ, քե՛զ եղիցի։ Իսկ նա տեսեալ զայնպիսի իրաւ դատաստանն, որ այր կնոջն արար ընդ նմա, նոյնժամայն ինքն կրկին զարդարեաց և ասաց, թէ՝ Յորժամ այրն քո այնպիսի նաէֆ և իրաւունք արար, որ առանց ուզելոյ զիւր հալալն եղիր և յիմ տունս ղրկեաց, յայսմհետէ այն սէրն, որ կնութեան և այրութեան պիտէր լինէր ի մեր մէջս, նա դու ինձ քո՛յր լիջիր, և ես քո եղբայր. և քոյր և եղբօր սէր ի մեր մէջս։ Եւ այնպէս յուղարկեաց զնայ առ այրն իւր։ Արդ՝ հարցանեմ զերեք եղբարսդ. ասացէ՛ք մի ըստ միոջէ, ո՞րն արար իրաւացի բան յերկուց արանցն յայնցանէ։

Ասէ մին եղբայրն, թէ՝ Որ այրն էր կնոջն, շատ նաէֆ և իրաւունք ունէր, որ զիւր հալալ կինն մէկ խօսից համար, թէ յառաջն այլ մարդոյ էր խօսեցած՝ եղիր և յայն մարդն յուղարկեց։

Եւ միւսն ասաց, թէ՝ Այն մեկայլն այլ շատ մուրվաթ է ունեցել, որ խալաթել և զարդարել՝ և քո՛յր անուանել իւր, և յետ իւր մարդն յղարկել։

Եւ միւսն ասաց, թէ՝ Այն այլ շատ աջողումն է, որ երբ հնցեղ գեղեցիկ զարդարած նոր հարսն գիշերով ի թաղուց ի թաղ երթայ և ի յետ գայ, նա հասաս կամ այլ վնաս մարդ ի դէմն չէ՛ ելե՛լ, բռնել, յայն քաղաքն հասաս չէ կեցել կամ զող։

Յայնժամ ասաց դատաւորն.

—Գնա, զակն զու՛ն ունիս, տուր ի յետ ի քո եղբարքդ, և գնացէք խաղաղութիւն արարէք։

Ցուցանէ առակս՝ թէ ամէն մարդ զինչ իւր բարքն սիրէ, զա՛յն պիտի իմանայ և զայն պիտի խօսի։

## 57. ՀԱՅՐ Ի ՏԱՆՋԱՆՍ ԵՒ ԳՈՂ ՈՐԴԻՆ

Առն միոյ որդի ըմբռնեցաւ ի գողութիւն. և կալեալ զհայրն, յոյժ չարչարեցին. գիտէր զգողութիւն որդոյն և բնաւ ոչ եկն խոստ։ Եւ թողեալ զհայրն, կալեալ զորդին չարչարէին։ Եւ ապա հայրն ի խոստ եկն։ Եւ հարցեալ զհայրն, թէ՝ Վասն է՞ր, յորժամ զքեզ տանջէաք, ո՛չ ասացեր, և յայժմ ասացեր։ Ասէ հայրն.

—Զի իմ մարմինս ո՛չ է իմ, այլ հաւրն իմ, և մարմին որդոյ իմոյ՝ մարմին իմ է, վասն այնորիկ ի տանջել զորա ոչ կարացի համբերել, զի դայ իւանէ է ծնեալ։

## 58. ԱՅՐԻ ԵՒ ԳՈՂ ՏՂԱՅՆ

Որպէս գրեալ է, թէ մանուկ մի որբ մնացեալ իւր մօրէն, առնէր գողութիւն, և ձու գողանայր։ Եւ հայր առնոյր և ասէր, թէ՝ Գնա ա՛յլ բեր։ Եւ մեծացեալ տղայն՝ եղև ձիագող և անուանի աւազակ. և կալեալ ընկեցին ի չանկալը։ Եւ հայրն ի դիմացը խորովէր, և զալարէր աղիքն։ Եւ ասէ որդին ցհայր.

—Եկ մօտ, զի համբուրեցից զերեսդ, զի մի՛ կարօտ մնացից։

Եւ կալեալ ատամամբք կտրեաց զքիթ հօրն։

Եւ հարցին զպատճառ։ Եւ նայ ասաց, թէ՝ Դա՛յ ուսուց ինձ գողութիւն, զի փոքրուստ ո՛չ խրատեաց զիս, և եկի յայս դառն մահուս արժանացայ։

Կալեալ զհայրն կախեցին, երբ նայ էր եղեալ որդոյն գողութեան պատճառ։

## 59. ԳԵՐԵԶՄԱՆԱԿՐԿԻՏ ԵՒ ԵՐԵՔ ԳԱՆԳ

Մարդ մի գերեզմանակ[րկիտ] էր. և օր մի խաթուն մի թաղեցին շատ ընչիւք, և գիշերն եբաց ըզգերեզմանն և մերկացոյց մինչ ի հանդերձն։ Եւ կինն ափցի յերեսն եզարկ և ասաց, թէ՝ Եօթ տղաի մայր եմ և զարեն ի յերդն ի վեր եմ տեսել, և դու չե՞ս վախել յաստուծոյ, որ զիս հրապարակ կառնես, և ասաց, թէ՝ Հետ ինձ

գերեզման մի կայ, որ ի մէջն երեք գանգ կայ, և զինքն առ և տար ծախէ, և քեզ ապրանք արա։ Եւ նա առեալ տարաւ ի ծախել։ Եւ առեալ սառաֆն և շինեց ոսկի շիշ մի և էած ի մէկին ականջն, նա ի մէկայլ ականջն ի դուրս ելաւ. և մէկայլին էած, և ամենևին ոչ մտաւ, և զայն այլ ի բաց ընկեց։ Եվ դարձեալ ի մէկալին էած. և գնաց մինչև ի կէսն։ Եւ ասաց.

—Այսոր ինչ կուզես գին կուտամ։ Եւ երետ տասը հազար դրամ, և ասաց զխասլիաթն, թէ՝ Այն որ շիշն ի մէկալ դեհն ելաւ, նա ամենևին բան ի յականջն չէ պահել, ի մէկ դեհն ի ներս մտել էր, ի մէկայլն ի դուրս ելնել է։ Եւ մէկայլն ամենևին բանի տեղիք չէ տվել։ Եւ այս մէկալիս գին չկայ, որ զինչ բարի բան է լսել, զամէնն պահել է։ Եւ այս գանգս ամենայն ցաւոց դեղ է։ Եւ այս ճշմարիտ եղած է։

## 60. ԵՐԿՈՒ ԱՐԴԱՐՔ Ի ԽԱԼԱԹԱՑ

Ի պատմութեանց ասեն, թէ ի Խալաթայէն մարդ մի աղքատացաւ և արտ մի ունէր՝ վաճառեաց։ Եւ այլ ումն գնեաց զարտն զայն, և երթեալ վարէր զարտն։ Եւ գտաւ երեք կարաս ոսկի, և յղեաց առ տէր արտին և ասէ.

—Ե՛կ առ զոսկին, զի վարեցի զարտն և գտայ։

Եւ ասէ տէր արտին.

—Ո՛չ է իմ, այլ քո է, զի ես վաճառեալ եմ զարտն քեզ։

Եւ նա ասէր.

—Ես զա՛րտն եմ գներ ի քէն և ոչ զդրամն։

Եւ վիճէին ընդ միմեանս զբարիօք մարտն։ Եւ ձայն եղև ի պաղատ թագաւորին։ Եւ թագաւորն, և պատրիարգն և իշխանքն քաղաքին ժողովեցան անդ և ասեն. Ծկայք տեսէք ամենեքեան։ Եւ դատաստան արարեալ՝ ետուն զմէկ կարասն յարքունիսն և զմէկն՝ եկեղեցոյն և աղքատաց. և ետուն զմէկ կարասն և զարտն գնօղին. և զդուստր նորա ետուն որդոյ նորա. և սիրով միաբանեցան։

Եւ ցանեալ զարտն ցորեան, և ի ժամանակի հնձոյն երթեալ տեսին, զի մարգարիտ էր բերեալ։ Եւ քաղեցին տրցակ մի, և տարեալ ի Կոստանդինուպօլիս և եդին յարկեղս թագաւորին, վասն յիշատակի։ Եւ գտեալ զնա յայլում ժամանակի, և խնդիր արարեալ՝ գտին ծեր մի, և պատմեալ զամենայն մի ըստ միոջէ. և փառս ետուն աստուծոյ։

## 61. ՀԱԼԱԼ ՄԱՐԴ

### Բանք գեղեցիկ և համեղ

Կայր մարդ մի և բընաւ հարամ ոչ ուտէր։ Աւր մի գնաց յեզր գետոյն, ի պատճառս լուացման, և ջուրն խընձոր մի բերէր։ Եւ առեալ զխնձորն կերաւ յանօթեց, զի գրեալ էր ի հէքմարան գիրքն, թէ յանօթեց խնձոր ուտելն զամենայն ցաւ և զտրտմութիւն զաւուրն տանի։ [Եւ եկեալ ի միտս իւր ասէր, թէ՝ Ուխտ եմ դրեր հետ աստուծոյ՝ ամենևին հարամ չուտել։ Խիստ փոշիմանցաւ և բռնեց զգետն] և գնացեալ խղճմտանաւք ընդ գետն ի վեր գտեալ բուրաստան մի։ Ասէ ցտէր նորա.

—Եղբա՛յր, արա՛ ողորմութիւն՝ կամ առ զգինն խնձորին և կամ արա հալալ, զի ո՛չ եմ կերեալ հարամ ամենևին։

Եւ ասաց տէր բուրաստանին, թէ՝ Կէսն ի՛մ է, հալա՛լ քեզ, և կէսն իմ եղբօրն է, այնոր տէր չեմ. և վեց աւուր ճանապարհ հեռի է ի մէնջ։

Եւ երիտասարդն յուղի անկեալ գնաց, և գտեալ զայրն ասաց.

—Կամ առ զգին քո կէս խնձորին և կամ արա հալալ։

Եւ նա ասաց.

—Ոչ գի՛ն կառնում և ոչ հալալ կանեմ, թէ տուն մի ոսկի տաս։ Այլ թէ կուզես, որ հալալ անեմ, դուստր մի կայ ինձ, ոչ ա՛չք ունի և ոչ ականջ, ոչ լեզու՛ և ոչ ձեռք, և ոչ ոտք. ա՛ռ քեզ կին, որ հալալ անեմ։

Եւ նա անճարակ լեալ, էառ զաղջիկն, ետես զնա ամբողջ ամենևին, և ասաց ցայրն, թէ՝ Ընդ է՞ր անարգէիր զքո դուստրն։

Եւ նա ասաց, թէ՝ Ճշմարիտ է, զոր ասեմ, քանի որ ծնեալ է, զարեգակն յերդիքն ի վեր է տեսեալ, և զաւտարի զձայն ո՛չ է լսել, և զհետ աւտարի չէ խօսել, և ձեռքն յօտար գործ չէ շօշափել, և ոտիւքն ի դուռն ի դուրս չէ ելեր. և ես զերթ զքեզ փեսայ կուզէի, և աստուած երետ։—Եւ բազում ինչ տուեալ նմա, և ուրախ եղեն յոյժ։

## 62. ՓԻԼԻՍՈՓԱՅ ՄԱՀՈՒ ԴԱՏԱՊԱՐՏԵԱԼ ԵՒ ՍԻՐԵԼԻՆ

Այր ոմն փիլիսոփայ եղաւ ի բանդ թագաւորին, զի սպանցի։ Եւ իբրև գիտաց, որ մեռանելոց էր անտի, խնդրեաց ի թագաւորէն գնալ և հրաման տալ տան իւրոյ։ Եւ թագաւորն ոչ ետ նմա թոյլ,

մինչև էառ երաշխաւոր մի ի նմանէ. և թէ առժամայն ոչ դարձցի, երաշխաւորն մեռցի ի տեղի նորա։ Եւ ոմն փիլիսոփայ, սիրելի նորա, եղև երաշխաւոր նմա և յանձն էառ մեռանիլ վասն նորա։ Եւ նա գնացեալ ի տուն իւր, սակաւ մի յապաղեաց՝ քան զպայմանն։ Եւ բարկացեալ Թագաւորն հրամայեաց սպանանել զերաշխաւորն, փոխանակ նորա։ Եւ տարեալ զնա ի տեղի սպանման։ Եւ յորժամ վերացոյց զսուրն դահիճն, առժամայն եհաս փիլիսոփայն, և աղաղակեալ ասէր.

—Մի՛ զդա, այլև զի՛ս սպանէք։

Եւ եղև ի միջի նոցա քաղցր կռիւ։ Եւ ասէ.

—Ես զքեզ երաշխաւոր դրի, որ թէ ոչ գայի, նա պարտ էր զքեզ սպանանել։ Արդ, որովհետև ես եկի, դու ազատ ես։

Եւ միւսն, թէ՝ Ես երաշխաւոր եղա քեզ, որ թէ ոչ գայիր, զիս սպանանէին։ Եւ այժմ անցեր զպայմանն, և ես եղա պարտական թագաւորին և ոչ դու։

Եւ յորժամ համբաւս այս եհաս առ Թագաւորն, զարմացաւ ընդ կատարել սէր նոցա և ազատեաց զերկոսեանն ի մահուանէ։

Ցուցանէ առակս, թէ պարտ է ամենայն քրիստոնէից, որ այնպէս կատարեալ սէր ունենան ընդ միմեանս՝ յօժար սրտիւ։

## 63. ԹԱԳԱՒՈՐ ԵՒ ԵՐԻՏԱՍԱՐԴ ԿԱԼԱՆԱՒՈՐ

Թագաւոր ոմն, կամելով յաւուր միում բարերարութեամբ արձակել զմի ոք ի քրէական կալանաւորաց յարքունի ծառայութենէ, որ գնացեալ յարգելանոցն, հարցանէր իւրաքանչիւր կալանաւորաց ուրոյն ուրոյն՝ զհանցանս իւրեանց։ Եւ նոքա ամենեքին ճառոմ բանիւք չքմեղս եղեալ, ցուցանէին, թէ զոլով ինքեանց անմեղ ու համեստ անձինք՝ անիրաւաբար մատնեցեալք էին։ Ի մէջ որոց, երիտասարդ ոմն, մի ըստ միոջէ ճառելով զյանցանս իւր, խոստովանեցաւ արժանի զոլ մահու, բայց զթութիւն տէրութեանն՝ շնորհելով կեանս, արկեալ էր զինքն ի մշտնջենական մետաղս։

Յայնժամ թագաւորն, իբր թէ բարկացեալ, հրամայեաց սաստիւ վերակացուի արգելանոցին՝ փութով արտաքսել զայնպիսի զգայլն ի միջոյ այնքանեաց համեստ և անմեղ անձանց, զի մի՛ մնալով ընդ նոսին և զնոցին բարս ապականեսցէ իւրով չարաճրճգութեամբ։

## 64. ԵՐԵՔ ԵՂԲԱՐՔ ԱՐԴԱՐՔ Ի ՀՈՒՆՁՍ

Եղբայրք երեք էին ի հունձս. և առին արտ մի երեքին և գնացին ի հնձել։ Եւ յառաջնում աւուրն հիւանդացաւ ոմն ի նոցանէ, և չոգաւ ի խրճիթն իւր, և այլ ոչ ևս ետես զնոսա։ Եւ ասեն երկու եղբարքն. Տէ՛ր աստուած, եղբօր մեր օգնեա և մեզ՝ աղօթիւք նորա, փոխանակ անձին նորա։— Եւ փութով կատարեցին զհունձն։ Եւ եղբայրն յարեաւ ի հիւանդութենէն. և ահա անցանէր ժամանակ հընձոցն։ Եւ երկու եղբարքն բերէին զմասն նորա և ասեն ցնա. Առ զըվարձս քո։—Եւ նա ասէ.

—Ես ո՛չ ունիմ վարձս, զի ո՛չ աշխատեցայ։

Եւ ասեն նոքա.—Աղօթքն քո ընդ մե՛զ էր։

Եւ յետ բազում հակառակութեան գնացին ի դատաստան առ ծեր մի։ Եւ զարմացաւ ծերն, և ետ հարկանել ժամ, և ասէ.

—Եկայք լուարուք ճշմարիտ դատաստան։

Եւ յորժամ եկին, աղաչէր հիւանդացեալ եղբայրն և ասէր.

—Ես յառաջնումն աւուր հիւանդացայ և ո՛չ կամիմ ուտել զվաստակ այլոց։

Եւ ասեն ընկերքն. Թէ զորա աղօթքն չէ՛ր լեալ ընդ մեզ, մեք ոչ կարէաք հնձել զարտն զայն մեծ, թէև զայլս կալեալ էաք ի վարձու։

Եւ իրաւունս համարեցան եղբօրն առնուլ զբաժին ընդ եղբարսն, զի աղօթք նորա ընդ նոսա էր, և փառաւորեցին զաստուած ընդ կատարեալ և ընդ անմախանք սէր եղբարցն՝ կատարեալ, և սքանչելի և զարմանալի արանցն պնդահաւատից։

## 65. ՃԱՌ ԽԱՐԴԱՒԱՆՕՂ ԲԱՐԵԿԱՄԱՑ

Յեփեսոս քաղաքի իմաստուն և փարթամ ծերունի ոմն ունէր որդի մի երիտասարդ, որ ընկերակցեալ ընդ քանի մի հասակակից երիտասարդաց՝ պարապէր միշտ ի խնջոյս և, հարազատ բարեկամս համարելով, ոչինչ խնայէր ի նոցունց։ Հայր քանիցս խրատէր, թէ՝ Զգոյշ լեր և մի հաւատար զքեզ դոցա, զի ամենեքին սեղանոյ քո բարեկամք են և ոչ ես առեալ զփորձ, զի բարեկամն յաւուր նեղութեան փորձի։ Իսկ որդին ասէր.

—Ներեա՛ ինձ, հա՛յր իմ, ես ո՛չ եմ յիմար, գիտե՛մ և ճանաչե՛մ, որ ստոյգ հաւատարիմ բարեկամք են ինձ։

Հայրն կրկնեաց.

—Երջանի՞կ ես դու, որ ի սուղ ժամանակի քում այդքան հաւատարիմ բարեկամս կարացէր ունիլ։

Չկնի քանի մի աւուրց, հրամայեաց որդւոյ իւրոյ գնել մեծագոյն ոչխար մի կենդանի և բերեալ ի տուն՝ ետ զենուլ զնա ի ծածուկ։ Եւ սպիտակ չարսաւ մի թաթաւեաց յարիւն ոչխարին, և զոչխարն ետ խորովել ի փռան, և պատեալ նուրբ հացիւ՝ փաթաթեաց սպիտակ սաւանոյ, և ապա պատեալ միւս արիւնաթաթաւ սպիտակ սաւանոյ, և ապա պատեալ միւս արիւնաթաթաւն՝ եդ ի մէջ մախաղի և ի մէջ գիշերի եբարձ ի թիկունս որդւոյ իւրոյ։ Եւ գնացեալ բախեցին զդուռն միոյ յերկոտասանից բարեկամաց որդւոյն, և կոչեալ ասացին ցածուն.

—Բարեկա՛մ, այսինչ այր ի մօտակայ գիւղէ հիւր եկն յայսմ երեկոյի ի տուն մեր, որ արբեալ յարոյց աղմուկս, որոյ կարի բարկացեալ՝ հարի սրով և սպանի. խնդրեմ ի քէն պարտակել աստ զդի նորին, զի մի՛ ընդ այդն որոնեալ ի տան մերում՝ գտցեն և դատապարտիցեն զմեզ։

Բարեկամն իբրև լուաւ, մերժեաց զնոսա, ասելով.

—Անօրէ՛ն չարաճճիկ, ո՛չ է բաւական, որ սպանիք զայրն, կամիք և զի՞ս հաղորդս առնելով չարեաց ձերոց՝ գնել յորոգայթի։ Կորի՛ք աստի,—ասելով, փակեաց զդուռն հանդէպ երեսաց նոցա։

Գնացին անտի և միւս երկոտասան բարեկամացն։ Ամենեքեան նոյն պատասխան ետուն հօրն և որդւոյն։ Ասէ հայրն ցորդին.

—Տեսնե՞ր այժմ, որդեա՛կ, զհաւատարիմ բարեկամս քո։ Ե՛կ, ուրեմն, երթիցուք և առ միա՛կ բարեկամն իմ։

Գնացեալ բաղխեցին զդուռն, որ մինչ եբաց, կամեցան ասել ըստ առաջնոցն։ Քարշեաց զնոսա ի ներս տունն և փակեալ զդուռն ասէ.

—Այժմ ասացէք մեղմօվ, զի մի՛ ոք յընտանեաց զարթուցեալ իմասցի։—Որք իբրև յայտնեցին զձախորդ դիպուածն, իսկոյն տարաւ զնոսա ի պարտէզ տանն և յանկեան միում փոս ինչ արարեալ՝ ծածկեաց զմախաղն հողով և արձակեաց զնոսա, փութով դառնալ ի տուն իւրեանց։

Վաղ քաջ ընդ այգն, տասներկու բարեկամք գուեալ զմիմեանս, պատմեցին իրերաց որ ինչ անցեալն էր, և ամենեքին լուան, և շրջունչ ամբոխին եհաս առ քաղաքապետն և առ դատաւորս։

Քաղաքապետն, որ ճանաչէր զայրն իմաստուն և գիտէր զպարկեշտ և զառաքինի վարս և վարս նորին, ո՛չ կամեցաւ տալոյ հաւատս, և յուզեաց նորին հետաքրքրութեամբ, թէ յու՞մմէ եղ բանս այս, որ եղրակայացաւ ի վերա երկոտասանից բարեկամացն որդ-

տոյն։ Կոչեալ զնոսա՝ եհարց։ Նոքա պատմեցին լիովին։ Էարկ զնոսա ի բանդ, ապա կոչեալ այրն։ Նախ ուրացաւ։ Ներկայացոյց զնոսա, և ապա խոստովան եղեն հայրն և որդին։

—Զի՞նչ արարիք։

Ասացին.

—Տարաք այս նիշ բարեկամի տուաք։

Կոչեցին նմա։ Նա ուրացաւ և ոչ էառ յանձն։ Արկին փալախայ, յոյժ գանեցին, և դարձեալ ոչ ասաց։ Հրամայեալ կախել զնա։ Եւ ծերունին եա արգելուլ և ասէ.

—Տէր՛, բնականաբար յամառեալ ոմն է դա, Թողէ՛ք և եկայք ընդ իս՝ դատաւորք և վկայիք ի տուն դորա, և ցուցցուք ձեզ, թէ ու՞ր թաղեաց առաջի աչաց մերոց զդի սպանելոյն։

Քաղաքապետն էառ ընդ իւր դատաւորս և զվկայս՝ բարեկամ որդւոյն և զայլ գործակալ և բազմութիւն յոյժ, գնացին ի տուն նորա։ Ուրանայր տէր տանն և մեղադրէր զծերունին, թէ՝ Վասն է՞ր այդպիսի զրպարտանս առնես ինձ։—Բայց ոչինչ անսացեալ՝ եցոյց զտեղին, որ պեղեալ զհողն՝ հանին զպարկն և փութով հանեալ զկապոցն, տեսին զարիւնաթաթաւ չարսաւն։ Յայնժամ քաղաքապետն և դատաւորք ասին ցտէր տանն.

—Ո՛վ եղկելի, ահա սպանօղք խոստովանին, և արիւն սպանելոյն վկայէ, և դու տակաւին համառեալ «Ո՛չ տեսի և ոչ գիտեմ ի՞նչ» ասես, ի տեղի սոցա զքե՛զ պատժեալ։ Եւ այսպէս սպառնալով արձակեցին զարիւնաներկ չարսաւն և տեսին զայլ իմն մաքուր պատառակալ, բայց շաղախեալ իւղով։ Եւ իբրև զայն ևս արձակեցին, գտին լաւաշ հաց և ի մէջ նոցա զխորովեալ ոչխար ամբողջ, որ և ապուշ մնացեալ, զարմացան ամենեքին։

Քաղաքապետն և դատաւորք և ամենեքին, որք ճանաչէին զծերունին և գիտէին զիմաստութիւն նորա, ասեն.

—Ո՛վ պատուելի այր իմաստուն, գիտեմք զհանճար քո, և յայտնի տեսանեմք, որ ունիս զօրաւոր առիթ իմն վասն սոյնոյ գործառնութեան, խնդրեմք, ուսեմն, առնել զմեզ խելամուտ։

Պատասխանեաց ծերունին.

—Պատուելի տեա՛րք, սոյն թերամիտ որդի իմ, հաւատարիմ բարեկամ կարծելով ինքեան զվկայդ այդոսիկ, ոչինչ ծախս խնայելով, հանապազ պատուէր զդոսա ի խնճոյս իւր, և ի հարկաւորութեան՝ իւրեանց ևս օգնէր ընչիւք, ըստ իւրոյ ձեռնահասութեան։ Եւ ես կասկածելով, թէ զխորհուրդս իւր ևս հաւատայ դոցա, խրատէի միշտ, թէ դոքա նենգաւոր և անհարազատ անձինք են

ձ վասն սեղանոյ և օգտի իւրեանց բարեկամ ձևանան. մի՛ հաւատար և մի՛ խաբիր զոցա։—Բայց ո՛չ երբէք անսայր ինձ և պնդէր, թէ հաւատարիմ և ճշմարիտ բարեկամք են։ Վասն որոյ, առ ի փորձիւ խելամուտ առնելոյ զնա, հնարեցի զայս, զոր ահա տեսանէք, զի զգաստացի զորդին իմ և գիտիցէ, որ դժուարին գործ է գտանել զայր հաւատարիմ, և անհնարին է ունել բազմութիւն բարեկամաց։ Քանզի ես ի մէջ կենաց իմոց բազում փորձառութեամբ հազիւ հազ գտի զայդ մի՛ միայնակ հարազատ և ճշմարիտ բարեկամն իմ, զոր և դուք տեսիք փորձիւ, որ մատնեաց զանձն ի վտանգ մահու և քաջութեամբ տևեաց տանջանաց, և ո՛չ կամեցաւ լեզուաւ իւրով մատնել զիս։ Ահա՛ առիթ սոյնոյ իրակութեան, զոր կամեցայք տեղեկանալ յինէն։ Ուրեմն, խնդրեմ ի ձէնջ՝ բազմիլ աստ՝ ի ճաշել զխորովեալ ոչխարս այս և ընդ այլ համադամ խորտկաց և անուշահամ ըմպելեաց, զորս պատրաստեալ եմ ի տան իմում, վասն սոյնոյ ախորժելի տեսարանի։

Քաղաքապետն ընկալեալ զպատիւն՝ պատուեաց իսկոյն շքեղափառ խիլայիւք զայրն հաւատարիմ, զտէր տանն, յորում թաղեալ էր ոչխարն, և նախատանօք վանեալ զսուտ բարեկամս որդւոյն, բազմեցան յուտել և ըմպել, և ուրախութեամբ դրուատել զիմաստութիւն ծերոյն և զհաւատարմութիւն բարեկամի իւրոյ։

Եւ որդի ծերոյն ճանաչելով զսխալանս իւր, հրաժարեցաւ այնուհետև ի սուտ և սեղանակերպուտ այնպիսի նենգաւոր բարեկամաց։ Եւ հաւանութեամբ ամենեցուն գրեցին զայս պատմութիւն՝ ի խրատ հետագայից։

## 66. ԲԱԲԵԼԱՑԻՈՑ ԹԱԳԱՒՈՐ ԵՎ ԾԵՐ ՄԻ.

Բաբելացւոց թագաւորն բազմութեամբ զօրացն զայր մտանէր ի քաղաքն, եւ տեսաւ ծեր մի, զի ամբրաւենիս տնկէր։ Եւ ասէ թագաւորն.

—Ո՛վ ծեր, զայդ ընդէ՞ր տնկես, զի ի քառասուն տարին ապա պտղաբերի. և դու այսաւր և վաղին մեռանիս։

Եւ նա ասէ.

—Թագաւո՛ր, մին մարդ տնկել էր, ես վայելեցի. ես տնկեմ՝ զայդ մին մարդ այլ վայելէ։

Ասէ թագաւորն.

—Տու՛ք նմա հազար դահեկան, զի բարի և խէր անողէն մարդ է։

Եւ նորա առաւել զոհացաւ զաստուծոյ։ Ասէ թագաւորն.

—Ընդէ՞ր դոհանաս։

Ասէ.

—Գոհանամ, որ ամէն մարդ ի քառասուն տարին վայելէ, ես այսաւր վայելեցի.

Ասէ թագաւորն.

—Դարձեալ տո՛ւք նմա հազար դահեկան։

Դարձեալ գոհացաւ։ Ասէ թագաւորն.

—Դարձեալ ընդէ՞ր գոհացար։

Ասէ.

—Գոհանամ զաստուծոյ, որ ամէն տունկ ի տարին մին հետ տայ պտուղ, իմ ծառս այսաւր երկու անգամ եա պտուղ։ Եւ հաճոյ թուեցաւ թագաւորին։

## 67. ՎԱՃԱՌԱԿԱՆ ԵՒ ՄԱՐԴԱՍՊԱՆ ԵՒ ՄՍԱԳՈՐԾ

Գա վաճառական մի ի քաղաք մի. հանգեաւ և յարեաւ՝ շրջէր ի քաղաքն։ Եկն ի վաճառանոցն և հասաւ նմա պէտք մարմնոյ արտաքին։ Եւ էր ջրտուն մի՝ մերձ ի մսագործն։ Եւ նա եմուտ՝ զիւր պէտսն։ Եւ զողն զայր ծածկաբար զհետ նորա, վասն գանձին, զոր ունէր կապեալ ի մէջսն։ Փութով ի հետ մտաւ և եհատ զգլուխն վաճառականին։ Եւ նա էառ զգանձն և գնաց, զի շատ էր ազմուկն, և չիմացաւ ոք։ Եւ նոյն ժամայն մսագործն եմուտ ի ջրտունն՝ ի վճարել պէտս մարմնոյ. և զայն տեսեալ, «վա՜յ» գոչեաց, ընդ անմեղութեան իւրոյ։ Եւ լուեալ մարդիքն, կուտեցան ի վերա նորա, տեսին զնա, զի խռկայր և թաւալէր յարիւնն, զի նոր էր զենած։ Տեսանէին զդանակն արիւնթաթախ ի ձեռս մսագործին։ Եկն դատաւորն յաղմուկն։ Եւ հատաւ վճիռն մահու ի վերա մսագործին։ Ամենեցուն միտքն վկայէր, թէ նա սպան...։

Շատ արդար մարդիք դատին և մեռանին անիրավ ընդ վայր։

## 68. ՄԱՆՈՒԿ ԵՒ ԱՆԱՐԴԱՐ ԴԱՏԱՒՈՐ

Ասի առակաց, թէ ոմն մանուկ, յետ մեռանելոյ հօր իւրոյ, վատնեալ զամենայն ինչս իւր, զոր մնացեալ էր ի հօրէն, քանզի յոյժ սիրէր զգինի և այլ ամենայն անուշ ըմպելիս, և ոչ առնէր գործս բնաւ։ Եւ յաւուր միում, թափեալ ի քսակի իւրոյ, թէ իցէ մնացեալ դրամս սակաւ, և զայն ևս տվեալ ի գինին և արբեալ։ Եւ եւ ընդ առաւօտն, ոչ կարէր յառնել ի յանկողնոյ իւրոյ, քանզի էր բերան իւր ցամաքեալ և ցաւ զգլխով արկեալ, որպէս և է սովորութիւն

զինարբուաց, որ խումար աւենն։ Եւ էր մնացեալ ի տան հօր իւրոյ պախրէ մոզի մի։ Եւ ասէ ցմայր իւր.

—Զի՞նչ արարից, մայր իմ, ահա մեռանիմ։ Եղի ի մտի իմում բան մի. կամիմ զի մոզին այն տարեալ վաճառեցից ի վաճառանոցի, զինչ որ բերէ գին նորա, տացեմ զայն ես ի գինին և ըմպեցից, իբրև թօթափեսցի ծանրութիւնս իմ։

Ասէ մայրն ցնա.

—Որդեա՛կ, յամենայն ընչից հօրն քո ա՛յս է մնացեալ ի տունս մեր, և զայդ և՞ս կամիս վաճառել և ուտել։ Դու՛ գիտես, որպէս կամիս, այնպէս արա։

Եւ առեալ տղան զպախրէն և գնաց ի շուկան, զի վաճառեսցէ։ Եւ էր ի քաղաքին յայնմիկ դատաւոր մի, ենեալ ի բացուստ։ Տվեալ էր նոցա արքունուստ զքաղաքն զայն, զի դատեսցի արդարութեամբ։ Եւ էին դատաւորին այնորիկ փոքրաւորս երկու, զի նոքա շրջէին ի քաղաքն և ի շուկան, բստ ամենայն պիտոյից դատաւորին։ Եւ նոցա տեսեալ զմանուկն, ասեն ցնա.

—Զի՞ շրջեցուցանես զայծս զայդ։

Եւ մանուկն ասէ.

—Զի վաճառեցից։

Եւ նոքա առեալ տարան զմանուկն և զմոզին առ դատաւորն իւրեանց և ասեն.

—Ահա գտաք մանուկ մի, զի վաճառէ զայծս զայս. եթէ կամիս՝ գնեսցուք։

Ասէ դատաւորն ցմանուկն.

—Զի՞նչ է գին այծուս։

Մանուկն ասէ ցդատաւորն.

—Ո՛վ դատաւոր, ա՞յծ է սա, զի մոզի։

Եւ ասէ դատաւորն.

—Զմեզ յիմա՞րս առնես, զի կամիս վաճառել զայծ քո ի գին պախրոյ։

Եւ ասէ մանուկն ցդատաւորն.

—Կամք քո եղիցին, ո՛վ դատաւոր, զինչ որ կամիս՝ տու՛ր ինձ զգին դորա։

Եւ նա, իբրև դատաստանաւ, տվեալ մանկանն հիսուն դրամ և ասէ.

—Ե՛րթ, ա՛յս է գին դորա, ո՛վ մանուկ։

Եւ ուրախացաւ դատաւորն ի միտս իւր և ասէ.

—Զենեցէ՛ք զայս զի կերիցուք։

Ասէ մանուկն.

—Ո՛վ դատաւոր, խնդրեմ ի քեզնէ, զի տացես ինձ բղձէտ զորա, որ է ագին, զոր ոմանք սրոչ ասեն։

Եւ դատաւորն հրամայեաց տալ մանկանն զագի հորթուն, զոր խնդրեացն։ Եւ առեալ մանուկն զայն ագին և գնաց փաղփաղակի մօտ առ դարբին մի, ետ գործել տատասկ երկաթի, և շարեաց զայն շուրջանակի ի ձէտ պախրոյն՝ սոսկալի և աճաւոր տեսողացն, բայց սակաւ ինչ մազս եթող, զի դիտասցեն, թէ ձէտն այն ձէտ պախրոյ է։ Եւ առեալ զայն, գնաց ի տուն իւր և ասէ ցմայրն իւր.

—Տու՛ր ինձ զամենայն հանդերձ քո, զոր ունիս ի պահեստի։

Եւ մայրն լալով ասէ ցորդին իւր.

—Որդեա՜կ, զ՞ի է, զի առնես այդպէս, զի վաճառեցեր զամենայն ինչս հօրն քո և կերար, և այժմ սկսար վաճառել զգե՞ստ իմ։

Եւ մանուկն այն երդմամբ ասէ ցմայրն իւր.

—Մի՛ վախէր, այլ ունիմ ինչ բանս առնել ումեմն միոյ։

Եւ մայրն հաւատաց վասն երդմանն և ետուր զգեստն իւր զկանացի։ Եւ առեալ մանուկն զամենայն հանդերձն մօրն իւրոյ, և զգեցաւ, և եղև իբրև զմի ի պոռնկաց, որ շրջին ընդ քաղաքս և ընդ փողոցս։ Եւ գնացեալ շրջէր մօտ առ դրան դատաւորին։ Եւ տեսեալ զնա արքն այնոքիկ, որ զմոզին առեալ էին, և ոչ ծանեան զնա, և ասեն ցնա.

—Կի՛ն դու, զի՞ շրջիս աստ, կամ զի՞նչ խնդրես։

Եւ նա պատասխանեալ, իբր կանացի համեղ բարբառով, և ասէ.

—Եկեալ եմ ի միրոյ ձեզ նման գեղեցկատեսիլ երիտասարդաց, զի լցուցից զցանկութիւնս ձեր։

Եւ նոցա լուեալ զայս բան ի կնոջէն, վառեցան ի սէր նորա և ասեն.

—Երանի է քեզ, ո՛վ կին, զի այսօր եղև քեզ մեծ ուրախութիւն. քանզի է՛ աստ դատաւոր մի քաղաքիս յայսմիկ, և ո՛չ գոյ նորա սա կին, զի նոր եկեալ է նորա, և մեք եմք խորհրդակից նորա։ Ե՛կ տարցուք զքեզ առ նա և դու լիջիր կին նորա, և լինիցիս երանելի։

Եւ նա հաւանեալ կամաց նոցա, գնաց ընդ նոսա առ դատաւորն։ Եւ տեսեալ զնա դատաւորն, եհարց ցնոսա։ Եւ նոքա ասեն նորա՝ զամենայն մի ըստ միոջէ։ Եւ դատաւորն յոյժ ուրախացաւ ընդ գալ կնոջն առ նա և պատրաստեաց անուշահամ կերակուրս.

կերան և արբին։ Եւ եհան դատաւորն զամենեսեան արտաքս, բաց ի կնոջէն, զի էր վառեալ ի սէր նորա, զի վաղվաղակի կամէր ննջել ընդ նմա։ Եւ եղև իբրև առանձնացաւ, առեալ զնա ի վերա ծնկաց իւրոց և խօսէր ըստ կամաց աղջկանն։ Եւ ասէ կինն ցդատաւորն.

—Զի՞նչ է այն։

Եւ դատաւորն ասէ.

—Այն գիրք դատաստանի, որով առնեմ ես արդար դատաստան որբոց և այրեաց։

Եւ էր անդ մամուլս երկաթիս, զոր սահմանեալ էին վասն չարագործացն, կախեալ կայր անդր բարձրագոյն տեղեաց։ Եւ ասէ խարեբայ կինն այն.

—Զի՞նչ է նա, ո՛վ դատաւոր.

Եւ դատաւորն ասէ.

—Այն է վճիռ չարագործաց. եթէ ոք արժանի իցէ դանի և չարչարանաց՝ ըստ հրամանի գրոց տանջեմք զնոսա։

Եւ ասէ կինն.

—Զիա՞րդ լինիցի և կամ որպէ՞ս, զի չե՛մ տեսեալ բնաւ։—Եւ տարեալ զոտս իւր, կամէր պնդել ի շղթայն այն։

Եւ ասէ դատաւորն.

—Քա՛ւ լիցի քեզ. եթէ կամիս տեսանել դու, ե՛ս եդից զոտս իմ, և դու տես, թէ լաւ իցէ, թէ ոչ։

Եւ արարեալ այնպէս։ Եւ պնդեաց կինն զոտս դատաւորին ի կոճեղն, և քարշեալ բարձրացոյց զնա յերկրէ, և միայն գլուխն կայր ի գետնի, որպէս և առնէին աւազակաց։ Եւ եհան յինքենէ զձէտ պախրոյն այնորիկ, զոր էր տատասկեալ, և ասէ ցդատաւորն.

—Ճանաչե՞ս զսա, ո՛վ դատաւոր։ Ձէտս այս պախրո՞յ իցէ, թէ այծոյ։

Եւ զայն տեսեալ դատաւորին, երկեաւ յերկիւղ մեծ, և ասէ՝ Պախրոյ է։ Եւ ասէ մանուկն, որ ձևացեալ էր ի կին.

—Ապա զիա՞րդ իշխեցեր ասել, թէ այծ է սա. այսպէ՞ս առնես դու ամենեցուն դատաստան։

Եւ առեալ ի ձեռս իւր զձէտն զայն, այնչափ եհար զդատաւորն, մինչ զի տրորեցաւ մարմինն նորա բովանդակ. և թողեալ այնպէս և գնաց։

Եւ ի վաղիւն աւուր առաւօտին ոչ բացւէր դուռն դատաւորին։ Եւ ասեն ծառայքն նորա ընդ միմեանս.

—Այսօր հանգեաւ դատաւորն մեր առ տիկինն իւր,—զի ոչ կամէին բանալ զդուռն։ Եւ ի բազմանալ ամբոխին, խոշտանգեցին զնոսա և ասեն.

— Զի՞ է, զի ոչ բացիր դուռն դատաւորին։ —Քանզի բազումք եկեալ էին առ դատաւորն, վասն դատաստանի։ Եւ եկեալ ծառայքն՝ բացեալ զդուրս, մտին ի ներքս, և ոչ զոք գտին անդր, բայց միայն ի կախաղանին զամն գլխիկոր կախեալ։ Եւ իբրև մօտ եղեն, տեսին զի դատաւորն, և ասեն.

—Վա՜յ մեզ, զի՞ եղև քեզ։

Եւ նա հազիւ կարաց խօսել հեծեծանաւք և ասէ, նզովելով զնոսա.

—Ո՜վ չար սաղայէլք, զի՞նչ է այդ, զոր դուք ինձ արարիք. բերեալ առ իս ածիք զտէր պախրոյն, զոր զննեցիք անցեալ աւուրն։ —Եւ պատմեաց նոցա զամենայն, զոր ինչ եղևն։

Իջուցին զնա և տեսին, զի մածեալ էին հանդերձք նորա արեամբն, մինչ զի ոչ կարէին մերկացուցանել զնա։ Եւ կամեցան տանել զնա ի բաղանիս։

Եւ մանուկն հնարեցաւ այլ իմն հնար, և փոխեցաւ ի կերպս բժշկի, և առեալ անօթս մանրագոյնս՝ իբր բժշկի, սահմանեաց զայն փութով և գնաց մօտ առ բաղանիքն նստաւ։ Եւ նոքա բարձեալ զդատաւորն՝ տարան առ բաղանիսն, և տեսին, զի ոմն բժիշկ եկեալ է, և բազումք կուտեալ էին ի վերա նորա։ Եւ ծառայք դատաւորին ասեն ցբժշկի.

—Եկ փութով, ո՜վ բժիշկ, ի բաղանիսն և բժշկեա զդատաւորն մեր, զի տացուք քեզ գանձս բազումս։

Եւ նա ասէ ի միտս իւր. «Գանձ քո քե՛զ լիցի, ես գիտե՛մ զինչ արարից»։ Եւ գնացեալ ետես, զի անկեալ կայր դատաւորն արեան ճապաղի։ Եւ ասէ մանուկն այն ցտէր բաղանեացն.

—Զգու՜շ լեր, մի՛ ոք մտցէ աստ, մինչև կատարեցից զբժշկութիւնս իմ։—Եւ մտեալ առ դատաւորն, ասէ ցնա.

—Զի՞նչ եղև քեզ։

Եւ նա ոչ կարէր առնել պատասխանի։ Եւ դարձեալ եհան զձէտն զայն և ասէ.

—Ո՛վ դատաւոր, ճանաչե՞ս զաա՝ պախրո՞յ իցէ, թէ՞ այծոյ։

Եւ դատաւորն տեսեալ զձէտն, զարհուրեցաւ, և սկսաւ աղերսել։ Եւ նա ոչ լուաւ նմա, և առեալ զձէտն՝ գանեաց զնա որչափ որ կամէր, և ասէ.

—Ո՛վ դատաւոր, իմացի՛ր, զի մահ քո ի ձեռաց իմոց է։—Եւ ելեալ արտաքս մանուկն ասէ ցբաղնեպանն.

—Կաց դու ժամս երիս և ապա մտցես առ դատաւորն, զի իմ եդեալ է նորա դեղս բժշկութեան։ Թոյլ տուր հանգչել նմա։—Եւ ինքն գնաց ի տուն իւր։

Ու իբրև անց ժամ երիս, եմուտ բաղնեպանն տեսանել, թէ զի՞նչ եղև։ Ու ետես, զի արեամբ լցեալ էր բաղնիսն, և դատաւորն անկեալ կայր՝ իբրև զգէշ անասնոյ։ Ու կալեալ զնա՝ հանին ի դուրս, և ասեն.

—Զի՞ եղև քեզ։

Ու նա ևս նզովելով անարգէր զծառայսն իւր, և ասէր.

—Ո՛չ կարեմ կեալ յայսմ քաղաքի՝ ի ձեռանէ պախրէտիրոյն։

Ու առ մանուկն հնարեցաւ այլ իմն բան։ Գնաց առ ըղտապան մի և ասէ.

—Տո՛ւր ինձ զուղտ քո, զի գնացից այս ինչ նիշ քաղաք. և տաց քեզ վարձ՝ որչափ որ կամիս։

Ու նա ետ նմա զուղտ իւր, զի էր ծանօթ նորա։

Ու առ զուղտն և գնացեալ եկաց ի շուկի անդ։ Ու տեսեալ ծառայք դատաւորին զըղտապանն, և ասեն.

—Կամի՞ս գնալ այս նիշ քաղաք, զի է մեր դատաւոր մի տկար. զի տարցուք անդ։

Ու նա ասէ.

—Կամիմ, բայց զվարձս ըղտոյ իմոյ յառաջագոյն տուք։

Ու ետուն ուրախութեամբ։ Ու բարձին զդատաւորն ի յուղտն. և ինքեանք գնացին, զի բերցեն պաշարս վասն ճանապարհին։

Ու մանուկն իբրև ետես, զի հեռանան իւրմէն, սկսաւ հարկանել զուղտն, և անկեալ ի ճանապարհ՝ փութով գնաց, մինչ զի թռչունն ոչ կարէր ընթանալ զկնի նորա։ Ու գնացեալ եհաս ի տեղի մի, ի մէջ երկուց լերանց, որ էր խիստ մայրի. և իջուցեալ զդատաւորն, եցոյց նմա ևս զձէտն և ասէ.

—Ո՛վ դատաւոր. ճանաչե՞ս զսա՝ պախրո՞յ իցէ, թէ՞ այծոյ։

Ու նա ասէ.

—Մեղա՜, որդեա՛կ, թող ինձ զյանցանս իմ։

Ասէ մանուկն.

—Ես քեզ կամիմ դատաստան ուսուցանել։—Ու զայս ասելով զանեաց զնա ևս ուժգին, մինչ զի քաղէին հոգի նորա։ Ու ընկեցեալ այնպէս, գնաց ի մերձակայ քաղաքն, որ էր նաւահանգիստ և վաճառելոյ զուղտն։ Ու գնացեալ յարեաւ առ նաւապետ ոմն, և զգեցաւ զգեստ նաւավարի։ Ու ծառայքն դատաւորին եկեալ, ոչ գտին զըղտապանն և զդատաւորն ի ժամադրեալ տեղին, և անկեալ զհետից ուղտոյն, և միւս աւուր հազիւ եկեալ գտին զդատաւորն ի մէջ լերանցն, և հարցեալ, թէ՝ Զինչ եղև քեզ։

Ու դատաւորն ոչ գիտէր, թէ զինչ եղև իւրն. քանզի ի բազում

զանիցն ցնորեցան խելք նորա և միայն զայս ասէր, թէ՝ Աստուած արասցէ դատ ընդ յիս և ընդ ձեզ, զի դուք եղէք պատճառ մահուան իմոյ։ Եւ դարձեալ ասէ.

—Ոչ կացից յերկրի աստ, զի մի մեռանիցիմ ի ձեռաց մանկանն պախրէտիրոյն։

Եւ ծառայիցն գտեալ այլ որիշ ուղտս, և բարձեալ զդատաւորն՝ իջուցին առ մօտակայ քաղաքն այն, զոր մանուկն գնաց։ Եւ ծառայքն դատաւորին եդին զդատաւորն ի քաղաքն և ինքեանք գնացին առ ծովեզերն, զի վարձեն նաւ մի՝ գնալ յայնկոյս, վասն ահի մանկանն։ Եւ մանուկն կայր առ ծովեզերբն, և ոչ ճանաչէին զնա, զի էր կերպափոխեալ։ Եւ գին արարեալ ընդ մանկանն, ետուն զվարձս նաւին, և եդին զդատաւորն ի նաւի անդ։ Եւ ծառայքն դատաւորին կամէին ննջել զգիշերն այն յեզերս ծովուն, զի և նաւավարքն ևս ննջէին անդր։ Եւ ննջեցին զգիշերն այն, իսկ դատաւորն և պախրէտէր մանուկն միայն էին ի նաւուն։ Եւ ել հողմ յաջողակ։ Եւ տեսեալ մանկանն, զի յաջողակ էր հողմն, բացեալ սկսաւ առագաստ, և սկսաւ գնալ։ Իբրև այգ եղև, ետես ըղնաւն ի մէջ ծովունն։ Եւ հանեալ զձէտն ասէ ցդատաւորն.

—Ո՛վ դատաւոր, զի՞նչ է այս, ճանաչե՞ս, պախրո՞յ է, թէ՞ այծոյ։

Եւ ասէ դատաւորն։

—Մեղա՜, մեղա՜ որդեակ, թո՛ղ ինձ զյանցանս իմ. զամենայն ինչս իմ տաց քեզ, միայն զերծ զիս ի մահուանէ։

Ասէ մանուկն.

—Յիշեա՛ զօրն այն, ո՛վ դատաւոր, զի ես դատարկացեալ էի յամենայն ընչից հօր իմոյ, և էր մնացեալ միայն մոզին այն, և ես էի խումար։ Յոյժ էր հասեալ օր մահուան իմոյ վասն չգոյութեան։ Դու ոչ արարեր ընդ յիս ուղիղ դատաստան, վասն այնորիկ ես եղէ քեզ դարան մահու։—Եւ զանեաց զինքն սաստիկ զանիւք տատաւկաւն և ընկեց զինքն ի խորս ծովուն, և ասէ.—Այսուհետև, թէ դատաւոր լինիս, ուղի՛ղ դատեա։

Ցուցանէ առակս, թէ ով ոք վասն կաշառի և կամ վասն ագահութեան զաստուծոյ արդար դատաստանն թիւրէ և ոչ խօսի ուղիղ, նա այնպիսին յայս կեանս դատապարտի, նման այս առակի պատմութեանս, և անդ ևս քան ևս առաւել դատապարտի ի Քրիստոսէ յաստուծոյ մերոյ և ոչ գտցէ հանգիստ անձին իւրոյ, և թողութիւն մեղաց իւրոց, որպէս որ սա ոչ եգիտ աստ փրկութիւն ի Հեռանէ մանկանն, և ընկղմեցաւ ի յատակս ծովուն. Նոյնպէս և անդ ոչ կարեն փրկիլ ի յահեղ դատաւորի ձեռացն, այլ կու ընկղմին ի յա-

տակս սանդարամետից՝ ի մէջ հաւրեալ կաթսային, որոց փրկիչն ամենայնի փրկեսցէ զամենայն հաւատացեալսն՝ անուան իւրոյ, ի փառս և ի գովութիւն այժմ և միշտ և յաւիտեանս։

## 69. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ԴԱՏԱՍՏԱՆԻ ԱՐԱԳԼԻՑ

Յամի 1762 յՋմիւռին քաղաքին եղև իր մի կարի հիանալի, և է' մեծ օրինակ և դատաստանակութիւն ի համալսարանի բնութեանս։

Ի սկզբան գարնան եղանակի գան, իբր անխախտ կանոն, յամենայն ամի բազմութիւնք լէկլէկաց՝ ի վերա տանց երդոց և սօճից, չնար ծառոց, որք ունին յառաջմանէ եղեալ զբոյնս իւրեանց։ Բնակին ի նմա արու և էգ և այնքան ճանաչեն զբոյնս իւրեանց, որ միշտ ի մի' և ի նո՛յն բոյն իջանեն, ո՛չ փոխելով բնաւ, և անդ հանեն զձագս իւրեանց։ Նոյնպէս և ձագեաց, յորժամ մեռեալ իցեն ծնօղք իւրեանց, անդ գան և օթագայեն, որպէս թէ իսկական տուն իւրեանց (փորձ առեալ են՝ կապելով նշան ինչ յոտս նոցա, մինչդեռ ձագ են)։ Եւ մնան անդ մինչև ձագ կարիցեն թռչել և ապա, ի ժամանել աշնան, գնան ի տար աշխարհ, ուր կոչէ զնոսա բնութիւնն։

Եւ միշտ ձագ նոցա երկու կամ չորս լինին, ոչ պակաս և ոչ աւելի, և այն՝ արու և էգ անպատճառ։ Եւ չէ' կարելի, որ այլ որ արու արագիլ մի գնայցէ ի բոյն այլոյ արագիլի, զի ի ձայնել իգին, մինչ արու իւր ոչ իցէ անդ, համագումարին միւս արագիլք և կոտահարելով փախուցանեն կամ մեռուցանեն. և եթէ էգն համաձայնեալ զուգակցի ընդ օտար արագլոյ, անպատճառ մեռուցանեն զէգն։ Եւ այս օրէն մաքուր ամուսնութեան, թուի ինձ , թէ օրինակ առեալ են ի մարդկային տեսակէ։

Արդ, ի նոյն ամի, մինչ էր ժամանակ ելանելոյ ձագուց նոցա, յաւուր միում տեսնուեցաւ անթիւ բազմութիւն արագլից՝ ժողովիլ ի վերայ տանեաց հրէից (չհուդից)։ Տեսանիւր ևս, որ բազում արագիլք կարկաչմամբ թռչէին և հրաւիրէին զամենայն հեռակայ և մերձակայ արագիլս՝ գալ ի ժողովատեղիս իւրեանց։

Լուրս այս էհաս դատաւորին. և բազում երեելեաց և ժողովրդականաց եկեալ նկատէին, թէ զի՞նչ լինի յապայն։

Եւ իբրև ժողովեցան արագիլք՝ պար առեալ կացին կարգաւ։ Յայնժամ քանի մի արագիլք սկսան կարկաչել և խոկոյն արու արագիլ մի, որ ունէր զբոյն իւր անդ, կոտաւ իւրով կալեալ զձագ մի և բերեալ՝ եդ առաջի բազմութեան պարառելոց։ Ապա գնացեալ ձագ մի ևս եբեր այնու կերպիւ, և զայն ևս եդ առընթեր միւսոյն։

Եւ տեսին մարդիկ և արագիլք ամենեքեան, որ մինն էր ձագ արագլի և միւսն՝ օրդակի, բադի։ Յայնժամ մայր ձագուն ևս եկեալ՝ եկաց առընթեր ձագուցն։

Հայր ձագուն եկեալ նայեցաւ նախ, և մեծ աղաղակս հանեալ՝ դոյզն ինչ բարձրացեալ յօդն և կարկաչէր։ Ապա եկին և այլք արագիլք՝ դաս-դաս, և հայեցեալ՝ դարձան ի տեղիս իւրեանց։ Եւ մինչ ամենեքեան հայեցան, քանի մի արագիլք՝ սակաւ ինչ բարձրացեալ յօդն, սկսան աղաղակել։ Յայնժամ հայր ձագուն էջ, և նախ ի՛նքն եհար կտցաւ բադի ձագուն, և եսպան զնա. և այլք ևս կտցահարեալ՝ յօշատեցին զնա և արկին ի վայր։

Հիացեալ սքանչացան ամենեքին, որք տեսին զայս սոսկալի դատաստանն անբան թռչնոց, իսկ մօլայն, այսինքն դատաւորն՝ ամբարձեալ զաչս և զձեռս յերկինս, ասէր.

—Ո՜ ամենիմաստ տէ՛ր և ամենակարող արարիչ համայն արարածոց, որքա՜ն սքանչելի են գործք քո, և որպիսի՜ ազդեցութիւն և ներգործութիւն և, առ ի բարուք ասել՝ զիմացումն ունիս եդեալ յիւրաքանչիւր յարարածս ըստ ընդունակութեան իւրեանց, որոյ մարդկային միտք ո՛չ կարէ գոնէ և միոյ շամանդաղի չափու հասանել։ Բայց զայս տեսաք աչօք մերովք։ Ըղձայի գիտել, թէ արդեօք որպէ՞ս եղեալ է սոյն խառնակութիւն բադի ընդ արագլի, որ կարի հեռի ի մտաց իմն է։

Իսկոյն յառաջ մատեաւ հրէայ մի և ասէ.

—Տէ՛ր, զայս ե՛ս արարի։ Տեսի, որ արագիլք թռեան, առի ձու մի բադի և եդի ի բոյնն, և զձուն արագլի գողացայ. այսպէս բադի ձագ եհան։

Հրամայեաց դատաւորն ատենադպրին գրել զխոստովանութիւն հրէին։ Եւ մուֆթիին ասէ.

—Հրամայեն օրէնք ամենայն, վասնզի սա առիթ ժողովոյ և հեղման անմեղ արեանց եղև, դատաստանն՝ զոր արագիլք արարին, սմա՛ վերաբերի։ Տո՛ւր զդա կապել և յղեա ի կախաղան։

Հայիւ թե բաղում միջնորդութեամբ զերծաւ հրէայն։

## 70. ՀԱՅՐ ԴԱՆԻԷԼ ԵՒ ՔԱՐԱՀԱՏ

Պատմէր հայրն Դանիէլ, եթէ այր ոմն քարահատ վաստակէր աւուրն դանկ մի ոսկի և ինքն ոչ ուտէր մինչև ցերեկոյ, և ապա գնէր կերակուր նոսլաւ և ուտէր ընդ հիւրս, և ընդ աղքատս և զփրշրանսն մնացեալ ընգենոյր շանց, և ոչինչ պահէր ի վաղիւն, բայց

զքարահատն իւր։ Եւ եղև, զի ընգալաւ զիս ընդ հիւրս։ Եւ իբրև իմացայ զկեանսն նորայ, խնդրեցի յաստուծոյ զերիս շաբաթս տալ նմա ինչս, զի բազում արասցէ արդիւնս։ Եւ ասէ ցիս տէր.

—Տե՛ս ի լեառն, զի կայր ի վերա վիմի՝ ի կերպս թագաւորի. բաւական է նմա, զոր և ե՛ս ժտէի տալ նմայ զստացուածս։—Եւ ասէ ցիս.—Առնո՞ւս զնա յերաշխի, զի կացցէ ի պատուիրանս իմ։

Եւ ասեմ.—Այո։

Եւ ասէ ընդ զաւրսն, որ մօտ կային.—Լուարո՞ւք։

Եւ եղև, զի հանելն քար գտաւ կարաս մի լի ոսկով, և ոչ իշխեաց ի տեղոջն յերևան հանել, այլ վարձեալ գրաստ և բարձեալ գնաց ի Կոստանդնուպաւլիս՝ առ Յուստիանոս թագաւորն։ Ստացաւ ապարանս և առ զեպարքոսութիւն քաղաքին։ Եւ տեսեալ իմ դարձեալ զտէրն, հաեցաւ խեթիւ յիս. և իմ գիտացեալ զվնասերն, չոգա ի գեաւղն, և տեղեկացեալ գնացի ի Կոստանդնուպաւլիս, և չորս ամիս ոչ կարացի տեսանել զնա, կալով առ դրանն, մինչ հարին, վիրաւորեցին զիս ծառայք նորա և թողին կիսամահ։ Եւ ես յողոք անգեալ աղաչեցի զսուրբ աստուածածինն, թափել զիս յերաշխաւորութենէ անտի, և տեսի, զի բուռն հարեալ ունէր զտիցն տեառն, և աղաչէր վասն իմ։ Եւ ասէր ցիս տէր.

—Արձակեցից զքեզ, արի գնա ի տեղի քո և ես ածեմ զայրն ի չափ իւր։

Եւ եղև մեռանել Յուստիանոսի և կալեալ զքարահատն զՕւլուժի, և այլ երիս ընգերս ընդ նմա, և առին զբոլոր ինչս նորայ և կամէին սպանանել զՕւլուժի։ Եւ նորա զգեցեալ հանդերձ մուրողի, եկն ի գեղ իւր և մուրաց մուրճս. և սկսաւ զգործսն իւր և զհիւրասիրութիւն։ Եւ իմ լուեալ՚ւ չոգա առ նա. և լացաք զմեծ ժամս. Եւ ես պատմեցի նմայ զամենայն իրացն պատահումն, և ասէ ցիս.

—Խնդրեա և արդ, հա՛յր, ստացուածս ինչ սակաւս և մարթացից վայելել։

Եւ ասեմ ցնա.

—Քա՛ւ լիցի ինձ զայդ մտածել և իշխել տեառն իմոյ ասել, որոյ մեծ են գործք նորա և իմաստութեան նորա ոչ գոյ բաւ։

## 71. ԲԱՂԴԱՏԻ ՀԻՒՍ ԵՒ ԹԱԳԱՒՈՐ

Ի Պաղտատ քաղաքն կայր հիւս մի ճարտար յոյժ, որ էր տուրկէր։ Երեք տարի աշխատեցաւ և ի ամրաւի կտէն սեղան մի զուգեաց՝ գեղեցիկ յօրինուածովք, որ ոչ է տեսեալ ակն մարդոյ։ Տարաւ

առ Թագաւորն, կարծելով ի միտս իւր, թէ՝ Քաղաք մի կամ գեղ մի տա ինձ։ Իսկ Թագաւորն տեսեալ զայն, զարմացաւ և ետ նմա հազար դրամ։ Եւ նորա առեալ զդրամն, ել արտաքոյ դրանն, և նստաւ տրտում, և կամէր յետ ուղարկել զդրամն։ Յայնժամ եկն այր մի, և ունէր ի ձեռին սալայով վարդ, և տեսեալ զհիւսն, զի նստէր տրտմութեամբ, եհարց նմա.

—Ո՛վ այր, դու ընդէ՞ր ես տրտում և զի՞նչ է պատճառն։

Ասէ հիւսն.

—Երեք տարի աշխատեցայ և ի ամբրաւի կոճն սեղան մի զուգեցի, և բերի առաջի Թագաւորին, թէ ինձ տա գեղ մի կամ քաղաք մի, նա երետ հազար դրամ. կուզեմ, որ յետ ուղարկեմ։

Ասէ ցնա այրն, թէ՝ Այս Թագաւորն փէշքէշի հարկինք չի գիտէ, զի ես այլ փէշքէշ եմ, և այսչափ տարի այս դուռս կուգամ, նա ինձ այլ իրքմն չէ տվեր։

Ասէ հիւսն ցվարդ բերողն, թէ՝ Դու ի՞նչ արուեստ ունիս։

Եւ նա ասէ, թէ՝ Այս սալաս ես կու զուգեմ։

Յայնժամ հիւսն հանեալ զուրաքն ի գոտոյն, եդ ի վերա մորվացն նորա և զմէկ դիհն սրբեաց մինչև ի վայր, որպէս ածելի։ Եւ նա մտեալ առ Թագաւորն, տարաւ զվարդն այնպիսի խայտառակ դիմօք։ Եւ ասէ Թագաւորն ցնա.

—Ընդէ՞ր այդպէս խաղք երեսօք եկեալ ես աստ։

Եւ նա ասէ.

—Ո՛վ Թագաւոր, այր մի ի դուռս տեսի նստեալ տրտում և հարցի, թէ վասն է՞ր ես տրտում։ Եւ նա ասաց, թէ՝ Երեք տարի է, որ աշխատանօք շինեցի ամբրաւի կոճն սեղան մի, և բերի առ Թագաւորն, թէ տա ինձ քաղաք մի կամ գեղ մի, նա երետ հազար դրամ. և ես կուզեմ որ յետ ուղարկեմ։ Եւ ես ասացի, թէ՝ Թագաւորն փէշքէշի հարկիք չի անէր, զիահա ես այլ փէշքէշ եմ։ Եւ նա եհարց, թէ՝ Ի՞նչ փէշքէշ ես։ Եւ ես ասացի, թէ՝ Սալա և քթոց կու զուգեմ։ Յայնժամ քաշեց զուրաքն ի գոտոյն և զմօրվացս մէկ դիհն ի վայր եհան։

Եւ առժամայն կոչեաց Թագաւորն զհիւսն և ասէ.

—Արդարև՞ դու արարեր զդորա մօրուսն այսպէս։

Եւ նա ասէ.

—Այո՛։

Ասէ Թագաւորն՝ երդուեալ ի գլուխ իւր.

—Եթէ զմիւս դիհն այլ ածիլես նոյնպէս, տաց քեզ գիւղ մի։

Եւ առժամայն եղեալ հիւսն զուրաքն ի վերա մօրվացն՝ ածիլեց հաւասար։ Յայնժամ ասէ Թագաւորն.

—Նստեալ գրեցէք զգիւղն, որում ինքդ կա՝ իւրեն մուլք ազգաց յազգս։

Եւ արարին այնպէս. և առեալ զգիրն դարձաւ ի տուն իւր։

## 72. ԱՄԵՆԱՏԳԷՏ ՄԱՐԴ

(Պատմութիւն մի յիմար տգէտ մարդոյ վերայ)

Ասեն առակաց, թէ Թագաւոր մի կամեցաւ աշտարակ, այսինքն սարայ շինել։ Քանի ցերեկն կու շինէր, նա գիշերն կու փլչէր։ Եւ ժողովեաց զգիտունս իւր և էհարց զպատճառն։ Եւ նոքա ասեն.

—Թէ կամիս որ այլ չի փլչի, դու ընտրէ տգէտ մարդ մի, և ի մէջ պատին դիր կենդանի, և ի վերան շինէ աշտարակն, որ շէն մնայ։

Ասէ Թագաւորն.

—Ձայդ բանիտ ընտրութիւնն այլ դո՛ւք արարէք, թէ ինչ ուրուֆէթ կայ տգէտ մարդ, որ բերէք, որ տամ դնել ի մէջ պատին։

Իսկ նոքա նստեալ ի միասին ընտրել, թէ ի՞նչ մարդ կայ աշխարհիս միջումն։ Ոմն ասաց, թէ ձկնորսքն, այսինքն պալըխչին տգէտ է, որ հետ մարդոյ չէ՛ նորա առնուլն և տալն, այլ ի ջուրն և ի հետ ձկանց հետ է։ Իսկ ոմանք, ասին, թէ զէշ պահակն, այսինքն էշ պահօղն, որ ի հետ իշուն կու կենայ։ Եւ ոմանք ասացին, թէ լծվարն, այսինքն արապաճի, իսկ ոմանք զհովիւն, այսինքն չօպանը, որ ի լերինս ամառ-ձմեռն ի հետ ոչխարաց կու շրջի և ի գիւղ կամ քաղաք ոչ մտանէ։ Եւ հաւանեալ կամեցան բերել զհովիւն։ Յայնժամ ասէ մի ոմն ի նոցանէ, թէ՝ Թագաւոր ապրած կենաս, հովիւ մի կայ ի լեառն, ծներ է հետ ոչխարաց և անդ է սնել, զիւր ժամանակն ոչ ի գիւղ է մտեր և ոչ ի քաղաք։ Եւ ուղարկեցին տասն ձիաւոր, զի բերցեն զայրն։ Եւ նոքա գնացեալ գտին զհովիւն, զի կթէր զոչխարսն։ Եւ ողջունեալ ասեն.

—Կոչէ՛ զքեզ Թագաւորն։

Եւ ասէ հովիւն.

—Ես զիմ ժամանակս ոչ քաղաք եմ գնացեր և ոչ ի գիւղ, զիս զի՞նչ կու կոչէ։

Եւ նոքա պատճառեալ, թէ՝ Ո՛չ գիտեմք։ Իսկ նորա պատուեաց զօրականսն՝ գառն զենեալ և պանիր մատուցեալ, ուրախացոյց զնոսա և երդմամբ հարցեալ զպատճառ կոչելոյն։ Իսկ նոքա ասա-

ցին, թէ այսպիսի պատճառաւ կոչէ զքեզ. Զիմաստունք նորա տաս-ցին, թէ միայն ոգէտ, յիմար ի մարդկանէ Հովիւն է, որ գնեն պատի մէջն և չէն մնայ պալատն։ Յայնժամ ձիձաղեցաւ Հովիւն և ասէ.

—Յիմար և անգէտ այն խելօքն են, որ զայդ ընտրողութիւնդ են արել։—Եւ բերեալ ոչխար մի, և ասէ.—Ես ցուցից ձեզ զոգէտու-թիւնս իմ։—Եւ ասէ՝ Ոչխարս այս երկու գառ ունի փորն, մինն էգ, մինն որձ։ Միոյն գլուխն սև՛ է, միւսոյն սպիտակ։

Եւ զենեալ ոչխարն, Հեան զգառինսն, և էր այնպէս որպէս տաս-ցըն։ Եւ բերեալ ոչխար մի այլ, և ասէ.

—Ոչխարս ա՛յս մէկ գառ ունի փորն, անձն սև՛ է, գլուխն ճեր-մակ, և ինքն որձ։

Եւ զենեալ տեսին այնպէս, որպէս տասցն։ Եւ ասէ Հովիւն.

—Զայս երկու բուն գիՀս որ կայ ձեր առաջի, զամէնն գիտեմ, ո՞րն է ծնելու, ո՞րն է չիծնելոյն, որն է որձ, որն է էգ, որն սև, որ՝ բսպիտակ, որ ալաճայ։ Ձեր իմաստունքն կարե՞ն գիտենալ զայս ամենայն։

Ասեն զօրականքն.

—Ո՛չ ամենևին։

Ասէ Հովիւն.

—Ապա գիտացիք, որ ես չե՛մ այն ոգէտն և յիմարն, որ դուք կու խնդրէք, այլ ես ասեմ ձեզ. Թող Թագաւորն զիւր խաս նայիպն բռնէ և Թշնամանէ, և զինչ որ ունի, զամէնն առնու և ի մէջ քաղա-քին՝ ի Հրապարակին կախէ, և չարաչար տանջէ, որ ամէն մարդ տեսնու, և տանեն պաՀեն, որ ասեն թէ բսպաննեցին։ Եւ երեք օր քաղաքն կանչեցնեն, թէ զինչ մարդ որ գայ՝ զայն նայիպին գործն ի յանձն առնու, զնորա ապրանքն ամէնն այն մարդոյն կուտանք, որ նորա տեղն նստի։ Ինչ մարդ որ լսէ և տեսնու, զոր այն նայի-պին գլուխն ինչ բերին, և յառաջ գայ, թէ ե՛ս կու լինիմ նայիպ Թա-գաւորին, նա այն մարդն է յիմար և ոգէտ. զնա բռնեցէք և այն պատին մէջը դրէք կենդանի, որ այլ չի բլչի և չէն մնայ։

Իսկ նոքա եկեալ պատմեցին զայն Թագաւորին։ Եւ Թագաւորն արարեալ այնպէս. եգիտ այր մի, որ մինչդեռ կանչեցին ի քաղա-քին մէջը, թէ ով որ գայ՝ զայն նայիպին զգործն յանձն առնու, նա զնորա ապրանքն, զՀայրենիքն նմա կուտանք։ Յայնժամ մարդ մի Հարբեցող և ճիւնիւն ու տօլվաթուց յառաջ վազեց և ասաց, թէ՝ ես յանցս կառնեմ, և կառնեմ նայիպութիւնն։

Եւ Հարցին զնա, թէ՝ Տեսա՞ր, որ այն նայիպին եղեալն ինչպէս չարչարէցին։

Ասէ մարդն.

—Այո՛, տեսա՛յ, բայց ես ա՛յլ աղէկ կու դատեմ թագաւորիս, որ այնպէս չի լինիմ։

Եւ նոքա առեալ՝ շուտով տարեալ եդին պատի մէջը կենդանի. և հաստատուն մնաց շինուածն։

Ցուցանէ պատմութիւնս, թէ ով ընկերն տեսանէ ի գործս թագաւորին կամ մեծամեծաց ձեռն արկեալ, և այնու պատճառանօք ի յաղքատութիւնն և տուգանս անկեալ, և ինքն յանդգնեալ ի նոյն գործն ձեռնարկէ, նման նմա լինի և ի կենացն ես զրկեսցի։

## 73. ՃԱՌ ԳԱՆՁԱՐԱՆԱՑՆ ԱՍՏՈՒԾՈՅ

Էր այր ոմն սուրբ և արդար և յոյժ աստուածասէր, որ միշտ պարապեալ էր յաղօթս և ընթերցումն սուրբ գրոց և զմայլեալ ի կարողութիւն և ի մեծութիւնս աստուծոյ։ Եւ տեսանելով գրեալ ի սուրբ գիրս, թէ ամենայն գանձք բարութեան զեղանին ի վերուստ՝ ի հօրէ լուսոյ, բայց ոչ բարւոք վերծանելով զխորհրդական միտս գրեանց, կարծէր՝ ըստ նկարագրին, թէ գանձարանք աստուծոյ լի են ոսկովք և արծաթովք և ականք պատուականօք, զանազան կերպասիւք և այլն, ունի նաև այնքան անչափ և անհամար բազմութեամբ, որ քաղաք մի ևս պատրաստեալ է իջուցանել երկնից վասն ընտրելոց իւրոց, որոյ երկոտասան դրունք են ի մի-մի՛ մեծագոյն մարգարտաց, և պարիսպ նորա ի զանազան յականց պատուականաց՝ ըստ գրելոյ Յովհաննու երանելոյն յայտնութեան, վասն որոյ և ցանկայր մարմնոյ աչօք զայն ամենայն գանձարանս աստուծոյ և զպայծառափայլ կերպասս, յորոց զգեցուցանելոց էր սիրելեաց և որդւոց իւրոց, որք դիմեին առ նա։

Զկնի բազում ժամանակ խնդրանաց նորա, հաճեցաւ աստուած կատարել զխնդիր ծառայի իւրոյ, և հրամայեաց գանձապետ հրեշտակի տանել զնա և ցուցանել զամենայն շտեմարանս գանձուց իւրոց։

Երևեցաւ նմա հրեշտակն տեառն, մինչ ջերմ ըղձիւ աղօթէր և խնդրէր յաստուծոյ, և ասէ.

—Ո՛վ այրդ աստուծոյ, ընդունելի եղեն աղօթք քո. ե՛կ ընդ իս, և ցուցից քեզ զգանձարանս աստուծոյ։

Հետևեցաւ այրն հրեշտակին, զոր տարաւ զնա ի մեծագոյն յարկ մի յանհուն տարածութեան, շրջապատեալ յամուր պարսպաց, որոյ ի շրջապատս էին կարի մեծամեծ շտեմարանք, կազդու-

րեալք ի կճեայ քարանց և փակեալ երկաթի դրամբք։ Եբաց զդուռն մի, ուր ետես լցեալ փշրանօք, բորբոսեալ պատառօք, չորացեալ սպիտակ և սեաւ հացք։ Ա՛յլ սենեակ եցոյց, յորում էին կիսանեխեալ մսոց և աւելորդ հոտեալ կերակուրք, բորբոսեալ պանիրք, կոտոր հաւուց, ձկնից, թռչնոց։ Ցա՛յլ սենեակ. կիսաքացախ գինիք և զայլ անհամ ապախորժ ըմբելիք։ Ցա՛յլ սենեակ. պատառոտուն, ա[ն]չուայ, աղտեղի շապիկք և այլն։ Ցա՛յլ սենեակ, յորում էին լըցեալ պղնձի յումայք, և հայլի թէ գտանիւր դեկանս, և կոտորն արծաթի, ճմլեալ պղնձի զոտիք և այլ անօթք։ Յետ որոյ ասէ Հրեշտակն.

—Ո՛վ այրդ աստուծոյ, ահա տեսեր զգանձարանս աստուծոյ, այսուհետև խնդրեա յաստուծոյ զայլ շնորհս, զի ահաւասիկ առեր զփափագ քո։

Պատասխանեաց այրն աստուծոյ.

—Տէ՛ր, զի՞նչ տեսի ես, որ ահա մերձ եմ ի կորուսանել զիմացութիւն իմ, զի տկար անձինք ունին շտեմարանեալ ի գանձարանի իւրեանց զանազան պատուական իրք։ Եւ վասն ուտելեա՛ց ոչ կարեմ ճառել. մթերեալք են լիալիր ամենայն բարութեամբ ըշտեմարանս իւրեանց, իսկ աստուած, որ է ամենակարող և ամենառատ, փարթամ, ոչի՛նչ ունիլ շտեմարանեալ, եթէ ոչ զանպիտանս և զխոտանս և ի բաց արկանելիս։ Արդարև սքանչելի է ինձ, այո, և ո՛չ կարեմ հանդուրժել սմա։

Պատասխանեաց Հրեշտակ տեառն.

—Մի՛ սքանչանայր ընդ այս, ո՛վ այրդ աստուծոյ, զի զայն ամենայն բարութիւնս, զոր ունին մարդիկք, ո՛չ յուստեքէ եղեալք են, բայց միայն յաստուծոյ, ի վայելչութիւն մարդկանց, որոց և առատապէս շնորհէ աստուած, մինչ խնդրեն ի նմանէ աշխարհասէրք, որք և լցուցեալ զշտեմարանս և զտունս իւրեանց, և տիրեալ այնց ամենից բարութեանց՝ վայելեն երջանկաբար։ Իսկ յորժամ առաքէ նոցա աստուած զփոխանորդս իւր ի խնդրել գոնէ զտոկոսս, կամ զտասանորդս, թէ տո՛ւք և վասն աստուծոյ մեզ յայնցանէ, զորս ընկալեալ էք ի նմանէ, ոյր վասն և առաքեաց զմեզ առ ձեզ, նոքա յամենից յայնցանէ բարութեանց զայնս անպէտս և ի բաց արկանելիս, զորս տեսեր, ի ձեռս փոխանորդաց նորա և առաքեն առ նա։ Եւ աստուած շտեմարանեալ պահէ զնոսա ի գանձարանի իւրում, որ յաւուր հաշուապահանջութեան համակըշռելոց է զայս ամենայն տուրս նոցա՝ ընդ պարգևաց և շնորհաց իւրոց, և այնպէս հատուցանելոց է՝ ըստ տրոց և արժանեաց իւրեանց։ Ուրեմն դու մի՛ զարմանայր ընդ այս, և հետևեա՛ ի կատարել զհրամանս նորա և խնդրել զարքայութիւն նորին։

Զայս ասացեալ ի բաց եկաց ի նմանէ հրեշտակն, և այրն աստուծոյ դադարեցաւ? ի խնդրելոյ տեսանել զգանձարանս աստուծոյ։

## 74. ՃԱՌ ԱԶԴԵՑՈՒԹԵԱՆ ԺԱՄԱՆԱԿԻ

*Ամենայնի ժա՛մ է և ժամանակ, ըստ իմաստնոյն Սողոմոնի։*

*Եւ այլ ոմն իմաստասէր ասէր. Ժամանակն է՛ իբրու դեղ բարուց և վարուց մարդկան։*

Էր ի քաղաքի միում այր ոմն վաճառական, որ վնասուց հանդիպմամբ կորուսեալ էր զամենայն կայս իւր, և անկեալ ի ներքոյ պարտուց, ո՛չ կարէր շրջիլ յայտնի, և ոչ ևս նստիլ ի տուն՝ ահի պարտատեարց։ Ուստի վաղ քաջ ընդ առաւօտն, նախքան ի ծագիլ արևու, գնացեալ ի լեառն մտանէր յանտառն, և անտես եղեալ յաչաց մարդկան՝ խնդրէր յաստուծոյ յօգնութիւն ժամանիլ ինքեան։ Եւ մնայր անդ յօրն ողջոյն, կերակրելով ի բանջարեղինաց, և երեկոյին մարմամբ գայր ի տուն. և այսպէս միշտ անցուցանէր։

Մինչ Թագաւոր քաղաքին գիշերի միում երազ ետես և յամբոխմանէն մոռացաւ զերազն, որպէս երբեմն Նաբուգոդոնոսոր։ Եւ կոչեաց զգիտունս և զերազագէտս, զեկոյց նոցա, զի յայտնեսցեն զերազն և զմեկնութիւնս նորա։

Ոչ ոք գտնուեցաւ, որ բաւականութիւն տացեր։ Մունետիկ ետ ձայնել, խոստացաւ հազար դահեկանս ոսկոյ ընծայել այնմիկ, որ բացայայտիցէ զերազն և զմեկնութիւն նորա։

Յիշեալ վաճառականն, որ ըստ սովորութեանն տատանէր յանտառին, յաւուր միում հանդիպեցաւ ծերունի առն միոյ, որ նստէր առ դրան մթին և խորափոր այրի միում։ Ուղղեցաւ առ ծերունին և ողջունեալ նստաւ առընթեր նորա. և հարցանէր, թէ՝ Ո՞վ է և զի՞նչ առնէ անդ։

Պատասխանեաց ծերունին, թէ աստեղագէտ ոմն էր և բնակէր անդ՝ առ ելանել գիշերոյն ի գագաթ լերին և նկատել զընթացս մոլար և անմոլար աստեղաց։

—Սակայն, ասա՛ ինձ, թէ դու զի՞նչ գործես աստ և ո՞վ ես, կամ յորպիսի՞ կացութեան գտանիս։

Ողորմելի վաճառականն պատմեաց հարազատօրէն զպարտ և զփախուստ ի ձեռաց պարտատէրաց, որ? շրջէր յանտառին։

Գթացաւ ծերունին և ասէ.

—Եթէ երդուիս ինձ և հաւաստես զմտերմութիւն քո, կարող եմ օգնել քեզ այնքանեան, որ կարես վճարել զպարտս քո և ամենորդումս կրկին մտանել ի գործ վաճառականութեան։

Խոստացաւ վաճառականն լինել մտերիմ, միայն թէ յայտնեսցէ նմա զդաշն, զոր առնել կամի։

Երկնեաց ծերունին, թէ՝ Թագաւորն մոռացեալ գոլով զերազն և զմեկնութիւն նորա խնդրէ, և խոստացեալ զհազար ոսկիս։ Արդ, եթէ կէսն հազարին ինձ տացես, ասեմ քեզ զերազն և զմեկնութիւն իւր։ Եւ հաւաստեաց անյապաղ բերել շնորհակալութեամբ։ Յայնժամ ասէ ծերունին.

—Գնա՛ առ թագաւորին, տեսանէիր մեծ խառնակութիւն յօդն, ամպրոպք, որոտք, մրրիկք և մառախուղք, նա և ամպք մթինք պատեալ էին յամենայն կողմանս, և փոխանակ անձրևոյ՝ աղուեսունք հեղանէին յերկիր, որոյ մեկնութիւն այս է. Գոլով դու թագաւոր բարի և հաճելի աստուծոյ, կամեցաւ աստուած յայտնել քեզ, որ վասն այլայլութեան ժամանակի, մարդիկք ունելոց են զբարս աղուեսուց՝ ի կեղծել, ի խարդախել և խաբել զմիմեանս, վասն որոյ զգոյշ լինիլ պարտիս, զի նախարարք և գործակալք քո, և դատաւորք՝ ամենեքեան ջանան ի խաբել զքեզ և, վասն օգտակարութեանց իւրեանց, վնաս տերութեան և հպատակաց հասուցանեն։ Ուրեմն, պաշտպանեա՛ զքեզ և զտէրութիւն քո ի խաբէյութենէ մարդկանց։ Գնա՛ և մի՛ երկնչիր ասելոյ։

Գնացեալ պատմեաց թագաւորին, և էառ զոսկիսն։ Վաճառականն ո՛չ դարձաւ առ ծերունին, ասելով թէ՝ Նա ո՞ւր ճանաչէ զիս, և ո՞ւր կարէ գտանել և պահանջել, որ եթէ կարեմ ուրանալ, թէ ոչ երբէք տեսեալ և լուեալ եմ ի նմանէ։

Վաճառականն վճարեաց զպարտս իւր և զաւելորդն գրաւեաց ի առ և ի տուր, և եղև փարթամ խաբելով, ըստ սովորութեան վաճառականաց։

Անցին ամք երկու կամ երեք, կրկին երազ ետես թագաւորն և սոսկացեալ զարթեաւ, և ո՛չ ևս յիշէր զոր ինչ տեսեալն էր։ Ի միտ էած զերազագէտն և կոչեալ ասէ.

—Սոսկալի տեսի և մոռացայ, պատմեա՛ և դարձեալ հազար ոսկիս շնորհեցից քեզ։

Վաճառականն անկաւ ի մէջ շփոթանաց և խնդրեաց երեք օր ժամանակ։ Եւ նա գնացեալ յանտառն, եկաց առ դրան ծերոյն և սկսաւ աղաչել, զի ծերունին երևեսցի։ Յերրորդում աւուր երևեցաւ ծերունին և եհարց թէ զի՞նչ խնդրէր։ Պատմեաց վաճառականն և

հազարակերպ ներումն խնդրել «Իսկ այսու նուագի զհազարն խիկոյն բերից» երդմամբ։ Ծերունոյն գթացեալ, հաճեցաւ կատարել զխնդիրս նորա։

—Գնա՛,—ասէ,—առ թագաւորն և ասա՝ Տէասնէիր, որպէս նախնումն՝ մրրիկ մեծ և այլն, և ամպք մթին կալեալ զերեսս երկնի, փոխանակ անձրևոյ գայլք տեղային։ Որոյ մեկնութիւնն այս է. Մարդիկք յոյժ նենգաւորք, դաւաճանք ու ագահք, կողոպտիչք և զրկողք լինելոց են և գեր, քան զամենեսին՝ արեանարբուք և պատառօղք լինելոց են միմեանց. ուստի զգո՛յշ լեր, ո՛վ թագաւոր, զի մի՛ դարան գործեսցեն անձին քո և չարիս հասուսցեն վասն կենաց ձերոց մեծութեան։ Լե՛ր նաև հոգածու վասն ամբոխին, զի մի՛ սպանանիցեն զմիմեանս, կամ աղմուկ յարուսցեն ի տէրութեան քում։

Երազավէպն գնացեալ յայտնեաց և էառ հազար զոսկիսն, բայց ոչ տարաւ առ ծերունին։ Էառ սուր մի և գնաց առ ծերունին։ Յելանել ծերոյն քարշեաց զսուրն՝ ի հատանել զգլուխ նորա։ Բայց և խոյս տուեալ՝ եմուտ յայրին և ընկալաւ ի սրոյ անտի վէրս յետկուսէ յազդերս իւր։

Դարձաւ վաճառականն ի տունն իւր։

Թագաւորն վերստին երազ ետես և կոչեաց վաճառականին.

—Յիշեա՛ց զերազն, պատմեա՛ ինձ, թէ զի՞նչ տեսի և զի՞նչ նշանակէ։

Երկեւղի վաճառականն անկաւ ի ծայր յուսահատութեան և ո՛չ գիտէր զի՞նչ պատասխանէր։ Խնդրեաց զեռօրեայ ժամանակս, ուղղեցաւ դէպ յանտառն և սկսաւ կոչել զծերունին, աղաչեալ և ներումն խնդրեալ։ Փութով ե՛լ ծերունին և ասէ.

—Ա՛յր, դու չե՛ս արժանի շնորհաց, բայց զբարերարութիւնն, զոր արարի քեզ, կամիմ կատարելապէս յանկ հասուցանել։ Գնա՛-ասա՛ թագաւորին. Որպէս երկիցս տեսեր զխառնակութիւն օդոյ և զմրրիկ և զայլն, այժմ ևս զնոյն տեսեր. իսկ փոխանակ անձրևոյ՝ գառինք տեղային ամպք երկնից։ Որոյ մեկնութիւնն այս է. Ուրախ լեր այսուհետև և հանգիստ, զի բարձաւ չարութիւն ժամանակի, ներկայապէս մարդիկք իբրև զգառինս վարին ընդ միմեանց և ո՛չ ևս ունին ոչ կեղծութիւն, ոչ խաբէութիւն և այլն, կամ սպանութիւն, այլ հաւատարմութիւն, անդորրութիւն և ուղղութիւն տիրելոց է ի տէրութեան քում, տո՛ւր փառս և գոհութիւնս աստուծոյ։

Եկեալ երազավէպն յայտնեաց և ուրախ եղև։ Եւ շնորհեալ հազար ոսկիսն և մեծամեծ պատիւս և զգործակալութիւնս երևելիս։

Արդ, իբրև դարձաւ ի տուն իւր, զումարեաց զերիս հազար ոսկիսն, գնաց ի յանտառն, կոչեաց և ծերն ել արտաքս։ Եւ խնդրեաց ընկալնուլ զոսկիսն, զոր «Շնորհիւ քո,—ասէ,—ստացայ բաւականութիւն»։ Պատասխանեաց ծերունին.

—Լո՛ւր ուրեմն, ո՛վ այր դու. Ես ո՛չ անգոսնեմ և դարովեմ զքեզ, վասն նախկին գործառնութեանց, և ոչ դրուատեմ և յարգեմ զքեզ, վասն այսու ուղղութեանց քո, քանզի մինչ խաբեցեր զիս յառաջին նուագի, բարք քո աղուեսացեալ էր, որ կեղծ ու պատիր խաբէութեամբ վարեցար ընդ իս։ Երկրորդում նուագի, որ դաւաճանութեամբ սպանել կամեցար զիս, զբարս գայլոյ ունէիր, որ ագահութիւն, զրկանք և անիրաւութիւն տիրապատեալ էր զքեզ։ Իսկ այժմ, որ ուղղութիւն, և հարազատութիւն և երախտագիտութիւն բացայայտես, ժամանակ գառին գոլով՝ զբարս գառին գործածես։ Ուրեմն, ա՛ռ զոսկիսդ և տար, զի դոքա չե՛ն ինձ պիտոյք, վասնզի ես ո՛չ եմ այն, զոր տեսանես և կարծես, այլ հրեշտակ աստուծոյ եմ, որ ողորմիլ կամելով քեզ, առաքեաց զիս օգնել քեզ և տալ դաստիարակութիւն մարդկային սեռի, զի գիտասցեն, որ այլայլիլ ժամանակի, այլայլին և ինքեանք զբարս իւրեանց և կորուսեալ զշնորհ բանականութեան՝ նմանին անասնոց և գազանաց անբանից և հաւասարին նոցա։ Քանզի լոյսն բանականութեան, զոր աստուած շնորհեաց մարդոյն, պահանջէ ի նոցունց, զի բանականութեամբ վարեալ՝ լիցին տէր ժամանակի և ազդեցութեան նորին, և իբրև պատկերի և նմանութեան աստուծոյ՝ իշխեսցեն ամենայն արարածոց, և ո՛չ թէ ծառայք տարերց, ստեղաց և ժամանակի եղիցին։ Եւ զայլ բազում սոցին նմանս ասացեալ՝ անյայտ եղև։

Եւ վաճառականն զգացեալ զպակասութիւն իւր, գնաց լալ և ապաշխարել զհաւասարիլն իւր անասնոց։

## 75. ՔԱՐՏՈՒՇԱՅ ԵՒ ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ

Գրի, թէ մինն արբանեակաց սորա գնացեալ առ գոհարավաճառ մի, գողացեալ էր 16 դրաթանոց քար մի բրլիանթ։ Բերեալ առ Քարտուշայ, և նա հարցեալ, թէ՝ «Ուստի՞ գողացեր»։ Եւ գողն յայտնեալ է՝ «Այս ինչ գոհարավաճառէ»։Յանդիմանեալ է՝ «Ափսո՛ս քեզ, որ իմ աշակերտ ես։ Այնպիսի տեղւոջէ միով քարիւ բաւականացար»։

Կրկին նոյն գողն. արկեալ զիւրև զֆէրաջայ քահանայի, գնացեալ է նոյն գոհարավաճառն։ Զկնի բազում խօսակցութեանց և խր-

բատական բանից ծանուցեալ է, թէ «Մի ումն գողացեալ է ի քէն զքար մի 16 դրաթանոց, ներե՛ա յանցանաց նորա»։ Եւ ապա խնդրեալ է, թէ՝ «Ունի՞ս քան զայս լաւագոյն քարինք»։ Բերեալ ներկայացուցեալ է տօպրակաւ զբազում քարինս։ Եւ սուտ քահանայն ասացեալ է, թէ՝ «Համբերեա՛, ի ներքոյ արեգական տեսից, զքեան հատ ի սոցունց կամիմ գնել»։

Ելեալ ի տանէ հաւատարմաբար, ի յետուստ փակեալ է զդուռն, և գնացեալ ի փողոցն, հանեալ զվերարկուն՝ փախեալ է։ Եւ տէր տանն ձայնեալ է՞.—Բե՛ր, բաւական է որչափ նկատեցիր։—Չլսէ զձայն ինչ։ Կամեցաւ ի՛նքն ելանել ի տանէ, տեսեալ՝ թէ դուռն փակեալ.—Բաւակա՛ն, թո՛ղ տղայական խաղալիքդ, բա՛ց զդուռն, բա՛ց։

Ոչ դուռն բացող եղև, ոչ պատասխան տուող։ Յայնժամ գիտաց, որ Քարտուշայն էր, և ոչ քահանայ, սկսաւ գոռալ, կոչել և «Վա՜յ, վա՜յ» ասելով յուսահատեցաւ ի քարանց իւրոց։

## 76. ՊԱՐԱՆԱՀԻՍ ՎԱՐՊԵՏ ԵՒ ԲԱԽՏ ԻՒՐ

Երկու երևելիք և յոյժ բարեկամք խօսակցէին, և ի ճանապարհին՝ ի գնալն տեսին պարանահիս ումն վարպետ, որոց մինն գոլով փարթամ և հարուստ՝ նուիրեաց սոյն պարանահիւսին 200 ոսկի, զի կարողասցի նոքօք առաւելացուցանել զարհեստ իւր և փարթամասցի։ Որոց 10 հատ ոսկի ընկալեալ, մնացեալ 190 հատն կարեաց իւր գլխարկի մէջն։

Յաւուր միում գնացեալ էառ միս։ Մինչ դիմէր ի տուն իւր, ցինն, այսինքն չալաղանն, իջեալ նեղացոյց սոյն մարդի և կամէր խլել զմիսն։ Գլխարկն անկաւ յերկիր, և ցինն առեալ գնա՝ թռեաւ Մնաց ողորմելին յուսով պարանահիւսութեան։

Երկրորդ անգամ եկեալ, հարցեալ։ Պատմեաց։ Թէև անհաւատալի լինէր, բայց վերստին շնորհեաց 200 ոսկի։ Եւ դարձեալ 10 հատ վեր էառ, մնացեալ 190 հատն տարեալ ի տուն, ծածուկ յումեքէ, ի մէջ թեփոյ թաղեալ էր։ Կին նորա, ի նոյն իսկ աւուր, վաճառեալ էր զկարասն, հանդերձ թեփով, բրուտի միոյ և առեալ էր զհինգ հատ կուժ ջրոյ։ Եկեալ այրն՝ ետես, որ վաճառեալ էր. ելաց և արտասուեաց։

Երրորդ անգամի եկին երկոքին անձինք։ Միւս ընկերն տեղեկացեալ որպիսութեանցն, դարձեալ ոչ հաւատալով, ետ նմա կտոր մի արճըճոյ։ Եւ նա տարեալ ի տուն իւր, ետ կնոջն։ Եւ կինն եդ ի

թախկալի։ Դրացի իւր գոլով ձկնորս, ուղկանն պատրաստել, պակասէր փոքր ինչ արծիծ։ Գնացեալ խնդրեալ ի նմանէ, և նա ետ։ Կին ձկնորսի խոստացաւ, թէ՝ «Առաջին նուագի, զոր ինչ անկցի ի թոռն, քե՛զ լիցի»։ Եւ այսպէս խոստացա՛ւ և ե՛տ զմի պատուական մեծ ձուկն։ Կին պարանահիւսի կամեցաւ ձուկն խաշել. եւ ի փորոյ նորա քար մի փայլուն, որոյ դրացի գոհարավաճառն եկեալ ետես. գնեաց զնա 100.000 ոսկոյ։

Հարստացաւ սոյն պարանահիւսն։ Եւ երկոքին բարեկամք և բարերարք նորա եկեալ հարցին և մտին ի տուն նորա. տեսին զնա յոյժ հարստացեալ։ Շրջէին ի պարտիզի, տեսին ծառայ մի՝ իջեալ ի ծառէ, բերէր զբուն բիլբիլի, յորում էին ձագք մանր երեք։ Պարանահիւսն իսկո՛յն ճանաչեաց իւր գլ[խաւրկ] լինելն. պատառեաց և եհան 190 հատ ոսկին։ Զարմացան և հաւատացին։

Եւ ի միում երեկոյի, գարի ո՛չ գոլով վասն ձիանց, ծառայն գնացեալ ի հանուած թեփավաճառի, գնեալ էր կարաս մի լի թեփով։ Բերեալ ի տուն, դատարկեալ զթեփն, զի կարասն վերադարձուցէ տեառն իւրոյ, գտեալ անդ զկապոց մի, ետ ինձ։ Ես ճանաչեցի զծրարն և ի ներկայութեան տեարց իմոց և բարերարաց, բացի զծրարն հնացեալ, գտի զ190 զոսկիսն։ Եւ նոքա վերստին զարմացեալ ասացին.

—Վերին նախախնամութիւնն սիրէ զքեզ։

Եւ խոստացա նոցա՝ բաժանել զայն աղքատաց։ Եւ նոքա մնացեալ անդ զերիս աւուրս ուրախութեամբ, և չուեցին ի տունս իւրեանց։

Ահա բախտ. կոտոր մի արճիճոյ հարստացոյց զայր մի պարանահիւս և չքաւոր։

## 77. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՈՂՈՄՈՆԻ, ԹԷ ՈՐՊԷՍ ԵՂԵՒ [ՅԱՒՈՒՐՍ] ԻՒՐ

Եւ ետ տէր աստուած Սողոմոնի իմաստութիւն և հանճար յոյժ. և արար Սողոմոն զձովն։ Եւ երևեցաւ տէր Սողոմոնի՝ ի քուն գիշերոյ, և ասէ.

—Խնդրեա՛ դու քեզ խնդիրս ինչ։

Եւ ասէ Սողոմոն.

—Դո՛ւ, տէ՛ր, որ արարեր զայդ Դաւթի՝ հաւր իմոյ, ողորմութիւն մեծ, և շրջեցաւ առաջի քո ճշմարտութեամբ և արդարութեամբ, արդ տո՛ւր ինձ՝ ծառայիս քո, սիրտ լսելոյ և դատելոյ զժողովուրդս արդարութեամբ. և ինձ տուր իմաստութիւն։

Եւ ասէ տէրն.

—Փոխանակ, զի արարեր և խնդրեցեր յինէն իմաստութիւն, և ո՛չ խնդրեցեր մեծութիւն կամ բազում ժամանակս, այլ իմաստութիւն, արարի ըստ բանի քում և ետու քեզ իմաստութիւն։

Եւ եկն Սողոմոն յԵրուսաղէմ, և եկաց առաջի տապ[անա]կին տեառն։ Յայնժամ երևեցան երկու կանայք պոռնիկ և ասեն ցՍողոմոն.

—Տէ՛ր իմ, ես և կինս այս կայայք ի տան մի, և ծնայ ես։ Եւ յաւուր երրորդի ծնաւ կինս այս, և ի գիշերին ննջեաց ի վերայ որդոյ իւրոյ, և մեռաւ։ Եւ յարեաւ ի գիշերի, մինչ ի քուն էի ես, էառ զմանուկն իմ, և զորդին իւր մեռեալ ընկէց ի ծոցս իմ։ Եւ յարեայ ընդ առաւօտն դիեցուցանել զմանուկն իմ։ Հայեցայ, և ո՛չ էր որդին իմ։ Եւ ասէ կինս այս, թէ՝ Քո՛յն է։

Եւ ասէ նոցա Սողոմոն.

—Դու ասես, թէ՝ Ի՛մ է կենդանի, և նա ասէ, թէ՝ Իմ է—Եւ ասէ Սողոմոն.—Ածէ՛ք առ իս սուր մի։

Եւ բերին առ նա, և ասէ.

—Կտրեցէ՛ք զմանուկդ ընդ երկու և տուք զկէսն դմայ և զկէսն նմայ։

Եւ ասէ մայր կենդանոյն.

—Մի՛ կտրէք զմանուկդ, տուք ի նա կենդանի։

Եւ մայր մեռել*։

## 78. ՍՈՂՈՄՈՆ ԵՒ ԲՈՒԲՈՒ ՀԱՒՆ

Յորժամ աղօթէր Սողոմոն ի դուրս ի սրահին, և լինէր շող, նա գային հաւերն և շուք առնէին ի վերան, որ արեգական ջերմութիւնն զինքն չի տաքցնէր։ Օր մի մէկ հաւն չերեկ. արեգակ ի վերա իջաւ։ Նայեցաւ ի վեր. այս հաւս, որ բուբու կասեն՝ չէր եկեր։ Եհարց Սողոմոն թէ՝ Այս հաւս է՞ր չէ եկել։ Ասացին.

—Հետ հաւի օտարի գնաց, որ եկեալ էր յօտար յաշխարհէ, որ չէր այս երկնի աշխարհէս։

Գնաց այն հաւն ու տեսաւ քան զմեր աշխարհն ա՛յլ գեղեցիկ ամենայն իրօք։ Բարկացաւ Սողոմոն հաւին, թէ է՞ր օտար աշխարհ գնացեր. թէ գայ՝ սպաննեմ զնա։ Երեկ հաւն։ Ասաց.

—Ուստի՞ գաս։

* Թերի. ձեռագրից թերթ է ընկած։

Ասաց.

—Երկու հաւ եկեալ էին յօտար աշխարհէ՝ զիս տարան իւրեանց աշխարհն։ Գնացի տեսայ քան զմեր աշխարհն ա՛յլ գեղեցիկ ամենայն իրօք։ Եւ կայր կին մի հանց գեղեցիկ, որ մարդ այլ չէ՛ տեսել։

Ասաց Սողոմոն.

—Ես գիտեմ, թէ ամենայնի թագաւոր եմ, ու այլ աշխարհ չկայ քան զմեր աշխարհն, ու իմ հրամանքս են մարդ և թռչուն և ամենայն կենդանի, և դե՛ք այլ. դու կասես թէ՝ Ա՛յլ կայ։—Երետ հաւ մի հետ այդ հաւին, թէ՝ Գնացէք-տեսէք ըղո՞րդ է, թե սուտ։

Գնացին, եկին ասացին թէ՝ Ըղորդ է։

Ասաց Սողոմոն, թէ՝ Ո՞վ երթայ զայն կինն բերէ։

Ասաց մէկ դեւ.

—Ե՛ս երթամ շուտով բերեմ։

Գրեց գիր և երետ ի հաւն. և իւրն նայիպ մի կայր, ի հետ տարաւ հաւն, ու զգիրն ի վերան ձգեց։ Երեկ ամպն ու աստեղ, ու անձրև էած, և ի հետ անձրևին մարգարիտ երեկ։ Ելաւ այն կինն, կու տեսնուր զմարգարիտն. ամպն ի յինքն ժողովեցաւ, և քամին ՚ի ներքեն մտաւ, էառ զայն կինն քամին և մօտ ի Սողոմոն տարաւ։ Տեսաւ Սողոմոն և էառ զինքն։ Եւ ասացեալ էին Սողոմոնի, թէ ոտքն միայն գէշ է, զի մազոտ է, և այլ ամենայն մարմինքն լաւ է։ Վասն այն, երբ ի ջուրն կանգանէր՝ տեսաւ, որ ոտն այլ էր ճերմակ. խիստ սիրեաց զայն կինն և էառ իւրն, և եղև ի նմանէ տղայ։

## 79. ՍՈՂՈՄՈՆ ՅԻՇԷ ՁՊԱՏՈՒԷՐ ՀՕՐՆ ԻՒՐՈՅ

Իսկ Սողոմոն արար իւր կանայս բազմութեան եօթհարիւր. և զի ո՛չ շատացաւ այսուիկ, այլ դիմեաց նա ի վերա հեթանոսաց և էառ հարճ երեքհարիւր պիղծս՝ ի քանանացւոց անտի, դստերս թագաւորաց և իշխանաց՝ ի զայթակղութիւն անձին իւրոյ և արհամարհութիւն բազմութեան կանանց իւրոց, որք ժողովեցան առ նա, վասն զարմանալի գիտութեան իւրոյ, որպէս իմաստուն կինն, որ եկն յեթովպացոց, վասն աւրհնութեան առն իմաստնոյ, ի գիտել զիմաստութիւն նորա, զոր լուաւ ի վաճառականաց անտի ի քիրամա արքայէ։ Այլ էառ նա զկանայս ազատեալս, ի բազում գայթակղութեանց որդւոցն Իսրաէլի, ո՛չ միայն պոռնկեալն, այլ և հաղորդ պաշտաման զայթակղութենէ, զի խաբեցաւ նա ի պատճառս իմաստութեան իւրոյ. Թոյլ ետ խորհրդոցն զնալ ի ճանապարհս կանանց,

որք խորհեցան միաբանութեամբ զլուծումն անձին նորա, մինչև կանգնեաց զպատկերս ի վերա լերանց և յայտնապէս պոռնկեցաւ ղէմ յանդիման տեառն արարչին սրբութեան և թշնամաց իւրոց։ Բայց զի եղև նմա ժամանակ պարապոյ ի սենեկի իւրում և խորհեցաւ ի միտս իւր յիշել զպատուէր հօրն իւրոյ. «Գնալ քեզ ի ճանապարհս տեառն և յօրէնս Մովսէսի ծառային տեառն»։ Եւ յիշեաց նա զպատուէր հօրն իւրոյ և զժամ մահուն Դաւթի. ելաց նա ի խորոց սրտէ իւրմէ, մինչև յոռոգեալ նա զսենեակն և զմահիճս իւր ի տան ձմեռոց արքայութեան իւրոյ, զդուրս սենեկին ինքն ձգեալ՝ առանց ձգողի, զի Դաւիթի ելաց զամենայն գիշերս և Սողոմոն հեղեղեաց ի սենեակն իւր։

## 80. ԱՂԷՔՍԱՆԴՐ ԵՒ ՀԱՐՍՏՈՒԹԻՒՆ ՆՈՐԻՆ

Մեծն Աղէքսանդր անցանելով ընդ Ասիա, և զկնի յաղթութեան Դարեհի և տիրապետելոյ ամենեցուն, բաժանեաց զամենայն հարստութիւնս զաւառին նախարարաց իւրոց. և ոչինչ պահեաց ամենևին ինքեան, և ո՛չ զիր իմն։ Որոյ զարմացեալ Փարմենիոս էհարց, թէ՝ «Արդեօ՞ք պահեալ իցէր զիր իմն վասն ինքեան»։

Պատասխանեաց, թէ՝ «Այո, զյոյսն եդի ի յիս բաժին իմ»։

## 81. ԱՂԷՔՍԱՆԴՐ ԵՒ ԻՄԱՍՏՈՒՆՔ ԵՒ ԱԼՄԱՍՏ

Ասացին, թէ Աղէքսանդր գնաց ի Զուլումաթն՝ ի լեռան մի տակ հասաւ, յանկարծ ձիոյն նալն զըլլաւ։ Հարցաւ թէ՝ «Զինչ լինի այս»։ Իմաստունքն, որք կային ի հետն, ասացին թէ՝ «Ալմաստ է, յերկնից ցօղէն հասալ լինի։ Աճամն խուզայի կասէ զորա»։ Ասացին Աղէքսանդրի թէ՝ «Այս լեռան յետևն աւազուտ դաշտ է, ամէնն ալմաստ է և անմարդաբնակ է, և թռչնոց ի զատ այլ իրք չկայ ի հոն»։ Աղէքսանդր ուզեց ի յայն ալմաստէն։ Ասացին թէ՝ «Հեծեալքն թող ի լեռան գլուխն ելնեն և ի լեռան գլուխն անասնոց լաշ ձգեն. նա ի հոն մեծ թռչունք կան, ալմաստն կու կպնայ ի լաշերն, կառնուն թռչունքն ու կելնեն լեռան գլուխն նստեն ուտեն, նա հեծեալքն երթան թռուցանեն՝ ինչ որ կպէր է ի լաշերն, ամէն ի հոն կու մնայ»։ Եվ այնպէս արարին, որչափ կարացին։ Այն ալմաստն խիստ դիմաթով է, և այլ մարդ ի հոն չէ գնացեր, և այժմուս ժամանակիս ինչ որ հին ալմաստ կայ, յայն ալմաստէն է։

## 82. ԱՂԷՔՍԱՆԴՐ ԵՒ ՍԿԱՄԱՆՏՐՈՍ ԳԵՏ

*Զի ասի, եթէ տիեզերակալն Աղէկսանդրոս, զաւրեղն իմաստութեամբ և հանճարով ընդ արիական մանկութեամբն, եկեալ սա ի Փռիգիա՝ ի քաղաքն Իլիոն և տեսանէ զՍկամանտրոս գետ, ընդ որ վազեաց Աքիլլես, զի և ոչ հինգ կանգուն էր լայնութիւն նորա, և զվաճանն Ենտեայ զեաւթնակաշեանն՝ ոչ կարի մեծ կամ սքանչացման և զարմանալոյ արժանի, որպէս գրեալ էր ի Հոմերոսէ՝ մեծ և զարմանալի պատմութեամբ։ Ասաց Աղէկսանդրոս.*

*—Երանի՛ է ձեզ, որ դիպեցայք այսպիսի քարոզի Հոմերոսի, որք ի նորա արարուած պատմութեան մեծ էք, բայց յաչաց տեսիլս ո՛չ արժանիք ի նմանէ գրելոցս։*

*Եւ եկեալ առ նա ստեղծիչս բանի, ասէ.*

*—Աղէկսանդրէ՛. լաւացո՛յն ես մեք գրեմք զքո գործդ, քան զՀոմերոս։*

*Ասաց Աղէկսանդրոս.*

*—Ըղձալի է ինձ ի Հոմերոսի պատմութիւնն Թերսիտէս գոլ, քան ի քումդ՝ Աքիլ[լ]ես։—Այսպիսի՛ էր զարմացման արժանի սա և բանք արարուածոց սորա։*

## 83. ԱՆԴԱՐՁ ԱՂԷՔՍԱՆԴՐԻ

*Յորժամ մեռանէր Աղէկսանդր, նա աւսիրաթ արար, թէ զիս զիմ տունն տարէք և յիմ ճանիշին յառջև. և հազար մարդ ոսկի սինով ակն և մարգարիտ առէք, և հազար մարդ մերկացուցէք և չուլ հագուցէք, և հազար ձիու զաքին և զբաշն խուզեցէք, և քէշ և բեշիկ, աղեղն և ըռումպ ի վերա կապեցէք, և հարիւր հազար սրաւոր յառաջ յուղարկեցէք։ Եւ նոքա նոյնպէս արարեալ տարան։ Եւ տեսեալ կնոջն և մաւրն, ոչ արարին սուգ։ Եւ իշխանացն հարցեալ, թէ՝ Ընդէ՞ր ոչ արարիք սուգ։—Ասաց մայրն, թէ՝ Իմ որդին պատուիրեալ էր, թէ ճար կար ի մահուն փրկելու, նա ես զայս ամենքս ի դէմ ղրկեցի, և ոչ մռեց մահն, և զսո՞ւքն պիտի մռէ։*

*Հանց գիտենայք, որ սուքն մեռելին վտանգ է և պահաւղին այլ չէ աւգուտ, քան զմեղքն անցել։*

## 84. ԱՂԷՔՍԱՆԴՐ ԵՒ ԵՐԿԻՐ ԲԱՐՈՒԹԵԱՆ

*Հանդիպեալ Աղէկսանդր յերկր տեղի մի հեծելովն։ Եւ բերեալ նուռն մէկ մի կոտորեցին՝ և ելից զթափսին. և կտրեց զխաղողին*

վազն՝ և կուժն լցուէր գինով։ Եւ իմացեալ Աղէկսանդր։ Հարցաւ թէ՝ Ո՞ւմ է այս տեղս։ Եւ ասեն թէ՝ Աղէկսանդրի։ Եւ խորհեցաւ չարիք առնուլ, և բարութիւնն այն խափանեցաւ. և չորս, հինգ նուան բղխափսին այլ չէ՛ր ի լնուլ, և այլ ի վազէն կուժն չէր ի լցուիլ։ Եվ ասացին, թէ՝ Մեր Թագաւորին սիրտն ծռել է ի հետ մեզ. և ճշմարիտ էր։

## 85. ԿՈՍՏԱՆԴԻԱՆՈՍ ԵՒ ՔԱՐԿՈԾԵԱԼ ՊԱՏԿԵՐ ԻՒՐ

Սուրբն Յոհան Ոսկիբերանն ասաց ի մէջ քարոզի իւրոյ, թէ յորժամ ոմանք չարաբարոյ մարդիկք քարկոծ արարին զպատկեր երանելոյն Կոստանդիանոսի ինքնակալին և բազումք յորդորէին զնա, զի վրէժխնդիր լինիցի անարգանաց պատկերին իւրոյ և կորուսցէ զայնպիսի արհամարողքն, և ասէին զնա.

—Զամենայն երեսս քո չարաչար քարամբք վիրաւորեցին։

Զգեաց զձեռն ի յերեսս իւր և ծիծաղելով ասաց.

—Ես և ոչ խոց մի տեսանեմ յերեսս իմ և ոչ ցաւ զգամ, նա՛և գլուխ իմ առողջ և զերեսս ամենայն ամբողջ։

Իսկ նոցա լուեալ զամօթի հարան և զչար խրատն իւրեանց ի բաց թողին։

Այս խօսքս իսկապէս արժանի գովեստի, զոր մինչև ցայսօր ամենեքեան բարի համբաւեն, և ոչ երկարութիւն ժամանակաց կարէ եղծանել զնա, զի միշտ յիշատակեսցի, որ և պայծառութեամբ իւրով զամենայն յաղթանակ յաղթահարէ և գերազանցէ։

## 86. ՓՈԿԱՍ ԿԱՅՍՐ ԵՒ ՀԵՐԱԿԼ ԿՈՒՍԱԿԱԼ

Փոկաս կայսր Կոստանդնուպօլսի, յաւուր խաղուց ի յուտել և ի յմպել չափն անցուցեալ էր։ Եւ ի ժողովրդենէ ծաղր արարեալ նախատանօք հանդերձ, ասելով զնա.

—Զգինի ի բաժակէ արբեր և զհանճար կորուսեր։

Վասն բանիցս այսոցիկ զբազումս ըսպանանել հրամայեաց։ Իսկ իշխանք և նախարարք և կուսակալք տեսեալ զայսպիսի իրս, զի բազումք էին պէս պէս տանջանօք չարչարեալս, յընչից կողոպտեալք, յոլովք գլխատեալք, գիր գրեցին աղաչանաց առ Հերակլի կուսակալ, զի հասցէ նոցա յօգնութիւն։ Որ հաւանեալ հայցմանց նոցա, վաղվաղակի մեծ զօր գումարեալ, եկն ընդդէմ Փոկասու, ունելով ընդ իւր զանձեռագործ պատկերն Քրիստոսի, և յաղթեաց նոցա։ Իսկ ոմն ի նախարարաց, Փոտինոս անուն, զորոյ կինն Փո-

կաս կամեցեալ էր բռնադատեալ, մտեալ յապարանս, և զՓոկաս կայսրն ի հանդերձս տխրագոյն զգեցուցեալ, էած առ Հերակլ։ Ասէ ցնա Հերակլ.

—Ո՞վ եղկելի, այդպէ՞ս զիշխանութիւն կառավարեն։

Պատասխանի ետ Փոկաս.

—Եւ ետ քեզ տամ իշխանութիւնն, դու լաւագոյն վարեա զնա։

Ապա զաջոյ ձեռն նորա և զերկուս ոտս հատին, տիկ ի մարմնոյն հանին, զծածուկ անդամս կտրեցին, և զգլուխն հատեալ՝ զգեզարդէ կախեցին. և զզէշ մարմինն, ուր զանասունս ծախէին, այսր և անդր Նախատանօք քարշէին. և ապա հրով այրեցին։

## 87. ՄԱՀ ԶԵՆՈՆ ԿԱՅՍԵՐ

Զենոն կայսրն այնչափ գեխէր և արբենար, մինչ զի ի խելաց անկանէր և իբրև զմեռեալ յերկիր անկանէր, անզնչանայր. վասն որոյ կնոջ իւրում յոյժ ատելի եղև։ Յաւուր միում արբեալ՝ իբրև զմեռեալ, հրամայեաց ի գերեզման թագաւորաց ձգել և քար ի վերայ թաւալեցուցանել։ Որ իբրև ի գինոյ թափեաց՝ լալով և կոծելով, եղկելի և սոսկալի մահուամբ մեռաւ, քանզի թագուհին հրամայեաց ո՛չ բանալ զգերեզման և ոչ ուգնել նմա։

## 88. ՅԱՆԿՈՒԹԻՒՆ ԹԷՈԴՈՍԻ ԿԱՅՍԵՐ

Յաւուր միում ասացին փոքուն Թէոդոսի կայսեր, թէ ընդէ՞ր ոչ սպանանէր զմահապարտսն ի մահ, կամ զայնոսիկ՝ որք չարախօսէին զինքենէ։ Պատասխանեաց, թէ՝ Յանկամ մա՛նաւանդ յարուցանել զմեռեալսն, քան դատապարտել զկենդանիս ի մահ։

## 89. ԹԱԳԱՒՈՐ ԵՒ ԴԱՍԱՏՈՒ՝ ԴԵՍՊԱՆ

Թագաւոր ոմն՝ ունելով վէճ ինչ ընդ միոյ սահմանակից թագաւորի, յառաջադրեաց յղել դեսպան մի վստահ և հմուտ՝ առնելոյ նմա յանդիմանութիւնս և սպառնացմունս ի կողմանէ իւրմէ։ Ընտրեաց առ այս զիմաստուն դասատու ոմն, որ լեալ էր վարժապետ իւր և հաւատարիմ ինքեանն, որոյ և հաւաստի էր ճոռոմ ճշմարտաբանութեամբ, և զեկոյց զդիտաւորութիւն իւր և զայն ամենայն ախորժալի բանս, զոր ասելոց էր։ Դասատուն, որ ճանա-

չէր զգաստն բարս թագաւորի այնմիկ և գիտէր, որ ո՛չ ըմբերնլոց էր, ասէ.

—Խնդրեմ, արքայ, փոարել յինէն զայս դեսպանութիւն, զի թարց կարծեաց՝ արժեւլոց է հատումն գլխոյ իմոյ։

Թագաւորն առ ի քաջալերել զնա, ասէ.

—Մի՛ երկնչիր բնաւ, զի եթէ հատցէ նա զգլուխ քո, ես ասա՝ ի տերութեան իմում գտանեցեալ համայն հպատակաց նորին զգլուխս հատանեմ։

Պատասխանեաց դասատուն.

—Իրաւի՛, արքայ, հաւատամ ես, որ կարող ես առնելոյ զայդ, զոր ասեսդ, բայց աղաչեմ խոկալ, որ ի մէջ այնքան հատեցեալ գլխոց հպատակաց նորին՝ ոչ կարես գտանել գլուխ մի, որ լիցի այսպէս հարմար անձին իմոյ, որպէս որ հարմար է սոյն գլուխ, զոր այժմ ունիմ։

Զգացեալ թագաւորին զիրաւունս նորա, ո՛չ ևս ստիպեաց նմա հետևիլ այսու դեսպանութեան։

## 90. ԻՄԱՍՏԱՍԷՐ Ի ՍԵՂԱՆ ԹԱԳԱՒՈՐԻ

Իմաստասէր մի կոչէին ի սեղան թագաւորին ի ճաշակել։ Եւ նա բազմեցաւ ընդ իշխանսն։ Եւ մատուցաւ մի ոսկի բաժակաւ մատուցին նմա գինի։ Եւ նա եկաց յոտն և ասէ.

—Ո՛վ բարի թագաւոր, զգինիս ի փառս քո ըմպեմ.—և եհեղ զգինին յերկիր։

Եւ իշխանքն ծիծաղելով ասացին.

—Յիմարեցա՞ր, ո՛վ իմաստասէր։

Եւ նա ասէ.

—Դո՛ւք էք ծիծաղելոյ արժանի. զդա յեղաւ յերկիր, թէ արբեալ էի՝ ի՛նքն զիս հեղոյր յերկիր։

## 91. ԲԺԻՇԿ ԵՒ ԱԳԻ ԻՇՈՅ

Եկն իմաստուն բժիշկ մի յանուանի քաղաք մի և հարեալ զփողն իւր. և ժողովեցան քաղաքն առ նա։ Եւ նա ասէր թէ՝ Գիտեմ զամենայն հիւանդութեան և զցաւոց պատճառ, և ի մանկութենէ ուսեալ եմ զամենայն դեղ և զսպեղանիս նոցա, և անուամբն աստուծոյ ողջ առնեմ զնոսա։

Եւ ոմն ի քաղաքէն կամեցաւ ծաղր առնել զբժիշկն. և հանեալ ի ծոցոյ իւրմէ իշոյ ագի մի՝ սաստիկ չորացեալ և ասէ.

—Ո՞վ իմաստուն բժիշկ, այժմ կարե՞ս դեղ առնել, որ ողջանայ։

Ասէ հաքիմն, թէ՝ Ո՞վ այր իմաստուն և պատուական, չէ՛ հնար, թէ ողջանայ դա ի բժիշկաց, քանզի յիշուէն ագին միյայն կայ։ Իսկ թէ աստուած ի հարկ անկանի և յանձն առնու, ապա կարէ ողջ առնել զդա, որ զայլ անդամքն նոր ստեղծանէ։

## ՅԱՂԱԳՍ ԾԻԾԱՂԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԵԱՆՑ, ԹԱՐԳՄԱՆԵՑԵԱԼ ՅԻՏԱԼԱԿԱՆ ԼԵԶՈՒԷ Ի ՀԱՅ ԲԱՐԲԱՌ Ի ՊԵՏՐՈՍ ՎԱՐԴԱՊԵՏԷ ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼՍԵՑՒՈՅ

### 92. ՇԻԼ ԵՒ ՍԱՊԱՏՈՂ

Յաւուր միում շիլ աչքաւոր ոք պատահեալ ումեմն սապատողի (այսինքն ղամբուռի) և ասէ ցնա.

—Սիրելի՛ իմ, վա՜շ թէ որպէս վայելչաբար բարձեալ ունիս զոսկի ի յուսն քո՝ լի քսակօք։

Պատասխանեաց և նա, թէ՝ Բարւո՛ք ասես զիս ունիլ զոսկի բեռնաւորեալ, քանզի ա՛չք քո այնքա՛ն զօրեն տեսանել, որքան ծանեար, զի երկու պատուհանքդ աչաց քոց հաղիւ արժեն զգին միոյ լուսամտի։

### 93. ԱՐԲԵՑՈՂ ԵՒ ԲԺԻՇԿ

Այր ոմն արբեցող, ունելով զսաստիկ ցաւ ի մի ակն իւր, կոչեաց զբժիշկ ոմն, զի բժշկեսցէ զնա դեղօք։ Իսկ նա եկեալ ասաց, թէ՝ Սիրելի՛ իմ, պա՛րտ է քեզ, նախքան զամենայն, հրաժարիլ ի գինւոյ, ապա թէ ոչ՝ կորուսանես զլոյս քո։

Իսկ նա պատասխանեաց.

—Ո՞վ իմաստուն բժիշկ, ծածկեա՛, ուրեմն, ըզդեղօրեայս քո, քանզի կամիմ ես մանաւանդ կորուսանել զպատուհան ի՛մ, քան թէ զբոլոր տունն ամայի առնել։

### 94. ԱՅՐ ԱՅԾԱՎԱՃԱՌ ԵՒ ՊՈՌՆԻԿ

Յաւուր միում այր ոմն գիւղական, բերեալ զայծ իմն ի փողոցի միում ի վաճառել, պատահեցաւ նմա կին ոմն պոռնիկ և ասաց.

—Վա՜յ թէ որպէ՛ս գեղեցիկ է այծս այս, սակայն ընդէ՞ր ոչ ունի զեղջիւր։

Պատասխանեաց գիւղականն, թէ՝ Դեռևս զզօրութիւն արուի ոչ գիտէ։

## 95. ԻՇԱՏԷՐ ԵՒ ԱՂՆՈՒԱԿԱՆ

Գիւղական ոմն անցանէր իշով միով ի փողոցէ իմեքէ, և էհար գաւազանաւ սաստկապէս առաջի աղնուականաց, առ ի յաճախեցուցանել զընթացս նորին։ Տեսեալ աղնուական ոմն յայնցանէ, ասաց.

—Ընդէ՞ր անգթաբար հարկանես զայդ խեղճ անասունդ։

Յայնժամ և նա՝ խոնարհաբար հանեալ զփակեղն իւր և յարագապէս ասաց իշոյն, թէ՝ Թողութի՛ն արա ինձ, է՛շ, զի ո՛չ գիտէի, թէ դու աստ ունիս զբարեկամս և զաղնուական ընտանիս։

## 96. ՀԵԾԵԱԼ ԱՅՐ ԵՒ ԴԵՐԱՍԱՆ

Այր ոմն հեծեալ ի վերայ անշահ ձիոյ միոյ և անցանէր ի միոյ քաղաքէ։ Պատահեցաւ նմա դերասան ոմն և ասէ ցնա.

—Վաճառեա՛ զայս զումէշս։

Եւ նա վերացուցեալ զձէտ ձիոյն, ասաց.

—Մո՛ւտ ի դրանէս յայսմանէ ի ներքս. եթէ բուրաք վայելէ քեզ լինիլ աստ խանութպան, վաճառեմ զնա արժանագին գնով։

## 97. ԱՅՐ ԵՒ ԳԱՆԱՀԱՐԵԱԼ ԿԻՆ

Այր ոմն ջանեաց զկին իւր այնքա՛ն սաստկապէս, մինչ զրեթէ էհաս ի դուռն մահու. և անկեալ յերկիր՝ քաղէր զյետին շունչն իւր. և կանայք ոմանք պատահեալ էին անդ՝ շուրջ զնովաւ։ Եւ ի մէջ գիշերի այրն, առ ի փորձել ըզկին իւր, էառ զգանակ իմն (մինչ ննջէին կանայքն) և ասէր ձայնիւ ինքն ըստ ինքեան, թէ՝ «Որովհետև մեռաւ կինն իմ իբրև զանասուն, զոնէ ես և քերթեցից զմորթ նորա»։—Եւ կալեալ զմի ոտն, խզրէր ծայրիւ դանակին։ Իսկոյն զգացեալ կինն՝ վաղվաղակի յարեաւ և կանգնեցաւ ի վերա ոտից իւրոց։

## 98. ՄԻԱՄԻՏ ԳԻՒՂԱԿԱՆ ԵՒ ՍՐԱԽՕՍ ԴԵՐԱՍԱՆ

Գիւղականի ումեք կինն մեռեալ. տարեալ թաղեցին զնա, և վերադարձեալ այրն երթայր լալով ի տուն իւր։ Պատահեցաւ նմա

դերասան ոմն և էհարց, թէ՝ «Ընդէ՞ր լաս»։ Պատասխանի ետ գիւղականն և ասէ. թէ՝ «Կորուսի զկին իմ»։ Ասաց դերասանն, թէ՝ «Հաւատա՛ ինձ, եղբա՛յր, յիրաւի որ ես ո՛չ գտի զնա»։ Ասաց գիւղականն միամտաբար, թէ՝ «Ո՛չ այդպէս, եղբա՛յր, այլ կամիմ ասել, թէ մեռաւ կինն իմ, որոյ ի թաղմանէն այժմ վերադառնամ անմխիթար լալով ի տուն իմ, զի էր յոյժ համեստ»։ Ասաց դերասանն, թէ՝ «Ստեցե՛ր այդու բանիւ, զի եթէ իցէր այդքան համե՛ստ, ո՛չ ի բաց թողոյր զայրն իւր»։

## 99. ԻՇԽԱՆ ԵՒ ԽԱՀԱՐԱՐ

Յաւուր միում առաւօտու իշխան ոմն, արտաքոյ սովորութեան, քաղցեալ եղև յոյժ։ Կոչեաց զխահարարն իւր և ասէ.

—Զի՞նչ պատրաստեալ ես զճաշու կերակուր։

Պատասխանեաց խահարարն, թէ՝ «Տէ՛ր իմ, դեռևս ժամացոյցն ո՛չ է հնչեցեալ զերրորդ ժամն»։ Ասաց իշխանն.

—Թէպէտ ո՛չ է հնչեցեալ զերրորդ ժամն, այլ ի յստամոքսի իմում ձայնն օրհասակի զաղաղակ էբարձ, զոր ո՛չ կարեմ տանիլ։

## 100. ԵՊԻՍԿՈՊՈՍ ԵՒ ՔԱՀԱՆԱՅ

Եպիսկոպոս ոմն, անցանելով ի գեղջէ իմեքէ, պատահեցաւ ումեմն քահանայի, որ առնէր զթափչութիւն հրապարակաւ ի յաղբերակի իմիք (ըստ որում է՛ անպատեհ իմն)։ Ասաց եպիսկոպոսն ընդ իւր եղելոցն, հարցանելով, թէ՝ «Ո՞վ է արարեալ զայդ էշն քահանայ»։

Քահանայն լուեալ, ասաց.

—Պայծառագոյն տէրութիւնն ձեր և գերյարգութիւնն։

## 101. ՊԱՏԿԵՐԱՀԱՆ ԵՒ ՏԳԵՂ ՈՐԴԻՔ

Ազնուական ոմն գնալով երբեմն ի տուն գերազանց պատկերահանի ումեմն և հիանայր նկատելով զգեղեցկութիւնս գերազանց պատկերաց նորին։ Տեսանէր և զորդիս այնմ պատկերահանին, որք էին ամենեքեան յոյժ տգեղք։ Ասաց նմա յաւուր միում, թէ՝ «Զարմանամ քեզ յոյժ, թէ ընդէ՞ր, որ քարշես և նկարես զզանազան պատկերս յոյժ գեղեցիկս, և ստանաս զորդիս յոյժ տգեղս»։

Պատասխանեաց պատկերահանն ասելով, թէ՝ «Ներեա՛ ինձ,

տէ՛ր իմ, և մի՛ զարմանար, քանզի զպատկերսն արարեալ եմ ի ցերեկի, իսկ զորդիսն իմ՝ ի գիշերի»։

## 102. ԴԵՐՁԱԿ ԳՈՂ

Դերձակ ոմն այնքան վարժեցեալ էր գողութեամբ, խորհելով կամ գողանալով զասուեղէնս և զայլ իրս այնոցիկ, որք բերէին առ նա՝ ի ձևել տալոյ կամ կարելոյ զհանդերձ ինչ ինքեանց, մինչ զի և ոչ կնո՛ջ իւրոյ արարեալսն թողոյր թարց գողանեցման։

Էհարց սմա երբեմն կինն իւր, թէ՝ «Ընդէ՞ր առնես ամենեցուն այնպէս»։

Պատասխանեաց, թէ՝ «Վասն երկիւղի առնեմ զայն, զի մի կորուսանիցեմ զսովորական համբաւն արհեստակցաց իմոց»։

## 103. ՊԱՏՃԱՌՔ ՈՂՈՐՄՈՒԹԵԱՆ

Հարցումն եղև ումեմն փիլիսոփայի, թէ վասն է՞ր տուեալ լինի ողորմութիւն մանաւանդ կուրաց և կաղաց, քան թէ փիլիսոփայից։ Պատասխանեաց իմաստունն, թէ՝ «Յոյժ երկիւղալի է լինել կոյր և կաղ, քան թէ վատակ այնպիսեացն տան»։

## 104. ՄԵԾԱՏՈՒՆ ԺԼԱՏ ԵՒ ՔԱՐԱԿՈՓ ՊԱՏԿԵՐ ՆՈՐԻՆ

Այր ոմն մեծատուն և ժլատ յոյժ, եա շինել ումեմն քարակոփի զպատկերն իւր՝ ի մարմարոնեայ քարէ և եցոյց զնա միոյ բարեկամի իւրոյ և էհարց, թէ՝ «Արդեօք իցէ՞ր բարւոք կերտեալ և յարմարեալ քարակոփն ըստ նմանութեան ինքեան»։

Պատասխանեաց, թէ՝ «Յո՛յժ բարւոք և կատարեալ ունի զնմանութիւն քո՝ ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ»։

## 105. ԱԳԱՀ ԱՐԿԵԱԼ Ի ԲԱՆՏ

Ագահ ոմն, մինչ վճռեցեալ լինիւր ի մահ, և ընթերցեալ լինէին ամենայն անիրաւութիւնք նորին հրապարակաւ ի յատենի ի յիշատակագրութիւն, նա սոէր կրկնելով ըստ ամենայն յիշատակի, թէ՝ «Ա՛յլ ևս մեծագոյն եմ արարեալ, ա՛յլ ևս մեծագոյն եմ արարեալ»։

Ի վախճանի հարցին, թէ՝ «Զի՞նչ այլ ևս արարեալ իցես»։

Պատասխանեաց, թէ՝ «Զղջացեա՛լ եմ յոյժ, զի ընդէ՞ր թոյլատրրեցի զիս ըմբռնել և արկանիլ ի բանտ»։

## 106. ՔԱՀԱՆԱՅ ԵՒ ՍՐԱՄԻՏ ԳԻՒՂԱԿԱՆ

Քահանայ ոմն, գէր եւ մեծափոր, յաւուր միում երթայր ի քաղաքն Ֆիլօրէնցիայ։ Եւ սկսաւ օրն տաղտկանալ, վասն որոյ առ ի հաստատութիւն երկբայութեան իւրոյ, էհարց գիւղականէ ումեմն, թէ՝ «Արդե՞օք կարիցեր հասանիլով մտանել ի դուռն քաղաքին»։ Իսկ գիւղականն պատասխանեաց, թէ՝ «Այո՛, զի խոտադէզ լի սայլ մի կարէ մտանել, և ընդէ՞ր տէրութիւն քո ոչ կարիցէ մտանել»։

## 107. ՄԵԾԱՏՈՒՆ ՏԳԷՏ

Այր ոմն մեծատուն, բայց յոյժ տգէտ, ունէր զմի յոյժ գեղեցիկ Աստուածաշունչ, զորմէ ասաց իմաստուն ոմն, թէ՝ «Սա նման է սապատողի, որ կրէ զկզութիւն զկնի ուսոյն իւրոյ, զոր ո՛չ կարէ տեսանել»։

## 108. ԶԱՆԱԶԱՆՈՒԹԻՒՆ ԻՄԱՍՏՆՈՑ ԵՒ ՅԻՄԱՐԱՑ

Հարցումն եղև ումեք, թէ արդեօք իցէ՞ զանազանութիւն ի մէջ իմաստնոց և յիմարաց։ Պատասխանեաց, թէ՝ «Այնքա՛ն յատկապէս զանազանութիւն, որքան է՛ ի մէջ բժշկին և հիւանդին»։

## 109. ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՈՒԹԻՒՆ ՊԱՏԵՐԱԶՄԻ

Լուտովիկոս մետասաներորդն կամեցաւ երբեմն շարժիլ ի պատերազմ ՛ի վերա Մեքսիմիլանոս էհարց Յակոբայ Թռուլցիոսի ընտիր նախարարին իւրոյ, թէ արդեօք զի՞նչ հարկաւոր նախապատրաստութիւն պարտ իցէր առնել։

Պատասխանեաց, թէ՝ «Ի մէջ ամենայն իրաց, նապատիկ հարկաւորք են դրա՛մք, դրա՛մք, դրա՛մք. և և՛ս, և մա՛նաւանդ դրա՛մք».

## 110. ԱՒԱԶԱԿ ԵՒ ԽՈՍՏՈՎԱՆԱՀԱՅՐՆ

Աւազակ ոմն տարեալ եղև ի կախարանն։ Եւ խոստովանահայրն յորդորելով զնա ի մահ, ասէր թէ՝ «Որքա՞ն երջանիկ ես դու,

միրելի եղբա՛յր, զի յուսով այսօր կարես բազմիլ ի սեղանի արքայութեան՝ ընկերակցութեամբ աստուծոյ և հրեշտակաց»։

Պատասխանի ետ աւազակն և ասէ.

—Միրելի՛ հայր, մեծ շնորհ իմն առնես ինձ, եթէ գնասցես ի տեղի իմում, զի դեռևս ո՛չ եմ քաղցեալ և ո՛չ է ինձ ժամ ճաշելոյ։

## 111. ԱՒԱԶԱԿՔ ԵՒ ԽՈՐԱՄԱՆԿՈՒԹԻՒՆ ՆՈՑԻՆ

Արք ոմանք աւազակք ի միում գիշերի մտեալ ի տուն ումեմն մարդոյ, կողոպտեցին զագնիւ և զգնոյշ եղեալ իրսն։ Եւ մինչ առեալ տանէին զնոսա, վերա հասին պահապանքն և ասէին.

—Ո՞ւր տանիք զսոսա։

Ասաց մի ոմն ի գողոց, թէ՝ «Տանուտէրն սորա մեռաւ և վասն այսորիկ հրամայեցաւ մեզ տանիլ զսոսա ի յայլ տուն, ուր լինելոց է ի յառաւօտուն յաշումն և դիր վասն սորա»։

Ասաց ոմն ի պահապանացն, թէ՝ «Ընդէ՞ր ապա ոչ լսի աստ ձայն լալականաց»։

Պատասխանեաց գողն, թե՝ «Համբերե՛ա մինչև յառաւօտ և լուիցես, թէ որպէ՞ս առնեն զողբումն և զլալումն յոյժ»։—Վասն որոյ, ոչ զգալով զբան խորամանկութեան նոցին, ի բաց թողին զնոսա։ Իսկ ի վաղիւ յայտնեցեալ եղև գողութիւն և կորուստ տանն այնորիկ. լային ընտանիքն և ողբային յոյժ այնքան, մինչ որ պահապանքն իմացան և զգացին զբանն խորամանկութեան գողոցն։

## 112. ԶՕՐԱԿԱՆ ՋԵՐՄԱՑԵԱԼ ԵՒ ԱՂՆՈՒԱԿԱՆՔ

Յաւուր միում զօրական ոմն բեռնաւորեալ և բարձեալ էր ի յուսն իւր ղծանր զրահս երկաթիս, յորում էր ձմեռնային եղանակ և սաստիկ ցուրտ յոյժ, բայց նա քրտնեալ՝ հոսէր զառատ քրտունս յոյժ։ Պատահեցան սմա երկու արք ոմանք ազնուականք ի ճանապարհի՝ սառուցեալք ի ցրտոյ։ Եւ ասեն ցնա, թէ՝ «Ընդէ՞ր այդքան յաճախ քրտնիս ընդ դէմ կարգի եղանակիս, մինչ գրեթէ մեք սառուցեալք, ահա մեռանիմք ի ցրտոյ»։

Պատասխանեաց զօրականն, թէ՝ «Տեա՛րք իմ, եթէ բառնայցէք ծանրութիւնս իրաց, որքան ե՛ս բարձեալ ունիմ, ո՛չ միայն ոչ ցրտանայիք, այլև քան զիս առաւել ջերմացեալ զքրտունս հոսէիք»։

## 113. ՊԱՏԱՍԽԱՆ ԱՌՆ ԽՈՒԼ ԿՆՈՋ

Հարցին ումեմն, թէ ընդէ՞ր ամուսնացեալ եղև ընդ խուլ կնոջ միոյ։ Պատասխանեաց.

—Վասն այնորիկ ընդ այնպիսի կնոջ ամուսնացայ, զի հաւատացի, թէ ի յայլում ժամու համրանալոց ևս է։

## 114. ՕԳՈՍՏՈՍ ԿԱՅՍՐ ԵՒ ՆԺԴԷՀ

Յաւուր միում լուաւ Օգոստոս կայսրն ի յոմանց, թէ այրն ոմն նժդէհ եկեալ ի Հռոմ, որ ըստ պատկերի իւրում իցէ յար և նման ինքեան ըստ ամենայնի։ Կոչեաց զնա առ ինքն և տեսեալ զնա՝ ուրախացաւ յոյժ, և յետոյ էհարց նմա, թէ արդեօք մայրն նորին եկեալ իցէ՞ր երբէք ի Հռոմ՝ ի ժամանակս հօր կայսերն։ Պատասխանեաց, թէ՝ «Ո՛չ երբէք, այլ միայն հայրն իցէր եկեալ բազում անգամ ի Հռոմ»։

## 115. ՊԱՏՃԱՌ ՍՊԻՏԱԿՈՒԹԵԱՆ ՄՕՐՈՒԱՑ

Հենրիկոս չորրորդն գոլով մօրուսաւոր, յաւուր միում ասաց նմա ոմն ի ներքինեաց ծառայիցն, թէ՝ «Ո՛չ գիտեմ ուստի՞ յառաջ գայ սպիտակութիւն մօրուաց հանդիսավեհութեան քո, կամ ծերութիւնն»։

Պատասխանեաց թագաւորն, թէ՝ «Տարեօքն իմ տկարանան և պատճառեն զցրտութիւն և ոչ այլ ինչ»։

## 116. ԵՐԿՈՒ ԱՐՔ ԵՒ ԱՆԴԱՍՏԱՆ ԿԱՆԵՓՈՒ

Յաւուր միում երկու արք ընկերացեալ անցանէին ընդ անդաստանաւ իմիք, յորում սերմանեալք էին զկանեփս։ Ասաց մին ցմիւսն, թէ՝ «Վաղվաղակի անցցուք աստի, զի է՛ կարի իմն վտանգաւոր թունաւորութիւն»։

Էհարց միւս ընկերն, թէ՝ «Վասն է՞ր է այնպէս»։

Պատասխանեաց, թէ՝ «Հայրն իմ այսու կախեցեալ եղև»։

## 117. ՄՈՒՐԱՑԻԿ ՍՈՒՏ ԽԼԱՑԵԱԼ

Աղքատ ոմն, վասն առատ ստանալոյ զողորմութիւն, երթայր և մուրանայր աւաղմամբ և ակնարկութեամբ, ցուցանելով զինքն

զոլ խուլ և համր։ Տեսեալ զնա ոմն բանագէտ, կոչեաց և եբեր ի ներկայութեան բարեկամաց իւրոց, ուր ընդ նմա կային, և ասաց թէ՝ «Կամիմ այսօր առաջի ձեր առնել զմեծ հրաշ իմն և սքանչելի»։ —Եւ ապա առեալ ի մի ձեռն զմի փարայ և միւս ձեռն զմի մառչիլ, և եցոյց մուրացկանին ասելով.

—Եթէ սուտյգ խուլ ես, առցես զայս մի փարայեկս, և եթէ ճշմարիտ խոստովանիս՝ առցես զայս մառչիլս։

Յայնժամ մուրացիկն, թարց յապաղելոյ, խկոյն խոստովանեցաւ ոչ զոլ խուլ և համր, և եղև ոչ սակաւ ուրախութիւն ամենեցուն։ Եւ ընկալեալ զմառչիլն, խնդալով գնաց։

## 118. ԳԻՒՂԱԿԱՆ ԵՒ ԱՆՑՈՐԴ ԵՒ ԴԱՏԱՒՈՐ

Այր ոմն բեռնաւորեալ զփայտ՝ տանէր ի վաճառել։ Եւ ի փողոցի յիմիք, անցանելով ի մէջ ամբոխին, աղաղակելով ասէր.

—Ի բա՛ց կացէք, ի բա՛ց։

Իսկ ոմն ամարդի, ո՛չ կամելով հեռանալ, յանկարծ դիպեցաւ նմա գիւղականն և պատառեցաւ վերարկու նորին։ Իսկ նա, կամելով տուժեցուցանել զգիւղականն, էած զնա առաջի դատաւորին և զգացոյց նմա զփաստն խռովութեան իւրոյ։ Իսկ նա ո՛չ երբէք պատասխանեաց։ Եւ դարձեալ առ տէր վերարկուին, ասէր, թէ՝ «Զի՞նչ կամիս, զի արարից համերս այսմիկ»։

Եւ նա ասաց, թէ՝ «Ո՛չ է նա համր, քանզի անդ աղաղկէր բարձրր ձայնիւ, թէ՝ «Ի բա՛ց կացէք, ի բա՛ց»։

Յայնժամ դատաւորն սրտմտեալ ասաց.

—Ուրե՛մն, ո՛վ անմիտ, եթէ նա այնպէս աղաղակէր, պարտ էր քեզ ի բաց գնալ, զի մի՛ դիպեցեալ քեզ՝ պատառեցիւր վերարկուն քո։—Եւ այնպէս ի բաց վարեաց զնա։

## 119. ՏՈՒՏԷՇՔ ԵՒ ՊԱՆԴՈԿԱՊԱՆ ԵՒ ԱՂԱԽԻՆ

Չորս գերմանացիք տուտէշք գնացեալ Ֆրանցիայ և իջևանեցան ի պանդոկի միում, յորում ոչ ոք հասկանայր զլեզու նոցա։ Եւ անտանօր կերին և արբին և կամէին ննջել։ Յարեան ծառայքն նոցա և առեալ զձիանսն, տարին ի ջուր։ Եւ պանդոկապան կինն հրամայեաց աղախնոյն իւրոյ, զի սրբեսցէ զկօշիկս ճանապարհորդացն այնոցիկ։ Իսկ նա առեալ սրբէր, բայց մինն ի կօշկաց անկեալ և խրեցեալ էր ի մէջ սաստիկ տղմոյ. և աղախինն ջանայր արտա-

քարշել ի տղմոյ անտի՝ մեծաւ աշխատութեամբ յոյժ, մինչ զի առաւել նեղութենէ բռնութեանն, թռուցանէր ի ներքուստ զպիղծ կրէտացիս երկարս։ Եւ եղև ոչ սակաւ ծիծաղիլ ամենեցուն, մինչև որ էհան ի տղմոյ անտի։ Իսկ պանդոկապան կինն յանդիմանեալ զաղախինն, ասելով.

—Կի՛րք և անամօթ խոզ դքեզ, ո՞չ ամաչեցեր առաջի պարոնացս արձակել զայնպիսի անգոսնելի կիրս ի յորովայնէ քումմէ։

Պատասխանեաց աղախինն, ասելով թէ՝ «Սոքա տուտէշք են և ոչինչ հասկանան ի լեզուէ անտի»։

## 120. ԱԶՆՈՒԱԿԱՆ ԵՒ ՊԱՊՆ ՅՈՒԼԻՈՍ ԵՐԿՐՈՐԴ

Ազնուական ումն հռոմայեցի, խորհրդակից բարեկամ Յուլիոս պապին երկրորդի, ասէր սմա, թէ՝ «Բազումք գանգատին զքէն, թէ Սրբութիւնդ յո՛յժ եռանդաբար աշխատի ի պատերազմի՝ ընդ դէմ Ֆրանցիզոյ, զի աստուած տուեալ է, ասեն, զքանալիս եկեղեցւոյ իւրոյ առ ի փակել զդուռն անկարգ խռովութեան և բանալ զդուռն հաշտութեան»։

Պատասխանեաց պապն, թէ՝ «Այնոքիկ, որք խօսին այնպէս, ո՛չ են հզօրք, քան զուրբն Պետրոս և Պօղոս, որք էին ընկերք և իշխանք եկեղեցւոյ։ Եւ նախնիքն իմ ծառայեցին և յետևեցան բանալեաց սրբոյն Պետրոսի, ես այժմ կամիմ ի գործ ածել զսուրն սրբոյն Պօղոսի»։

Ասաց ազնուականն, թէ՝ «Սրբութիւն քո գիտէ՞, որ ասաց Քրիստոս Պետրոսի, թէ՝ «Դարձո զսուր քո ի պատեանն»։

Պապն ասաց, թէ՝ «Ճշմարի՛տ է, բայց յիշեա՛, զի Քրիստոս ո՛չ նախքան զհատանել ունկանն Մաղքոսի ասաց զայս, այլ յետ ունելոյ զքաջութիւնն»։

## 121. ՈՐՄՆԱՇԷՆ ԵՒ ՄԵՌԵԱԼ ԵՒ ԴԱՏԱՒՈՐ

Յաւուր միում այր ումն որմնաշէն, անկեալ ի բարձր պարսպէ միոյ ի վայր՝ ի վերա առն միոյ, ուր նստեալ կայր, որ ըստ բարեբաղդութեան իւրոյ ո՛չ վնասեցաւ այնքան, սակայն ենթանկեալ այրն մեռաւ։ Իսկ որդին սորա, առեալ զսա տարաւ ի դատաստան, և խնդրէր զվրէժ մահուան հօրն իւրոյ։ Եւ դատաւորն վճռեալ հրամայեաց, զի զորմնաշէնն տարեալ նստուցանիցէին ի տեղւոջ հօրն, և որդի մեռելոյն ելցէ ի յայն բարձր տանիսն և ընկեսցէ զինքն ի

